



ՐԱՖՖԻ

# ԿԱՅԾԵՐ

ԵՐԿՐՈՐԴ ՀԱՏՈՐ ԵՒ ՎԵՐՋ

ԵՐԿՐՈՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1904.



## Ա.

## ՎԱՆ



Հասնելով Վան, մենք իջեւանեցինք Այգեստան կոչուած արուարձանում, որ կից է այդ քաղաքին։ Մեզ ընդունեց իր տանը Թաղի նշանաւոր անձինքներից մէկը, որ կոչվում էր վարպետ Փանոս։ Այդ պարոնը արհեստով ներկարար էր։

— Տան տէրը առաջին անգամից երեւաց ինձ բարի եւ ազնիւ մարդ, բաւական վայելչակազմ մարմնով եւ պայծառ դէմքով։ Արեւելքում մարմնի բարեձեւութիւնը շատ անգամ մարդու յառաջադիմութեան պատճառ է դառնում։ Բայց վարպետ Փանոսը, բացի դրանից, ունէր եւ ճարտար լեզու եւ, որպէս երեւում էր, բաւական փորձուած ու խելացի մէկն էր։ Երեւի, այդ էր պատճառը, որ չը նայելով նրա երիտասարդութեանը, նա ընտրուած էր Թաղական խորհրդի անդամ, ուր ծերու-

թիւնը եւ սպիտակ մօրուքը աւելի մեծ նշանակութիւն ունէին, քան խելքը։

Բոլորովին մութն էր, երբ հասանք Այգեստան։

Ալանը սկսել էր այժմ, որպէս ասում են, ինձ փոքր ի շատէ մարդու տեղ դնել։ Երբ մտանք վարպետ Փանոսի հիւրանոցը, նա իսկոյն ինձ ծանօթացրեց տան տիրոջ հետ, աւելացնելով, թէ իր մանկութեան ընկերներից մէկն եմ եղել եւ այժմ նրա լաւ բարեկամն եմ։ Վարպետը իր սուր եւ թափանցող աչքերով ոտքից գլուխ չափեց ինձ, յետոյ խիստ մտերմաբար յայտնեց իր ուրախութիւնը ինձ տեսնելու համար։

Որպէս երեւում էր, վարպետը նախածանօթ էր Ալանի հետ, եւ իր տան մէջ հէնց այն գիշեր սպասում էր նրան։ Նա գիտէր եւ այն, թէ որտեղից էր գալիս Ալանը, այդ պատճառով, երբ նստեցինք, նա մի առանձին խորհրդաւոր եղանակով հարցրեց.

— Ի՞նչու այդքան երկար տեւեց քո ուխտագնացութիւնը...

— Այդպէս պատահեց... պատասխանեց Ալանը նոյն եղանակով։

— Յուսով եմ, որ սուրբ Աստուածամայրը կատարած պէտք է լինի քո ցանկութիւնը...

— Նա իր ուխտաւորներին անմասն չէ թողնում իր շնորհներից...

— Ուրա՜խ եմ... ասաց վարպետը, ոլորելով աջ կողմի ընչացքը, որ նշան էր նրա սրտի առանձին բաւականութեան։ — Ուրեմն վատ չէր լինի, եթէ խմէինք մի-մի բաժակ օղի ձեր յաջողութեան համար։

— Վատ չէր լինի, — ասաց Ալանը, — միայն ոչ առանց նախաճաշիկի։ Մենք բաւական սոված ենք։

— Այդ ինքն ըստ ինքեան հասկանալի է, — ասաց վարպետը ժպտելով, եւ դուրս գնաց ընթրիք պատուիրելու:

Ասլանը ձգուեցաւ օթոցի վրայ եւ, բարձի փոխարէն ձախ ձեռքը նեցուկ տալով գլխին, նայում էր առաստաղին, որի մերկ գերանները, հնութիւնից դեղնելով, ստացել էին մուգ-ծիրանի գոյն, իսկ ճանճերը նրանց վրայ դրել էին միլիօնաւոր սեւ բծեր: Նա ընկղմուած էր մտածութիւնների մէջ: Առանց մտածութիւնների չէի եւ ես: Գալով այդ քաղաքը, թէեւ ծիծաղելի է, բայց պէտք է խոստովանուիմ, որ իմ ամենամեծ բաղձանքներից մէկն այն էր, որ տեսնեմ Վանայ հռչակաւոր կատուները: — Մի՞թէ այդ տան մէջ կատու չը կայ, — մտածում էի ես, եւ աչքերս անհամբերութեամբ թափառում էին այս կողմ ու այն կողմ: Չը գիտեմ այստեղ ինչ հոգեբանական մի գաղտնիք կայ, որ շատ անգամ մարդ յանկարծ տեսնում է միեւնոյն առարկան, որի վրայ մի րոպէ առաջ անգիտակցաբար մտածում էր: Ահա հանդիսաւոր կերպով ներս մտաւ իմ նազելին, բոլորովին սպիտակ, որպէս ձիւն, երկայն մետաքսի նման փափուկ մազերով եւ թաւիշեայ բրթոտ թաթիկներով: Նա լուռ անցաւ սենեակի միջով, նախ մօտեցաւ ինձ, եւ մի առանձին քնքշութեամբ գանգրահեր գլուխը եւ թաւամազ պոչը քսեց իմ երեսին, յետոյ գնաց բարեւելու Ասլանին: Շնորհալի կերպով մռմռալով, մի քանի պտոյտներ կատարեց Ասլանի շուրջը եւ ապա նստեց նրա մօտ: Կարծես, այդ խելացի անասունն էլ էր հասկանում, թէ մեզանից որն էր աւելի յարգանքի արժանին: Ասլանը սկսեց փայփայել նրա գեղեցիկ գլուխը, մէջքը ու ագին: Առաջին անգամ մի զարմանալի երեւոյթ գրաւեց իմ ուշադրութիւնը: Որքան Ասլանը ձեռքով շփում էր նրա գլուխն ու մէջքը, այնքան

արագ նրա երկար մազերը ճրըխկ-ճրըխկում էին եւ դուրս էին արձակում կրակի ամբողջ փոշի։

— Այդ ի՞նչ է, — հարցրի ես։

— Կայծեր են... պատասխանեց նա եւ սկսեց բացատրել նրանց դուրս ցայտելու բնական պատճառները, թէ ո՛րպէս շփումից առաջ է գալիս կրակը։

Բացի կատուից, տանեցիներից ուրիշ ոչ ոք չը յայտնուեցաւ։ Երեխաները, երեւի, քնած էին. նրանց ձայնն անգամ չէր լսվում։ Իսկ կանայք այդ կողմերում օտար տղամարդի աչքին երեւնալու սովորութիւն չունէին։

Այգեստանը արժանի էր իր կոչմանը։ Քաղաքի այդ գեղեցիկ արուարձանը ծառախիտ այգիների բաւական ընդարձակ տարածութիւն է, բաժանուած լայն փողոցներով, որոնց աջ եւ ձախ կողմերում հոսում են առուակներ, հովանաւորուած ուռենի եւ բարդի ծառերով։ Դրսից տները չեն երեւում. ոչ մի լուսամուտ բացուած չէ փողոցի վրայ, բացի գլխաւոր դռնից, որ ներս է տանում դէպի բնակարանը, որ ետեւի կողմից միայն նայում է դէպի այգին կամ պարտէզը։ Ամեն մի տուն կենտրոնացած է իր մէջ, ապրում է իր նեղ առանձնական կեանքով։ Վարպետ Փանոսի տունը նոյնպէս այդ ձեւն ունէր։

Սենեակը, որ որոշուած էր մեզ համար, տան երկրորդ յարկումն էր գտնվում։ Բաւական կոկիկ մի սենեակ էր այդ, երեւի, միայն հիւրերի համար էր պատրաստուած։ Տան մէջ, որքան գեղեցիկ իրեղէններ կային, իբրեւ զարդարանք, բոլորը դրուած էին այստեղ։ Պատուհանների մէջ շարած էին զանազան տեսակ չինական եւ պարսկական ամաններ, ամենահին ժամանակներից մնացած, որոնց շատերը այժմ գործածութիւնից ընկել էին։ Նրանց թւում կային պղնձեայ թասեր, աշտանակներ, ափսէներ եւ մեծ բոլորակ

սինիներ, բոլորը գեղեցիկ քանդակներով։ Կային եւ բազմաթիւ նարգիլէներ ու չիբուխներ՝ երկայն ծխաքարշներով՝ յասմիկի փայտից կամ Շիրազի կեռասենուց պատրաստուած։ Երեւում էր, որ այստեղ սովորութիւն կար այնքան թուով չիբուխներ ու նարգիլէներ պահել իր տանը, ինչ թուով պատահած ժամանակը հիւրեր կունենային։ Երեւում էին եւ զէնքեր։ Պատերից քարշ էին ընկած զանազան տեսակ պատերազմական գործիքներ, սկսեալ հնադարեան երկաթեայ տապարներից, վահաններից, սաղաւարտներից եւ զրահներից մինչեւ նոր ժամանակների երկայն նիզակները, ղարաբինաները, ատրճանակները եւ հրացանները։ Դրանց թւում պատերից քարշ էին ընկած տեղային զանազան նուագարաններ՝ սազ, սանթուր, չոնգուր, սրինգ, դափ, թմբուկ եւ այլն։ Երեւում էր, որ տանտէրը ածել եւս գիտէր, կամ դրանք պահվում էին հիւրերի համար։ Այդ բոլոր զարդարանքները լրացնում էին մի քանի պատկերներ, որոնք, ինչպէս թւում էր ինձ, հին դարերի գործ պէտք է լինէին։ Արդեօք ո՞ւմ պատկերներն էին, ես հասկանալ չը կարողացայ, շատ հաւանական էր, որ թագաւորների, իշխանների պատկերներ լինէին, գոնէ այդպէս էին ցոյց տալիս նրանց թէ զգեստաւորութիւնը եւ թէ զէնքերը, որոնք բոլորը հին ժամանակներին էին պատկանում։ Այստեղ ու այնտեղ փունջերով դրած էին չորացրած ծաղիկներ, որոնց մէջ իր գեղեցկութեամբ առաջին տեղը բռնում էր անթառամ ծաղիկը։ Վասպուրականի լեռների ծաղիկները չորանալուց յետոյ եւս պահպանում են իրանց գեղեցկութիւնը։ Ես թողնում եմ ուրիշ մանր-մունր զարդարանքները, որոնց բոլորից երեւում էր, որ վարպետ Փանոսը ոչ միայն լաւ արհեստաւոր էր, այլ եւ կրթուած ճաշակի տէր մարդ էր եւ իրան շրջապատել գիտէր հաղուագիւտ

ռուարկաններով։ Սենեակի պատերը ծեփած էին սպիտակ գաջով, որի վրայ երեւում էին պարսկական ճաշակով նկարուած զանազան տեսարաններ։ Մի տեղ պատկերացրած էր վագրի որսորդութեան հանդէս. մի երիտասարդ, փղի վրայ նստած, երկայն նիզակը ձեռքում բռնած, կռւում էր ամեհի գազանի հետ. շները շրջապատել էին նրան, բայց ոչ մէկը չէր համարձակվում մօտենալ. վագրը իր առջեւի ճիրաններով պատերազմում էր փղի զօրաւոր կնճիթի հետ, երիտասարդը իր նիզակի ծայրը խրել էր նրա կողքը։ Մի այլ տեղ կատարվում էր սալամի հանդէս. Արեւելքի թագաւորներից մէկը, շողշողուն գոհարներով զարդարուած, նստած էր փառաւոր գահի վրայ. հարիւրաւոր գլուխներ խոնարհուած էին նրա առջեւ. արքունիքի հռետորը, գահի մօտ կանգնած, ձեռքը ոգեւորութեամբ բարձրացրած, ճառախօսում էր, գովաբանելով արքայի ողորմածութիւնը եւ նրա կատարած սխրագործութիւնները։ Մի տեղ ուժից ընկած, ծերունի մահմեդական էֆէնդին, թիկն տուած թաւիշեայ մութաքաներին, պառկած էր փափուկ օթոցի վրայ. նարգիլէյի օձապտոյտ ծխաքարշը թոյլ կերպով մխում էր նրա բերնում. երկու մանկահասակ կանայք փայփայում էին նրա մեկնած ոտները, երրորդը արմաւենու տերեւից կազմուած հովհարով զովացնում էր զառամեալ դէմքը։ Մի այլ տեղ չորս սեւամորթ ստրուկներ, կիսամերկ, բոբիկ ոտներով, թեւքերի վրայ տանում էին մի շքեղ պատգարակ, որի մէջ նստած էր նրանց տէրը, նախշուն, ոսկէնկար զգեստներով։ Վերջին երկու պատկերները բոլորից աւելի գրաւեցին իմ ուշադրութիւնը։

Ինձ պատահել էր տեսնել Պարսկաստանի հարուստ հայերի տներում նկարներով զարդարուած սենեակներ, բայց նրանց նկարներն ոչինչ միտք չունէին, պատկերացնում էին

ծաղիկներ, ափսէների մէջ դրած պտուղներ, պարտէզներ եւ սիրուն կանանց դէմքեր: Իսկ այստեղ, վարպետ Փանոսի հիւրանոցում, պատկերների մէջ ես իմաստ էի տեսնում, կարծես, նրանք դիտմամբ պատուիրուած լինէին:

Սենեակի յատակը թէեւ զուրկ էր տախտակամածից, բայց նրա փոխարէն ծածկուած էր եղէգնեայ փսիաթներով, որոնց վրայ տարածել էին գեղեցիկ պարսկական գորգեր եւ կապերտներ: Վերջինները տեղային տնային արհեստի արգիւնք էին: Անկողինները, ծալած, փաթաթած, առանձին-առանձին դրած էին պատերի մօտ: Նրանց թիւը ցոյց էր տալիս, թէ վարպետ Փանոսը որքան հարուստ պատրաստութիւններ ունէր իր հիւրերի համար, որոնք նրա տնից միշտ անպակաս էին լինում: Ես ոչ մի վանեցու տանը եւրոպական կարասիք չը տեսայ, իսկ այստեղ կար մի գրասեղան եւ մի քանի աթոռներ, թէեւ նրանց վրայ չէին նստում:

Սենեակի լուսամուտների առջեւ կար պատշգամբի նման մի բան, հովանաւորուած տանձի ու ծիրանի ծառերով: Խաղողի որթը ներքեւից վեր էր բարձրացել եւ, փաթաթուելով պատշգամբի սիւներին, տալիս էր նրան կանաչազարդ հովանոցի կերպարանք: Սենեակում օդը բաւական հեղձուցիչ էր: Ես, Ալանին միայնակ թողնելով, դուրս եկայ պատշգամբի վրայ: Սկսեցի նայել դէպի այգին: Ծառերը ընկղմուած էին գիշերային մթութեան մէջ. ոչ մի տերեւ չէր շարժվում: Ամեն ինչ լուռ էր, միայն անհանգիստ ճպուռը իմ մերձակայքում եղանակում էր իր միակերպ, տաղտկալի երգը:

Ներքեւում, բակի մէջ, կրակ էր վառվում: Վարպետի համարեա բոլոր ընտանիքը պտըտվում էր կրակի շուրջը: Այնտեղ, ամառնային օջախի վրայ, մեզ համար կերակուր էին պատրաստում: Ամառը այգեստանցին եփում է, ու-

*տում է եւ պառկում է բաց օդի ներքոյ։ Ես տեսնում էի, թէ ինչպէս տափակ կտուրների վրայ նստած էին հարեւանները եւ ընթրիք էին վայելում։ Նրանց սեղանը լուսաւորուած էր մի տեսակ արեւելեան օտարոտի ճամպայով, որը շինուած էր փայտից եւ բարձր վանդակի ձեւ ունէր, եւ որի մէջ թռչունի փոխարէն՝ վառվում էր մի ճրագ։ Վանդակի վրայ հագցրած էին բարակ կտաւից սպիտակ շապիկ, որ պահպանում էր ճրագը քամու հոսանքից։*

*Սովորութիւնները համարեա միեւնոյնն էին, ինչ որ տեսել էի մեր կողմերում։ Ընթրիք էին անում կտուրների վրայ. սեղանների շուրջը բոլորել էին միայն տղամարդիկը, իսկ կանայք ոտքի վրայ սպասաւորում էին, սպասելով, որ տղամարդիկը վերջացնեն, յետոյ իրանք եւս մի բան ուտեն։ Աղջիկները նոյն կտուրների վրայ անկողիններ էին պատրաստում, իսկ մայրերը ճօճում էին անքուն զաւակների օրօրոցները։ Ա՜խ, որքան քաղցր էր կտուրային այդ բացօթեայ կեանքը... որքան անմոռանալի յիշատակներով կապուած էր նա իմ սրտի հետ... Դէպի բարձր նայում ես, քեզ հովանաւորում է պարզ, աստղազարդ երկինքը, իսկ քո շուրջը տիրում է անսահման, ազատ տարածութիւն, խնկարկուած հազարաւոր բուսականների անուշահոտութեամբ։*

*Մի քանի կտուրներից երգի ձայն էր լսվում, երգում էին ըստ մեծի մասին հոգեւոր երգեր։ Աշխարհիկ երգեր շատ չունի այդ ժողովուրդը, եւ ինչ էլ որ ունի, խիստ տխուր են եւ մելամաղձոտ։ Դա ամենապարզ յատկանիշն է յուսահատ ինքնուրացութեան, — երբ մարդու միտքը, հոգին, բաւականութիւն չը գտնելով աշխարհային վայելչութիւնների մէջ եւ զուրկ լինելով նրա ուրախութիւններից, ձգտում է դէպի հոգեւորը, դէպի երկնայինը։ Տեղ-*

տեղ ածում էին չոնգուրների վրայ։ Այդ ձայները խիստ թախծալի եղանակով հնչում էին գիշերային լռութեան մէջ, որպէս վշտալի սրտի դառն մրմունջներ։ Վանեցու սեղանի երգն անգամ խառն է լինում արտասուքի հետ...

Երկար լսում էի ես։ Երբեմն գիշերային խաղաղութիւնը վրդովվում էր խառնաշփոթ աղաղակներով։ Աղմուկը հետզհետէ սաստկանում էր։ Ահա լսելի եղաւ հրացանի խուլ նետում, եւ իսկոյն տիրեց խորին լռութիւն...

— Էլի կատաղել են անզգամները, — ասաց վարպետը շտապով իմ մօտից անցնելով։ — Առաւօտեան կամ մի երկու սպաննուածներ կունենանք, կամ մի քանի վիրաւորուածներ...

Այնտեղ սպաննում էին, իսկ այստեղ հոգեւոր երգեր էին երգում։

Բայց մեր հիւրընկալը, որպէս երեւում էր, միայն աղօթքով բաւականացող մարդիկներից չէր։ Նա մտաւ սենեակը, դրեց Ալանի մօտ մի շիշ օղի եւ ափսէի մէջ խորոված տարեխ եւ, խլելով սենեակի պատից քարշ ընկած զէնքերից մէկը, կրկին շտապով դուրս եկաւ։

— Ո՞ւր էք գնում, — հարցրեց Ալանը։

— Մեր թաղում աղմուկ կայ, — գնում եմ տեսնելու ինչ է պատահել, — պատասխանեց նա եւ, մի բան մտաբերելով, կանգ առեց շէմքի վրայ։ — Ձեր անունով նամակներ են ստացուած, — ասաց նա, հանելով ծոցից մի ստուար կապոց եւ ձգելով Ալանի մօտ։

Նա վազելով ցած իջաւ սանդուղքներից։

Ալանը լռութեամբ վեր առեց նամակների ծրարները, մօտեցաւ ճրագին եւ սկսեց ուշադրութեամբ կարդալ։ Ես հեռու նստած, հետազօտում էի նրա դէմքի փոփոխակի արտայայտութիւնները։ Նրա սիրտը խռովութեան մէջ էր։

Այն հեզ եւ խաղաղ աչքերը վառվում էին բարկութեան
բոցով։ Նա, որ այնքան զգոյշ էր, կարծես, մոռացաւ իմ
ներկայութիւնը, եւ նամակներից մէկը, դեռ չը վերջացրած,
նետեց յատակի վրայ, եւ ձեռքը յուսահատական կերպով
տարաւ դէպի ճակատը, բռնեց աչքերը։ Ի՞նչ էր պատահել։
Նրա դողդոջուն շրթունքները մեքենաբար արտասանեցին
միայն մի բառ — "Թշուառակա՛ն"... Մի մեծ անյաջողու-
թիւն միայն կարող էր Ալանին այս աստիճան զայրացնել։
Նա կրկին վեր առեց չաւարտած նամակը եւ շարունակեց
կարդալ։ Յետոյ բռնեց ճրագի վրայ եւ բարակ թուղթը մի
վայրկենում մոխիր դարձաւ։ Նա սկսեց կարդալ մնացած
նամակները։ Այժմ նրա դէմքը փոքր ինչ խաղաղ էր։ Բայց
ճակատի վրայ տակաւին նշմարվում էին կնճիռներ։ Երբեմն
նամակը ցած էր դնում եւ իր յիշողութեան տետրակի մէջ
ինչ-որ գրում էր, երբեմն մասների վրայ թուեր էր հաշ-
ւում։ Բայց ինձ զարմացրեց մի բան, երբ նա նամակներից
մէկի վրայ քսեց մի հեղուկ, եւ իսկոյն առաջուայ տողերի
մէջտեղում յայտնուեցան նոր տողեր՝ բաց-կանաչագոյն տա-
ռերով։ Ո՞րտեղ էին թագնուած այդ տառերը։ Ես չը հա-
մարձակուեցայ հարցնել, երբ նկատեցի, որ նա դեռ ոչ բոլո-
րովին հանգստացած էր։

Նամակները կարդալուց յետոյ, նա բոլորը այրեց։ Այժմ
միայն ուշադրութիւն դարձրեց իր մօտ դրած տարեխների եւ
օղիի շիշի վրայ։

— Վանայ տարե՛խ... որքան ընտանիքներ ապրում են
միայն այդ փոքրիկ ձկներով, — բացականչեց նա եւ սկսեց
ուտել։ — Դու չե՞ս սիրում, դարձաւ դէպի ինձ։

Ես ախորժակ չունէի մի բան ուտելու։ Ճանապարհի
յոգնածութիւնից սաստիկ ջարդուած էի։ Հանգիստ եւ եր-
կարատեւ քունը միայն կարող էր փոքր ի շատէ կազդուրել

ինձ։ Բայց Ալանի հոգը չէր. այդ երկաթի մարդը չը գիտէր թէ ի՞նչ է հանգստութիւնը։ Նա անհամբերութեամբ սպասում էր վարպետին։ Շատ չանցաւ, վերադարձաւ նա եւ, տարած զէնքը իր տեղը դնելով, մի քանի անգամ անց ու դարձ արեց սենեակի մէջ, ինքն իրան կրկնելով. — Անտանելի է... անտանելի է... մինչեւ ե՞րբ... համբերութիւններս հատաւ...

— Ի՞նչպէս վերջացաւ ձեր արշաւանքը, — հարցրեց Ալանը ժպտելով։

— Մինչեւ իմ հասնելը՝ ամեն ինչ վերջացած էր, քրդերը իրանց գործը կատարել էին... պատասխանեց նա, լեղակի կարասների մէջ կապոյտ գոյն ստացած ձեռքերը տրորելով եւ միեւնոյն խօսքերը կրկնելով. — Համբերութիւններս հատաւ... էլ համբերութիւն չը մնաց... մինչեւ երբ...

Ալանի մեղմ ժպիտը ծիծաղի փոխուեցաւ։

— “Համբերութիւնը կեանք է„ — այդ խրատը աւանդեցին մեզ մեր պապերը, — ասաց նա, հեգնական կերպով նայելով վարպետի վրայ։

— Այո՛, բայց ամեն համբերութիւն իր չափն ու սահմանն ունի, — պատասխանեց նա, շարունակելով կապոյտ ձեռքերը տրորել։ — Իսկ մեր համբերութիւնը անզգայ դիակների համբերութիւն է, եւ աւելի ոչինչ։

Ալանը այժմ լուրջ դէմք ընդունեց։

— Պատմեցէք, բանը ինչումն էր, — հարցրեց նա։

— Իսկապէս, շատ սովորական մի դէպք. որի նմանը համարեա ամեն օր ամեն գիշեր պատահում է, — պատասխանեց վարպետը, նստելով Ալանի մօտ։ — Այգիներից միրգ էին գողանում։ Թուրք կամ քուրդ գիւղացիները, երբ քաղաքը բան են բերում վաճառելու, գիշերը, դէպի իրանց

գիւղերը վերադառնալու ժամանակ, սովորութիւն ունեն կողոպտելու հայերի այգիները: Դա պէտք է մի առանձին բարութիւն համարել, երբ բաւականանում են միայն պտուղներ գողանալով, բայց այդ անիրաւները կտրատում են եւ ծառերը: Տեսնում ես, ցերեկով լուռ ու մունջ անցնում են այգիների մօտից, նայում են ծառերի վրայ, նկատում են, որ այս ինչ նորահաս կեռասենին, այն ինչ գեղեցիկ տանձենին կարող է ծառայել իրանց կտրած գութանը կամ արօրը նորոգելու, իսկոյն նշան են դնում եւ, գիշերը մտնելով այգին, կտրում են եւ տանում: Տիրոջ տարիներով խնամած ու հասցրած ծառը ոչնչանում է, այգին այլանդակվում է: Իսկ որքան ցաւ է պատճառում այդ դժբախտութիւնը խեղճ այգեգործին: Ես տեսել եմ ընտանիքներ, որոնք, օրերով նստած իրանց սիրելի ծառերի կտրած բուների մօտ, լաց են եղել, սուգ են կատարել, որպէս սպանուած որդու գերեզմանի վրայ:

Պատահած անցքը, որքան վարպետի համար վրդովեցուցիչ էր, նոյնքան Ասլանը սառն կերպով վերաբերուեցաւ: Այդ երկրում կարգից դուրս բան չէր, որ մէկը աշխատասէր է, ծառեր է տնկում, այգի է մշակում, պտուղներ է հասցընում, — իսկ միւսը ծոյլ է, անկիրթ է, սովորել է միայն բռնութեամբ յափշտակել առաջինի աշխատութեան արդիւնքը:

— Փոխանակ իրանք լաց լինելու, լաւ չէ՞ր լինի, որ կտրողներին լացացնէին, — ընդհատեց Ասլանը վարպետի խօսքը:

— Լաւ կը լինէր, — պատասխանեց վարպետը խորին կերպով հոգւոց հանելով: — Բայց այդ դժուար է... շատ դժուար է... նրանց կողմումն է վայրենի ոյժը... նրանց կողմումն է անպատիժ բարբարոսութիւնը... Մեր ձեռքերը

կապել են, իսկ նրանցը բաց թողել… Մեր ձեռքում մի փայտի կտոր անգամ չեն թողել, իսկ նրանք սուր են կրում… Մենք զրկուած ենք անձնապաշտպանութեան ամեն միջոցներից։ Եթէ այգետէրը մի ամենափոքր ընդդիմադրութիւն ցոյց տայ, եւ թոյլ չը տայ, որ իր ծառը կտրեն, հաւատացած եղէք, որ միւս գիշերը կը մտնեն նրա տունը եւ նրա պարանոցը կը կտրեն։ Եւ այս տեսակ չարագործները կը մնան անպատիժ, որովհետեւ այս տեղ հայի գլուխը մի ոչխարի գլխի չափ արժէք չունի։

— Եթէ ամեն հայ իր սենեակում այդպէս զէնքեր ունենար, էլ նրա գլուխը չէին կտրի ոչխարի գլխի նման, — նկատեց Ասլանը։

— Այո՛, եթէ ունենա՛ր… պատասխանեց վարպետը վրդովուած ձայնով։ — Բայց հայը երբ երկու ղուրուշ ունի, միշտ մտածում է այդ բանի վրայ, թէ ինչ գնեմ ու ինչ ծախեմ, որ երկուսը երեք դարձնեմ։ Նա այլ եւս ուրիշ բանի վրայ չէ մտածում։ Եւ կառավարութիւնը սովորել է նրան միշտ այդպէս տեսնել, եւ երբ նրա ձեռքում մի զէնք է նկատում, իսկոյն խլում է ասելով. “այդ քո գործը չէ, դու գնա քո արշինով պարապուիր„… Եւ հայը մնում է, որպէս մի անպաշտպան որս, քրդի եւ տաճկի ձեռքում։ Նրա հունձքի արտերը այրում են, նրա այգիները կտրատում են, եւ տէրը կանգնած, ձեռքերը փակած, միայն բաց աչքերով նայում է ու սիս քաշում…

— Մի՞թէ այդ աստիճան անարդար է կառավարութիւնը, — հարցրի ես։

— Ի՞նչ կառավարութիւն։ Այստեղ կառավարութիւն չը կայ, այստեղ կան միայն կեղեքիչ եւ ինքնակամ կառավարիչներ, որոնք միեւնոյն բարբարոսութիններն են գործ դնում։ Լսեցէք, ես ձեզ կը պատմեմ մի փաստ, որից

կարելի է հասկանալ, թէ ի՜նչ պտուղներ են մեր կառավարիչները։ Մեր քաղաքը վաղուց անտի զինուորանոց չունէր։ Զինուորներին սովորաբար բաժանում էին շրջակայ գիւղերի հայոց տներում, եւ ամեն մի ընտանիք պարտաւոր էր մի քանի զինուորներ պահել։ Կարող էք երեւակայել, թէ ի՜նչ բան է անկարգ բաշիբօզուկը հայ ընտանիքի մէջ։ Նա իրան կատարեալ տան տէր է համարում եւ թոյլ է տալիս ամեն տեսակ կամայականութիւն։ Գիւղացիները, չը կարողանալով համբերել, գիմեցին նահանգապետ փաշային, խոստացան, թէ իրանց ծախքով պատրաստ են քաղաքի մօտ մի զինուորանոց կառուցանել, միայն թէ ազատուին իրանց անկարգ հիւրերից։ Փաշան ընդունեց։ Հաւաքուեցան, խորհեցին, հաշուեցին շէնքի ծախքերը եւ, բաժանելով իրանց մէջ, վճարեցին ամբողջ գումարը։ Փողերի մեծ մասը գլխաւոր կոկորդն անցաւ, եւ վերջը շէնքի բոլոր փայտեղէնները դարձեալ գիւղացիների այգիներից կտրեցին։

— Չրի՞։

— Այո, ձրի։ Եւ մեծ անգթութիւնը նրանումն էր, որ տարայը ծառի տիրոջ ձեռքը տալով եւ, նրա գլխին ծեծելով, հէնց իրան՝ տիրոջն էին ստիպում կտրել իր սիրելի ծառը, որպէս դահիճը հօր ձեռքը տալով, ստիպում են կտրել սիրելի որդու պարանոցը։

— Այս ի՞նչ էին շինում ձեր քաղաքի սրբազան առաջնորդը եւ ձեր էֆէնդի աղաները։ Ի՞նչու ժողովրդի այդ պատուելի ներկայացուցիչները չը բողոքեցին։

— Հէնց այդ էֆէնդի աղաներն էին կտրել տուողները, որովհետեւ, նրանց գլխաւորները կապալով յանձն էին առել շէնքը կառուցանելու։ Իսկ սրբազան առաջնորդը նրանց բարեկամն էր...

— Հիմա ի՞նչ էք կարծում, ո՞վ է մեղաւորը։

— Ի՞նչ հարկէ մերոնք, — մեր ժողովրդի ներկայացուցիչներն, — որ աւելի վնասակար են քան թէ թուրքը ու քուրդը։

Ալանը եւ վարպետը դեռ երկար խօսում էին։ Ես արդէն սկսել էի ձանձրանալ, եթէ չամաչէի, կը պառկէի եւ կը քնէի։ Աչքերս դժուարութեամբ էին բացվում, գլուխս այնքան ծանրացել էր, կարծես, արճիճով լցուած լինէր։ — Ի՛նչ մի առանձին բաւականութիւն են գտնում այդ տեսակ վիճաբանութիւնների մէջ, — մտածում էի ես, — միշտ միեւնոյն խօսքերը, միշտ միեւնոյն դատողութիւնները. մէկը հարստահարուած է, միւսը հարստահարող է. մէկը հալածուած է, միւսը հալածող է, ի՞նչ պէտք է անել, որ նեղեալների դրութիւնը աւելի բարւոքուի, ի՞նչպէս պէտք է թեթեւացնել ճնշուածների ծանր բեռը եւ այլն։ Կարծես, դրանք այն մեծ Աստուածորդու աշակերտներն լինէին, որ հրաւէր կարդաց նեղուած մարդկութեան՝ ասելով. "Եկայք առ իս ամենայն նեղեալք եւ ծանրաբեռնեալք եւ ես հանգուցից զձեզ"։

Ընթրիքի սեղանը, վերջապէս, ազատեց ինձ նրանց խօսակցութիւններից. վիճաբանութեան թելը ընդհատուեցաւ։ Վարպետի տան սպասաւորները նրա գործարանի աշակերտներն էին։ Նրա մօտն մի խումբ զանազան հասակի պատանիներ, իւրաքանչիւրը ձեռքում մի բան բերելով, — մէկը աղ, միւսը հաց, երրորդը գինի, չորրորդը կերակուրներ, — մի խօսքով, ինչ որ պատրաստուած էր, բոլորը միանգամից դրուեցաւ սեղանի վրայ։ Նրանց տեսնելով, ես բոլորովին սթափուեցայ, այլեւս չէի նիրհում, մանաւանդ երբ նկատեցի, որ այդ չարաճճիները մի առանձին հեգնութեամբ էին նայում իմ վրայ։ Մէկը նրանցից մինչեւ անգամ դիտմամբ կոխեց իմ ոտքը։ Բայց ես աւելի պատճառներ ունէի նրանց

վրայ ծիծաղելու։ Բոլորի ձեռքերը, սկսած մատներից մինչեւ արմունկները, կապոյտ գոյն ունէին. կապոյտ գունով ներկուած էին եւ նրանց երեսներն ու քթերը։ Հեշտ բան չէր ներկարարի աշակերտ լինել եւ չը թաթախուիլ ներկերի մէջ։ Բայց ե՞ս... ե՞ս ում աշակերտն էի... իմ ձեռքերն ի՞նչ գունով պիտի ներկուէին... Այդ հարցերը իմ գլխում ծագելու ժամանակ՝ ես ամբողջ մարմնով դողում էի...

Ընթրիքից յետոյ ես խնդրեցի վարպետից, որ ինձ մի տեղ ցոյց տային քնելու։ Նա իսկոյն հրամայեց աշակերտներից մէկին, եւ նա ինձ համար անկողին պատրաստեց միեւնոյն սենեակում, ուր մեզ ընդունել էին։ Տնային բարեկեցութեան գլխաւոր յատկանիշներից մէկը երեւում է անկողնի մաքրութիւնից։ Ես այն տեսակ անկողին չէի տեսել իմ կեանքում։ Գլուխս փափուկ բարձի վրայ դնելը եւ աչքերիս փակուիլը՝ միեւնոյն րոպէում կատարուեցան։

Գիշերուայ կէսին ես զարթեցայ. սաստիկ ծարաւ էի։ Վանայ աղի տարեխը ուտելը հեշտ բան չէ, այն եւս գիշերը։ Բայց մեծ եղաւ իմ զարմանքը, երբ տեսայ, որ Աղանը դեռ քնած չէր։ Նա նստած էր աշտանակի հանդէպ, որի վրայ վառւում էր իւղային ճրագը։ Ինչ-որ գրում էր։

— Այդ ի՞նչ ես գրում, — հարցրի նրանից։

— Նամակները, — պատասխանեց նա։ — Վաղը առաւօտեան մեր թղթատարը մեկնելու է...

Արդեօք դէպի ո՞ր կողմը, արդեօք ո՞ւմ պէտք է նամակ տանէ, — այդ մասին նա ոչինչ չը խօսեց։

— Եթէ Որսորդին գրելու լինես, իմ կողմից ողջունիր, — խնդրեցի նրանից։

— Լաւ, — ասաց նա եւ շարունակեց իր գործը։

Ես նկատեցի, նա չէ ուզում, որ ես նրան խանգարեմ։ Լուռ կացայ։ Քունը փախաւ իմ աչքերից։ Անկողնիս մէջ

պառկած, մի առանձին ապշութեամբ նայում էի Ալանի վրայ: Նա երեւում էր ինձ որպէս մի մարմնացած գործունէութիւն: Բայց ինչ նպատակի համար էր գործում այդ անխոնջ, մշտապտոյտ ոյժը, — ես հասկանալ չէի կարողանում: Փետուրեայ գրիչը երբեմն թղթի վրայ սահում էր, որպէս նրա սրաթռիչ միտքը, իսկ երբեմն նա շարժվում էր դանդաղ, շրջանկատ կերպով, որպէս հեռատես զգուշութիւն: Եթէ ես վեր առնէի այն նամակներից մէկը, անտարակոյս, կարդալ չը պիտի կարողանայի, թէեւ նրանք գրուած էին հայոց տառերով եւ հայերէն լեզուով: Գրելու այդ ձեւը ես յետոյ սովորեցի, — դա պայմանական մի ձեւ է, որ միայն նամակի գրողին եւ ստացողին է յայտնի:

Ալանը գրում էր: Ես շարունակում էի նայել նրա վրայ, եւ միեւնոյն ժամանակ զանազան մտածութիւններ զբաղեցնում էին իմ անփորձ գլուխը: Այդ մտածութիւնները այնքան խառն, այնքան անկապ էին, որ անկարելի էր նրանցից մի որոշ եզրակացութիւն դուրս բերել: Իմ երեւակայութեան մէջ, որպէս անրջական տեսիլքներ, պատկերանում եւ դարձեալ աներեւութանում էին այն փոփոխութիւնները, թէ որքան անգամ եւ որպիսի տարբեր կերպարանքներով այդ խորհրդաւոր երիտասարդը յայտնուել էր ինձ: Երբեմն տեսնում էին նրան արաբական մենարէթում, այն ամայի, մշտալուռ աւերակների մէջ, իր աւազակային խմբով, բոլորած բոցավառ փայտակոյտի շուրջը, անքուն սպասում էին, որ գիշերային խաւարը թանձրանայ, որ ճանապարհների անցուդարձը դադարի, որ մարդիկ հանգստանան խաղաղ քնով, — իսկ իրանք կատարեն մի խաւար գործ... Երբեմն տեսնում էի նրան նոյն աբեղայական կերպարանքով, որպէս երեւաց ինձ „Կաթնաղբիւրի" ձորում: Հանդարտ, չափաւոր քայլերով անցաւ նա իմ մօտից եւ,

իբրեւ մի խաբուսիկ ուրուական, անյայտացաւ ժայռերի մէջ։ Կարծես, եւ այժմ լսում էի նրա այն տխուր, անապատական երգը, որ դուրս կոչեց պառաւ կախարդին փոքրիկ Հիւքրիի հետ տերեւախիտ թուփերի միջից։ Երբեմն տեսնում էի նրան վանեցի մանրավաճառի հագուստով, Եղեգիների իշխանի վրանում։ Գեղեցիկ Թուլթին, վրանի վարագոյրի ետեւից, սիրաբորբոք աչքերով նայում էր նրա վրայ, առանց հասկանալու, որ այդ անգութ, խաւարաբարոյ երիտասարդի սրտում կնոջ սիրոյ համար տեղ չէր մնացել։ Երբեմն տեսնում էի նրան «Գժի» տանը, կարծես, եւ այդ րոպէում ներկայանում էր ինձ այն զայրացած դէմքը, թէ որպիսի խորին վրդովմունքով լսում էր նա բարեսիրտ քահանայի տխուր պատմութիւնները՝ հոգեւոր առաջնորդի անկարգութիւնների մասին։ Իսկ այժմ տեսնում էի նրան մի օտարոտի արհեստաւորի տանը։ Այստեղ նա բժիշկ էր, եւրոպական բարձր ուսում ստացած բժիշկ, եւ ինձ հրամայել էր թագցնել իր հայութիւնը։ Ինչու էր նա փախչում հայ անունից, ինչու էր նա այդպէս, տեղերի եւ հանգամանքների համեմատ, անդադար կերպարանափոխ լինում։ — Ահա այդ գաղտնիքը երկար զբաղեցնում էր իմ միտքը եւ ես մի որոշ եզրակացութեան հասնել չէի կարողանում։

Մի բան, որ աւելի պարզ կերպով նկատում էի, սկսեալ այն օրից, որ ճանապարհորդում էի Ասլանի հետ, այն էր, որ նրա խորհրդաւոր տեսակցութիւնները, ամեն տեղ եւ ամեն դէպքում, այնպիսի անձինքների հետ էին լինում, որոնք բողոքում էին երկրի ընդհանուր անկարգութեան դէմ։ Եւ այդ տարբեր, զանազան ցեղերի պատկանող անձինքների մէջ, կարծես թէ, տարածուած էր մի գաղտնի թել, որ կապում էր բոլորի սրտերը, բոլորի կամքերը միմեանց հետ։ Բայց ում ձեռքումն էր գտնվում այդ թելի

ծայրը, ո՞վ էր դարձնում բոլորի կամքերը դէպի մի որոշ նպատակ, — այդ գաղտնիքը եւ մինչեւ այսօր մնաց ինձ համար անյայտ։ Կարօն, Ալանը, Որսորդը եւ նրանց բոլոր համախոհները մի-մի գործիքներ էին, որ բաղկացնում էին մի բաւականին բաղադրեալ մեքենայի կազմուածքը։ Բայց այն ինչ զօրութիւն էր, որ պտտեցնում էր այդ մեքենան եւ նրան ընթացք եւ ուղղութիւն էր տալիս։ — Դա, որպէս ինձ թւում էր, այն գերագոյն տիրապետող Ոգին էր, որ ինքը գոյութիւն ունի անյայտութեան մէջ, որ իրան պահում է անմատչելի, իսկ իր հզօր, աներեւոյթ ձեռքով կառավարում է մարդկանց սրտերը, մարդկանց մտքերը, եւ նրանց ուղղութիւն է տալիս...

Ալանը վերջացրել էր նամակները. Նա այժմ սկսել էր կնքել ծրարները։ Ճրագի լոյսը խիստ աղօտ կերպով լուսաւորում էր նրա գունաթափ դէմքը։ Նա հագած ունէր մի տեսակ գիշերային խալաթ, եւ սենեակում տիրող տօթի պատճառով, կօճակները թողել էր արձակ։ Շապիկի կիսաբաց օձիքից երբեմն երեւում էր նրա մերկ կուրծքը։ Այն լայն, զօրաւոր կուրծքի վրայ նշմարում էի ես մի ընդարձակ սպի, որը, շատ հաւանական էր, ստացուել էր հրացան գործիքից։ Ես մի առանձին ուշադրութեամբ նայում էի այն նշանի վրայ։ Չը գիտեմ, ինչու վէրքը, սպին միշտ իմ մէջ հետաքրքրութիւն էր զարթեցնում։ Երեւի, նրա համար, որ նա պարունակում էր իր մէջ մարդու կեանքի մի նշանաւոր արկածի յիշատակները։ Գուցէ այդ էր պատճառը, երբ նա ծրարները կողպեց պահարանի մէջ, որ առաւօտեան յանձնէ թղթատարին, եւ երբ մտաւ իր համար պատրաստած անկողինը, ես մտածեցի գոհացնել իմ հետաքրքրութիւնը։ Բայց Ալանը տարօրինակ բնաւորութիւններից մէկն էր։ Երբեմն նա այնքան քաղցր էր, որ, կարծես թէ, շրթունք-

ներից մեղր էր կաթում, իսկ երբեմն այն աստիճան ժանտ էր, որ, կը կարծէիր թէ, աչքերից, երեսից լեղի էր թափում: Այդ րոպէներում լաւ էր չը խօսել նրա հետ: Բայց ես համբերել չը կարողացայ եւ համարձակուեցայ հարցնել, թէ այն ի՞նչ վէրքի նշան է, որ երեւում է նրա կուրծքի վրայ:

— Ինչո՞ւ ես հարցնում, — մաղձոտ կերպով կտրեց իմ խօսքը:

— Այնպէս... ուզում եմ իմանալ...

— Դրանից ի՞նչ օգուտ քեզ:

Ես լուռ կացայ: Նա նկատեց, որ ես վշտացայ, աւելի մեղմ կերպով ասաց ինձ.

— Ոչ ոք իրաւունք չունի ուրիշի գաղտնիքների մէջ մտնել: Եթէ դու հարցնէիր, թէ ի՞նչպէս է կազմուած իմ կուրծքը, ո՞ր կողմումն է գտնվում իմ սիրտը եւ ի՞նչ պաշտօն է կատարում, կամ ո՞րպէս են դասաւորուած իմ թոքերը, — ես բոլորը կը բացատրէի քեզ, որովհետեւ դրանից մի բան կը սովորէիր: Բայց գիտենալ իմ կուրծքի վրայ մի ծուատած տեղի պատմութիւնը, — դա, կարծեմ, մի առանձին օգուտ չի բերի քեզ:

Ես աւելի վիրաւորուեցայ, ասելով.

— Դու միշտ համարել ես ինձ մի երեխայ, մի յիմար եւ տգէտ երեխայ, որի հետ բացի կատակներից, ուրիշ բան չէ կարելի խօսել:

— Ես կատակ չեմ անում: Բայց դու այնքան խելացի էլ չես, որքան կարծում ես...



Բ.

## ՓԱՆՈՍԻ ԳՈՐԾԱՐԱՆԸ

Գիշերը անցուցի անհանգիստ, տենդային դրութեան մէջ։ Առաւօտեան զարթեցայ խիստ ուշ։ Ալանը սենեակումը չէր. չէր երեւում եւ վարպետ Փանոսը։ Ես ինձ բաւական թոյլ էի զգում. մարմինս կոտրատւում էր, իսկ գլխիս մէջ տիրում էր մի տեսակ թմրութիւն, մի տեսակ մառախուղ։ Գիշերուայ բոլոր անցքերը երեւում էին ինձ ինչպէս մի երազ։ Կոկորդիս մէջ ցաւ էի զգում եւ, նայելով հայելու մէջ, տեսնում էի պարանոցիս վրայ բաց-կապտագոյն բծեր։ Ճակատս բուրում էր դեղօրայքի հոտով։ Երեւում էր, գիշերը Ալանը իմ վրայ գործ էր դրել բժշկական միջոցներ։

Վարպետի գործարանի փոքրիկ աշակերտներից մէկը ջուր բերեց, լուացուեցայ, հագնուեցայ եւ դուրս եկայ պատշգամբի վրայ։

Այստեղից բացուեցան իմ առջեւ հրաշալի տեսարաններ. երեւում էին շրջակայ լեռները իրանց գեղեցիկ հովիտներով, երեւում էր քաղաքը իր կրկնակի պարիսպներով ու աշտարակներով, երեւում էին քաղաքի բարձր, սիւնաձեւ մինարէթները եւ հայոց եկեղեցիների գմբէթները. երեւում էր միջնաբերդը իր ահռելի, հսկայական կերպարանքով, — երեւում էր ծովը իր մանիշակագոյն հարթ տարածութեամբ։ Իմ սիրտը տրոփում էր անհամբերութիւնից, թէ ե՞րբ պէտք է մօտից, շատ մօտից տեսնեմ այդ բոլորը։ Գի-

չերով հասած լինելով Այգեստան, ես դեռ ոչինչ չէի տեսել: Իրաւ, գեղեցիկ, շատ գեղեցիկ էր քաղաքի այդ ծառազարդ արուարձանը: Այգիների ծառերը, ծանրաբեռնուած գոյնզգոյն պտուղներով, առաւօտեան լուսով աւելի սքանչելի էին երեւում, քան թէ գիշերը: Արեգակը հսկում էր վերեւից: Այժմ նրա լոյսի երկիւղից գիշերային գողերը դադարել էին կողոպտելուց: Այժմ հերթը հասել էր ցերեկուայ գողերին: Ահա ճնճղուկների ահագին երամը խառնաձայն աղմուկով իջաւ ծիրանի ծառի վրայ: Նրա տերեւախիտ ճիւղերը թեքուեցան այդ փոքրիկ աւազակների ծանրութեան ներքոյ: Ծլվլում են, ոստոստում են եւ ուրախ, յաղթական աղաղակներով, կտցահարում են իրանց քաղցր, հիւթալի աւարը: Հեռուից ճռնչում է այգեպանի ճօճանակը, եւ չարաճճի խումբը միանգամից թողնում է ծառը: Ի՞նչ զանազանութիւն քրդերի եւ այդ անմեղ արարածների մէջ: Երկուսն էլ ապրում են ուրիշի վաստակով: Բայց ճնճղուկները աւելի բարեխիղճ են. դրանք գոնէ չեն ոչնչացնում ծառերը: Այդ համեմատութիւնն էի անում, երբ վերադարձաւ Ասլանը: Նրան տեսնելով, ես մտայ սենեակը:

— Ես չը կամեցայ քեզ զարթեցնել, լաւ է, որ վեր ես կացել, — ասաց նա բժշկի եղանակով, որ մի անծանօթ հիւանդի մօտ այցելութիւն է գործում: — Մօտ եկ, տեսնեմ:

Ես մօտեցայ: Նա սկսեց քննել իմ կոկորդը:

— Փոքր ինչ ուռոյցք է գոյացել, բայց շուտով կանցնի, — ասաց նա, տալով ինձ մի ինչ-որ հեղուկ եւ մի օծանելիք, եւ պատուիրելով, որ առաջինով ներսից ողողեմ կոկորդս, իսկ երկրորդը դրսից քսեմ:

— Այդ քաղաքում բժշկութիւնդ նախ իմ վրայ փորձեցիր, — նկատեցի ես ծիծաղելով:

— Ոչ, այս րոպէիս մի հիւանդի մօտից եմ գալիս, — պատասխանեց նա իր սովորական սառնութեամբ, — բայց խեղճը հազիւ թէ կապրի։

Նա վեր առեց իր եւրոպական լայնեզրեայ գլխարկը եւ հեռացաւ, պատուիրելով ինձ՝ հանգիստ մնալ եւ տնից դուրս չը գալ։ Ես մնացի սենեակի մէջ միայնակ։

Երեւում էր, որ վարպետ Փանոսը տանը չէր, եթէ ոչ նա կը գար ինձ տեսնելու։ Որդու փոխարէն եկաւ մայրը։ Դա այն ճարպիկ, լեզուանի եւ աչքաբաց կանանցից մէկն էր, որ իր ընդունակութիւններով սքօղում է, մոռացութեան է տալիս տղամարդի անունը, եւ ամբողջ զաւակները հասարակութեան մէջ ճանաչւում են միայն մօր անունով։ Նրան կոչում էին Սանամ, եւ վարպետ Փանոսը մօր անունով կոչվում էր Սանամի տղայ։

Նա մօտեցաւ ինձ այդ խօսքերով.

— Լսեցի, հիւանդ ես, որդի, ո՞ր տեղդ է ցաւում, որդի, ասում են, կոկորդդ ուռել է, սուրբ Տիրամայրը փարատութիւն տայ։ Ես հիմայ կը լաւացնեմ, մի վախիր. հէնց որ մատս դնեմ, մի քիչ հուփ տամ, Աստուծոյ շնորհիւը կը լաւանայ։ Անցեալ օրը մեր հարեւանի տղան էլ այսպէս էր, հէնց որ ձեռքս դիպաւ, իսկոյն լաւացաւ։

Պառաւն էլ ուզում էր նորից խեղդել ինձ։ Ես, ի հարկէ, քաղաքավարութեամբ մերժեցի նրա բժշկական հնարները, յայտնելով, որ բոլորովին առողջ եմ զգում ինձ։ Բայց նա դարձեալ չը հանգստացաւ, զգուշացնելով ինձ, թէ քաղաքում "կապոյտ հաղ„ կայ, շատերի կոկորդը ուռչում է, շատերը մեռնում են, եւ միայն չափահասները ազատվում են այդ "պատուհասից„, իսկ երեխաների մէջ մեծ կոտորած է պատճառում։ — Այսու ամենայնիւ, — վերջացրեց նա իր խրատները, — զգուշութիւնը լաւ

բան է, — եւ խորհուրդ տուեց այցելել իր որդու գործարանը։

Ես զարմանում էի, ի՞նչ փրկարար ազդեցութիւն կարող էր ունենալ ներկարարի գործարանը "կապոյտ հաղէ„ կամ իմ կոկորդի ուռուցքի վրայ։ Այդ մասին պառաւը ոչինչ չը բացատրեց ինձ։ Իսկ ես հետեւեցի նրա խրատին, միայն այն մտքով, որ առիթ ունենամ տեսնելու գործարանը։

Երբ պառաւի հետ ցած իջանք սանդուղքներից, բակում մեզ հանդիպեց վարպետ Փանոսի կինը։ Նրա երեխաները — մինը տղայ միւսը աղջիկ — մօր փէշից բռնած, տրտնջում էին եւ ինչ-որ ուզում էին։ Ինձ տեսնելով, երկուսն էլ շնորհալի դէմք ընդունեցին։ Որքան գեղեցիկ էին այդ մի զոյգ հրեշտակները, կայտառ, առողջ եւ մաքուր։ Երեխայի մաքրութիւնից կարելի է գաղափար կազմել եւ մօր մաքրասիրութեան մասին։ Վարպետի երրորդ որդին, բոլորից մեծը, գրքերը թեւի տակ առած, տանից դուրս էր գնում։ Երեւի, գնում էր մի տեղ սովորելու։ Երբ նա հեռացաւ, երկու փոքրիկները նորից սկսեցին տրտնջալ։

Նրանց մայրը մօտեցաւ ինձ եւ գլխով լռութեամբ ողջունեց։ Նա թէեւ չը խօսեց իմ հետ, բայց իմ հասակին նայելով, երեսը չը ծածկեց։ Ճակատը զարդարած էր ոսկիներով, իսկ պարանոցը եւ կուրծքը՝ մարջանի խոշոր շարքերով։ Այդ բոլորը մի առանձին փայլ էր տալիս նրա սիրուն, համակրական դէմքին։ Ժիր տանտիկնոջ յատուկ սովորութեամբ՝ նա իր բաւական նուրբ գործուածներից պատրաստուած զգեստների վրայ հագել էր լայն, երկար, կարմիր շապիկ, որ իջնում էր մինչեւ ոտները։ Այդ հագնում են գործի ժամանակ, որ միւս հագուստները չը կեղտոտուին։

— Ինչո՞ւ չես խօսում, — հարսին իրաւունք տուեց պառաւ սկեսուրը, — դա էլ քո եղբայրն է։

Հարսի բերանը դարձեալ չը բացուեցաւ, որովհետեւ քաղաքավարութիւնը պահանջում էր, որ ես սկսէի խօսակցութիւնը։ Բայց ես կին տեսած չը լինելով, կանանց հետ խօսելու ամենեւին շնորհք չունէի։ Որոնում էի մի բան ասելու համար։ Երեխաների տրտունջը ազատեց ինձ, նիւթ տուեց իմ խօսակցութեանը։ Ես հարցրի.

— Ինչո՞ւ են տրտնջում դրանք։

— Ուզում են եղբօր հետ գնալ։

— Վարդապե՞տ։

— Ի՜նչ կարգացող պտուղներ են. կը գնան այն տեղ, կը խաղան, եղբօրն էլ կը խանգարեն, վարժապետին էլ։

— Ո՞վ է վարժապետը։

— Տէր Եղիշէն։

Նա դպրոց ունի՞։

— Ունէր, բայց փակեցին... Այժմ, այնպէս, իմ որդու եւ մի քանի բարեկամների մանուկների հետ օրեկան մի քանի ժամ պարապվում է։

Իմ խօսակցութեան պաշարը սպառուեցաւ։ Մտածեցի հարցնել երեխաների անունները։

— Ի՞նչպէս է մեծի անունը։

— Հայկ։

— Փոքրի՞նը։

— Արամ։

— Իսկ այդ սիրուն աղջկա՞նը։

— Շամիրամ։

— Պատմական անուններ են, — նկատեցի ես, ինքս էլ զարմանալով իմ գիւտի վրայ։

— Թագաւորների անուններ են, — աւելացրեց պառաւը։ — Որդիս շատ անգամ պատմում է երեխաներին այդ Թագաւորների գործերը, ասում է, որ ամեն մէկը պէտք է գիտենայ, թէ ով էր իր անուան տէրը։

Տիկինը, ինչպէս երեւում էր, շտապում էր։ Առաւօտ էր. տնային գործերը կոչում էին նրան։ Մեր թեթեւ խօսակցութիւնը նա աւելի գործնականի փոխեց, ասելով, որ ճանապարհից ու հեռու տեղից ենք եկել, խնդրեց, որ մեր սպիտակեղէնները, թէ իմը եւ թէ Աղանինը, ուղարկեմ, որ լուանալ տայ, որովհետեւ տանը այդ օրը լուացք էին լուանալու, եւ աւելացրեց, եթէ կարկատելու մի բան կայ, նոյնպէս ուղարկեմ։

— Ձեր տունն է, եղբայր, — ասաց նա, — մի ամաչէք, ինչ որ պէտք ունէք, կարող էք պահանջել, որպէս ձեր մօրից եւ քոյրից։

Ես շնորհակալութիւն յայտնեցի։ Նա հեռացաւ։ Երեխաները այժմ հանգիստ էին։ Նրանք կարծես, մոռացան մեծ եղբօրը, եւ երկուսն էլ ուրախանալով վազեցին կատուի փոքրիկ ձագի ետեւից, որ նոյնպէս վազվզում էր բակում։ “Դրանք էլ են սիրում Վանայ կատուներին, որոնց աչքերը կայծեր են արձակում„ — մտածեցի ես։

Թէ մեր կողմերում, թէ այստեղ, հիւրի համար մի առանձին յարգանքի եւ մտերմութեան նշան է համարւում, երբ տանտէրը ցոյց է տալիս իւր տնային տնտեսութիւնը։ Այդ պատճառով ես սիրով ընդունեցի պառաւի առաջարկութիւնը, երբ նա հրաւիրեց տեսնելու իրանց տնտեսութիւնը։ Նախ տարաւ ինձ մառանը։ Դա մի ստորերկրեայ ներքնատուն էր, որ ամառնային սաստիկ տօթի ժամանակ եւս պահպանում էր իր մէջ խիստ ախորժելի զովութիւն։ Այստեղ, մի կողմում, կիսով չափ յատակի մէջ թա-

ղուած, մինը միւսի մօտ շարուած էին գինու կարասները։ — Այդ բոլորը մեր այգիներից է, — ասաց պառաւը անմեղ պարծենկոտութեամբ։ Միւս կողմում, զանազան փոքրիկ թակոյկների (տուճիկ) մէջ կարգով դրուած էին՝ իւղ, պանիր, մեղր, աղ դրած տարեխ եւ զանազան տեսակ թթուներ խաղողից, բոխիից եւ պէսպէս մրգերից ու բանջարներից։ Ես առաջին անգամ տեսնում էի այսպիսի լիութիւն։

— Այդ բոլորը ո՞վ պիտի ուտէ, — հարցրի ես զարմանալով։

— Մենք էլ կուտենք, ուրիշներն էլ կուտեն, — պատասխանեց պառաւը բարեսիրտ ծիծաղով։ — Աստուած խօ բոլորը միայն մեզ չէ տուել. նա տուել է, որ մենք էլ չունեցողների համար բաժին հանենք։

— Գնե՞լ էք այդ ամենը։

— Ոչինչ չենք գնել։ Բոլորը մեր տանից է. իւղը, պանիրը ստացել ենք մեր կովերից ու ոչխարներից. մեղրը մեր մեղուներից, միւսներն նոյնպէս մեր բերքերից ենք ստացել։ Պատահում է, որ երբեմն քրդերը մեզ համար իւղ, պանիր, չորաթան ընծայ են բերում, բայց մենք նրանց բերածը չենք ուտում, տալիս ենք վաճառելու։

Ես իսկոյն յիշեցի, որ այդ սովորութիւնը Պարսկաստանի հայոց մէջ էլ կար, մանաւանդ կանանց մէջ, որ «թրքաղէն» է ասելով, մահմեդականների թէ մորթած միսը եւ թէ այլ ուտեստները պիղծ կը համարէին եւ չէին գործ ածի, ինչպէս, փոխադարձապէս, մահմեդականները հայերի պատրաստած ուտեստների վերաբերութեամբ նոյն կարծիքն ունէին։

Յետոյ մտանք ամբարը, որ մի ցամաք շինուածք էր, եւ ամեն կողմից օդը համարձակ անցուդարձ էր անում։

Այստեղ ահագին, քառանկիւնի փեթակները լի էին ցորենով եւ ալիւրով։ Մեծ եւ փոքր խաբարների ու ջուալների մէջ դրած էին զանազան տեսակ ընդեղէններ՝ բրինձ, ձաւար, կորկոտ, մաշ, բակլայ, սիսեռ, ոսպ եւ այլն։ Դրանք պահոց օրերի համար էին։

— Բացի բրինձից, — ասաց պառաւը, — մնացած բոլորը մեր մշակութիւններից ենք ստացել։ Բրինձի մշակութիւնը այստեղ չէ յաջողվում, եւ այնքան էլ ջուր չը կայ. սառում են, որ նա ջուր շատ է սիրում։

Պառաւը երկրագործութիւնից նոյնպէս տեղեկութիւն ունէր։

Ցետոյ անցանք թոնրատունը։ Այստեղ հաց էին թխում, կերակուրներ էին եփում։ Աղախինների եւ սպասաւորների մի ամբողջ խումբ աշխատում էր, կարծես, մի մեծ բանակ պէտք է կերակրէին։ Բոլորի վրայ հսկում էր, բոլորին կառավարում էր վարպետի կինը։ Ես զարմանում էի, թէ ինչպէս նրա պառաւ սկեսուրը իր իրաւունքները տուել էր նրան։ Մեր կողմերում այս տեսակ առանձնաշնորհութիւններ խիստ հազիւ էին պատահում ընտանիքների մէջ։ Քանի որ պառաւ սկեսուրը դեռ կենդանի էր, հարսը ձայն չունէր տնային տնտեսութեան մէջ։

Թոնրատունը, դէպի բակի կողմը դարձրած երեսը բաց, խսկ երեք կողմից ծածկուած, մի ընդարձակ սրահ էր, որ յարմարեցրած էր ամառուայ կեցութեան համար։ Այստեղից մտանք հացատունը։ Կարելի է ասել, որ վարպետ Փանոսի կահ-կարասիքը եւ տնային հարստութեան մեծ մասը այստեղ էր տեղաւորած։ Մինը միւսի վրայ ծալած դարսած էին գեղեցիկ կապերտներ, գորգեր, սփռոցներ եւ նախշուն թաղիքներ։ Պղնձեայ մեծ եւ փոքր կաթսաները, սնիները, թասերը, մաքուր, նոր կլայեկած, աչք էին շլացնում։ Այս-

տեղ եւս անկողինները, իրանց բոլոր պարագաներով կապած, կարգով դարսած էին ծալքերի վրայ։ Ո՞ւմ համար, — վարպետ Փանոսի ընտանիքը շատ փոքր էր այդքանի համար։ Պառաւը փարատեց իմ մտատանջութիւնը, ասելով.

— Պատահել են ուրախութեան հացկերոյթներ, կնունք ենք ունեցել կամ մկրտութիւն. պատահել է, որ սուգ ենք ունեցել, մեռելահաց ենք տուել. հարիւր հոգուց աւելի մեր սեղանի վրայ նստած են եղել։ Բայց երբէք չի պատահել, որ մի դգալ անգամ հարեւանից փոխ առած լինէինք։ Ամեն ինչ մեր տանը պատրաստ ունեցել ենք, եւ ամօթ ենք համարել ուրիշից բան խնդրել։ Մարդս մեռնելուց յետոյ, ես շատ խղճութիւն կրեցի. բայց այն ժամանակ եւս իմ աշխատանքով էի ապրում։ Իսկ երբ որդիս մեծացաւ, Աստուծոյ ողորմութեամբ, հօր դատարկուած տունը նորից լցրեց։ Հիմայ շատերը, որոնք առաջ ծիծաղում էին մեզ վրայ եւ մարդի տեղ չէին դնում, — հիմայ նախանձում են։

Պառաւի խօսքերը եւ այն բոլորը, որ ես տեսայ, իմ մէջ զարթեցրին և՛ ուրախ և՛ տխուր մտածութիւններ։ Ուրախալի էր ինձ տեսնել հայկական մի ճոխ տուն, Աստուծոյ բոլոր բարիքներով լի, ուր ամենքը ուրախ եւ գոհ, վայելում էին անսպառ բախտաւորութիւն։ Իսկ նրա շուրջը բազմաթիւ ընտանիքներ հեծում էին աղքատութեան մէջ։ Ի՞նչ էր դրա պատճառը։ Ես համոզուած էի, որ թողեալ արտաքին հանգամանքները, որոնք փութացնում էին տիրող աղքատութիւնը, — գլխաւոր եւ բուն պատճառը պէտք էր որոնել իրանց՝ աղքատների մէջ։ Ես յետոյ առիթ ունեցայ մօտից, շատ մօտից շօշափել այդ պատճառները։ Այդ դուք կը տեսնէք իմ պատմութեան ընթացքում։ Բայց աւելի համոզուեցայ իմ կարծիքների մէջ, երբ տեսայ վարպետ Փանոսի գործարանը։

Պառաւի առաջնորդութեամբ ես մտայ մի երկարաձեւ շինուածքի մէջ, ուր զետեղուած էր գործարանը։ Այստեղ մինը միւսի մօտ շարուած էին ներկի կարասները։ Ներկում էին ամեն գոյներով, առաւելապէս լեղակի գոյնով։ Գիւղացիները բերել էին զանազան տեսակ տնային գործուածներ, որպիսիք են՝ կտաւ, շալ, բամբակեայ կամ բրդեայ թելեր եւ այլն։ Յաճախորդների մէջ կային զանազան ազգերից եւ զանազան լեզուներից, — հայ, թուրք, քուրդ, ասորի եւ ուրիշները։ Վճարների հատուցումները կատարվում էին ըստ մեծի մասին երկրագործական եւ անասնապահական բերքերով. փողի փոխարէն տալիս էին իւղ, պանիր, ցորեան, բուրդ, մորթիք եւ այլն։ Այդ էր պատճառը, որ գործարանատէրը ստիպուած էր քաղաքում մի խանութպանի հետ ընկեր լինել, որպէս զի վաճառուեն այդ մթերքները։ Ոմանք ոչինչ չէին վճարում։

Աշխատանքը եռ էր գալիս ժրաջան բանուորների ձեռքում։ Փոքրիկ եւ մեծ աշակերտները, հագուստով ու մարմնով թաթախուած ներկերի մէջ, վժվժում էին այս կողմ ու այն կողմ։ Կապոյտ լեղակը ամենի ձեռքերի եւ դէմքի վրայ թողել էր իր թախծալի գոյնը։ Կապոյտ էին գործարանի փայտեայ սիւները, կապոյտ էին առաստաղը, յատակը եւ կաւով ծեփած պատերը, կապոյտ էին երկայն փայտեայ ձողերը, որոնց վրայ չորացնելու համար կախ էին տուած ներկուած կտաւները։ Կապտագոյն էր եւ լոյսը, որ ներս էր թափանցել գործարանի նեղ պատուհաններից։

Բայց իմ ուշադրութիւնը գրաւեց մի այլ բան. գործարանի փոխ-վարպետը, մի երեխայ գրկում բռնած, լռութեամբ մօտեցաւ լեղակի կարասին։ Կարասը հէնց նոր էին խառնել եւ մոյգ-լըջագոյն փրփուրը դեռ դիզուած էր նրա բերանի վրայ։ Նա երեք անգամ պտտացրեց երեխային կա-

բասի շուրջը, յետոյ խորհրդաւոր կերպով մատը թաթախեց փրփուրի մէջ եւ նրանով խաչաձեւ օծեց երեխայի կոկորդը: Պառաւ դայեակը, որ կանգնած էր այնտեղ եւ երկիւղածութեամբ նայում էր այդ գործողութեան վրայ, ընդունեց փոխ-վարպետի ձեռքից երեխային, նրա բժշկութիւնը վարձատրելով մի կապտագոյն աքաղաղով, որ բերել էր իւր հետ:

— Այդ երեխան կապոյտ հազ ունի, — ասաց վարպետ Փանոսի մայրը, որ կանգնած էր իմ մօտ, եւ խորհուրդ տուեց, որ նոյն գործողութիւնը եւ իմ կոկորդի վրայ կատարել տամ:

Շատ չանցաւ, սովորական ժպիտը երեսին, ներս մտաւ վարպետ Փանոսը: Նրա յայտնուիլը այն ազդեցութիւնը չը գործեց, ինչպէս առհասարակ լինում է վարպետի ներկայութեան ժամանակ. — անգործը գործի է դիմում, աղաղակները լռում են, կրկին տիրում է կարգը, — ոչ, այլ կարգը պահպանուած էր եւ նրա բացակայութեան ժամանակ: Նրա մէջ չէր երեւում ոչ հպարտ գործատիրոջ խստութիւնը եւ ոչ արեւելեան վարպետի կոպիտ տիրասիրութիւնը. — այլ մի պարզ, մտերմական կապ միացնում էր ստորադրեալներին իրանց գլխաւորի հետ: Նա գործունեայ մարդու յատուկ աչալրջութեամբ մօտեցաւ կարասներին, նայեց նոր ներկած կտաւներին ու շալերին, մի քանի բաներ հարցրեց, մի քանի պատուէրներ տուեց եւ հեռացաւ: Նրա մի հայեացքը բաւական էր գիտնալու համար, թէ որտեղ ինչ էր պակաս, եւ որտեղ ինչ պէտք էր անել: Յետոյ նա դարձաւ դէպի յաճախորդները. մօտենում էր ամեն մէկին, բարեւում էր, հարցնում էր նրանց առողջութիւնը, հետաքրքրվում էր նրանց դրութեամբ, թէ ինչպէս է հացի բերքը, առո՞ղջ են նրանց անասունները, առո՞ղջ են նրանց

հայրը, մայրը, կանայքը, զաւակները եւ այլն։ Բոլորի անուն-
ները գիտէր. բոլորի մասին հարցմունքներ էր անում։

Ինչ որ աւելի աչքի էր զարկում, — այդ էր՝ յաճախորդների չափազանց ընտանիութիւնը, թէ՛ վարպետ Փանոսի եւ թէ՛ նրա տան հետ։ Մի քուրդ մօտեցաւ նրա մօրը, խնդրեց, որ իր անթարխի պատռուած թեւքը կարել տայ։ Մի այլ քուրդ մի զոյգ կենդանի կաքաւներ էր բերել վարպետի փոքրիկ երեխաների համար։ Ես զարմանում էի. ի՞նչ էր պատճառը, այդ մարդը, որ գիշերը Ալանի հետ այնքան դառնութեամբ էր խօսում քուրդերի մասին, այժմ այդպէս բարեկամաբար ողջագուրում էր նրանց։ Մի՞թէ դա մի տեսակ կեղծաւորութիւն էր նրա կողմից. մի՞թէ շահեկան նպատակները ստիպում էին նրան շողոքորթել իր յաճախորդներին։ Ոչ, վարպետ Փանոսը ոչ կեղծաւոր եւ ոչ շահասէր մարդ էր։ Նա առհասարակ սիրում էր բարեկամական յարաբերութիւններ պահպանել ամեն տեսակ մարդկանց հետ, մանաւանդ գիւղացիների հետ։

Վարպետ Փանոսի տունը մի տեսակ հիւրանոց էր այդ ամեն կողմից եկած, խառնիճաղանճ բազմութեան համար։ Ես նրա գործարանը համեմատում էի իմ քեռիների զինագործութեան գործարանի հետ։ Բայց այնտեղ բոլորովին ուրիշ բան էր. այնտեղ գլխաւորապէս դեր էր խաղում շահը։ Յաճախորդներից ոմանք, որոնք հեռու տեղերից էին եկած, իրանց գրաստները կապել էին վարպետի ախոռատանը. այնտեղ նրանց համար թէ՛ սնունդ եւ թէ՛ խնամք պակաս չէր։ Գրաստների տէրերը իրանք եւս գիշերում էին ախոռատանը կից առանձին բնակարանում եւ վարպետի խոհարանից կերակուր էին ստանում։ Ոմանք իրանց գիւղերից բերած մթերքները տեղաւորել էին նրա տանը. այստեղից տանում էին բազարը, վաճառում էին եւ փոխարէնը, ինչ որ գնելիք

ունէին, առնում էին ու բերում, նոյնպէս գնում էին նրա տանը: Կարծես, այստեղ մի տեսակ մթերանոց լինէր նրանց համար: Նրանք այնքան ժամանակ հիւրասիրութիւն էին վայելում, մինչեւ գործները վերջացնում էին, յետոյ շնորհակալութեամբ գնում էին իրանց տեղերը:

Երբ որ պատահում էր վարպետ Փանոսին գնալ քըրդերի “օրաները„, նա նոյն յարգանքը եւ սիրալի հիւրասիրութիւնն էր վայելում նրանց վրաններում: Օրերով, շաբաթներով, ամիսներով պահում էին իրանց մօտ, մի ընտանիքի վրանից միւս ընտանիքի վրանն էին հրաւիրում, ուտեցնում էին, խմեցնում էին, յետոյ զանազան պարգեւներով ճանապարհ էին դնում: Մէկը ընծայում էր մի գեղեցիկ ձի, միւսը մի թանձր թաղիք, կամ կապերտ, երրորդը մի քանի ոչխարներ “ղաւուրմայի„ համար, չորրորդը մի տիկ պանիր, իւղ, մեղր եւ այլն:

Զարմանալի էր այդ եռանդոտ եւ վերին աստիճանի բանիմաց մարդու բարոյական ազդեցութիւնը քրդերի վրայ: Քրդերի զանազան ցեղերի մէջ, ուր նրա անունը յայտնի էր, ուր ճանաչում էին նրան, — նա համարեա թէ պաշտելի էր: Լինում էին կռիւներ քրդերի մէջ, թշնամութիւն, արեան վրէժխնդրութիւն, բաւական էր, որ վարպետ Փանոսը յայտնուէր նրանց մէջ, եւ մի երկու խօսք ասէր, իսկոյն կը տիրէր խաղաղութիւն: Շատ անգամ իրանք, քրդերը, փոխանակ իրանց շէյխերին դիմելու, հրաւիրում էին նրան վճռելու իրանց մէջ ծագած այս եւ այն վէճերը: Նա այն աստիճան հեղինակութիւն էր վայելում, որ ամենադժուարին խնդիրներում անգամ, կարող էր մի քանի խօսքով հաշտութիւն կայացնել:

Վարպետ Փանոսի բարեկամութիւնը քրդերի հետ ոչ սակաւ օգուտ էր բերում հայ գիւղացիներին: Ինձ պատմում

էին այսպիսի դէպքեր. պատահում էր, որ հայ գիւղացիներից մէկի կովը, եզը կամ ոչխարները գողանում էին քրդերը. բաւական էր, որ գիւղացին գիտենար, թէ իր անասունները որ ցեղի մէջ են տարել, կամ ով է իր գողը։ Նա այլ եւս փաշային կամ մուֆթիին չէր դիմում գանգատուելու, ուղղակի գալիս էր վարպետ Փանոսի մօտ, յայտնում էր իր հետ պատահած անցքը։ Վարպետը ուղարկում էր նրան նոյն ցեղի ցեղապետի մօտ, ուր տարել էին կողոպուտը։ Գիւղացին գնում էր, ներկայանում էր ցեղապետին այսպիսի խօսքերով. "Իմ այս եւ այն անասունները գողացել են, ասում են, որ ձեր "էլի" մէջն են բերել. ինձ ուղարկեց ձեր սպասին վարպետ Փանոսը, խնդրեց, որ գտնուի կողոպուտը"։ Եթէ, իրաւ, գողացուած անասունները այնտեղ էին տարուած, իսկոյն գտնում էին եւ յանձնում տիրոջը, իսկ եթէ տէրը սխալուել էր, նրան ցոյց էին տալիս կողոպուտի տեղը։ (Քրդերի մէջ ոչ մի գողութիւն գաղտնի չէ մնում)։ Տէրը յայտնվում էր ցոյց տուած տեղը, դարձեալ միեւնոյն խօսքերով, եւ յետ էր ստանում իր կորուստը։

Այսպիսի դէպքերում վարպետ Փանոսը նամակ չէր գրում, այլ ամէն յանձնարարութիւն կատարվում էր բերանացի պատուէրներով։ Բայց որպէս զի հաւատային, որ ներկայացողը իսկապէս նրա կողմից էր ուղարկուած, նա սովորաբար տալիս էր նրա ձեռքը մի որեւիցէ նշան, օրինակ, իր դանակը, "տէր-ողորմեան", մօրուքի սանդրը, վերջապէս մի բան, որ տանողը ցոյց էր տալիս, ասելով. "այդ էլ վարպետի նշանն է"։

Երբ ճանապարհների վրայ քրդերը պատահէին մի հայ գիւղացու, բաւական էր, որ նա ասէր, թէ ես վարպետ Փանոսի մարդն եմ, այլ եւս նրան չէին դիպչի։ Ի հարկէ, այդ բոլոր յարգանքները վայելում էր վարպետը այն ցեղերի կող-

մից, որոնց հետ նա բարեկամական յարաբերութիւնների մէջ էր, իսկ թշնամի ցեղերը, ոչ միայն հայերին, այլ նոյն իսկ քրդերին կը կողոպտէին, եթէ նրանք օտար ցեղի էին պատկանում։ Գողութիւնը, յափշտակութիւնը, կողոպուտը քրդերի համար ապրուստի սովորական միջոցներից մէկն է։

Մի անգամ ես հարցրի վարպետ Փանոսից։

— Ի՞նչ միտք ունի քո այդքան բարեկամութիւնը քրդերի հետ, որոնց այդքան ատում ես։

Նա պատասխանեց հայկական առածով.

— «Շան հետ բարեկամացիր, բայց փայտը ձեռքումդ պատրաստ պահիր»...

Վարպետ Փանոսը կարդացած մարդ էր. հայոց հին գրականութիւնը նա բաւական լաւ ուսումնասիրած էր. Եղիշէից, Թովմա Արծրունուց նա ամբողջ գլուխներ անգիր գիտէր. իսկ Խորենացու հետ այնքան ծանօթ էր, որպէս մի հմուտ քարոզիչ, որ գիտէ, թէ Աւետարանի այս ինչ գլխի այն ինչ համարում ինչ է ասուած։ Նրա մանկութեան օրերում յայտնի էր Ղազար վարդապետ «սքանչելագործը»։ Այդ տարապայման աբեղան ոչ մի վանական միաբանութեան հետ չը հաշտուեցաւ, — կամ աւելի ճիշտ կը լինէր ասել՝ միաբանութիւնները նրա հետ չը հաշտուեցան, այդ պատճառով առանձնացաւ իր տանը եւ, մի քանի մանուկներ հաւաքած իր շուրջը, սկսեց պարապել նրանց կրթութեամբ։ Այդ աշակերտներից մէկն էր պատանի Փանոսը, եւ յառաջադէմ աշակերտներից։ Վարժապետը նրան շատ էր սիրում եւ շատ անգամ խրատում էր, որ վարդապետ չը դառնայ։ Այդ ժամանակ ուսում առնում էին միայն հոգեւորական դառնալու նպատակով։ — Պատանի Փանոսի հայրը վաղուց մեռած լինելով, նրա վարժապետը առանձին հոգ էր տանում նրա ապագայի համար, նշմարելով նրա մէջ բաւական հարուստ

ընդունակութիւններ։ Իր վարժապետի խորհրդով Փանոսը մտաւ մի ներկարարի գործարան։ "Ի՞նչ որ ինձ մօտ սովորեցար, այդքանը բաւական է մի արհեստաւորի համար, — ասաց բարեսիրտ վարժապետը, երբ ճանապարհ դրեց նրան իր դպրոցից. — հիմայ գնա արհեստ սովորիր, որ քեզ հաց տայ„...

Ներկարարի գործարանում Փանոսը նոյն յաջողութիւնը ունեցաւ, որպէս իր վարժապետի փոքրիկ դպրոցում։ Իր ընդարձակ ընդունակութիւնների համար՝ այստեղ աւելի լայն ասպարէզ գտաւ, եւ մի քանի տարուց յետոյ աշկերտից դարձաւ փոխ-վարպետ եւ մի նոր փայլ տուեց իր վարպետի գործարանին։ Այդ տեսնելով, վարպետը շատ անգամ առաջարկում էր նրան ընկերանալ իր հետ, բայց Փանոսը միշտ շնորհակալութեամբ մերժում էր։ Երբ նա փոքր ի շատէ գումար ձեռք ձգեց, հիմնեց իր համար մի փոքրիկ գործարան, որը հետզհետէ ընդարձակելով, այն կատարելագործութեանը հասցրեց, որպէս մենք տեսանք։

Մի եւ նոյն տարում, երբ Փանոսը թողեց դպրոցը, նրա վարժապետի հետ պատահեց մի դժբախտութիւն։ Նա սովորութիւն ունէր ամառը աշակերտներին տանել ծովեզր լողանալու։ Այդ միջոցին աշակերտներից մէկը խեղդուեցաւ։ Նրա ծնողները թէեւ բոլորովին ներողամտութեամբ վերաբերուեցան դէպի անզգոյշ վարժապետը, բայց կորուստը այնքան ծանր էր վարդապետի զգայուն սրտի համար, որ նա ոչնչով չէր կարողանում մխիթարել իրան։ Իր ցաւերը մոռացութեան տալու համար, նա մտածեց ընտրել մի նոր եւ ամենադժուարին պարապմունք, որի մէջ կեանքը ենթակայ լինէր անընդհատ վտանգների, եւ որը աւելի բախտաւորութիւն կը պատճառէր նրան, եթէ կը վերջանար մահուամբ։ Այդ նպատակով նա ցրուեց իր աշակերտներին եւ անյայտա-

[redacted]



ցաւ։ Նրա մասին շատ բաներ էին պատմում. ասում էին, որ քուրդ վայրենիների մէջ հայոց տառեր եւ քրիստոնէութիւն է տարածում, հրաշքներ է գործում, լուսաւորչական եկեղեցի է հիմնում եւ բաւական հետեւողներ ունի։ Բայց թէ ո՞րտեղ էր այդ Նոր առաքեալը եւ ո՞ր երկրում, — ոչ ոք չը գիտէր, միայն խօսվում էր, թէ դեռ կենդանի է։



ընդունակութիւններ։ Իր վարժապետի խորհրդով Փանոսը մտաւ մի ներկարարի գործարան։ «Ի՞նչ որ ինձ մօտ սովորեցար, այդքանը բաւական է մի արհեստաւորի համար, — ասաց բարեսիրտ վարժապետը, երբ ճանապարհ դրեց նրան իր դպրոցից, — հիմայ գնա արհեստ սովորիր, որ քեզ հաց տայ»...

Ներկարարի գործարանում Փանոսը նոյն յաջողութիւնը ունեցաւ, որպէս իր վարժապետի փոքրիկ դպրոցում։ Իր ընդարձակ ընդունակութիւնների համար՝ այստեղ աւելի լայն ասպարէզ գտաւ, եւ մի քանի տարուց յետոյ աշակերտից դարձաւ փոխ-վարպետ եւ մի նոր փայլ տուեց իր վարպետի գործարանին։ Այդ տեսնելով, վարպետը շատ անգամ առաջարկում էր նրան ընկերանալ իր հետ, բայց Փանոսը միշտ շնորհակալութեամբ մերժում էր։ Երբ նա փոքր ի շատէ գումար ձեռք ձգեց, հիմնեց իր համար մի փոքրիկ գործարան, որը հետզհետէ ընդարձակելով, այն կատարելագործութեանը հասցրեց, որպէս մենք տեսանք։

Մի եւ նոյն տարում, երբ Փանոսը թողեց դպրոցը, նրա վարժապետի հետ պատահեց մի դժբախտութիւն։ Նա սովորութիւն ունէր ամառը աշակերտներին տանել ծովեզրը լողանալու։ Այդ միջոցին աշակերտներից մէկը խեղդուեցաւ։ Նրա ծնողները թէեւ բոլորովին ներողամտութեամբ վերաբերուեցան դէպի անզգոյշ վարժապետը, բայց կորուստը այնքան ծանր էր վարդապետի զգայուն սրտի համար, որ նա ոչնչով չէր կարողանում մխիթարել իրան։ Իր ցաւերը մոռացութեան տալու համար, նա մտածեց ընտրել մի նոր եւ ամենադժուարին պարապմունք, որի մէջ կեանքը ենթակայ լինէր անընդհատ վտանգների, եւ որը աւելի բախտաւորութիւն կը պատճառէր նրան, եթէ կը վերջանար մահուամբ։ Այդ նպատակով նա ցրուեց իր աշակերտներին եւ անյայտա-

[redacted]



*ցաւ։ Նրա մասին շատ բաներ էին պատմում. ասում էին, որ քուրդ վայրենիների մէջ հայոց տառեր եւ քրիստոնէութիւն է տարածում, հրաշքներ է գործում, լուսաւորչական եկեղեցի է հիմնում եւ բաւական հետեւողներ ունի։ Բայց թէ ո՞րտեղ էր այդ նոր առաքեալը եւ ո՞ր երկրում, — ոչ ոք չը գիտէր, միայն խօսվում էր, թէ դեռ կենդանի է։*



## Գ.

## ԱՍԼԱՆԸ ՈՐՊԷՍ ԲԺԻՇԿ

Եւրոպական բժշկի յայտնուիլը շուտով տարածուեցաւ ամբողջ քաղաքում եւ մինչեւ նահանգապետ-փաշայի ականջը հասաւ: Փաշան ցանկացել էր տեսնել բժշկին: Բացի նրանից, ամեն նշանաւոր եւ աննշան անձինքներից հրաւիրվում էր նա, իսկ շատերը նրա մօտ էին գալիս: Ասլանը հանգստութիւն չունէր. ես նրան խիստ հազիւ անգամ էի տեսնում. պատահում էր, որ ամբողջ օրով տուն չէր վերադառնում: Վերադառնում էր գիշերը միայն, այն ժամանակ եւս, վարպետ Փանոսի հետ առանձնացած, երկար ու երկար խօսում էին: Այդ խորհրդակցութիւնները խլում էին նրանից գիշերային հանգստի մեծ մասը: Շըբեմն նկատում էի՝ նրա մօտ գալիս էին անծանօթ անձինք, տարօրինակ հագուստներով, ինչ-որ լեզուներով խօսում էին, եւ ստուերի նման անհետանում: Ասլանը ինձ մօտ ոչինչ չէր խօսում, նրա այդ ծածկամտութիւնը վրդովեցնում էր ինձ. երեւի, նա դեռ եւս իմ վրայ հաւատ չունէր:

Վարպետ Փանոսի տունը շատ նպաստաւոր էր Ասլանի համար ամեն տեսակ անձանց հետ տեսնուելու. այնտեղ ով ասէք՝ չէր մտնում. նրա գործարանի առիթով, ամեն օր, շրջակայքից բազմաթիւ մարդիկ էին գալիս ու գնում: Իսկ նրա բժշկութիւնը ամեն կասկած փարատում էր. բժիշկը ամեն տեսակ անձինք իր մօտ ընդունելու իրաւունք ունի:

Նրա մօտ գալիս էին հիւանդներ, կամ ձեւացած որպէս հիւանդներ, խօսում էին իրանց հիւանդութիւնների մասին։ Ա՜խ, ո՜րքան բազմատեսակ էին այդ հիւանդութիւնները, — բարոյական հիւանդութիւն... մտաւորական հիւանդութիւն... հոգեկան հիւանդութիւն... երկրի անկարգութիւններից առաջացած տնտեսական հիւանդութիւն... բողո՜ք եւ բողո՜ք ամեն կողմից։ Ամեն ոք դեղ ու դարման էր պահանջում։ Բայց կարո՞ղ էր Ալանը եւ այդ հիւանդութիւնների բժիշկը լինել։ Նրա բժշկարանի մէջ կա՞ր արդեօք մի որ եւ իցէ դարման երկրի հասարակական փտութիւնը եւ անդամալուծութիւնը բուժելու համար։ — Այդ հարցերը վճռելու համար՝ ես այն ժամանակ ոչ բաւական գիտութիւն ունէի եւ ոչ բաւական զարգացում։ Բայց իբրեւ իսկական բժիշկ, Ալանը, իրաւ որ, անգնահատելի էր։

Ալանի դրութիւնը ես համեմատում էի մի շրջական կլէկագործի հետ, որ սովորաբար, մեծ զատիկը մօտենալու ժամանակ, թափառում է գիւղից գիւղ, ժանգոտած, փախրոտած պղնձեղէնները մաքրելու եւ կլայեկով պատելու համար։ Գիւղացիները իրանց բոլոր պղնձէ ամանները թափում են նրա մօտ, որովհետեւ գիտեն, որ մի ամբողջ տարի նրա երեսը այլ եւս տեսնելու չեն։ — Այսպէս թափում էին բժշկի մօտ քաղաքացիները իրանց հիւանդներին, մտածելով, որ նա երկար չը պիտի մնայ իրանց մօտ, եւ շտապում էին նրա ներկայութիւնից օգուտ քաղել։ Ալանը, որպէս գործից անվաստակելի մարդ, չէր խնայում ամենին իր օգնութիւնը։

Կոկորդիս ցաւը բոլորովին անցել էր. մի քանի օրից յետոյ ինձ այնքան առողջ էի զգում, որ կարող էի տնից դուրս գալ։ Բայց դպրոցում եւ մանաւանդ քաղաքում երեւալու համար պատշաճաւոր հագուստ չունէի։ Իմ հա-

դուստը դեռ նոյնն էր, ինչ որ Մարօն Սուրբ Աստուածածնի ուխտագնացութեան ժամանակ, մի կերպով կարկատեց ինձ համար։ Բայց որքան մեծ եղաւ իմ ուրախութիւնը, երբ իմացայ, որ Ալանը վաղօրօք հոգացել էր այդ մասին, գնելով շուկայից ինձ համար ամենապատուական հագուստներ։ Ես իսկոյն հագնուեցայ, երբ Ալանը յայտնեց, թէ դիտաւորութիւն ունի ինձ իր հետ տանելու։ Թեթեւ նախաճաշիկից յետոյ, Ալանը վեր առեց իր հետ զանազան տեսակ բժշկական դեղեր ու գործիքներ, մի մասն էլ ինձ տուեց, եւ մենք դուրս եկանք տնից։ Նա ասաց, որ մի քանի հիւանդների այցելութիւն պիտի գործէ։ Քաղաքում դեղատուն չը լինելու համար, նա ումն որ բժշկում էր, դեղերն էլ ինքն էր տալիս, աղքատներին ձրի, իսկ հարուստներից փող էր ստանում։

— Դու գիտե՞ս քո դերը, Փարհատ, — ասաց նա, երբ դուրս եկանք փողոցը։

— Ի՞նչ դեր, — հարցրի ես, բոլորովին մոռացած լինելով այն պատուէրները, որ Վան քաղաքը մտնելուց առաջ, ճանապարհին տուել էր ինձ։

— Դու եւրոպացի բժշկի ճանապարհորդութեան առաջնորդն ես։ — Հասկացա՞ր։

— Հասկացայ, — մեքենաբար պատասխանեցի ես։

Ի՞նչ առաջնորդ կարող էի լինել ես, երբ ոչ երկրի հետ ծանօթ էի եւ ոչ լեզուներ գիտէի։ Ես, իսկապէս, նրա խուլ ստուերն էի, որ անգիտակցաբար գնում էի նրա ետեւից։

Ալանը սիրում էր ոտքով ման գալ, որքան եւ հեռու լինէր ճանապարհը։ Նա հագած ունէր մինչեւ ծնկները երկայն կօշիկներ, գլխին դրել էր մոխրագոյն, լայնեզրեայ, փափուկ գլխարկ, իսկ աչքերը զինուած էին մուգ-ծխագոյն

ակնոցներով, որոնք բոլորովին անտեսանելի էին կացուցանում նրա թափանցիկ, խորախորհուրդ աչքերը, որոնք ակնոցների ամենեւին պէտք չունէին։ Թեւքի տակ կրում էր իր գեղօրայքի պայուսակը. ձեռքին բռնած ունէր մի հաստ փայտ, որ աւելի մահակ էր, քան թէ գաւազան։

Արեւը դեռ նոր էր բարձրացել։ Ամառնային առաւօտը մի առանձին զովութիւն էր տուացել Այգեստանի լայն փողոցների մէջ, որոնք աջ եւ ձախ կողմից զարդարուած էին աչագին ուռենիների եւ բարդենիների շարքերով։ Այդ դարեւոր ծառերով հովանաւորուած էին փոքրիկ առուակները, որոնք հոսում էին փողոցների երկու կողմերից եւս, եւ ջուր էին մատակարարում թէ այգիներին եւ թէ բնակիչների տները շրջապատող պարտէզներին։ Նայելով այդ ծառազարդ բնակարաններին, անծանօթ մարդու գլխում իսկոյն ծագում է այդ միտքը, թէ որքան ուրախ եւ խաղաղ ապրում է այստեղ քաղաքացին։

— Հայը ապրել գիտէ, — ասում էր Ասլանը, — տիրապետութեան լծի տակ անգամ նա պահպանում է մի տեսակ բարեկեցութիւն, եւ դրա մէջն է նրա կենդանակութիւնը, որ դարերի ընթացքում թէեւ տրորվում է ճնշումների, բայց դարձեալ չէ մեռնում։

Առաջին անգամն էր, որ ես դուրս էի գալիս փողոցը, այդ պատճառով երեխայի նման, ամեն մի հանդիպած առարկան հետաքրքրում էր ինձ։ Ես նայում էի, թէ ինչպէս նորահարսերը, երեսները ծածկած, կամ հասած աղջիկները, բաց երեսներով, վաղ-առաւօտեան աւելում էին, մաքրում էին իրանց տան առջեւը։ Նրանք ճարպիկ մատներով նախ գետինը ցողում էին առուակից անցնող ջրով, որ փոշի չը բարձրացնեն։ Ես տեսնում էի, թէ ինչպէս հայ վաճառականները, աւանակների վրայ հեծած, մի

առանձին հոգածութեամբ շտապում էին դէպի քաղաքը, իրանց խանութները բացանելու։ Ես տեսնում էի, թէ ինչպէս նրանք աջ ու ձախ կողմերից ողջոյններ էին ընդունում եւ, մի եւ նոյն ժամանակ, աւանակի վրայ նստած, շարունակում էին իրանց չաւարտած առաւօտեան աղօթքը, որպէս զի, բարեյաջող առեւտուր ունենան։

— Այստեղ մի հիւանդի պէտք է նայել, — ասաց Ասլանը եւ մենք մտանք մի տուն։

Տունը, որպէս երեւում էր, ժամանակով գեղեցիկ շինուածք էր ունեցել, բայց երկար տարիներ մնալով անխնամ եւ առանց նորոգութեան, համարեա աւերակ էր դարձել։ Մի սենեակ միայն մնացել էր ամբողջ, ուր մենք ներս մտանք։ Ես առաջին անգամ տեսնում էի աղքատութիւնը իր վերին աստիճանի սոսկալի պատկերի մէջ։ Խոնաւ, առանց սփռոցի գետնի վրայ պառկած էր մի մանկահասակ կին. հնոտի, քրքրուած վերմակը հազիւ ծածկում էր նրան. բարձի փոխարէն դրած էր գլխի տակին հիւանդի նոյնպէս քրքրուած հագուստը։ Նրա մօտ, ձեռքերը յուսահատական կերպով փակած ծնկների վրայ, նստած էր պառաւ սկեսուրը։ Մի կիսամերկ երեխայ սողում էր հիւանդի անկողնի մօտ եւ խուլ մռմնջում էր։

Պառաւը տեսնելով մեզ, կանգնեց եւ լռութեամբ գլուխ տուեց։ Բժիշկը մօտեցաւ հիւանդին։

— Այժմ լաւ է, — ասաց նա, — վտանգը անցած պէտք է համարել։ Դեղերի այլ եւս պէտք չը կայ. հարկաւոր է միայն այստեղ մաքուր պահել, թարմ օդ եւ լոյս ներս թող տալ, եւ ամենագլխաւորը՝ հիւանդին պէտք է լաւ սնունդ։

— Սնո՜ւնդ... կրկնեց պառաւը, հոգւոց հանելով. — ո՞րտեղից գտնել։ Կար ժամանակ, որ այս տունը լի էր

Աստուծոյ ամէն բարիքներով. հարիւրաւոր աղքատներ ապրում էին մեր հացով. իսկ այժմ... ձեր բարի աչքով տեսնում էք... ի՜նչ է մնացել... բոլորը ոչնչացաւ... բոլորը կորաւ...

Արտասուքը խեղդեց նրան եւ չը կարողացաւ շարունակել:

Ալանը դրեց պառաւի ափի մէջ մի քանի ոսկի եւ կամենում էր դուրս գալ: Բայց նա չընդունեց, ասելով.

— Դուք մի քանի անգամ այցելութիւն գործեցիք իմ հիւանդին, այդքանը բաւական է: Ես ձեզ վճարել չեմ կարող, բայց աղօթել ձեզ համար կարող եմ:

Երեւում էր, որ պառաւը աղքատութեան մէջ եւս պահպանել էր տոհմային հպարտութիւնը: Բայց Ալանը դարձեալ աշխատում էր համոզել, որ ընդունէ ոսկիները:

— Ի՞նչ պէտք է անեմ, — պատասխանեց պառաւը, փոքր ինչ յուզուած ձայնով: — Դուք, պատուելի պարոն, կարծում էք, որ ես կարո՞ղ եմ այդ ոսկիները մէկին ցոյց տալ, — կարո՞ղ եմ դրանցով մի բան գնել:

— Ի՞նչու չէք կարող, — հարցրեց Ալանը զարմանալով:

— Չեմ կարող... կրկնեց պառաւը տխուր ձայնով: — Երբ որ պարտատէրները իմ ձեռքումը փող տեսնեն, իսկոյն կը մտածեն, որ ես պանդուխտներիցս փող եմ ստացել, — եւ բոլորը կը խլեն իմ ձեռքից: Այդ բաւական չէ, նրանք գանգատ կ'անեն, կը նեղացնեն ինձ, կ'ասեն շատ ես ստացել, բեր մնացածն էլ տուր:

Ալանը, կարծես թէ, հետաքրքրուեցաւ պառաւի տխուր խօսքերով, որոնեց մի տեղ նստելու համար, երբ ոչինչ չը գտաւ, նստեց մի կողմում ընկած կոտրած սնդուկի վրայ:

— Քանի՞ պանդուխտներ ունես օտարութեան մէջ, — հարցրեց պառաւից:

— Հինգ որդի: Երկուսը Ստամբօլում չը գիտեմ ինչ են անում, իսկ մնացածների մասին ձայն չը կայ, թէ որտեղ են: Ծերունի հայրը գնաց որոնելու կորած որդիներին, ինքն էլ կորաւ...

Պառաւի կարօտ աչքերը կրկին լցուեցան արտասուքով: Ես խիստ ցաւակցութեամբ էի լսում նրա խօսքերը, եւ, միեւնոյն ժամանակ, յիշում էի եւ իմ կորած հօրը... յիշում էի եւ իմ վշտալի մօրը... յիշում էի որբ մնացած քոյրերիս... յիշում էի եւ մեր աւերակ խրճիթը... որտեղից արտաքսեց մեզ վաշխառու պարտատէրը... "Ի՞նչ է այդ... մտածում էի ես, — միթէ միշտ այդպէս պէտք է մնալ հայի վիճակը... միթէ նա միշտ պանդխտութեան մէջ պիտի տրորուի, մաշուի, մեռնի, արժանի չը լինելով հայրենի հողին... միթէ մի ճակատագրական անէծք հալածում է նրան հայրենի երկնից"...

Պառաւը, իր արտասուքը սրբելով, շարունակեց.

— Այդ տունը լիքն էր երեխաներով... լիքն էր մայրերով ու հայրերով... հիմայ տեսնում էք, մնացել է մի հիւանդ միայն եւ այս փոքրիկը, — նա ցոյց տուեց կիսամերկ տղային, որ այժմ խլրտում էր մօր բարձի մօտ: Ամենքը ոչնչացան... ամենքը կորան... Նրա համար որ, աղքատութիւնը մահուան հետ միասին է մտնում մարդու շէմքից...

Երեխան այժմ հեռացաւ մօր անկողնից, սողալով մօտեցաւ Աղանին, բռնեց կօշիկներից, կանգնեց եւ իր փոքրիկ ձեռիկներով սկսեց խաղալ նրա ժամացոյցի շղթայի հետ: Ես միշտ երեւակայում էի Աղանի մէջ քարէ սիրտ, բայց նա չը կարողացաւ զիմանալ, երբ երեխան իր սեւ փայլուն աչիկներով նայելով նրա երեսին, ժպտաց եւ թոթո-

վեց մի քանի խօսքեր։ Դժբախտութեան զաւակը խօսում էր... խօսում էր աւելի ազդու, քան ամէն բողոք... եւ կարծես, իր անհասանելի թոթովանքով ասում լինէր. «Ինչո՞վ եմ ես մեղաւոր, որ ինձ աշխարհ բերեցին... մի՞թէ միայն տանջուելու համար»...

Ասլանը համբուրեց երեխային, վերկացաւ եւ, ձգելով հիւանդի բարձի մօտ ոսկիները, իսկոյն դուրս եկաւ թախծալի բնակարանից։

— «Աղքատութիւնը մահուան հետ միասին է մտնում մարդու շէմքից»... Ճանապարհին կրկնեց նա պառաւի իմաստալի խօսքերը։ Դա մի անհերքելի ճշմարտութիւն է։ Որտեղ տիրում է թշուառութիւնը, այնտեղ աւելի մեծ թուով զոհեր է տանում մահացութիւնը։ Ոչ մի ժողովրդի մէջ չէ կարելի յուսալ կանոնաւոր աճելութիւն, երբ որ նրա տնտեսական դրութիւնը օրինաւոր պայմանների մէջ չէ դրուած։ Այդ տեղից հասկանալի է, թէ ինչո՞ւ մեր ժողովուրդը օր ըստ օրէ սպառվում է։ Այդ սպառմանը աւելի զարկ է տալիս գաղթականութիւնը։ Տղամարդը, իր կեանքի ամենաթարմ տարիները պանդխտութեան մէջ մաշելով, զրկվում է գերդաստանի հայր դառնալուց, որդիք եւ սերունդ առաջ բերելուց։ Իսկ ինչ զաւակներ էլ, որ թողել է տանը, աղքատութեան մէջ մեռնում են։ Ահա, մեր աչքով տեսանք մի հոյակապ ընտանիք, որ հանգչելու մօտ է։ Բայց քանի՜ հազար այսպիսի ընտանիքներ կան այդ քաղաքում։ Այդ գեղեցիկ, ծառազարդ տներում, — նա ձեռքը մեկնեց դէպի Այգեստանի տները, — բնակվում են երկու ծայրայեղութիւններ. ճոխութիւն, շռայլութիւն եւ վերին աստիճանի աղքատութիւն։ Շռայլում են հարստահարիչ մեծատունները, իսկ հեծում են պարտքերի տակ ճնշուած թշուառները...

Այդպէս խօսելով գնում էինք մենք, երբ ճանապարհին հանդիպեց մեզ վարպետ Փանոսը։

— Այն հիւանդը կ'ապրի՞, — հարցրեց նա, մօտենալով Ասլանին։

— Կ'ապրի, եթէ ուտելու մի բան ունենայ, — պատասխանեց Ասլանը վրդովուած ձայնով։

— Այդ մասին ես հոգացել եմ... ասաց վարպետը հազիւ լսելի ձայնով։

Նրա խօսքը ընդհատեց մի կարճահասակ մարդ, համարեա ցնցոտիներով հագնուած, ողորմելի եւ երկչոտ կերպարանքով, որ այդ միջոցին անցաւ մեր մօտով։ Վարպետը յարգանքով ողջունեց նրան եւ, երբ բաւական հեռացաւ նա, ասաց մեզ.

— Դա մեր թաղի ամենահարուստ մարդն է։

— Դա՞, այդ մուրացկա՞նը, հարցրեց Ասլանը զարմանալով։

— Այո, այդ մուրացկանի նման մարդը։

— Ապա ինչո՞ւ է այնպէս հագնուած, կարծես, բոլորովին աղքատ լինի։

Վարպետը մի առանձին տխրութեամբ պատասխանեց.

— Այստեղ աղքատը խօ աղքատ է, իսկ հարուստն էլ ստիպուած է աղքատ ձեւանալ, որովհետեւ նրա հարստութեանը միշտ սպառնում է մի վտանգ։ Տեսար մի օր թուրքերը մի "շառ ու շուռ" հնարեցին եւ ինչ որ ունի՝ ձեռքիցը խլեցին։

— Ի՞նչպէս կարելի է այդ, — հարցրի ես, ոչ սակաւ զարմանալով։

— Ինչու չէ կարելի, երբ իրաւունքն էլ թշնամու ձեռքումն է, դատաստանն էլ։ Հէնց այդ ընտանիքը, որի թշուառութիւնը մի քանի րոպէ առաջ տեսաք, թող

ձեզ օրինակ լինի։ Դա մեր քաղաքի ամենահարուստ եւ ամենապատուական ընտանիքներից մէկն էր։ Մի առաւօտ տանեցիք վեր են կենում եւ սարսափելով տեսնում են, իրանց բակումը ընկած մի թուրքի դիակ։ Խեղճերին զրպարտեցին սպանութեան մէջ եւ այնքան ժամանակ բանտերում մաշեցին, մինչեւ ամեն հիւթ ծծեցին նրանցից, եւ այն ժամանակ միայն բաց թողին, երբ տեսան, որ Ադամից աւելի մերկ են եւ Նոյից աւելի բոբիկ։

— Բայց միշտ այդպիսի զրպարտութիւններ չէ կարելի հնարել, — պատասխանեցի ես։

— Եթէ այդպիսին չէ կարելի, դրա նմանները միշտ կարելի է։ Մէկին կը զրպարտեն, ասելով, թէ մահմեդականի հաւատն է հայհոյել, միւսին՝ թէ մահմեդականի կնոջը ծուռն աչքով է նայել, երրորդին՝ թէ իր տնում զէնք եւ վառօդ է պահել, չորրորդին՝ թէ քաղաքադռնից ձիով է ներս մտել եւ այլն։

Վարպետի վերջին խօսքը դարձրեց իմ ուշադրութիւնը այն երեւոյթի վրայ, որ նկատեցի առաւօտեան. բոլոր հայերը էշով էին գնում բազար. ձի հեծնելը նրանց արգելուած էր։ Այդ սովորութիւնը կար եւ Պարսկաստանում. ազնիւ անասունը՝ ձին, մահմեդականի համար էր, իսկ ստոր անասունը՝ աւանակը, քրիստոնեայի համար։

Մենք մտանք մի խուլ փողոց։ Վարպետը շարունակեց.

— Այսպիսի եւ դրա նման վտանգները պատահում են, որպէս ասացի, հարուստներին, եւ այդ է պատճառը, որ հարուստները աշխատում են իրանց կայքը թագցնել եւ, որքան կարելի է, աղքատ ձեւանալ։ Բայց այդ չէ օգնում նրանց։ Այդ դէպքերում մահմեդականները աւելի վարպետ են, քան թէ մեր հարուստները։ Բաւական է, որ մէկի համար լսում են, թէ նա փող ունի, թէեւ նա իր փողը ամեն

կերպով թագցնում է, բայց դուրս են բերում: Ինչպէս աղուէսն էլ իր որջը մտած ժամանակ չէ երեւում, բայց երբ որսորդները նրա ծակի առաջ մուխ են դնում, խեղճ անասունը ինքն իրան դուրս է գալիս: Փաշայի դուռը շրջապատել են մի ամբողջ խումբ որսորդների, որոնք այսպիսի որոգայթներ են լարում: Դրանք այնպիսի ճարպիկներ են, որ սատանան պէտք է նրանցից դաս առնէ:

Իմ նոր հագուստից յետոյ, ես այժմ սկսել էի խօսակցութեան մէջ խառնուիլ: Նա ինձ “մարդու տեղ էր դնում„...

— Ուրեմն ոչ ոքի կայքը այստեղ ապահովուած չէ՞, — հարցրի ես վարպետից:

— Ոչ միայն կայքը, այլ եւ նրա կեանքը, պատիւը եւ ամեն ինչ: Եւ այդ է պատճառը, որ հայերը այստեղ նոյն միջոցներին են դիմում, ինչ որ անում էին մի ժամանակ Տաճկաստանի զանազան քաղաքների հայերը ենիչարիների դարերում: Ամեն մի ընտանիք ընտրել էր մի ենիչարի, որի պաշտպանութեան տակն էր մտած, որը պահպանում էր իրան ապաւինած ընտանիքը միւս ենիչարիների զազանութիւնից, ասելով. “դրան մի դիպէք, դա իմ գաւուրն է„... Բայց այդ պաշտպանութիւնը շատ թանգ էր նստում ողորմելի ընտանիքին. նա դառնում էր իր պաշտպանի գերին, ստրուկը, նրա բոլոր հաճոյքների կամակատարը: Նրա կայքը, մինչեւ անգամ ընտանիքի պատիւը զոհվում էր իր պաշտպանի անբարոյական կրքերին... Դա մի այնպիսի հովանաւորութիւն էր, որպէս մի գայլ պաշտպանում է իր որսը միւս գազանների յափշտակութիւնից, որպէս զի ինքը միայնակ վայելէ: Այժմ այստեղ միեւնոյն բարբարոսութիւններն են կատարվում: Շատ ընտանիքներ ստիպուած են մտնել այս եւ այն նշանակութիւն ունեցող թուրքի կամ քրդի հովանաւորու-

թեան ներքոյ, որոնք նոյն անգթութեամբ են վարվում իրանց պաշտպանեալի հետ, որպէս հին ժամանակների ենիչարին։

Ասլանը լռութեամբ լսում էր, երեւում էր, ոչ այնքան հետաքրքրութեամբ։ Կարծես, նա այդ բոլորը գիտէր, եւ գիտէր աւելի լաւ, քան թէ վարպետ Փանոսը։ Բայց իմ վրդովմունքը չափ չունէր. "այդ ինչ դրութիւն է, մտածում էի ես, աւելի լաւ չէ՞ր լինի, որ մարդիկ ամենեւին գոյութիւն չունենային, քան թէ այդպիսի անպատիւ կեանքով ապրէին"։

Մենք շարունակում էինք գնալ երկար, ծառազարդ փողոցներով։ Վարպետ Փանոսը աւելացրեց.

— Ահա այդ գիշակեր խնամակալներն են, որոնք պարտքով փող են տալիս իրանց "գաւառցիներին", երբ նրանք օտար երկիրներ են գնում բախտ որոնելու, եւ աւելի շուտ են ճանապարհ դնում նրանց, երբ նրանց ընտանիքի մէջ կար մի սիրուն կին կամ գեղեցիկ աղջիկ։ Գաղթականը ճանապարհի ծախքի կարօտ է, բացի դրանից, նա պէտք է շատ ու քիչ փող թողնէ իր տան ապրուստի համար, — այդ բոլորը նա պարտքով վեր է առնում իր խնամակալից։ Նրա պարտքը սկզբում մի քանի հարիւր ղուրուշ է լինում, բայց այդ մի քանի հարիւրը տարիների ընթացքում աճում է, բազմանում է եւ շատ հազարներ է դառնում։ Այնուհետեւ պարտքից ազատուելու հնար չը կայ։ Պարտքի արմատը միշտ մնում է միեւնոյնը, հատուցվում է տոկոսը միայն։ Իսկ այդ անիծեալ տոկոսը վճարելու համար պէտք են մի քանի ուժեղ տղամարդիկ, որ Կ. Պօլսի մաքսատներում, կամ քարւանսարաններում համալութիւն անէին։ Ամբողջ Վանի մէջ չը կայ մի ընտանիք, որի մի քանի անդամները պանդխտութեան մէջ չը լինէին։ Առաջ գնում էին միայն

տղամարդիկը, իսկ այժմ կանայք նոյնպէս սկսել են օտար երկրներում բախտ որոնել։ Վանեցի կինը, որ իր տան ծածքի տակից չէր դուրս գալիս, որ նրա երեսը մի ուրիշ մարդ չը տեսնէ, այժմ պանդխտութեան մէջ վատնում է իր աւանդական համեստութիւնը...

Ասլանը ընդհատեց վարպետի տխուր պատմութիւնը, հարցնելով.

— Կարծեմ, այստեղի հայերից եւս կան այնպիսինները, որոնք մահմեդական խնամակալների պաշտօն են կատարում...

— Կան, եւ նրանց թիւը սակաւ չէ։ Այդ անիրաւները անունով միայն հայ են, իսկ գործով կատարեալ ենիչարի...

— Բայց ի՞նչպէս է, որ նրանք չեն թագցնում իրանց հարստութիւնը եւ փառաւոր կերպով ապրում են։

— Նրանք էլ ունեն իրանց պաշտպանները, աւելի բարձրաստիճան անձինքներից, որոնց հովանաւորութիւնը վայելելով, տկարներին խեղդում են, իսկ հզօրներին տուրք են վճարում...

Մենք անցանք մի եկեղեցու դռնից, որտեղ մինը միւսի ետեւից մտնում էին եւ դուրս էին գալիս երեխաներ, գրքերը թեւքերի տակ առած։

— Երեւի, այստեղ դպրոց կայ, — հարցրեց Ասլանը, — աշակերտներ են մանգալիս։

— Կայ, — պատասխանեց վարպետ Փանոսը, — մեր քաղաքի առաջնակարգ դպրոցներից մէկն է. եթէ ժամանակ ունէք, մտնենք, դուք գաղափար կը ստանաք մեր նոր սերունդի մտաւոր զարգացման մասին։

Մտանք վարժարանը, որ գտնվում էր եկեղեցու բակումը։ Իմ առջեւ իսկոյն նկարուեցաւ տէր Թօդիկի դպրոցը իր բոլոր այլանդակութեամբ։ Աշակերտները այստեղ եւս

ածած էին մի դասատան մէջ եւ խառն կերպով նստած էին հասիրների (փսիաթ) վրայ: Բոլորը միասին կարդում էին, ամէն մէկից մի տեսակ ձայն էր լսվում, որովհետեւ որքան աշակերտներ կային, այնքան զանազան գրքեր կային նրանց ձեռքում: Ամէն մէկի տանը, եթէ պապերից մնացած մի գիրք էր գտնուել, հայրը տուել էր որդու ձեռքը, ասելով. «տար վարժապետիդ ասա, որ դրա վրայ կարդացնէ»... Թող այն գիրքը Սաղմոս լինէր, Ժամագիրք լինէր, Կիպրիանոս լինէր, Գրնձէ քաղաք լինէր, Հին բժշկարան կամ Երազահան լինէր, — միեւնոյն է, բաւական է, որ գիրք էր: Զանազանութիւն այս վարժարանի եւ տէր Թօդիկի դպրոցի այն էր միայն, որ ես առաջին անգամ այստեղ լսեցի մի քանի գրքերի անուններ, որպիսիք էին՝ քերականութիւն, ճարտասանութիւն, տրամաբանութիւն եւ այլն: Այդ գրքերը գրավարժութեան համար, որպէս ընթերցանութեան գրքեր, կարդում էին նոյն եղանակով, ինչպէս կարդում էին Աւետարանը: Երեւում էր, որ վերջին գրքերը ունեցող աշակերտների տանը, ուրիշ գրքեր չէին գտնուել, որ աւելի յարմարը տային նրանց ձեռքը:

Վարժապետին կոչում էին Սիմոն պատուելի. Նա մի ժամանակ Կ. Պօլսում սափրիչ էր եղել, եւ բաւականին հասալիկ ու մռուտ մարդ էր, որպէս սովորաբար լինում են սափրիչները: Նրա դէմքը, անկանոն խմելուց, ստացել էր մի տեսակ լոջագոյն-կարմրութիւն, որի նմանը կարելի է տեսնել հնդկահաւի գլխի վրայ, իսկ երեսի կաշին հաստանալով, բոլորովին կորցրել էր իր կոկութիւնը եւ նարնջի կեղեւի նմանութիւն էր ստացել: Քթի վրայ, որը իր մեծութեամբ ընդարձակ տեղ էր բռնում, երեւում էին կասկածաւոր կարմիր բծեր: Այսպիսի դէմքեր շատ ընդունակ են կեղծաւորուելու, թէեւ քսութիւնը աւելի չէ յարմարվում

նրանց։ Նրա հագուստը մի ծիծաղելի խառնուրդ էր եւրոպականից եւ ասիականից։ Գլխին դրած ունէր տաճկի կարմիր Ֆէս, որի վրայ քրդի ձեւով փաթաթել էր երկու "եազմա" կոչուած թաշկինակներ. հագել էր վանեցու երկայն անթարի, կողքից ճղած լայն դրօշակներով, որի վրայ հագել էր մի մոյգ դեղնագոյն եւրոպական կարճ պալտօ։ — Կարճ պալտօն եւ երկայն անթարին վերեւից պնդած էին շալէ հաստ գօտիով, որը մի քանի փաթոթներով պատած էր նրա մէջքին։ Նրա նեղ պանտալօնը հազիւ իջնում էր ծնկներից մի փոքր ցած։ Սրունքները բաց էին մնացած։ Երեւում էր, որ այդ ողորմելի պանտալօնը նա գնել էր հնոտիների բազառից, այդ պատճառով նրա համար չափազանց կարճ էր։ Դասատան մէջ նա հագած ունէր մի տեսակ հողաթափներ, որոնք երեք մատի հաստութեամբ փայտեայ տակեր ունէին, եւ շարժուելու ժամանակ այդ տախտակները խիստ օտարոտի ձայներ էին հանում աղիւսով պատած յատակի վրայ։ Միակ առարկան, որ ցոյց էր տալիս, թէ նա գրի ու կարդալու մարդ է, էր նրա ահագին թանաքամանը, որ փորի վրայ խրած ունէր գօտիի մէջ։ Այդ ինքնուրոյն թանաքամանը կազմուած էր պղնձէ երկայն քառանկիւնի փողից, որի մի ծայրի կողքին ամրացրած էր բուն թանաքամանը, թրաշած բաժակի ձեւով։ Նրա մէջ թանաք էր ածած եւ սեւ աբրեշումի թելեր էր դրած, որպէս զի թելերը հեղուկ թանաքը իրանց մէջ ծծէին, որ չը վիթուէր։ Քառանկիւնի փողի մէջ ամեն բան կար, այնտեղ կար եւ գմելի եւ գրիչ, այնտեղ կար մի մաղաշ, որով պատուելին իր քթից մազեր էր դուրս հանում, այնտեղ կար եւ մի ականջափորիկ թէյի փոքրիկ գդալի չափով, որով եւ թանաքամանի մէջ ջուր էր ածում, ցամաքելու ժամանակ, եւ ականջների կեղտն էր դուրս տալիս, երբ բաւական լցվում էին, — այնտեղ կար

եւ մի ածելի, որով պատուելին երեսը ածիլում էր։ Պատուելիի այդ գրական պալատակայքը լրացնում էին եւ մի քանի այլ առարկաներ, որ նոյնպէս քարշ էին ընկած նրա գօտիից. դրանցից մէկն էր նրա կարճ ծխաքարշը փայտեայ կոթով, երկրորդը, գոյնզգոյն ճոթերից կարուած մի մեծ քսակ էր, որի մէջ ծխախոտ էր ածած, իսկ երրորդը, երկաթեայ մի փոքրիկ ունելի էր, որով ծխաքարշի վրայ կրակ էր դնում, երբ պէտք էր վառել նրան, իսկ հարկաւոր ժամանակ նրանով բռնում էր աշակերտների քթից եւ հուփ էր տալիս...

Տեսնելով մեզ, Սիմոն պատուելիի առաջին հոգսը եղաւ հանգստացնել իր աշակերտներին։ «Սուս», «սուս» գոչելով, ճիպոտը ձեռին, նա սկսեց վազ տալ դասատան այս կողմը, այն կողմը, մի քանի պտոյտներ գործեց, մի քանի հայհոյանքներ տուեց, աշակերտներից մէկի մազերից բռնելով, նստեցրեց իր տեղը, միւսի ականջները ձգձգեց եւ, վերջապէս, նրան յաջողուեցաւ կարգը վերականգնել։ Բոլոր աշակերտները լռեցին եւ իւրաքանչիւրը իւր տեղում անշարժ նստած մնաց։ Այդ գործողութիւնը թէեւ փոշու թանձր մառախուղ բարձրացրեց, առանց դրան եւս, լոյսից զրկուած դասատան մէջ, բայց այդ մթութեան միջից դարձեալ կարելի էր տեսնել, թէ ինչպէս աշակերտները երկչոտ կերպով, ապուշ-ապուշ նայում էին մեզ վրայ։

Ցետոյ պատուելին ընդ առաջ եկաւ, ընդունեց մեզ, որպէս մի մարդ, որ իր տանը հիւր է ընդունում, այդ խօսքերով.

— Բարով էք եկել, հազար բարով, իմ աչքի վրայ, իմ գլխի վրայ...

Ցայտնի չէ, թէ այլ եւս նրա որտեղի վրայ պէտք է լինէր մեր ընդունելութիւնը, որովհետեւ աշակերտներից մէկը այդ միջոցին փռթկաց եւ պատուելիի ճառը ընդհատուեց.

յատ։ Դա երեսը շուռ տուեց դէպի եղեռնագործը եւ, ձեռ-քով սպառնալով, մրմթաց, “սպասի՛ր, գարշելի„...

— Ի՞նչ են սովորում այստեղ — հարցրեց Ասլանը։

— Ամեն բան սովորում են, պարոն, — պատասխանեց պատուելին, աջ ձեռքի ցուցամատով աջ կողմի պնչածակը քչփորելով. — ինչ որ կամենում էք հարցրէք, բուլբուլի պէս պատասխան կը տան։

— Այդ լաւ է, — ասաց Ասլանը ժպտելով։

— Տեսնո՞ւմ էք այդ փոքրիկին, պարոն, — նա ցոյց տուեց մի ութը տարեկան երեխայ, — կարող է ամբողջ “Հայր մերը„ թարսայ ասել։

— Ի՞նչպէս թարսայ ասել։

— Այնպէս... այսինքն... զոր օրինակ... տակից դէպի վեր... այնպէս ասել, — պատասխանեց պատուելին կակազելով։

— Երեւի, դրանում մի առանձին միտք կայ, որ դուք “Հայր մերը„ թարսայ էք սովորեցնում, — հարցրեց Աս-լանը լուրջ կերպով։

— Ինչպէս չէ, պարոն, այո, առանձին միտք կայ, պա-րոն, — կրկնեց պատուելին վարդապետական եղանակով։ — Երբ “Հայր մերը„ թարսայ են կարդում, Յիսուս Քրիստոսի շնորհքով, սատանան իր պոչի վրայ մեխւում է գետնին, էլ չէ շարժւում տեղից։ Դա փորձուած է, շատ անգամ փոր-ձուած է, պարոն։

Ասլանը դարձաւ դէպի փոքրիկ աշակերտը.

— Դէ՛, իմ քաջ, տեսնենք՝ ինչպէս ես սատանային պոչի վրայ կանգնեցնում։

Փոքրիկ աշակերտը վեր կացաւ նստած տեղից, երկու ձեռքերը միմեանց վրայ կպցրեց կուրծքին, երկու անգամ հազաց եւ, անմեղ աչքերը պլշացնելով, կարդաց. “ամէն

յաւիտեանս փառք եւ զօրութիւն եւ արքայութիւն է քո զէ„...

— Բաւական է, — ընդհատեց Ասլանը. — այս անգամ սատանային հանգիստ թողեցէք:

Երեւի, պատուելին գոհ մնաց այդ հարցաքննութեամբ. նա ցոյց տուեց մի այլ աշակերտ, ասելով.

— Տեսնո՞ւմ էք, պարոն, այդ փոքրիկին, այնպէս լաւ սերտել է "Հաւատամք„-ը, որ գիտէ՝ նրա մէջ քանի այբ կայ, քանի բեն կայ, — մի խօսքով բոլոր տառերը գիտէ, պարոն, եւ բլբուլի պէս պատասխան կը տայ:

— Երեւի, դուք թուաբանութիւնը այդ եղանակով էք սովորեցնում, — նկատեց Ասլանը:

— Ոչ, պարոն, — ասաց պատուելին խորհրդաւոր ձայնով եւ, միեւնոյն ժամանակ, մի թթու ժպիտ երեւաց նրա թօշնաց դէմքի վրայ: — Այստեղ ուրիշ իմաստութիւն կայ...

Ես իսկոյն յիշեցի, թէ ինչպէս տէր Թօդիկը ստիպում էր մեզ սովորել, թէ քանի անգամ կրկնվում է Աստուծոյ անունը "Շնորհեա՛„-ի մէջ, եւ միշտ խոստանում էր բացատրել մեզ մի խորհրդաւոր գաղտնիք, որ թաքնուած էր այդ կրկնութիւնների մէջ: Բայց նա ոչինչ չը բացատրեց մեզ: Այնպէս էլ Սիմոն պատուելին մեզ չասաց, թէ ինչ "իմաստութիւն„ կար "Հաւատամք„-ի այբուբենի թուերի մէջ:

Այնուհետեւ պատուելին առաջարկեց իր աշակերտներին զանազան այսպիսի հարցեր.

— Պետրոս, այն ո՞վ էր, որ երկու անգամ ծնուեց մի անգամ մեռաւ:

— Յովնան մարգարէն, վարժապետ:

— Թորոս, այն ո՞ր անասունն էր, որ մարդու լեզուով խօսեց եւ հրեշտակի ձեռքով սուր քաշեց:

— Բաղասամի էշը, վարժապետ։

— Մարտիրոս, այն ո՞ր Թռչունն էր, որին անիծեց Սողոմոն իմաստունը։

— Ճնճղուկը, վարժապետ։

— Ստեփան, այն ի՞նչ պտուղ էր, որ Ադամը կերաւ մերկացաւ, Եւան կերաւ խենդացաւ։

— Թուզը, վարժապետ։

— Տեսնո՞ւմ էք, պարոն, — պատուելին դարձաւ դէպի Ալանը, ինչպէս բուլբուլի պէս պատասխան են տալիս։ — Այդ միջոցին թթու ժպիտը դարձեալ յայտնուեցաւ նրա դէմքի վրայ եւ կարմիր աչքերի կարմիր կոպերը խիստ ծիծաղելի անկիւններ կազմեցին։ — Իմ աշակերտները ամբողջ աշխարհում գովուած են, պարոն, այդ քաղաքի մէջ իմ աշակերտները առաջիններն են համարւում, պարոն. ոչ տէրտէր կարող է նրանց հետ խօսել եւ ոչ վարդապետ. այնպիսի հարց կը տան, որ կապուած կը մնան։ Նորին սրբազնութիւնը հիացած է իմ աշակերտներով. ամիս չի անցնի, որ Նորին սրբազնութիւնը ոտքը ներս չը դնէ իմ դպրոցի շէմքից։ Ահա այդ թանաքամանը Նորին սրբազնութիւնն է ընծայել ինձ, պարոն։

Վերջին խօսքերով պատուելին կամեցաւ ուշադրութիւն դարձնել իր թանաքամանի վրայ, այդ պատճառով ձեռքը տարաւ դէպի ուռած փորը։

— Այլ եւս ի՞նչ են սովորում, — հարցրեց Ալանը։

— Մինչեւ ճաշ ուսում են ստանում, սովորում են գրել, կարդալ եւ զանազան իմաստութիւններ, իսկ ճաշից յետոյ սովորում են քաղաքավարութիւն, մարդավարութիւն, — այդպիսի բաներ։

Այս անգամ պատուելին, որ բոլոր խօսակցութեան ժամանակ մոռացել էր իր կարմիր քիթը, ձախ ձեռքի ցու-

ցամաքը տարաւ դէպի ձախ կողմի պնչածակը եւ սկսեց քչփորել, կարծես, այնտեղ մի բան նեղացնում էր նրան։ Յետոյ, կամենալով քաղաքավարութեան մի քանի օրինակներ ցոյց տալ, դիմեց աշակերտներից մէկին, ասելով.

— Այա՛, Օհանիկ, պարոնին մէկ պատիւ տուր։

Աշակերտների միջից դուրս եկաւ մի թզաչափ երեխայ, կանգնեց Ալանի առջեւ եւ, երկու ձեռքերը դնելով միմեանց վրայ, փոքրիկ ափերը բաց արեց, մեկնեց դէպի Ալանը։ Բայց Ալանը չը գիտէր ի՞նչ անել։ Պատուելին ժպտելով նկատեց, որ ձեռքը դնէ աշակերտի ափի մէջ։ Ալանը կատարեց նրա պատուէրը։ Փոքրիկ Օհանիկը, նրա աջը երկու ափերի մէջ բռնած, նախ տարաւ դէպի շրթունքը, համբուրեց, յետոյ տարաւ դէպի ճակատը, դրեց գլխի վրայ։

— Այա՛, Աւագ, պարոնին գլուխ տո՛ւր, — պատուելին դարձաւ դէպի մի այլ աշակերտ։

Բայց Ալանը թոյլ չը տուեց, ասելով, որ չանհանգստացնէ աշակերտներին։ Այսպէս, պատուելին աշխատում էր ցոյց տալ իր սանիկների բոլոր մտաւոր եւ բարոյական կարողութիւնը, որոնք, նրա կարծիքով, օրինակելի էին ամբողջ քաղաքում։ Նա խնդրեց, որ աշակերտները զանազան տաղեր երգէին, աւելացնելով, որ բոլոր տաղերը գիտեն. «վարդի ու բուլբուլի» տաղը, գինու տաղը, մէջլիսի տաղերը, մի խօսքով, բոլորը գիտեն։

— Հայոց պատմութիւն սովորո՞ւմ են, — հարցրեց Ալանը։

— Ի՞նչ պէտք է հայոց պատմութիւնը, — պատասխանեց պատուելին իր սովորական ժպիտով, — հայոց թագաւորները բոլորն էլ կռապաշտ էին։

Ալանը ոչինչ չը պատասխանեց։ Պատուելին, հաւատացած լինելով, որ իր այցելուն շատ գոհ մնաց իր դպրոցից, վստահութիւն ունեցաւ հարցնելու.

— Պարոն, կարծեմ, դուք բժիշկ էք։

— Այո, բժիշկ եմ։

— Այդ իմ քիթը... մի խօսքով... շատ է նեղացնում ինձ... — Նա այժմ աջ ձեռքի ցուցամատը կոխեց աջ կողմի պնչածակի մէջ, սկսեց քչփորել։

Ալանը նայեց նրա երեսին եւ ասաց.

— Քիչ օղի խմեցէք եւ կը լաւանայ ձեր քիթը։

Մենք դուրս եկանք դասատնից։ Այդ ժամանակ միայն նկատեցինք դասատան դռան մի կողմում երկու պատժուած աշակերտներ։ Երկուսն էլ մերկ ծնկներով չոքեցրած էին մանր, սրածայր խիճերի վրայ, երկուսն էլ ձեռքերով վեր էին բարձրացել մի-մի հատ ամբողջ աղիւս։ Մի այլ աշակերտ, ճիպոտը ձեռին, կանգնած էր նրանց մօտ, հսկում էր, որ դատապարտեալները իրանց դիրքը չը փոխեն։

— Ինչո՞վ են յանցաւոր այդ ողորմելիները, — հարցրեց Ալանը մօտենալով նրանց։

— Ես, պարոն, պատուիրել եմ իմ աշակերտներին, որ դրսում ոչ ոքի հետ չը խօսեն, մինչեւ անգամ իրանց ծնողների հետ չը խօսեն, միշտ լուռ ու մունջ լինեն։ (Լռութիւնը ամենագլխաւոր պայմանն է համեստութեան։) Իսկ այդ գարշելիները չեն պահպանել իմ պատուէրը։

— Դուք ի՞նչպէս իմացաք, որ չեն պահպանել։

Սովորական ժպիտը դարձեալ երեւաց պատուելիի դէմքի վրայ, եւ այս անգամ նրա կարմիր աչքերը բոլորովին անյայտացան հաստ կոպերի տակ։ Երեսի վրայ որքան կնճիռները կային հաւաքուեցան աչքերի շուրջը եւ նրանից ծածկեցին իրանց կոհակների ներքոյ։

— Ես, պարոն, ամեն բան գիտեմ և ամեն բան կարող եմ իմանալ, — պատասխանեց նա մի առանձին պարծենկոտութեամբ։ — Իմ աշակերտներից որի վրայ կասկած ունեմ, թէ նա չէ պահել իմ պատուէրը, բերանը չափում եմ, իսկոյն իմանում եմ, արդեօք նա դրսում խօսացե՞լ է, թէ ոչ։

— Երեւի, եթէ խօսեցած լինի բերանը կը մեծանայ։

— Այո՛, կը մեծանայ, ի հարկէ կը մեծանայ, պարոն։

Ասլանը այս անգամ չը կարողացաւ զսպել իր ծիծաղը։ Պատուելին, կարծելով, թէ իր գիտը զարմացրեց նրան, աւելի խրախոյս ստացաւ և, դառնալով դէպի վարպետ Փանոսը, որ բոլոր ժամանակը լուռ էր, հարցրեց.

— Դուք վկայեցէք, վարպետ, թէ ի՞նչպէս են իմ աշակերտները, ամբողջ քաղաքում նրանց հատը կա՞յ։

— Ի հարկէ, չը կայ... պատասխանեց վարպետը ծաղրական եղանակով։ — Այսպիսի աշակերտներ միայն դուք կարող էք կրթել...

Պատուելին նրա խօսքերը ճշմարտի տեղ ընդունեց։

Մենք հեռացանք Սիմոն պատուելիի դպրոցից, տանելով մեզ հետ խիստ տխուր զգացմունքներ։

Տէր Թօդիկի դպրոցում հազար ու մէկ խստութիւններ, հազար ու մէկ կանոններ կային, բայց այդ բանը չը կար որ աշակերտների բերանը չափելով, իմանային, թէ արդեօք նրանք դրսում խօսո՞ւմ են, թէ ոչ։

Երբ դուրս եկանք փողոցը, վարպետ Փանոսը ասաց Ասլանին.

— Եթէ գիտենայիք, թէ ո՛րքան աշխատել եմ, ո՛րքան չարչարուել եմ ես, որ մի կերպով այդ անպիտանին հեռացնեմ այդ դպրոցից, բայց հնար չի եղել։

— Ինչո՞ւ, — հարցրեց Ասլանը։

— Նա մի քանի հզօր պաշտպաններ ունի, ինչպէս նահանգապետ փաշան եւ սրբազան առաջնորդը։

— Այդ գարշելի արարածի մէջ ի՞նչ են գտել, որ պաշտպանում են նրան։

— Հէնց այն, որ նա գարշելի է։ Չէք կարող երեւակայել մի մարդ, որ դրա չափ բարոյապէս փչացած եւ կեղտոտ լինէր։ Կատարեալ եղեռնագործ է այդ անպիտանը։ Նրան խեղդել պէտք է, եւ աւելի ոչինչ։ Գիտէ՞ք, շատ երեկոներ նա ընտրում է իր աշակերտներից մի քանիսը եւ տանում է փաշայի մօտ. այնտեղ մնում են ամբողջ գիշերը, երգում են, պար են գալիս եւ զուարճացնում են փաշային...

— Լա՜ւ բարոյականութիւն կը սովորեն... — ասաց Ասլանը խորին զզուանքով։

— Փաշան առաջ չը գիտէր, թէ հայոց մանուկները քաղցր ձայն ունեն եւ լաւ տաղեր երգել գիտեն. մի գիշեր նա հիւր է լինում նորին սրբազնութեան մօտ, տեսնում է այնտեղ մի խումբ մանկահասակ երգիչներ. շատ հաճելի են թւում նրան երգիչները, եւ երբ նորին սրբազնութիւնը նկատում է այդ, պատուիրում է Սիմօն պատուելիին, որ ամեն անգամ, երբ փաշան պահանջելու լինի, նա իր աշակերտներից ամենալաւ երգիչները տանէ նրա մօտ։

— Բայց ի՞նչպէս են համբերում ծնողները։

— Ծնողները աւելի անպիտան են. նրանք մի առանձին պատիւ են համարում, որ իրանց զաւակները զարդարում են փաշայի խնճոյքները։

Արդէն ճաշին մօտ էր, երբ մենք վերադարձանք վարպետ Փանոսի տունը։ Ասլանը իսկոյն առանձնացաւ իր սենեակում։ Վարպետ Փանոսը մտաւ իր գործարանը։ Իսկ ես գնացի այգին միրգ ուտելու։



Դ.

## ՆԱՀԱՆԳԱՊԵՏ ՓԱՇԱՆ

Մի առաւօտ Ասլանը ասաց ինձ, թէ ինքը ժամադիր է եղած գնալ քաղաքը, փաշային ներկայանալու, եւ ցանկանում է ինձ էլ իր հետը տանել: Ես շատ ուրախացայ, որովհետեւ մինչեւ այն օրը, ոչ մի բարձր պաշտօնակալ չէի տեսած:

Փաշան կենում էր քաղաքում, այսինքն բերդի մէջ: Այգեստանից մինչեւ այնտեղ թէեւ շատ հեռու չէր, այսու ամենայնիւ, մենք գնացինք ձիերով: Ձիերը, զարդարուած ասիական շքեղ ասպազէնքով, ուղարկուած էին փաշայի կողմից երկու ղուլամների հետ, որոնք, մեր առջեւը ընկած, տարան մեզ: Թէեւ արգելուած էր քրիստոնեաներին ձիով քաղաքը մտնել, բայց դա մի առանձին պատիւ էր, որ ցոյց էր տալիս նահանգապետը իր քաղաքի նորեկ հիւրին:

Երբ մօտեցանք քաղաքին, նա մի առանձին կախարդական տպաւորութիւն գործեց իմ վրայ. գուցէ այդ այն պատճառով էր, որ առաջին անգամ տեսնում էի մի այնպիսի ընդարձակ մարդկային բնակութիւն:

Քաղաքը գտնվում էր ծովակի ափի մօտ եւ շատ հիանալի տեսարան էր ներկայացնում: Նա շրջապատած էր կրկին պարիսպներով, որոնք ամրացուցած էին բրգաձեւ աշտարակներով, եւ մի խորունկ խրամատ գլխից բոլորում էր քաղաքի շուրջը: Ասլանը բացատրեց ինձ, թէ այդ խրամատը նրա համար է, որ պաշարման ժամանակ լցնում են

ջրով, կամուրջները վեր են առնում, թշնամուն ներս չը թողնելու համար։ Բացի այդ արտաքին ամրութիւններից, քաղաքը ունէր եւ միջնաբերդ, որ բնութիւնը ինքն էր հրաշակերտել։ Քաղաքի հիւսիսային մասում տարածվում էր կէս փարսախ երկարութեամբ մի քարաժայռ, որը հետզհետէ բարձրանալով, սեպաձեւ գիրք էր ընդունում։ Այդ սեպի գլխին, խորին ժամանակներից, վեհանձնաբար նստած էր մի փառաւոր ամրոց։ Հայոց լեգենդական աւանդութիւնը այդ ամրոցը ընծայում էր Ասորեստանի թագուհի Շամիրամին։

Մտնելով քաղաքադռնից, ես մի անբացատրելի սարսուռ զգացի, որ առաջ էր գալիս եւ ուրախութիւնից եւ երկիւղից։ Ամբողջ քաղաքը, կարծես, որոտում էր մի խուլ, ծանր դղրդիւնով։ Ինձ երեւում էր մի հսկայական մրջնանոց, որտեղ փոքրիկ միջատների փոխարէն, խառնուած էին միմեանց հետ ահագին բազմութիւն մարդիկների եւ զանազան անասունների։ Շները ստուար խումբերով, համարձակ վխտում էին ամեն կողմում։ Փողոցներից անցնելու տեղ չը կար։ Ղաւասները մեզ համար ճանապարհ էին բաց անում։ Ամեն կողմից ես նկատում էի մռայլ դէմքեր, որոնք մի առանձին դառնութեամբ նայում էին մեզ վրայ։ Մահմեդականը չէ կարող համբերել, երբ տեսնում է «գաւուրին» փոքր ի շատէ վայելուչ կերպարանքի մէջ։ Այանը մի եւրոպական կօնսուլի կամ դեսպանի պատուորութիւն էր գործում։ Իսկ ես այնօր, նրա պատուիրելով, կրում էի իմ բոլոր զէնքերը. մի զոյգ ատրճանակ կապած էին իմ ձիու թամքի ղաշին, մի զոյգ եւս խրած ունէի գօտիս մէջ. ուսիցս քարշ էր ընկած մի թեթեւ եւրոպական հրացան, իսկ իմ սուրը իր արծաթեայ զարդարանքով կարող էր գրաւել բոլորի ուշադրութիւնը։ Հայերի վրայ եւս, որպէս երեւում

էր, ոչ այնքան հաճելի տպաւորութիւն էր գործում մեր փառքը: Նրանք չէին նախանձվում, այլ վախենում էին՝ չը զայրացնել մահմեդականներին: Իրանց փոքրիկ խանութ-ներում, խորասուզուած զանազան փարչաների մէջ, նրանք զբաղուած էին իրանց արշինով եւ չէին ուզում նայել ան-գամ մեզ վրայ:

Վերջապէս հասանք փաշայի ապարանքը: Դրսից նա այնքան փառահեղ չէր, իսկ ներսից շնչում էր արեւելեան բռնապետի բոլոր շռայլութեամբ: Ջրի շատրուանները գոր-ծում էին, սիրամարգները սիգալով ճեմում էին ծաղկա-զարդ պարտէզների մէջ, սեւամորթ եւ սպիտակամորթ սպասաւորները թիւ չունէին: Մի բարձր աստիճանաւոր ապարանքի գլխաւոր մուտքի առջեւ ընդունեց մեզ: Մենք անցանք մի քանի բակերից, որոնք մինը միւսից աւելի գեղե-ցիկ էին: Խաղացող ջուրը, ծաղիկը եւ կանաչեղէնը, արեւելքյու սիրելիները, կենդանացնում էին բոլոր բակերը մի սքանչելի, սրտապարար շքեղութեամբ: Սենեակների լուսամուտները զարդարած էին գոյնզգոյն ապակիներով, իսկ նրանց պատերի վրայ նկարուած պատկերները ներկայացնում էին զանազան առասպելաբանական աւանդութիւնների գե-ղեցիկ տեսարաններ:

Այդ տերեւների եւ ճոխութեան մէջ ծածկուած բնա-կարանը, որ սովոր էր ամբողջ գիշերները լուսացնել նուագ-ներով, երգերով ու պարերով, — ուր շալերի, մետաքսի եւ գոհարների մէջ հանգչում էին երկրի ամենաընտիր գե-ղեցկուհիները, — այդ սիրոյ եւ վայելչութեան դրախտը էր, միեւնոյն ժամանակ, մի դժոխք՝ լի սոսկումով եւ արտասու-քով: Նրա ներքին յարկի ստորերկրեայ զնդաններում հե-ծում էին հարիւրաւոր բանդարկեալներ: Վերեւում, շքեղ դահլիճների մէջ, նուագներ էին հնչում, իսկ ներքեւում,

մթին նկուղների մէջ՝ — որոտում էին այդ թշուառների շղթաները։ Նրա ծաղկազարդ բակերի մարմարեայ սալայատակը ոչ սակաւ անգամ սրսկուած է եղել անմեղ զոհերի արիւնով, եւ նրա գեղեցիկ, սաղարթախիտ ծառերը ոչ սակաւ անգամ կախաղանի պաշտօն են կատարել... Այդ բոլորը կատարուել է խուլ պարիսպների մէջ, լուսնի լոյսի ներքոյ, եւ աւազանների խաղաղ հայելին ցոլացրել է իր մէջ եղեռնական գործողութիւնների սոսկալի պատկերները... Դրսի աշխարհը երբէք տեղեկութիւն չէ ունեցել, թէ ի՛նչ է կատարուել ներսում... Սէրը, ուրախութիւնը, զեխութիւնը միշտ թագաւորել է այստեղ գազանային անգթութեան հետ...

Երեխայութիւնից ես սովորած էի սարսափել, դողալ մեծ մարդերի առջեւ, այդ պատճառով մինչեւ փաշային ներկայանալը, ինձանում սիրտ չէր մնացել։ Ալանը նկատեց իմ երկչոտութիւնը եւ, մի կողմից յանդիմանելով, միւս կողմից խրախուսելով, ասաց. «Դու տակաւին ստրկահոգութեան մէջ ես մնացել, ի՞նչու ես շփոթվում, միթէ նա էլ քեզ նման մարդ չէ՞, միթէ ահեղ Աստուծոյ առջեւ պիտի դուրս գայ»... Ես փոքր ինչ հոգի առայ, աւելի ամաչելուց, քան թէ քաջալերութիւն ստանալուց։

Փաշան, եթէ կարելի է այսպէս կոչել, մի ահագին մսեղէն բլուր էր, հաստ փորով, հաստ գլխով, հաստ ձայնով, մի խօսքով, նրա մէջ ոչինչ նուրբ եւ տաշած բան չը կար։ Նուրբ էր նրա մէջ միայն տաճկական բարձր պաշտօնակալի բնական խելքը, խորամանկութիւնը, կեղծաւորութիւնը, որ նենգաւորութեան էր հասնում։ Նա խիստ քաղաքավարութեամբ ընդունեց մեզ, եւ իր մանկլաւիկների օգնութեամբ, որոնք, նրա աջ եւ ձախ թեւքերից բռնելով, վեր բարձրացրին, կանգնեց եւ, մի քանի քայլ փոխելով, մօտեցաւ բռնեց Ալանի ձեռքը։

— Իմ բախտաւորութեանը չափ չը կայ, — ասաց նա, — որ իմ տան շէմքը արժանանում է ընդունել ձեզ պէս թանգագին հիւրին, պարոն բժշկապետ։

Փաշան Ասլանի աջը չը թողեց իր ձեռքից, տարաւ նրան, նստեցրեց իր մօտ, աջ կողմում։ Ես մնացի ոտքի վրայ կանգնած, դահլճի դռան մօտ։ Գիտէի այդ սովորութիւնը եւ մի քանի անգամ տեսել էի, թէ ինչպէս զինուած ծառաները սպասաւորում են իրանց տիրոջը, հէնց միեւնոյն սենեակում, ուր նա ընդունելութիւն է գտնում մի օտարի մօտ։ Ծառան այդ դէպքում թիկնապահ է, մի քաջ վերահսկող է, որ, ձեռքը իր սրի կոթի վրայ դրած, ամենայն զգուշութեամբ նայում է իր տիրոջ վրայ։ Երբ նրա կեանքին մի որ եւ իցէ վտանգ է սպառնում, նա պահապան հրեշտակի նման օգնութեան է հասնում։ Ես այդ դիրքն էի բռնել։

Փաշայի առաջին խօսակցութիւնը այնաստիճան քաղցր, սահուն եւ գրաւիչ էր, կարծես, մի շաբաթ առաջ սերտել էր այն ջերմ, սրտից բղխած խօսքերը։ Բայց ոչ թէ մի շաբաթ առաջ, այլ իր ամբողջ կեանքում նա սերտել էր այդ խօսքերը։ Օտար երկրացու մօտ այդ հրէշները վերին աստիճանի բարի եւ քաղաքավարի են, իսկ իրանցների մօտ — մի խստասիրտ գազան։

Յետոյ խօսակցութիւնը ձեւականից աւելի սովորական դարձաւ. խօսում էր նա, ինչ որ առ հասարակ խօսում են մի ճանապարհորդի հետ, այն եւս եւրոպացի ճանապարհորդի հետ։

— Հանգի՞ստ անցաւ ձեզ ճանապարհորդութիւնը, պարոն բժշկապետ, — հարցնում էր նա։ — Յոյս ունեմ, մի որ եւ իցէ անախորժութիւն պատահած չը լինի ձեզ հետ։

— Առանձին ոչինչ չէ պատահել, ամեն տեղ սիրալի ընդունելութիւն էի գտնում, պատասխանում էր Ասլանը։

— Ուրիշ կերպ չէր կարող լինել։ Նա ինձ բոլորովին անպատուած կը համարէի, եթէ իմ կառավարութեանը յանձնուած երկրում դուք մի ամենաթեթեւ նեղութիւն անգամ կրած լինէիք։ Եւրոպացիք առհասարակ խիստ աննպաստ կարծիք ունեն մեր երկրի մասին, համարում են վայրենիների աշխարհ, ուր գլխի մազերից օգուտ քաղելու համար, մարդկանց կառափներ են կտրում։ Մենք շատ ուրախ ենք լինում, երբ երբեմն մեր կողմերում հանդիպում են եւրոպացի ճանապարհորդներ, գոնէ այդ կարծիքը մասամբ կը փարատէին մեր մասին։

— Եւրոպացի ճանապարհորդներից ոմանք շատ լաւ կարծիքներ են յայտնել ձեր երկրի մասին, — նկատեց Ասլանը։

— Արդարութիւնն էլ այդպէս է պահանջում։ Այդ գոնէ առիթ կը տար եւրոպացիներին չը վախենալ մեր երկրից, եւ մենք աւելի յաճախ յարաբերութիւններ կունենայինք միմեանց հետ, եւ մեր երկրի քաղաքակրթութիւնը աւելի եւ աւելի կը ծաղկէր։ Իրաւ է, երբեմն մասնաւոր անկարգութիւններ պատահել են (որտեղ չեն պատահում նրանք) բայց այդ եղել է աւելի հին ժամանակներում։ Իմ կողմից կատարեալ անհամեստութիւն կը լինէր, պարոն բժշկապետ, իմ բերնով ձեզ ասել, դուք կարող էք այդ եւ ուրիշներից տեղեկանալ, որ այն օրից, երբ ես ոտք կոխեցի այդ երկրի վրայ, գայլն ու գառը միասին են ապրում, որպէս երկու հարազատ եղբայրներ։

— Այդ ես տեսայ… ասաց Ասլանը ժպտելով։

Այդ միջոցում ներս մտաւ մի լաւ հագնուած մանկլաւիկ, մի ձեռքում բռնած ունէր արծաթեայ փոքրիկ սրճամանը, միւս ձեռքում՝ մի գեղեցիկ արծաթեայ մատուցարան, որի վրայ դրած էին երկու չինէական հիանալի Ֆին-

*ջաններ, նոյնպէս արծաթեայ տակերի մէջ: Նա, տեղային սովորութեան համեմատ, լցրեց ֆինջաններից մէկը, նախ տուեց փաշային: Իսկ փաշան, իր հիւրին առանձնապէս պատուելու համար, իր ստացած ֆինջանը իր ձեռքով տուեց նրան, և Ալանը շնորհակալութեամբ ընդունեց: Փաշան վեր առեց երկրորդ ֆինջանը:*

*Մանկլաւիկը սենեակից դուրս գալու ժամանակ լռութեամբ անցաւ իմ մօտից և թեւքով կամաց իմ կողքին բօթեց. դա արդէն նշան էր, որ ես դուրս գամ նախասենեակը, որ ինձ էլ ղահուէ խմցնէ: Բայց ես չը շարժուեցայ իմ տեղից: Այդ շատ զարմացրեց նրան:*

*Ղահուէից յետոյ, մի այլ մանկլաւիկ, աւելի լաւ հագնուած, նարգիլէ ներս բերեց, որը իր գեղեցկութեամբ բոլորովին ապշեցրեց ինձ: Նրա գլուխը, որի մէջ թամբաքու և կրակ էին դրած, շինուած էր զուտ ոսկուց և զարդարած թանգագին քարերով. օձապտոյտ “բուլղարի„ ծայրը շինուած էր մի թզաչափ երկարութեամբ դեղին սաթից, որ նոյնպէս բռնուած էր ոսկու մէջ: Նարգիլէի տակը, որի մէջ ջուր էր ածած, շինուած էր ադամանդի նման փայլուն բիւրեղից, որ զարդարած էր գոյնզգոյն ծաղիկներով: Փաշան նարգիլէի վերաբերութեամբ նոյն քաղաքավարութիւնը գործ դրեց, ինչ որ ցոյց տուեց ղահուէի ժամանակ, այսինքն նախ ինքը ընդունեց սպասաւորից, յետոյ իր ձեռքով առաջարկեց Ալանին:*

*— Դուք արդէն փոքր ի շատէ ընտելացել էք մեր սովորութիւններին, — ծիծաղելով նկատեց փաշան: — Ի՞նչպէս է թւում ձեզ մեր նարգիլէն:*

*— Ես խիստ ախորժանօք ծխում եմ, — պատասխանեց Ալանը: — Պօլսում սովորեցի:*

Ղահուէն եւ Նարգիլէն ընդհատեցին սկսուած խօսակցութիւնը։ Փաշան, կամենալով շարունակել այն, վարպետութեամբ հարցրեց.

— Հա, մոռացայ, ի՞նչ բանի վրայ էինք խօսում։

— Դուք ասում էիք, որ հիմա գառն ու գայլը միասին են ապրում...

— Այո՛, հէնց այստեղ ընդհատուեցաւ մեր խօսակցութիւնը։ — Որովհետեւ սիրտս լցուած է, թոյլ տուեցէք ինձ, պարոն բժշկապետ, փոքր ինչ շատախօս լինել։ Եւրոպան մեզ մեղադրում է մեր անմարդասիրական վարմունքի մասին քրիստոնեաների հետ. իբր թէ նրանք ճնշուած են մեր երկրում, հալածուած են, մի խօսքով, ինչ չարիքների մէջ ասէք, չեն զրպարտում մեզ։ Բայց հաւատացած եղէք, որ քրիստոնեաների վիճակը աւելի լաւ է, քան թէ մահմեդականներինը։ Մեր երկրում ամեն տեղ քրիստոնեաներին առաւելութիւն են տալիս։ Մենք նրանց ազատել ենք շատ պարտաւորութիւններից, որ կատարում են միայն մահմեդականները, օրինակ, զինուորագրութիւնից, որ նրանց շատ ծանր է թւում։ — Ես ինքս առանձին հոգ եմ տանում, իմ կառավարութեանը յանձնուած երկրում, քրիստոնեաների վիճակը բարւոքելու համար, որպէս զի նրանց բեռը աւելի թեթեւ լինի եւ նրանց ապրուստը աւելի ապահով լինի։ Շնորհակալ եմ, որ քրիստոնեաները իրանց կողմից հասկանում են իմ նրանց մատուցած ծառայութիւնները, եւ ամիս չէ անցնում, որ իրանց երախտագիտութիւնը չարտայայտէին, որտեղ որ հարկն է։ Ձեզ այս րոպէիս ցոյց կը տամ, պարոն բժշկապետ, մի նոր հանրագիր, որ պատրաստուած է երկու օրինակ, մէկը Կ. Պօլսի հայոց պատրիարքարանը ուղարկելու համար, միւսը Բարձրագոյն Դուռը ուղարկելու համար։ Դրանց մէջ հայ հասարակութիւնը, հագա-

րաւոր ստորագրութիւններով, յայտնում է իր խորին գոհունակութիւնը իմ կառավարութիւնից եւ, միեւնոյն ժամանակ, ցոյց է տալիս իր բախտաւոր դրութիւնը եւ բարօրութիւնը:

Նա հրամայեց սպասաւորին, որ ոտքի վրայ կանգնած էր իր մօտ, բերել իր թղթապահը: Նրա միջից դուրս հանեց մի քանի թերթեր, ծածկուած բազմաթիւ կնիքներով եւ ստորագրութիւններով, որոնց մէջ առաջին տեղը բռնում էր հայոց հոգեւոր առաջնորդի կնիքն ու ստորագրութիւնը, յետոյ դրուած էին զանազան հայ բէկերի, էֆէնդիների եւ նշանաւոր անձինքների ստորագրութիւնները:

Այդ թղթերը ոչ սակաւ զարմացրին թէ Ասլանին եւ թէ ինձ: Բայց երբ վերադարձանք տուն, վարպետ Փանոսը բացատրեց մեզ, թէ որպիսի պղտոր աղբիւրներից էին բղխում այս տեսակ շնորհակալութիւնները...

Փաշան կարծելով, թէ լաւ ազդեցութիւն գործեցին ցոյց տուած թղթերը իր հիւրի վրայ, շարունակեց.

— Մենք շատ պիտի ամաչէինք քաղաքակիրթ եւրոպայի առջեւ, պարոն բժշկապետ, որ այժմեան լուսաւոր դարում՝ մեր երկրում ազգերի եւ կրօնների խտրութիւն լինէր, որ մենք հալածէինք քրիստոնեային, որովհետեւ նա մեր ազգին եւ կրօնին չէր պատկանում: Իրաւ է, որ մեր մահմեդական ժողովուրդը դեռ ոչ բոլորովին թօթափել է վաղեմի նախապաշարմունքը, նա դեռ բաւական մոլեռանդ է մնացել: Բայց ո՞րտեղ չը կայ այդ մոլեռանդութիւնը: Մինչեւ այսօր, լուսաւոր Եւրոպայում անգամ, տեղ-տեղ հալածվում են հրէաները: Իսկ մեր կառավարութիւնը այժմ ամէն ջանքով աշխատում է կրթութեան միջոցով ոչնչացնել ժողովրդի մոլեռանդութիւնը, եւ այդ նպատակով դպրոցների թիւը մեր երկրում օրըստօրէ բազմանում է:

Մենք մինչեւ անգամ հոգ ենք տանում եւ հայոց դպրոցների յառաջադիմութեան մասին: Այգեստանում կայ մի նշանաւոր դպրոց, որը գտնւում է իմ առանձին խնամակալութեան ներքոյ: Ես իմ սեպհական միջոցներից այդ դպրոցի վարժապետին թօշակ եմ տալիս:

— Վարժապետը ի՞նչպէս մարդ է, ընդունա՞կ է իր պաշտօնին, — հարցրեց Ալանը:

— Ամենապատուական մարդ է. մեր քաղաքի հայ գիտնականների մէջ նրան կարելի է առաջինը համարել:

Փաշայի խօսքը Սիմոն պատուելիի եւ նրա դպրոցի մասին էր: Ալանը այնպէս ձեւացրեց իրան, որ ամենեւին տեղեկութիւն չունի այդ դպրոցի մասին:

Խօսակցութիւնը դարձեալ ընդհատուեցաւ, երբ մանկլաւիկների մի խումբ, գեղեցիկ արծաթեայ մատուցարանների վրայ դրած, ներս բերեցին զանազան տեսակ անուշահոտ շէրբէթներ եւ զանազան տեսակ քաղցրաւենիք ու խմորեղէններ, պատրաստուած նուշով եւ հոտաւէտ համեմներով: Փաշան իր ձեռքով ընտրում էր անուշ պատառները եւ առաջարկում էր Ալանին:

— Փորձեցէք այդ “փախլաւայից„, — ասում էր նա, — հայոց առաջնորդը սաստիկ սիրում է այդ “փախլաւան„: Երբ որ նա ինձ մօտ է գալիս, եթէ “փախլաւայ„ չը լինի, անպատճառ դժգոհ կը մնայ:

— Իրաւունք ունի հայոց առաջնորդը, — պատասխանեց Ալանը, — բաւական լաւ է պատրաստած:

— Դուք ծանօ՞թ էք նրա հետ:

— Ոչ, ես դեռ չեմ տեսնուել նրա հետ:

— Անպատճառ պէտք է տեսնուել. ես ձեզ խորհուրդ կը տայի տեսնուել նրա հետ. դուք շատ գոհ կը մնայք. Նա պատուական մարդ է, ամենապատուական մարդ է: Գալ

Վան եւ հայոց առաջնորդին չը տեսնել, — դա միեւնոյն կը լինէր, որպէս գնալ Հռոմ եւ պապին չը տեսնել։

— Ես օգուտ կը քաղեմ ձեր խորհրդից, — ասաց Ասլանը, — առանց հայոց առաջնորդի հետ տեսնուելու, չեմ հեռանայ այդ քաղաքից։

Փաշայի եւ հայոց առաջնորդի բարեկամական յարաբերութիւնները մեզ յայտնի էին. այստեղից բացայայտ էր, թէ ինչու նա յորդորում էր Ասլանին անպատճառ տեսնուել "ամենապատուական մարդու" հետ։ Տարակոյս չը կայ, որ փաշան հաւատացած էր, որ առաջնորդն էլ նոյն վկայութիւնը կը տայ իր մասին, թէ փաշան ամենապատուական մարդ է, եւ եւրոպացի ճանապարհորդի ուղեգրութեան տետրակի մէջ կ'աւելանային մի քանի փայլուն խօսքեր երկրի այդ երկու բարձր ներկայացուցիչների մասին։

Փաշան ինքը մատնեց իրան, ասելով.

— Նա իմ լաւ բարեկամն է եւ իմ եռանդոտ գործակից է իմ բոլոր ձեռնարկութիւնների մէջ։ — Ես կատարեալ սիրահար եմ եւրոպական կրթութեան, պարոն բժշկապետ։ Եթէ ես հրաշագործութեան շնորհ ունենայի, կ'աշխատէի մի քանի վայրկեանի մէջ մեր հայրենիքը Փրանսիա դարձնել։ Բայց դժբախտաբար այդ անկարելի է։ Մենք շատ գործ ունենք կատարելու. մենք շատ յետ ենք մնացել. այժմ ստիպուած ենք թռիչքներ գործելով, առաջ ընթանալ, որ հասնենք լուսաւոր ժողովուրդներին։

Մի թեթեւ ժպիտ երեւաց Ասլանի դէմքի վրայ։

— Ժողովրդի կրթութիւնը կանոնաւոր լինելու համար, — նկատեց նա, — հարկաւոր չէ թռիչքներ գործել, այլ թողնելու է նրան, որ իր բնական ընթացքով առաջ գնայ։ Միայն գլխաւոր պայմանը այն պէտք է լինի, որ ժողովրդի յառաջադիմութեան ղեկը պէտք է ուղիղ ճանապարհի վրայ

գլուխ, որպէս զի նրանից չը շեղուելով, ցանկացած նպատակին հասնի։

— Բոլորովին ճշմարիտ է ձեր նկատողութիւնը, — պատասխանեց փաշան գործագէտ մարդու եղանակով։ — Բայց մեր դժբախտութիւնը նրանումն է, որ մեր առաջաւոր մարդիկը, խիստ սակաւ բացառութեամբ, անբարեխիղճ են։ Քանի՜ անգամ առաջարկել եմ ես մեծ վէզիրին, որ այդ երկրի հարկերի մի մասը յատկացնէ նոյն իսկ այդ երկրի տեղային բարեկարգութիւնների համար գործ դնելու։ Բայց միշտ մերժումն եմ ստացել։ Հազարաւոր բաներ կան շինելու։ Օրինակ, դուք տեսաք մեր ճանապարհները, մեր կամուրջները, մեր ջրանցքները, — այդ բոլորը նորոգելու կարօտ են։ Վաճառականութեան եւ երկրագործութեան անկման բուն պատճառները մեր երկրում՝ պէտք է վատ հաղորդակցութիւնների մէջ որոնել։

Թուրք պաշտօնականները բոլորը լաւ ձեւել գիտեն, բայց կարելու շնորք չունեն։ Զանազան ծրագրներ կազմելու մէջ՝ անհամեմատ ճարպիկ են, իսկ գործադրութեան մէջ՝ անպէտք։ Տուր նրանց փող իրանց կազմած ծրագիրը իրագործելու համար, այդ փողով նախ իրանց գրպանը կը լցնեն։

Եւրոպացու առջեւ ազատամիտ երեւնալ, կրթութեան եւ յառաջադիմութեան սիրահար ձեւանալ՝ — այդ տաճիկ պաշտօնականների խօսակցութեան սովորական ձեւն է — ցոյց տալ, թէ իրանք շատ բարի ցանկութիւններ ունեն ժողովրդի բարօրութեան համար, բայց ի՜նչ արած, որ այս եւ այն անյաջող հանգամանքները արգելք են լինում։

Իր բոլոր դիւանագիտական ճարտարութիւնը գործ դնելուց յետոյ, փաշան կիսապաշտօնական խօսակցութիւններից անցաւ հասարակ խօսակցութեան։ Այժմ խօսում

էր, ինչ որ սովորաբար խօսում են բժշկի հետ. գանգատվում էր, թէ ստամոքսի թուլութիւն ունի, ախորժակը աւերուած է, ոչինչ ուտել չէ կարողանում. գանգատվում էր անքնութիւնից, յօդացաւից. գանգատվում էր մի ինչ-որ երեւակայական հիւանդութեան մասին, որը ոչինչ կերպով բացատրել չէր կարողանում, կամ ամաչում էր, որ պարզն ասէր։

Վերջապէս ասաց նա.

— Ես մանկանալ եմ ցանկանում... մանկացրէք ինձ, պարոն բժշկապետ։ Ասում են, եւրոպացի բժիշկները գիտեն մի դեղ, որ մանկացնում է մարդուն...

— Ի՞նչպէս է մանկացնում, — հարցրեց Ասլանը ժպտելով։

— Ճերմակ մազերը սեւանում են, զառամեալ ծերունին դառնում է առոյգ, տասնեւօթը տարեկան պատանի...

— Ճերմակ մազերը սեւացնելու համար ներկ կայ, բայց ծերունին պատանի դարձնելու դեղը դեռ չէ գտնուած Եւրոպայում։

— Մի այնպիսի դեղ չը կա՞յ, որ փոքր ինչ ուժ տայ... զօրութիւն տայ...

Այդ հարցերի ժամանակ փաշան ներկայանում էր, որպէս իսկական տաճիկ։ Նա, որ իրան զարգացած, կրթուած մարդ էր ձեւացնում, զանազան տնտեսական, հասարակական խնդիրներ էր վճռում, յանկարծ միահաւատութեամբ պահանջում էր այն էլէքսիրը, որով արեւելեան դէրվիշները հրապուրում են իրանց երկրի պետերին։ Բայց Ասլանը քաղաքավարութեամբ նրա պահանջը կանցառութեան տուեց, հարցնելով.

— Ինձ ասացին, որ ձեր որդին առողջ չէ, խնդրեմ հրամայեցէք, որ ինձ տանեն հիւանդի մօտը։

— Ոչ, դուք նեղութիւն մի կրէք, նա այնքան տկար չէ, որ ինքը չը կարողանայ գալ, — ասաց փաշան, երեւի, չը կամենալով, որ բժիշկը կանանոցը մտնէր, ուր այդ ժամանակ գտնվում էր հիւանդը։

Քանի րոպէից յետոյ, մի ներքինի ձեռքիցը բռնած, ներս բերեց մի տասն տարեկան բաւական տկար, բայց շատ սիրուն տղայ, որը ոտքից ցգլուխ հագած ունէր մոյգ-վարդագոյն օսմանեան զգեստ, գեղեցիկ նկարներով նախշած եւ ոսկի թելերով ասեղնագործած։ Երեխան պարբերական ջերմ ու տենդ ունէր։ Ալանը քննեց նրան, մի քանի առողջապահական պատուէրներ տուեց եւ խոստացաւ դեղեր ուղարկել։

Այդ ամբողջ տեսակցութեան ժամանակ, որ տեւեց բաւական երկար, Ալանը երեւաց ինձ իր աշխարհագիտական խորին տաղանդով։ Նա փաշային աւելի խօսել էր տալիս, քան թէ ինքը խօսում էր։ Իր վարուողութեան մէջ մինչ այն աստիճան հրապուրիչ էր, որ ինձ թւում էր, թէ փաշան բոլորովին սիրահարուեցաւ նրա վրայ։ Եւ իրաւ, նա յայտնեց, թէ իրան շատ բախտաւոր կը համարէր, եթէ բժշկապետին միշտ իր մօտ կը տեսնէր. թէ իր տան մէջ նա ամէն յարմարութիւններ կը գտնէր, եթէ բարեհաճէր, քանի որ այդ քաղաքումն էր, իր մօտ բնակուել։ Ալանը շնորհակալութեամբ հրաժարուեցաւ, յայտնելով, թէ դժբախտաբար չէ կարող վայելել Նորին Վսեմութեան շնորհը, որի համար միշտ անմոռանալի կը մնայ, ըստ որում, մի քանի օր միայն դիտաւորութիւն ունի մնալ այդ քաղաքում, եւ խոստացաւ՝ մինչեւ իր դուրս գալը քաղաքից, միշտ այցելել փաշայի մօտ, եւ թէ նրա որդուն, թէ իրա տկարութիւններին դարման տանել։

— Ինչո՞ւ էք այդքան շտապում, պարոն բժշկապետ, — հարցրեց փաշան։

— Ինձ հարկաւոր է մի երկու ամսից յետոյ անպատ-ճառ Հնդկաստանում լինել: Ժամանակ կորցնել չեմ կարող: Ես այս քաղաքով անցայ, միայն այն նպատակով, որ տեսնեմ մի քանի հնութիւններ: Այստեղից ուղղակի Մուսուլ գնալու դիտաւորութիւն ունեմ. ինձ այնտեղ հետաքրքրում են հին Նինուէի աւերակները: Այնտեղից Բաղդատ պէտք է անցնեմ, Բաբելոնը տեսնելու համար: Յետոյ նաւով կ'ուղեւորուեմ դէպի Հնդկաստան:

— Մեր քաղաքում բաւական հնութիւններ կան, որոնք դեռ հետազօտուած չեն, — ասաց փաշան: — Շատ լաւ էք մտածել, որ ձեր ճանապարհորդութեան մէջ մեր քաղաքը զանցառութեան չէք տուել:

— Ինձ աւելի հետաքրքրում են սեպաձեւ արձանա-գրութիւնները, որոնցով, կարծեմ, շատ հարուստ է Վանը:

— Այո, այո, հարուստ է: Ես կը տամ ձեզ մի առաջ-նորդ, որը ձեզ ամեն տեղ ման կ'ածէ եւ ամեն ինչ ցոյց կը տայ. կը տանէ եւ միջնաբերդը, որտեղ շատ կը գտնէք յի-շեալ արձանագրութիւններից:

Ալանը իր խօսակցութիւնը բեւեռաձեւ արձանագրու-թիւնների վրայ դարձնելու նպատակն էլ հէնց այդ էր, որ միջնաբերդը տեսնէ: Այդ պատճառով երբ որ լսեց փաշայի վերջին խօսքերը, մեծ շնորհակալութիւն յայտնեց, եւ վերկացաւ: Փաշան նոյնպէս վերկացաւ, նրան ճանապարհ դրեց մինչեւ սենեակի դուռը, եւ բաժանուելու միջոցին, հարիւրաւոր շողոքորթութիւններով հեղեղեց իր "Թանգա-գին" հիւրին...

Նոյն կերպով, նոյն հանդէսով, որպէս ղաւաղները մեզ բերել էին փաշայի ապարանքը, դարձեալ նոյն պատուով մեզ տարան Այգեստան, մինչեւ վարպետ Փանոսի տունը:

Ասլանը գրեց ղաւազների իւրաքանչիւրի ափի մէջ մի-մի ոսկի, եւ նրանք շնորհակալութեամբ հեռացան։

Մտնելով մեզ համար պատրաստուած սենեակը, Ասլանը ծիծաղելով իր գլխարկը մի կողմ ձգեց եւ, գլուխը զարմացած կերպով շարժելով, կանգնեց սենեակի մէջ տեղում եւ, դառնալով դէպի ինձ, ասաց.

— Խելացի մարդիկ են... խելացի... գիտեն իրանց գործը... Եթէ ես իսկապէս եւրոպացի լինէի, եթէ չը ճանաչէի այդ անպիտաններին, անպատճառ հիացած կը մնայի այդ մարդուց։

Նրա խօսքը փաշայի մասին էր։ Ներս մտաւ վարպետ Փանոսը եւ անհամբերութեամբ հարցրեց, թէ ի՞նչպէս անցաւ նրա այցելութիւնը։ Ասլանը համառօտ կերպով պատմեց բոլորը եւ ապա աւելացրեց.

— Եթէ դուք գիտենայիք եւրոպական լեզուներ, եթէ դուք կարդայիք, թէ ի՛նչ են գրում եւրոպացի ճանապարհորդները Թուրք ժողովրդի եւ Թուրք պաշտօնեաների մասին, դուք այդ ճանապարհորդներին կատարեալ խելագարի տեղ կը դնէիք։ Նրանց նկարագրութիւնների մէջ՝ Թուրք ժողովուրդը բարի է, աշխատասէր է, յառաջադիմութեան ընդունակ է. — Նրանց նկարագրութիւնների մէջ՝ Թուրք պաշտօնեան, Թուրք աստիճանաւորը ազնիւ է, մեծահոգի է, գեղեցիկ ձգտումներ ունի, հիւրասէր է, առատաձեռն է, մի խօսքով, հիացած են նրանցով եւ ամեն լաւ յատկութիւններ վերաբերում են այդ հրէշներին։ Ի՞նչից է առաջ գալիս այդ հիացումը։ Երեւակայեցէք, մի անյայտ եւրոպացի, որին իր երկրում ոչ ոք մարդու տեղ չէ դնում, որի հետ իր երկրի ամենայետին հիւրանոցում սպասաւորը իրան թոյլ կը տայ կոպտութեամբ վարուել, յանկարծ մի այսպիսի մարդու խելքին փչում է՝ արեւելքում

ճանապարհորդութիւններ անել։ Նրա եւրոպացի լինելը բաւական է, որ նրան ամէն տեղ լաւ ընդունէին, որովհետեւ նա այս եւ այն մեծ պետութեան քաղաքացին է։ Այսու ամենայնիւ, նա զինուած է լինում զանազան յանձնարարական թղթերով, որ ստանում է իր դեսպանի կամ հիւպատոսների շնորհիւ։ Եթէ նրա հետ վատ կը վարուեն, նրա պետութեան դեսպանը կամ հիւպատոսները սաստիկ պահանջել գիտեն։ Իր երկրում մի այսպիսի անձին դուցէ ժամերով սպասել կը տային մի որեւիցէ իշխանի կամ հասարակ պաշտօնականի նախասենեակում։ Բայց Ասիայում ամենանշանաւոր անձանց դռները բաց են նրա համար, որովհետեւ եւրոպացի է եւ ճանապարհորդ, կարող է վատ խօսել, կարող է վատ գրել նրանց մասին։ Ամեն տեղ սիրալիր ընդունելութիւն, պատրաստակամութիւն եւ յարմարութիւններ է գտնում։ Նա կարծում է, որ այդ մարդիկը բնականապէս բարի են, ազնիւ են, մեծահոգի են, բայց չը գիտէ, որ նրանք նոյն իսկ դժբախտ Շուլցի գլուխը կտրողներն են, միայն այժմեան հանգամանքները ստիպել են նրանց այլապէս վարուել։ Իր տեղեկութիւնները երկրի տնտեսական եւ հասարակական դրութեան մասին՝ քաղում է նա իր հիւրնկալի պատմութիւնից։ Նրա սեղանի մօտ նստած ժամանակ, նրա բարերար ազդեցութեան ներքոյ, գրում է նա իր յիշատակարանը։ Իսկ այն սեղանը, որ իր կեանքում նա երբէք չէ տեսել, այնքան ձոխ է, այնքան հրապուրիչ է, որ բոլորովին շլացնում է, խելքից հանում է նրան։ Նա իր հիւրնկալից ստացած սուտ ու սխալ տեղեկութիւնները՝ նոյն ախորժակով է զետեղում իր ճանապարհորդական յիշատակարանի մէջ, — ինչ ախորժակով որ խմում է նրա անուշահոտ շէրբէթները, կամ ինչ ագահութեամբ որ զետեղում է իր փորում նրա լաւ պատրաստած “փախլաւան„։ Իսկ այդ սուտ ու սխալ

տեղեկութիւնները, որոնք, ի հարկէ, ի նպաստ մահմեդականներին են լինում, եթէ մի օր տպագրութեամբ լոյս են տեսնում, սաստիկ ազդում են եւրոպացիների հասարակական կարծիքի վրայ։ Եւ այդպէս, եւրոպացի ճանապարհորդը, միայն արտաքին հրապուրիչ կեղեւից դատելով, առանց միջուկը քննելու, ինքը սխալ գաղափարներ է կազմում եւ մոլորեցնում է իր հայրենակիցներին։ Դիցուք թէ ճանապարհորդը շրջանկատ, խորագնին, անաչառ եւ բարեխիղճ մէկը լինէր, բայց ի՞նչ կարող է նկատել նա իր շուտափոյթ, անցողական ճանապարհորդութեան մէջ, միայն թեթեւ հայեացքներ ձգելով, մանաւանդ երբ նրա առաջնորդները այդպիսի փաշաներ կամ դրանց նմանները կը լինեն։ Մի ժողովրդի դրութիւնը լաւ հետազօտելու համար, պէտք է գիտել իրան ժողովրդին եւ ոչ թէ նրա կառավարիչներին։

— Եղեռնագործը սովորում է ինքն իր անձի փաստաբանը լինել, — շարունակեց նա։ — Այդ մարդիկը, սկսեալ առաջին վէզիրից, մինչեւ վերջին զափթիան, շատ լաւ գիտեն իրանց յանցանքները, եւ այդ պատճառով նրանց լեզւում կազմուել է մի ամբողջ մշակուած ճառ իրանց արդարացնելու համար։ Մի այդպիսի ճառ ես այսօր լսեցի ինձ ամենայն քաղաքավարութեամբ հիւրասիրող փաշայի բերանից։ Նրան չէ կարելի յիմար կոչել, ընդհակառակն, նա ինձ բաւական խելացի երեւաց։ Ես ներկայացայ նրան որպէս եւրոպացի եւ ճանապարհորդ։ Այդպէս էլ նա ընդունեց ինձ։ Նա գիտէր, թէ ի՞նչ կարծիք, ի՞նչ նախապաշարմունքներ կարող էր ունենալ մի եւրոպացի նրա մասին, նա գիտէր, թէ ի՞նչ է պահանջում նրանից, որպէս մի երկրի գլխաւոր կառավարչից, այժմեան քաղաքակրթութիւնը. նա գիտէր եւ իր երկրի անկարգութիւնները, — այդ բոլորը շատ լաւ գիտէր նա, եւ այդ նկատումներով, իր բոլոր խօսակցու-

թիւնը ճարտարութեամբ այնպէս էր դարձնում, որ ինքը եւ իր կառավարութիւնը ընդհանուր ցեխի միջից մաքուր դուրս գան։ Եթէ այդ բոլորը ինձ յայտնի չը լինէր, եթէ ես մի միամիտ եւրոպացի ճանապարհորդ լինէի, անտարակոյս, շատ լաւ գաղափար կը կազմէի այդ մարդու եւ նրա կառավարութեան մասին։

— Այդ մարդիկը, — առաջ տարաւ նա, — դրաւելու եւ իրանց լաւ ցոյց տալու զարմանալի շնորհք ունեն։ Մինչեւ անգամ բարբարոս քուրդ ցեղապետը շնորհք ունի հիացընելու միամիտ եւրոպացուն, երբ պատահում է նրան հիւրասիրուել այդ աւազակի վրանում։ Բայց ի՞նչ բարոյական նշանակութիւն ունի մի ասիական բռնապետի հիւրասիրութիւնը, երբ նրա հացը իր զոհերի արիւնովն է շաղախուած, երբ կերակրում է նա իր հիւրին այն կողոպուտներով, որ յափշտակել էր հարիւրաւոր թշուառներից։ Մեր դժբախտութիւնը նրանում է, որ այդ բոլորը այդպէս լինելուց յետոյ, իսկութիւնը, բուն իրողութիւնը — մեր վիճակի դառն ճշմարտութիւնները դառնում են տարակուսական, եւ եւրոպացիք դժուարանում են մեզ հաւատալ, երբ մեր բողոքն ու դժգոհութիւնները ներկայացնում ենք նրանց։ Բայց մեզ համար մեծ նշանակութիւն ունի Եւրոպայի հասարակական կարծիքը։ Ի հարկէ, մենք չէինք ցանկանայ մահմեդականների նման խաբել նրանց, բայց կը ցանկանայինք, որ նրանք լաւ հասկանային մեր դրութիւնը...

Ասլանը բնաւորութեամբ լռութիւն սիրող էր, բայց երբ տաքանում էր, երբ սկսում էր խօսել, խօսում էր շատ երկար։ Այդ միջոցին անկարելի էր ընդմիջել նրան, պէտք էր թող տալ, որ նա իր ասելիքը վերջացնէ։ Այնօրուայ այցելութիւնը նրա վրայ խիստ անախորժ տպաւորութիւն էր թողել։ Չը նայելով, որ արդէն ճաշի ժամանակ

էր, վարպետ Փանոսն անգամ մի առանձին հետաքրքրութեամբ լսում էր նրան, եւ չէր կամենում խանգարել նրա խօսակցութիւնը, պատուիրելով, որ ճաշի սեղանը պատրաստեն։ Նա շարունակեց.

— Որքան մանհմեդական ժողովրդի ներկայացուցիչները շնորհալի են օտարներին գրաւելու մէջ, այնքան մերոնք կոպիտ եւ անշնորհք են։ Երբ որ եւրոպացին նրա դուռը կը բախէ, նա կամ իր դուռը կը փակէ նրա առջեւ, կամ եթէ ներս կ'ընդունէ եւ մի կտոր հաց կը տայ, անպատճառ կ'աշխատէ իր անվերջ տրտունջներով, իր լաց ու կոծով ձանձրացնել իր հիւրին։ Հայը իր դատը մարդավարի կերպով պաշտպանելու ընդունակութիւն չունի։ Դարեւոր ստրկութիւնը սովորացրել է նրան վիզը ծռել եւ խնդրել։ Նա չէ կարող իր դժգոհութիւնը յայտնել, առանց ստորացնելու իր անձնաւորութիւնը։ Նա կամ այդպէս կը վարուէ, կամ բոլորովին կը լռէ, ամեն ինչ թողնելով Նախախնամութեան կամքին։

— Եւրոպացին, ճանապարհորդելով արեւելքում, բատ մեծի մասին թողնում է, անցնում է գիւղերը եւ կանգ է առնում միայն քաղաքներում։ Եւ որովհետեւ քաղաքներում օրինաւոր հիւրանոցներ չը կան, այլ կան միայն կեղտոտ քարվանսարաներ, այդ պատճառով նա օթեւան է որոնում մասնաւոր տներում։ Թուրք կառավարիչները, որպէս յիշեցի, մեծ ուրախութեամբ ընդունում են նրանց իրանց յարկի տակ։ Նա չէ մտնում հայ գիւղացու, հայ արհեստաւորի տունը, որոնք իրանց սիրտը, հոգին եւ ամեն ինչ դնում են Աստուծոյ հիւրի առջեւ, որոնք իրանց նահապետական պարզութեամբ կարող էին հիացնել ամեն մի օտարականին։ Եթէ պատահում է եւրոպացուն մի հայի տուն մտնել, անպատճառ դա կամ աղքատի ծառայող կը

լինէր, կամ մի կապալառու եւ կամ մի հարուստ վաճառական։ Ծառայողը, կապալառուն, վատ չէր խօսի այն կառավարութեան մասին, որից ինքը հաց է ստանում։ Իսկ վաճառականը ամեն ազգի մէջ՝ ըստ մեծի մասին եսական է, անտարբեր է դէպի հասարակաց թշուառութիւնները։ Ցաւալին այն է, որ եւրոպացիները միշտ հայ վաճառականների են հանդիպել, եւ նրանց գլխում մեխի պէս ցցուել է այն սխալ կարծիքը, թէ հայոց ազգը բաղկացած է ամբողջապէս վաճառականներից։ Այդ մեխը մինչեւ այսօր անհնար է եղել դուրս քաշել։ Այդ է գլխաւոր պատճառը, որ մեր ազգը համեմատում են հրէաների հետ եւ շատ նման են գտնում։ Դեռ եւս չը գիտեն, որ արեւելքում, ուր որ հայեր են բնակվում, արհեստը եւ երկրագործութիւնը գլխաւորապէս նրանց ձեռքումն է, չը գիտեն, որ այդ աշխատասէր հայերն են, որ ճնշուած են, հարստահարուած են, եւ իրանց վաստակով կերակրում են իրանց անյագ նեղիչներին։



Ե.

## ՀՆԱԳԻՏԱԿԱՆ ՀԵՏԱԶՕՏՈՒԹԻՒՆՆԵՐ

*Միւս օրը մենք անհամբերութեամբ սպասում էինք առաջնորդին, որ խոստացել էր փաշան ուղարկել մեզ, քաղաքի մէջ եւ նրա շրջակայքում գտնուած հնութիւնները ցոյց տալու համար։ Չը գիտեմ ինչ պատճառով վարպետ Փանոսը հակառակ էր այդ արշաւանքին։ Բայց Ասլանը պնդում էր, թէ ինչ էլ որ պատահելու լինի, անպատճառ պիտի գնայ։*

*Վերջապէս յայտնուեցաւ առաջնորդը, իր հետ բերելով նախորդ օրուայ երկու ղաւազներին եւ երկու ձիաներ, որ փաշայի ախոռատան ամենաընտիր նժոյգներից էին, ուղարկել էր մեզ, հեծնելու համար։ Վարպետ Փանոսը ճանաչեց առաջնորդին։ Դա մի աստիճանաւոր էր, որ փաշայի մօտ քարտուղարի պաշտօն էր կատարում, եւ յայտնի էր, որպէս ուսումնական մարդ։ Նա դեռ երիտասարդ էր, ուրախ, զուարթ եւ, որպէս ակնարկեց մեզ վարպետը, թուրք ծառայողների սովորութեան համեմատ, օղիի կատարեալ սիրահար էր։ Գուցէ այդ էր պատճառը, որ նախաճաշիկի ժամանակ վարպետ Փանոսը առանձին ուշադրութիւն էր դարձնում նրա խմելու վրայ եւ աշխատում էր, որքան կարելի էր, գոհացնել նրան։ Օրից մի քանի ժամ անցած էր, երբ մենք ճանապարհ ընկանք։*

*Հասնելով հսկայ քարաժայռի ստորոտը, որի բարձրութեան վրայ նստած էր բերդը, մենք ցած իջանք ձիերից եւ*

սկսեցինք քարէ մաշուած սանդուղքներով դէպի վեր բարձրանալ: Սարսափելի ճնշող տպաւորութիւն էր գործում այդ բերդը իմ վրայ: Նրա ահաւորութեան առջեւ մարդ, կարծես, մանրանում էր, փոքրանում էր, եւ կորցնում էր իր բոլոր քաջութիւնը: Չը գիտեմ ի՞նչ էր պատճառը. արդեօք այն, որ իմ առջեւ ներկայանում էր մի պատկառելի հնութիւն, թէ այն, որ այդ լուռ, խորախորհուրդ քարաժայռը պահել էր իր սրտի մէջ խիստ տխուր յիշատակներ մեր պատմական անցեալից:

Ալանը չը կամեցաւ իսկոյն բերդը մտնել, սկսեց նախ նրա շրջակայքը հետազօտել: Ամեն տեղ երեւում էին հնութեան հետաքրքիր մնացորդներ, ամեն տեղ քարերի ճակատին տեսնում էինք բազմատող բեւեռագրեր: Երբ նրանց մասին հարցրի Ալանից, նա խիստ անփոյթ կերպով պատասխանեց. “ինձ չեն հետաքրքրում այդ մեռած տառերը„... Ուրեմն ի՞նչ էր հետաքրքրում նրան, ի՞նչ էր որոնում նա այն ամայի քարափների մէջ, այնքան խորին ուշադրութեամբ: Նա մի բան որոնում էր, որովհետեւ ես շատ անգամ նկատում էի, իր յիշողութեան գրքոյկը հանում էր ծոցից եւ մի բան գրում էր նրա վրայ:

Մեր առաջնորդը, որին իբրեւ զարգացած մարդ, եւ մանաւանդ իբրեւ հնագէտ, փաշան դրել էր մեզ հետ, որ ցոյց տար հնութիւնները եւ բացատրէր մեզ նրանց նշանակութիւնը, — այդ երիտասարդ թուրք գիտնականը անդադար Ալանի ուշադրութիւնը դարձնում էր այս եւ այն առարկայի վրայ եւ իր յոգնեցուցիչ շատախօսութեամբ աւելի խանգարում էր նրան, քան թէ օգնում էր: — “Նայեցէք այդ ծակին, — նա ցոյց էր տալիս մի վիրապի բաւական լայն բերանը, — դա իջնում է ցած եւ ցած, մինչեւ երկրի խորքերը, յետոյ ստորերկրեայ ոլոր-մոլոր ճա-

նապարհներով հասնում է մինչեւ ծովակի յատակը։ Այնտեղ բացվում է մի ոսկեայ դուռ եւ մարդուն ներս է տանում բիւրեղեայ հրաշալի ապարանքի մէջ։ Այնտեղ մարջանի (բուստի) մշտադալար ծառերի ներքոյ ճեմում են յաւերժական հուրիներ, փէրիներ, աւելի պայծառ, քան նոր ծագող արեգակը իր վարդակարմիր ճառագայթներով։ Այնտեղ "հազարան բուլբուլը" կերակրվում է մարգարիտներով. եւ փղոսկրեայ վանդակի մէջ, ամեն մի րոպէում փոխում է հազարաւոր եղանակներ, հազարաւոր նուագներով։ Նրա երգի ձայնից անուշահոտ վարդենիները գտնվում են մշտական զմայլմունքի մէջ։ Այնտեղ արարածները չեն ծերանում, այլ վայելում են յաւերժական սէր եւ մանկութիւն։ Բայց բիւրեղեայ ապարանքի ոսկեայ դուռը ամենի առջեւ չէ բացվում, որովհետեւ նա կախարդուած է եւ խորհրդաւոր թիլիսման ունի։ Մի ծերունի դէրվիշ, որ աչքով տեսել է այդ բոլորը, խոստացել է տալ ինձ այդ թիլիսմանը"։

Ալանը ժպտաց թուրք հնագէտի միամտութեան վրայ։ Նրա ցոյց տուած հորը ուրիշ ոչինչ չէր, եթէ ոչ, այն հին, ստորերկրեայ անցքերից մէկը, որ մի ժամանակ ծառայել է կամ որպէս փախուստի ճանապարհ, կամ հաղորդակցութիւն է ունեցել ուրիշ ամրութիւնների հետ, որոնք շատ հեռու չեն բերդից։ Այս տեսակ հորեր շատ էին երեւում։ Կարծես, քարափի մթին խորքերում մի հսկայական մրջնանոց լինէր իր բազմաթիւ խորշերով եւ իր բազմաթիւ խոռոչներով, ուր մարդիկ երբեմն գործել են։ Բայց իմ ուշադրութիւնը գրաւեցին երեսունից աւելի մեծ եւ փոքր այրեր ու ընդարձակ քարանձաւներ, որոնք նոյնպէս փորուած էին քարափի մէջ, որոնց մի քանիսի մէջ մենք կարողացանք ներս մտնել։ Նրանց վրայ երեւում էր ժամա-

նակի արհեստն ու ճարտարութիւնը, եւ շատերը նրանցից զարդարած էին սեպաձեւ արձանագրութիւններով:

— Աւանդութիւնը, — ասաց Ասլանը, — այս բերդը եւ այս այրերը Շամիրամին է ընծայում, որպէս թէ Նինուէացի թագուհու գանձատունը, մթերանոցները, պահեստի տեղերը եւ բաղանիքները լինէին: Իսկ այդ բոլորը աւելի հին է, քան թէ Շամիրամը, թէեւ մեր ծերունի Խորենացին հնագիտական միամտութեամբ նոյնպէս նրան է ընծայում:

— Ի՞նչ է ասում Խորենացին, — հարցրի ես խորին հետաքրքրութեամբ:

Կարծես, Ասլանը Խորենացու գիրքը այնպէս սերտած լինէր, որպէս ես Սաղմոսը. Նա անգիր կարդաց պատմութիւնից այն տեղը, որ այդ բերդին էր վերաբերում, յետոյ աշխարհաբար թարգմանեց ինձ.

— "Իսկ անձաւի արեւահայեաց կողմը, այնպիսի նիւթի կարծրութեան մէջ, ուր մէկը այժմ եւ ոչ մի գիծ երկաթով փորել կարող է, (Շամիրամը) պէս պէս տաճարներ, օթեւանների սենեակներ, գանձերի տներ, եւ երկար այրեր հրաշակերտեց, յայտնի չէ ինչ բաների պատրաստութեան համար: Բայց քարի ամբողջ երեսի վրայ, որպէս գրիչով մոմը հարթելով, շատ գրեր արձանագրեց, որոնց վրայ նայելն միայն զարմանք է բերում":

Որքան ուղիղ էր Խորենացու կարծիքը, ես այդ դատել չէի կարող, միայն տեսնում էի, որ նրա ասածները բոլորը կային: Բայց Ասլանը ասում էր, թէ այս ամենը այն ամենահին ժամանակներից են մնացել, երբ մարդիկ տուներ չէին շինում, երբ նրանք այրերի մէջ էին բնակվում: Այդ իմ խելքին նստում էր, որովհետեւ տեսնում էի, այրերից շատերը այնքան ահագին մեծութիւն ունէին, որ կարող էին ամբողջ ընտանիքների բնակութեանը յարմարուել:

Բերդի շրջակայքը մեն գալուց յետոյ, մենք մտանք բուն բերդի մէջ։ Այդ անմատչելի ամրոցը, որպէս ասեցի, նստած է ժայռոտ քարափի գլխին, որը ուղղաձիգ բարձրութեամբ քաշուած է դէպի երկինք, եւ այնտեղից ահռելի կերպով հսկում է ամբողջ քաղաքի վրայ։ Դէպի ամեն կողմ, ուր եւ հայեացք ես ձգում, դարձեալ երեւում են արձանագրութիւններ, որոնք լուռ եւ անբարբառ նայում են մարդու երեսին, կարծես, ասել են ուզում. "մենք միշտ կը մնանք անվերծանելի եւ երբէք չի պիտի երեւան հանենք հնութեան գաղտնիքը"...

Ասլանը պտըտելով բերդի մէջ, որպէս նկատում էի ես, արձանագրութիւնների եւ այլ հնութիւնների վրայ միայն հարեւանցի նայելով էր անցնում, աւելի ցոյց տալու համար, թէ նրանցով հետաքրքրվում է։ Իսկ մեր երիտասարդ առաջնորդը, ոգեւորուած էր առասպելական պատմութիւններով, ամենեւին չէր նկատում, թէ իր պատմութիւնները որքան նշանակութիւն ունէին նրա համար։ Նա անընդհատ խօսում էր։ Բայց իմ նկատողութիւնից չէր կարող վրիպել այն խորին ուշադրութիւնը, որով Ասլանը քննում էր ամրոցի մթերանոցները, պահեստի տեղերը, որ լցուած էին վառօդով եւ զանազան զէնքերով, զինուորների օթեւանները, եւ այն վաղեմի, ժանգոտած թնդանօթները, որոնք իրանց բերանները դարձրած դէպի քաղաքը, պահպանում էին նրան մշտական երկիւղի ներքոյ։ Այդ թնդանօթներով մի ժամանակ ենիչարիները ռմբակոծում էին քաղաքը։

Ես նկատում էի, Ասլանը մի առանձին ուշադրութեամբ հետազօտում էր այն ծակերը, այն գաղտնի անցքերը, որոնք քարափի վերեւից իջնում էին դէպի նրա խորքերը եւ ստորերկրեայ ճանապարհներով կորչում էին, սատանան գիտէ, թէ դէպի ո՞ր կողմը։ Նա արծուի հայեաց-

քով զննում էր նրանց ուղղութիւնը, տարածութիւնը, եւ որպէս զի կասկածանքի առիթ չը տայ մեր առաջնորդին, ժպտելով հարցրեց նրանից.

— Ի՞նչպէս էք կարծում, պարոն քարտուղար, այդ անցքը նոյնպէս չէ՞ տանում դէպի մի բիւրեղեայ ապարանք, ուր հուրիները եւ փէրիները պառկած են մարջանի ծառերի ներքոյ եւ սքանչանում են “հաղարան բուլբուլի„ հազար ու մէկ եղանակներով։

— Դուք ծաղրում էք ինձ, պարոն բժշկապետ, — պատասխանեց երիտասարդը նոյնպէս ժպտելով. — բայց ես կ՚ասեմ ձեզ, որ այդ անցքը դէպի բիւրեղեայ ապարանքը չէ տանում, որովհետեւ դէպի ծովը չէ գնում։ Մարջանի ծառերը ծովի յատակի վրայ են բուսնում եւ բիւրեղեայ ապարանքն էլ ջրերի խորքումն է լինում։ Իսկ այդ անցքը, քարափը կտրելով, իջնում է դէպի ցած, յետոյ գետնի տակով գնում է դէպի այն ձորը, որի մի մասը երեւում է բլուրների ետեւից։ — Նա ձեռքը մեկնեց դէպի այն կողմը։

— Ներեցէք, խնդրեմ, իմ նկատողութիւնը դուք, ի հարկէ, կատակի տեղ կ՚ընդունէք։ Իսկ ձեր այժմեան պատմածը դարձեալ շատ հետաքրքիր է։ Ես շատ բերդեր եմ տեսել, բայց մի այսպիսի անցք առաջին անգամն եմ տեսնում իմ կեանքում, երեւի, դրա ծայրը, այսինքն այն տեղը, որ դուրս է գալիս ձորի մէջ, անպատճառ ծածկուած կը լինի։

— Անտարակոյս, մանաւանդ մի դէպքից յետոյ, որ պատահեց մի քանի տարի առաջ. պահապան զինուորներից մէկը սովորութիւն էր ունեցել վառօդ գողանալ եւ այդ անցքով դուրս տանել, վաճառել հայ խանութպաններին։ Զինուորին եւ խանութպաններին սաստիկ պատժեցին, եւ անցքի մուտքը այն ժամանակից գոցուեցաւ։

*— Ո՛րքան զարգացած է եղել հին ժամանակներում արհեստը այդ երկրում, — ասաց Ասլանը, արտայայտելով իր խորին հիացմունքը։ — Այդ անգքերը հազարաւոր տարիներ գոյութիւն ունեն, բայց այնքան ճարտարութեամբ շինուած են, որ մինչեւ այսօր չեն խանգարուել, պահպանում են իրանց նշանակութիւնը։*

*— Դուք աւելի կը զարմանաք, պարոն բժշկապետ, երբ կը տեսնէք Թօփրակ-Կալէի եւ Զարխի-Փալակի գաղտնի անգքերը, — պատասխանեց առաջնորդը մի առանձին պարծենկոտութեամբ, երբ լսեց Ասլանի գովասանքները։ (Կարծես այդ հրաշալիքները նրա պապերն էին ստեղծագործել։) — Երբ այստեղ կը վերջացնենք, ես կը տանեմ ձեզ դէպի յիշեալ հնութիւնները, որոնք բաւական հեռաւորութեան վրայ են գտնվում այստեղից։ Դուք կը տեսնէք այնտեղ աւելի զարմանալի ստորերկրեայ անգքեր. որոնք այնքան երկար են տարածվում գետնի տակով, որ շատերը հաղորդակցութիւն ունեն հէնց այդ բերդի հետ։*

*Ասլանը շնորհակալութիւն յայտնեց առաջնորդին եւ, հանելով ծոցից իր ոսկեայ ժամացոյցը, առաջարկեց նրան, ասելով.*

*— Դուք այնքան բարի էք, որ ես կը ցանկանայի թողնել ձեզ մօտ այդ փոքրիկ յիշատակը։*

*Երիտասարդը հրաժարուեցաւ, կամ ձեւացրեց թէ հրաժարվում է, պատասխանելով.*

*— Շնորհակալ եմ ձեր ուշադրութեան համար, ես երբէք չէի կամենայ զրկել մի ճանապարհորդի իր ժամացոյցից, որը նրան շատ հարկաւոր կը լինի։*

*— Այդ իրաւ է, բայց համաձայնուեցէք, որ ճանապարհորդի ոսկեայ ժամացոյցը շատ հրապուրիչ բան է գողերի համար, ես կը ցանկանայի ազատուել դրանից։ Ընդունեցէք,*

խնդրեմ, ես ունեմ եւ մի արծաթեայ ժամացոյց, այն էլ բաւական կը լինի ինձ համար։

Առաջնորդը շնորհակալութեամբ ընդունեց։ Նրան անսովոր չէր՝ իր մատուցած ծառայութիւնների համար, այս տեսակ "փէշքէշներ" ընդունել։ Եթէ չը տայինք, նա մինչեւ անգամ պահանջելու անամօթութիւնը կ'ունենար։ Մանաւանդ փաշայի պատուի համար, որ մեզ հետ դրել էր իր ամենամօտ մարդիկներից մէկին, պէտք էր նրան մի որ եւ է ընծայ տալ։ Բայց այդ տեսակ ընծաները տալիս են այն ժամանակ, երբ ծառայութիւնները վերջացրած են լինում։ Չը գիտեմ ինչու՞ շտապեց Ալանը։ Երեւի, նրա համար, որ թուրք պաշտօնատարը չը մտածէր, թէ իր ընծան աննշան բան կը լինի, այլ սկզբից ստանալով, աւելի եռանդով կը կատարէր իր յանձն առած ծառայութիւնը։ Երիտասարդը հէնց նոյն րոպէում սկսեց տեղաւորել իր բաճկոնի վրայ ստացած ընծան. շղթան երբեմն դէպի կուրծքի աջ կողմն էր տանում, երբեմն դէպի ձախ կողմն էր տանում եւ մեծ մտածութեան մէջ էր, թէ ո՞ր կողմում աւելի գեղեցիկ կ'երեւայ։ Նա դիմեց իմ խորհրդին, ես յայտնեցի իմ կարծիքը։

Ալանը այդ միջոցին բարձրացել էր աշտարակներից մէկի գագաթի վրայ եւ այն ահեղ բարձրութիւնից երկար լուռ եւ տխուր կերպով նայում էր դէպի իր շրջակայքը։ Նրա դէմքը նոյն րոպէում գունաթափ էր, աչքերի մէջ վառվում էր խորին տենդային կրակ, շրթունքները դողդողում էին, երեւի, սիրտը սոսկալի խռովութեան մէջ էր։ Ես բոլորովին ապշած կերպով նայում էի նրա վրայ . . .

Մենք ցած իջանք բերդից միեւնոյն քարէ սանդուղքներով, որոնց մասին Ալանը ասում էր, թէ մի ժամանակ Գագիկ Արծրունին է տաշել տուել, բայց այժմ համարեա թէ իսպառ մաշուած էին։ Բերդի ստորոտում, մեր ձիա-

ները բռնած, սպասում էին մեր երկու ղաւաղները։ Մենք հեծանք, սկսեցինք գնալ դէպի Թօփրակ-Կալէ եւ միւս հնութիւնները։

Դուրս գալով քաղաքից, երբ փոքր ինչ հեռացանք, մեր շրջակայքում բացուեցան հիանալի տեսարաններ. մի կողմում երեւում էր կանաչազարդ Այգեստանը, երեւում էին եւ Վարագայ կանաչազարդ լեռները, որոնց կուրծքի վրայ, խորին ջերմեռանդութեամբ գրկուած, բազմել էր Վարագայ գեղեցիկ վանքը։ Միւս կողմում, մանիշակագոյն հայելիի նման, փայլում էր Վանայ ծովակը։ Այդ ձուաձեւ հայելին դրուած էր հիանալի շրջանակի մէջ, որը բոլորում էր նրա գեղագրական եզերքը մեղմ, ալեքաւոր բարձրութիւններով, — դրանք էին՝ Արտոս, Արնոս, Սիփան, Նեբրովթ եւ Գրկուռ լեռները, որոնց գօտիները չորեքկողմից սեղմել էին իրանց մէջ ջրի այդ մեծ աւազանը։

Կարծես, այդ աշխարհում հեթանոսական եւ քրիստոնէական ժամանակների յիշատակարանները դեռ մինչեւ այսօր մրցութիւն էին անում միմեանց հետ։ Մի կողմում, բեւեռագիրներով զարդարուած փառաւոր շինուածքներ ցոյց էին տալիս ամենահին անցեալի վրայ, միւս կողմում, սփռուած էինք տեսնում բազմաթիւ վանքեր ու եկեղեցիներ։ Այդ վանքերը դեռ շէն էին եւ լի բազմաթիւ կրօնաւորներով։ Իսկ նրանց կողքին, մենք գտնում էինք տեսնելու մի հին, մոռացուած մեհեանի տխուր աւերակները...

Վերջապէս, հասանք Թօփրակ-Կալէ։ Այդ աւերակ բերդը ուրիշ անուններ եւս ունի. նա կոչւում է Ակռափու-քար եւ Զըմփ-զըմփ-մաղարա։ Բայց այդ երեք անուններից եւ ոչ մէկը նրա նախնական անունը չէ. դրանք ստացուել են վերջին ժամանակներում։ Ի՞նչպէս էր կոչւում նա առաջ, — ոչ ոք չը գիտէ, պատմութիւնը լռում է այդ մասին։

Այդ բերդը մի ամբողջ քաղաք է եղել, որ այժմ ծածկուել է ահագին հողակոյտների ներքոյ։ Հէնց այդ է պատճառը, որ նրան թուրքերէն բառերով կոչում են Թօփրակ-Կալէ (Հողաբերդ)։ Գուցէ այդ անյայտացած քաղաքը այն կախարդուած "Պղնձէ-քաղաքը" լինի, որ մինչեւ այսօր վանեցոց աւանդութիւնների մէջ պահպանել է իր դժբախտ, առասպելական պատմութիւնը։ Չար վհուկի դիւթելով, ամբողջ քաղաքը իր պարիսպներով, տներով եւ բնակիչներով անշարժ պղինձ է դառնում։ Ասլանը ասում էր ինձ, այդ աւանդութիւնը ճիշտ է միայն այն կողմից, որ եթէ այդ հողակոյտերի մէջ փորուածքներ անելու լինեն, մետաղեայ բոլոր առարկաները կը գտնեն պղնձից շինուած, որովհետեւ այդ աւերակները պատկանում են պղնձէ դարեշրջանին։ Եւ իրաւ, որպէս պատմեց մեզ մեր առաջնորդը, այնտեղ գտել էին զանազան պղնձէ զարդեր, պղնձէ զէնքեր, պղնձէ տնային կարասիք եւ մինչեւ անգամ պղնձէ մարդիկ։

Հնութիւնների աւերակները եւ մարդիկների գերեզմանները իմ վրայ միշտ միեւնոյն տպաւորութիւնն են գործել։ Երկուսի մէջ եւս տեսնւում է դադարած կեանքը, երկուսն էլ յիշեցնում են անցեալը, որ մի ժամանակ ապրել են, գործել են եւ, ժամանակի հետ քայլելով, մաշուել ու մեռել են, թողնելով միայն կենդանի յիշատակներ։ Մարդ, նայելով իր նախահարց գերեզմանների վրայ, մի առանձին հպարտութիւն է զգում, երբ մտաբերում է, որ նրանք իրանց ժամանակի ամենալաւ մարդիկն են եղել։ Գերեզմանի մէջ անգամ նրանց փոշիները պահպանում են վաղեմի վեհութիւնը։ Աւերակների փոշիների մէջ եւս ապրում է անցեալ մեծութիւնը, որ միեւնոյն հպարտութիւնը եւ միեւնոյն քաջալերութիւնն է ազդում ապագայ սերունդի մէջ։ Աւերակների փոշիներից է կազմւում այն շաղախը,

որ միացնում է ներկայ սերունդի սրտերը նախահայրց հետ...

Թօփրակ-Կալէի լեռան մէջ նոյնպէս գտնվում են շատ այրեր, քարանձաւներ, ստորերկրեայ անցքեր, որպիսիները տեսանք Շամիրամի բերդի մէջ։ Դրանցից եւ ոչ մէկը բնական է, բոլորն էլ փորուած են ամենաամուր ժայռերի մէջ, եւ նրանց այժմեան գեղեցկութիւնը բաւական ապացոյց է, թէ որքան զարգացած է եղել այդ աշխարհում արհեստը։ Այրերից միայն մէկի մէջ մտանք մենք, որը կոչվում է Զըմփ-զըմփ-մաղարայ, այսինքն զըմզըմփալով ձայն հանող այր։ Ամենաթեթեւ ձայնը այդ քարանձաւի մէջ զըմփ-զըմփալով արձագանք է տալիս։ Ժայռի մէջ բացվում է մի մեծ մուտք, որը հարիւրաւոր քարեայ սանդուղքներով իջնում է դէպի լեռան խորքը։ Քարի մէջ փորուած երկու լուսամուտներ վերեւից խիստ աղօտ լոյս են ձգում այդ ստորերկրեայ վիրապի մէջ։ Քարեայ սանդուղքի վերջին աստիճանի մի կողմում բացվում է մի ընդարձակ, քառակուսի այր, — դա է, որ կոչվում է Զըմփ-զըմփ-մաղարայ։ Այդ այրի միջից մի առանձին անցք տանում է դէպի երկրի խորքերը, բայց ո՞ւր է գնում, ո՞րտեղ է վերջանում, Աստուած գիտէ։ Մեր առաջնորդը դարձեալ խօսում էր ստորերկրեայ ապարանքների մասին. ժողովրդի աւանդութիւնը նոյնն էր խօսում։ Այդ բոլորը տեսնելով, ես պատրաստ էի հաւատալ, որ այստեղ եղել է մի ստորերկրեայ աշխարհ, եւ այդ անցքերը տանում են դէպի այն աշխարհը։ Ալլանը այդ մասին ինձ ոչինչ չասաց. նա բոլորովին ուրիշ նպատակներով էր քննում այդ անցքերը։ Նա ցանկանում էր ստուգել, թէ որքան ուղիղ է այն կարծիքը, թէ այդ ստորերկրեայ անցքերը հաղորդակցութիւն ունեն քաղաքի մէջ գտնուող Շամիրամի բերդի հետ։ Այդ էր պատճառը, որ մեզանից ոչ

մեկը չը համարձակուեցաւ Ջըմփ-ըլմփ-մաղարայից անցնել եւ առաջ գնալ, իսկ նա, վառելով իր հետ վերառած մոմպատը, շատ առաջ գնաց եւ վերադարձաւ համարեա մեկ ժամից յետոյ։

— Նա կը կորչի, — ասում էր ինձ մեր առաջնորդը նրա բացակայութեան ժամանակ։

— Ի՞նչու, — հարցրի ես։

— Այնտեղ ջիններ (դեւեր) են բնակվում. այնտեղ գնացող աղամորդին այլ եւս չէ վերադառնում։

Դուրս գալով այրից. մենք սկսեցինք դիմել դէպի լեռան գագաթը։ Այնտեղ մեր առաջնորդը կամենում էր ցոյց տալ մեզ Չարխի-Փալակի մուտքը։ Դա նոյնպիսի մի անցք էր, որպիսինները տեսել էինք մենք, եւ ուղիղ լեռան գագաթից իջնում էր դէպի նրա խորքերը։ Վանեցի հայերի աւանդութիւնը այդ անցքի մասին շատ հրաշալիքներ է պատմում, որոնցից մեկը պատմեց մեզ մեր առաջնորդը։ Ահա նրա խօսքերը. անցքը իջնում է մինչեւ Գայլ գետի ափերը, որը հոսում է լեռան ստորերկրեայքում։ Գետի սքանչելի եզերքը զարդարած են արմաւենի ծառերով։ Այնտեղ Բախտը արագ ձեռքով պտտեցնում է աշխարհի անիւը՝ — Չարխի-Փալակը։ Անիւի իւրաքանչիւր թեւքի վրայ Բախտը փորագրել է մի-մի գրութիւն։ Այդ գրութիւնների իւրաքանչիւրը բովանդակում է իր մէջ մի գաղտնիք։ Օրինակ, մեկը ցոյց է տալիս, թէ ինչպէս պէտք է գտնել թագուցած գանձերը. միւսը սովորեցնում է, թէ ինչպէս պէտք է պատրաստել էլէքսիրը, որի միաւորութեամբ ամեն մետաղ ոսկի է դառնում. երրորդը ցոյց է տալիս, թէ ո՞րտեղ են գտնվում գոհարների լեռները. չորրորդը ուսուցանում է, թէ ո՞րպէս բժշկութեան մէջ պէտք է գտնել անմահութեան կաթիլը. հինգերորդը տալիս է

իշխանութիւն, Թագաւորութիւն, փառք. մի խօսքով, անիւի իւրաքանչիւր Թեւքի վրայ արձանագրուած է մի-մի Թիլիսման մարդկային բախտաւորութեան համար, որոնց դեռ մարդու հանճարը չէ հասել: Անիւը առանց կանգ առնելու անդադար պտըտվում է: Նա կանգ է առնում տարուայ մէջ մի անգամ միայն, այն եւս մէկ րոպէով: Այդ լինում է Համբարձման գիշերը, երբ երկինք ու գետինք գրկախառնվում են եւ համբուրվում են միմեանց հետ: Մարդիկ սպասում են հէնց այդ րոպէին: Երբ յաջողվում է նրանց հասնել մինչեւ Չարխի-Փալակը, նրանք պէտք է ձեռքում պատրաստ ունենան մոմից շինած Թերթեր, որ անիւը կանգնելու րոպէում՝ իսկոյն կպցնեն նրա Թեւքի վրայ: Խորհրդաւոր Թիլիսմաններից մէկը դրոշմվում է մոմի վրայ, եւ մարդը ստանում է այն շնորհներից մէկը, որ Բախտը վիճակում է նրան: Բայց այդ շնորհներին խիստ հազիւ անգամ հասնում են մարդիկ, որովհետեւ նոյն րոպէում, երբ անիւը կանգ է առնում, նրանց տիրում է խորին Թմրութիւն, նրանք քնում են, եւ անողոք անիւը դարձեալ շարունակում է իր արագ պտոյտը...

Մեզ մնում էր մի հնութիւն եւս տեսնել եւ մեր այնօրուայ արշաւանքը դրանով պէտք էր վերջացած համարել, — այդ էր Մըհերի դուռը: Միեւնոյն ժայռի երկարաձիգ շարունակութեան վրայ, ուր մենք տեսանք Չարխի-Փալակը, ժայռի արեւմտեան կողմում, քարի ճակատը քառակուսի ձեւով տաշուած է: Քառակուսին իր ահագին շրջանակի ձեւովը՝ դռան ճիշտ նմանութիւն ունի: Այդ դռան մակերեւոյթը, որ բաւական խորն է ընկած, ամբողջապէս ծածկուած է բեւեռագիրներով: Ժողովուրդը դրան կոչում է Մըհերի դուռ: Այստեղ է Վանայ ամենաընդարձակ արձանագրութիւնը: Այդ քարեղէն դռան ետեւում, ժողո-

վերջի աւանդութեամբ, իր ձիու հետ բանդարկուած է Մըհեր անունով մի անձնաւորութիւն: Այնտեղ ժայռի պտուտը, մի քարայրի մէջ, արգելուած է այդ սարսափելի հսկան: Մի օր նա կը խորտակէ իր շղթաները եւ իր ձիու վրայ նստած, դուրս կը սլանայ քարայրից, վրէժխնդիր կը լինի իր թշնամիներին, եւ կը մաքրէ Հայոց աշխարհը չարութիւնից...

Այսպիսի մի առասպել միայն հայ մարդու երեւակայութեան ծնունդը կարող էր լինել: Նրա դարեւոր աննախանձելի վիճակը ստեղծել է նրա համար մի այսպիսի յոյս եւ ակնկալութիւն: Միհրը, կամ ժողովրդի բարբառով Մըհերը, հայոց արեգակն է: Այդ ամենահին աստուածը բանդարկուած է, եւ հայոց աշխարհում տիրում է խաւարն ու չարութիւնը: Մի օր նա դուրս կը գայ իր արգելանից եւ կրկին լոյս ու արդարութիւն կը սփռէ հայոց աշխարհում: Ժողովուրդը լեգենդական լեզուով ասում է այդ, ասում է եւ հաւատում է իր ասածին, եւ — սպասում է...

— Արդէն յայտնուել է Մըհերը... Բայց ժողովուրդը այդ չէ նկատում... ասաց ինձ Ասլանը, երբ ճանապարհին այդ աւանդութեան մասին սկսեցի խօսել նրա հետ:



2.

## ՎԱՃԱՌԱԿԱՆՆԵՐ

Վերադառնալով Այգեստան, մենք վարպետ Փանոսին տանը չը գտանք. նա մի օրով գնացել էր մերձակայ գիւղօրայքը։ Ասլանը այդ մասին ոչինչ հարց ու փորձ չարեց, երեւում էր, որ նրան յայտնի էր, թէ նա ուր, կամ ինչ նպատակով էր գնացել։ Գիշերը ես քնեցի սովորականից աւելի վաղ, որովհետեւ սաստիկ յոգնած էի։ Բայց Ասլանը չը քնեց, այլ երկար նստած, մի հաստ թղթի վրայ ինչ-որ նկարում էր նա։ Առաւօտեան ինձ ցոյց տուեց մեր տեսած բոլոր տեղերի պլանները։ Ես ապշած մնացի։ Զարմանալի յիշողութիւն ունէր այդ մարդը։

Այն առաւօտ Ասլանը բաւական լաւ տրամադրութեան մէջ էր գտնվում. այդ պատահում էր նրա հետ այն ժամանակ միայն, երբ մի որ եւ է նպատակի հասնում էր։ Նա սկսեց մինչեւ անգամ ինձ հետ հանաքներ անել։ Սպիտակ կատուն, որ սովորաբար առաւօտեան բոլոր տանեցիներից առաջ էր մտնում մեր սենեակը, եւ ողջունում էր մեզ, այն առաւօտ, հակառակի պէս, առաջ ինձ մօտեցաւ, քսքսուեցաւ, մռմռաց, եւ իր ճապուկ պոչով իմ երեսը շփելուց յետոյ, մօտեցաւ Ասլանին։

— Հիմա նա էլ է քեզ մարդու տեղ դնում, Փարհատ, — ասաց նա ժպտելով։

— Ոչ միայն նա, — պատասխանեցի ես նոյնպէս ժպտելով. — այլ վարպետ Փանոսի ախոռատան ծառան եւս, երբ ինձ տեսնում է, ոտքի է կանգնում։ Երէկ նա ինձ ասաց՝ «աղա»։

Ասլանը նոր էր լուացուել եւ սանդրվում էր, նա սանդրը ձեռին կանգնեց իմ առաջ եւ ասաց.

— Գիտե՞ս այսօր ո՞ւր պիտի գնանք։

— Երեւի, դարձեալ պիտի գնանք ծակերի մէջը մտնելու...

— Ոչ, պէտք է գնանք Նորին Սրբազնութեան՝ առաջնորդի մօտ։

— Նրա մասին շատ վատ են խօսում։

— Այդ ես գիտեմ, եւ հէնց այդ պատճառով, պէտք է տեսնել նրան։

— Ասում են, նա կատարեալ չարագործ է։

— Երբեմն չարագործները շատ զօրեղ գործիք են դառնում լաւ մարդկանց ձեռքում։ Պօղոսը նոյնպէս մի չարագործ էր, բայց վերջը քրիստոնէութիւնը տարածողների մէջ ամենանշանաւորը եղաւ։

— Իսկ Վասա՞կը։

— Վասակը իր ժամանակ նոյնպէս ամենանշանաւոր մարդն էր։ Եթէ բոլոր հայ նախարարների գլուխները թափ տալու լինէիր, նրա կէսի չափ խելք չէր դուրս գայ։

— Բայց նա չարագործ էր, նա մեծ վնասներ տուեց իր հայրենիքին։

— Այդպէս երեւում է, որովհետեւ նրա պատմութիւնը գրողները՝ նրա հակառակ կուսակցութեանն էին պատկանում։ Իսկ եթէ նրա խորհուրդներին հետեւելու լինէին, նա մեծ օգուտներ կարող էր հասցնել իր հայրենիքին։

ու ուշադրությամբ Ալանի դատողութեան վրայ։ Թէեւ նրա պատասխանները չէի կարդացել, բայց Վասակի մասին շատ վատ բաներ էի լսել։

— Ի՞նչ օգուտ պիտի հասցնէր նա, — պատասխանեցի ես փոքր ինչ բարկացած կերպով։ — Սատանան երբէք հրեշտակ չի դառնայ։

— Ինչու չի դառնայ, — ասաց նա, ծիծաղելով իմ խռովութեան վրայ։ — Սատանան հէնց առաջուց հրեշտակ էր, բայց հանգամանքները նրան սատանայ շինեցին։ — Վասակին պէտք է հասկանալ, իսկ նրան հասկանալու համար պէտք է լաւ ուսումնասիրել հայոց պատմութիւնը։ Դու մի վիճիր ինձ հետ, սիրելի Փարհադ, քեզ պէտք է կարդալ, շատ կարդալ . . .

Նա մօտեցաւ եւ ձեռքը դրեց իմ ուսի վրայ։

Այդ միջոցին ներս մտաւ վարպետ Փանոսի գործարանի աշակերտներից մէկը, յայտնեց, թէ մի քանի մարդիկ ցանկանում են տեսնուել Ալանի հետ։

— Նայեցէք, ի՞նչ մարդիկ են, — խնդրեց ինձ Ալանը, — միայն մի փոքր սպասել տուեցէք, մինչեւ ես բոլորովին հագնուիմ։

— Նրանք կը սպասե՜ն . . . ասաց գործարանի աշակերտը խորամանկ ժպիտով, — մինչեւ երեկոյ էլ կը սպասե՜ն . . . գլուխները չը ծագած, եկել, նստել են բակի դռան մօտ, եւ սպասում են . . .

Պէտք է ասած, երբ քաղաքի հայ վաճառականները լսեցին, որ Ալանը հնութիւններով հետաքրքրվում է, այլ եւս մեզ հանգստութիւն չէին տալիս։ Ում տանը մի կոտրած խեցի կամ երթակի կտոր կար, բերում էր, ցոյց էր տալիս, եւ աշխատում էր մի քանի ոսկիներ կորզել։ Դուրս գալով փողոցը, տեսայ, որ հայ վաճառականներ էին, երեք հոգի,

եւ կարգով նստած էին բակի դռան մօտ շինուած հողէ թումբի վրայ, «տէր-ողորմեա՛» էին քաշում ու խօսում էին միմեանց հետ երկրի գործերի վրայ։ Տեսնելով ինձ, բոլորը ոտքի կանգնեցին, որպէս մի նշանաւոր մարդու առջեւ եւ սկսեցին բարովել ինձ հետ. իմ առողջութիւնը հարցնել, կարծես, թէ վաղեմի բարեկամներ լինէին։ Մէկը նրանցից ինձ կոչեց մինչեւ անգամ «աղա»։ Վարպետ Փանոսի ախոռատան ծառայից յետոյ, այդ երկրորդ անձն էր, որ այդպիսի տիտղոսով էր ինձ դիմում։

— Ի՞նչ էք կամենում, — հարցրի ես։

Նրանք փոխանակ պատասխանելու, սկսեցին դուրս հանել իրանց ծոցերից, գրպաններից, զանազան իրեղէններ, որ փաթաթել էին շորի կտորների մէջ։

— Ինձ ո՞ւր էք ցոյց տալիս, ես լաւ գնողը չեմ։

— Դու էլ որ տեսնես, մեղք կը լինի, աղա, — ասաց նրանցից մէկը, որի ձեռքերի վրայ երեւում էին Երուսաղէմի ուխտաւորի կապոյտ նշաններ։ — Քո հոգուն մատաղ, աղա, մենք լսել ենք, որ քո մէկ խօսքը պարոն բժշկի մօտ երկու չի լինի...

Կամենում էր ասել, որ ես այն աստիճան մտերիմ եմ պարոն բժշկապետին, որ նա իմ միանգամ ասածը կամ խնդրածը երբէք կրկնել չի տայ։ Բայց ի՞նչով ես կարող էի օգտաւէտ լինել մահտեսուն, այդ էր գլխաւոր խնդիրը։ Նա հասկացրեց ինձ, ասելով.

— Լսել ենք, պարոն բժշկապետը անթիքայ բաներ է հաւաքում. մենք բերել ենք պարոն բժշկապետի համար այնպիսի անթիքաներ, որ ողջ աշխարհում չի գտնուի, երբ որ կը գնէ, մենք քո լաւութիւնն էլ չենք մոռանայ... քեզ համար էլ մի բան դուրս կը գայ...

— Ի հարկէ, դուրս կը գայ, — կրկնեցին միւս երկուսը համարեա թէ միաձայն։

— Ի՞նչ պէտք է դուրս գայ, — հարցրի ես փոքր ինչ վրդովուած կերպով։

— Չե՛ս իմանում․․, ասաց մահտեսին, ձեռքով կամաց իմ մէջքին բաղխելով, որ նրա փաղաքշանքի նշանն էր։ — Ի՞նչ պէտք է դուրս գայ, օրհնած, — ահա դրանից․․․

Նա գլուխը խորհրդաւոր կերպով շարժեց, մի խորամանկ ժպիտ երեւաց բոլորովին սափրած երեսի վրայ, ձախ աչքի կոպերը տրփտրփացրեց, ինձ աչքով արաց եւ, աջ ձեռքը մեկնելով, մի քանի անգամ ցուցամատի եւ բթամատի պտղուցները քսքսեց միմեանց հետ։

Անպիտանը աշխատում էր կաշառել ինձ, փող էր խոստանում։ Նա ինձ ծառայի տեղ էր ընդունում եւ, սովորած լինելով ծառաների ձեռքով շատ բաներ շինել, կարծում էր, թէ ես էլ կարող եմ նրան օգտաւէտ լինել։ Եթէ ես փոքր ինչ հաճութիւն ցոյց տայի, ի հարկէ, նրանք կը տային ինձ մի ամբողջ ծրագիր, թէ ինչ պիտի անէի, կամ ինչ պիտի խօսէի պարոն բժշկապետի մօտ։ Երբ անփորձ եւրոպացին յայտնվում է արեւելքում, եւ իր մօտ ունենում է տեղացիներից մի թարգման կամ ծառայ, վաճառականները շատ լաւ գիտեն, թէ ինչպէս պէտք էր այդ ծառայի միջնորդութեամբ կողոպտել եւրոպացուն։

Նրանց անպիտանութիւնը ինձ այն աստիճան զայրացրեց, որ կամենում էի բոլորին էլ հեռացնել, պատասխանելով, որ պարոն բժշկապետը “անթիքաներ„ չէ գնում, բայց զգուշացայ, չլինի թէ իմ վարմունքը Ասլանին անհաճոյ լինէր։ Երեքին էլ ներս տարայ։

Մտնելով Ասլանի սենեակը, երեքն էլ լռութեամբ գլուխ տուեցին եւ ոտքի վրայ կարգով շարուեցան դռան

մօտ։ Ալանը այդ միջոցին բոլորովին հագնուած, նստել էր եւ ղահուէ էր խմում։ Նա իր սովորական քաղցրութեամբ նայեց այցելուների վրայ, ասելով.

— Նստեցէք, խնդրեմ, — եւ տեղ ցոյց տուեց իրան շատ մօտ։

Նրանք անշարժ մնացին եւ սկսեցին անվճռական կերպով նայել միմեանց երեսին։

— Նստեցէք, խնդրեմ, — կրկնեց Ալանը։ — Ինչո՞ւ էք կանգնած։

— Ձեր սպասում, յարգելի բժշկապետ, ինչպէս կը համարձակուենք մենք նստել, — պատասխանեց մահտեսին ողորմելի ձայնով եւ ամբողջ հասակով աւելի պինդ սեղմուեցաւ պատի հետ։ Միւսներն էլ հետեւեցին նրա օրինակին։

— Ես խօ փաշայ չեմ, որ ինձ մօտ չը համարձակուէք նստել։ — ասաց Ալանը ծիծաղելով։

— Այդ ինչո՞ւ ես ասում, յարգելի բժշկապետ, — այժմ պատասխանեց մահտեսու մօտ կանգնած կարճահասակ ծերունին։ — Դու մեզ համար փաշայից էլ մեծ ես, խոնթքարից էլ մեծ ես. դու մեր աչքի լոյսն ես. Աստուած քեզ հազար տարի կեանք տայ։ Փաշան մեր հաւատից չէ, իսկ դու թէեւ Ֆրանկ ես, բայց մեր հաւատիցն ես. մենք ամենքս մի եւ նոյն խաչն ենք պաշտում, մի եւ նոյն սրբերին ենք երկրպագում։

Եթէ մի ուրիշը Ալանի տեղ լինէր, կամ նրանց համեստութեանը եւ կամ միամտութեանը կը վերաբերէր այդ բոլոր շողոքորդութիւնները։ Բայց Ալանը իսկոյն հասկացաւ, թէ ինչ տեսակ մարդկանց հետ գործ ունի, եւ ոչինչ չը ցոյց տալով, դարձեալ խնդրեց, որ նստեն։

— Վերջապէս խնայեցէք իմ երիտասարդութեանը, — ասաց նա, — արժան չէ, որ դուք ձեր ճերմակ ալեք-

ներով կանգնած մնաք իմ առջեւ. ես յարգում եմ ծերութիւնը։

— Օրհնեա՛լ լինիս, — բացականչեցին երեքն էլ միաձայն եւ նստեցին ոչ թէ Ալանի ցոյց տուած տեղում, այլ հեռու, դռան մօտ։

Հարցնելով, թէ ինչ նպատակով են եկել, Ալանը խնդրեց, որ ցոյց տան իրանց բերած իրեղէնները։ Մէկը քաղաքավարութեան համար՝ երեսը շուռ տուեց դէպի պատը եւ երկու անգամ հազաց։ Եթէ այդ հազը նրանց մէջ մի պայմանական նշանախօսութիւն չը լինէր, պէտք էր, իրաւ, վերին աստիճանի քաղաքավարութիւն համարել, որովհետեւ հազալու միջոցին նրա դէմքը խիստ ծիծաղելի եւ, մի եւ նոյն ժամանակ, զզուելի արտայայտութիւն ընդունեց։ Իսկ մահտեսին պատասխանեց առաջինի հազալուն երկու անգամ փռթկալով։ Նա էլ քաղաքավարութեան համար իր անթարիի (հագուստի) գրօշակը բարձրացրեց եւ բերանը սրբեց։ Երրորդը, երեսը խաչակնքելով, Աստծուն փառք տուեց, ասելով, որ "խէր է„։

— Մեր աշխարհում այսպիսի սովորութիւն կայ, յարգելի բժշկապետ, — դարձաւ նա դէպի Ալանը, — երբ մէկը երկու անգամ փռշտում է, դա լաւ նշան է։ Յոյս ունենք, որ ձեր օջախից խէր կը տանենք։

Ի՞նչ օջախ, մտածում էի ես, կարծես վարպետ Փանոսի տունը մեր տունը լինէր։

— Ես էլ յոյս ունեմ... պատասխանեց Ալանը ծիծաղելով։

Նրա ծիծաղը բաւական քաջալերեց նրանց եւ հերթով մօտեցան, չոքեցին Ալանի առջեւ, սկսեցին ցոյց տալ իրանց "անթիքաները„։ Նրանց մէջ կային զանազան իրեղէններ. հին դրամներ, կանանց տեսակ-տեսակ զարդեր, որպիսի են՝

ապարանջաններ, ականջի օղեր պղնձից շինուած, յուլունքներ
թափանցիկ, գունաւոր քարերից շինուած, զէնքերի կոթներ,
որպիսի են՝ նիզակի եւ սլաքների ծայրեր, ահագին վահանի
մի մասը, բոլորը պղնձից, եւ մի պղնձէ ցուլի ամբողջ գլուխ,
այլ եւ կաւից շինած փոքրիկ եւ մեծ անօթներ, այդ բոլորը
նրանք տեղաւորել էին իրանց ծոցերում, գրպաններում եւ
մինչեւ անգամ ֆէսերի վրայ փաթաթած եազմաների մէջ:
Բայց ամենահետաքրքիրը նրանց ցոյց տալու ձեւի մէջն էր:
Սկզբից ցոյց էին տալիս մի շատ չնչին բան եւ սկսում էին
գովաբանել, երբ այդ չէր անցկենում, դուրս էին հանում
նրանից լաւը. երբ այդ էլ հաւանութիւն չէր գտնում,
դուրս էին բերում աւելի լաւը, հաւատացնելով, որ այլ
եւս ոչինչ չունեն. երբ այդ էլ հաւանութիւն չէր գտնում,
այս անգամ ամենայն դժուարութեամբ դուրս էին բերում,
հագուստի մի տեղում թագցրած, մի այլ բան եւ սկսում
էին երդուել, որ ուրիշ ոչինչ չունեն: Ի հարկէ, նրանից
յետոյ դուրս էին բերում շատ ուրիշ բաներ:

Ես կանգնած նայում էի եւ զարմանում էի Ասլանի
համբերութեան վրայ: Եթէ ես նրա տեղը լինէի, երեքին էլ
դուրս կը վռնտէի, բայց նա ամենեւին ցոյց չէր տալիս, որ այդ
խաբեբայութիւնները իր համար շատ զզուելի են: Վերջապէս
նա ընտրեց մի քանի իրեղէններ եւ խնդրեց, որ գնահատեն:

— Մենք քեզանից մի՞թէ փող պիտի առնենք. յար-
գելի բժշկապետ, — պատասխանեցին նրանք զարմացած
կերպով: — Եթէ փողի վրայ խօսելու լինենք, դրանք գին
չունեն:

— Ապա ի՞նչպէս պէտք է տաք, — հարցրեց Ասլանը
ոչ սակաւ զարմանալով:

— Այնպէս, համեցէք, վեր առէք, յարգելի բժշկապետ:
Մեզանից ի՞նչ կը պակսի, եթէ ձեզ այդ բոլորը փէշքէշ

անենք, եւ դուք մեր երկրից մի լաւ քիշատակ տանէք ձեզ հետ։

— Շնորհակալ եմ, ես էլ գիտեմ, որ ձեզ ոչինչ չի պակսի, երեւում է, որ դուք շատ հարուստ էք, բայց ես փեշքեշներ ընդունելու սովորութիւն չունեմ։

Ասիական վաճառականների սովորութիւնն է այդ, երբ մի բան գնելու լինես, նախ կ՚ասէ. „տար, փող մի տուր, թող քեզ ընծայ լինի„։ Իսկ երբ փող առաջարկես, սարսափելի գներ կը պահանջէ։ Նոյնպէս վարուեցան եւ մեր հայ վաճառականները։

— Չէ՞ք հաւատում, յարգելի բժշկապետ, ասում էր մահտեսի Թորոսը, — եթէ չէք հաւատում, հարցրէք խնամի Մկոյից, նա իր աչքով տեսաւ, որ մի ընկլես այդ ցուլի գլխին յիսուն կարմիր ոսկի տուեց, բայց ես չը տուեցի։ — Այդպէս չէ՞, խնամի Մկօ։

— Հոգիս վկայ, ճշմարիտ է ասում, — պատասխանեց խնամի Մկօն, ձեռքը տանելով դէպի կուրծքը եւ դնելով իր հոգու վրայ։

Բայց որքան պէտք էր հաւատալ խնամի Մկոյի հոգուն, որը այդպիսի երդումների մէջ այնքան շատ էր գործածուել, որ բոլորովին մաշուել էր։ Միայն ծիծաղելին այն էր, երբ Ասլանը վեր առեց մի քանի խրեղէններ, որոնք խնամի Մկոյին էին պատկանում, դա էլ իր կողմից վկայ կանչեց մահտեսի Թորոսին, որ նա իր աչքով տեսել էր եւ իր ականջով լսել էր, որ մի Ֆրանկ ահագին գումարներ էր առաջարկել, բայց նա չէր ընդունել։

— Թող Նրուսաղէմի սուրբ տաճարի մէջ իմ տեսած լոյսը աչքերս կուրացնէ, թող ես Քրիստոսի մեխ-խփողներից մէկը լինեմ, եթէ սուտ լինեմ ասում, — պատաս-

խանեց մահտեսի Թորոսը, — Ֆրանկը ահագին գումարներ առաջարկեց, բայց նա չընդունեց։

— Ես մի հասարակ բժիշկ եմ, ես մեծ գումարներ չունեմ, — ասաց Ալանը, իր ընտրած իրեղէնները նրանց յետ տալով։

— Ի՞նչու էք նեղանում, յարգելի բժշկապետ, — ձայն տուեցին երեք կողմից, — խնդրում ենք, եթէ կամենում էք, վեր առէք, ձեզանից ո՞վ է փող ուզում։

Ալանը այս անգամ այլ եւս չը կարողացաւ զսպել իր անհամբերութիւնը, եւ ասաց.

— Չը գիտեմ ինչ անել ձեզ հետ, երբ կամենում եմ մի բան վեր առնել, ահագին փողեր էք պահանջում, իսկ երբ ցած եմ գնում, առաջարկում էք ձրի ընդունել։

Այժմ սկսեցին նրանք այլ լեզու բանեցնել, սկսեցին խեղճ ձեւանալ, որ պարոն բժշկապետի կարեկցութիւնը դարձնեն իրանց վրայ, ասելով. աղքատ ենք, ընտանիքի տէր ենք, “անօրէնի„ ձեռքում գերի ենք, մենք յոյսը դրել ենք այդ իրեղէնների վրայ, այդ պատճառով ստիպուած ենք այդպէս էժան, շատ էժան վաճառել։ — Նրանք մինչեւ անգամ ակնարկեցին, եթէ փող լինէր, աւելի մեծ ուրախութեամբ պատրաստ կը լինէին իրանց զաւակները վաճառել, եւ չը զրկուիլ այնպիսի հազուագիւտ իրեղէններից, որոնց համար, եթէ լաւ “մուշտարի„ պատահի, կարող են ահագին գումարներ ստանալ, միայն կարիքը եւ չքաւորութիւնը ստիպում է նրանց վաճառել։

Ալանը, այդ բօշաներից ազատուելու համար, ընտրեց մի քանի իրեղէններ եւ ձգեց նրանց մի քանի ոսկիներ, ասելով թէ միւսները իրան հարկաւոր չեն։ Նրանք վեր կացան եւ դարձեալ կարգով շարուեցան դռան մօտ, եւ երկար շնորհակալութիւններ եւ օրհնութիւններ թափելուց յետոյ,

փորձում էին հեռանալ, բայց մտածեցին, եւ դարձեալ մեխուած մնացին իրանց տեղում, ընդունելով մի այնպիսի կիսածիծաղ դէմք, որ աւելի լացի նախերգանքին էր նմանում:

— Այլ եւս ի՞նչ ունէք ասելու, — հարցրեց Ալանը:

— Ձեր ողջութիւնը... Ի՞նչ պիտի ունենանք ասելու, — պատասխանեցին եւ դարձեալ կանգնած մնացին իրանց տեղում:

Ես մի կերպով հասկացրի, թէ չէ կարելի այդքան ձանձրացնել պարոն բժշկապետին: Մահտեսի Թորոսը փոխանակ հեռանալու, ձեռքը գաղտուկ կերպով մեկնեց դէպի ինձ եւ դարձեալ ցուցամատի ու բթամատի պտղուցները սկսեց քքսել միմեանց հետ: Վերջապէս նրանցից մէկը յայտնեց, թէ տանը ուրիշ շատ եւ աւելի լաւ բաներ ունեն, կը ցանկանա՞յ պարոն բժշկապետը, որ բերէին, ցոյց տային:

— Դուք հաւատացնում էիք, որ ուրիշ բաներ չունէք, — նկատեց Ալանը ծիծաղելով:

— Է՜հ, յարգելի բժշկապետ, — պատասխանեց մահտեսի Թորոսը գլուխը շարժելով եւ տակից աղուէսի նման նայելով Ալանի երեսին, — գիտէք ի՞նչ է ասում թուրքի առածը:

— Չը գիտեմ:

— "Գայլի բոյնից ոսկորը պակաս չի լինի,,...

— Այդ ես հասկանում եմ...

— Կը հրամայէ՞ պարոն բժշկապետը, որ բերենք:

— Բերեցէք:

Նրանք խորին կերպով գլուխ տուեցին եւ, միմեանց բոթբրթելով, դուրս եկան սենեակից: Ես գնացի նրանց ճանապարհ դնելու: Դրսում մահտեսի Թորոսը դրեց իմ ափի մէջ մի հատ հինգ ղուրուշանոց: Ես ահագին պղնձէ դրամը խփեցի ու ղիղ նրա ճակատին:

— Օրհնած, այդպիսի հանաքներ խօ չեն անում, — ժպտելով ասաց մահտեսի Թորոսը, և կռանալով, վեր առեց հինգ ղուրուշանոցը, դրեց իր դրպանում, աւելացնելով. — շատ չա՛րն ես եղել...

Այդ մարդիկը ամեն մի վերաւորանք կատակի տեղ են ընդունում, որովհետև վերաւորանքին վերաւորանքով պատասխանելու ոչ քաջութիւն և ոչ անձնասիրութիւն ունեն։ Բակում հեռուից տեսաւ նրանց վարպետ Փանոսի մայրը և ձայն տուեց.

— Համեցէք, մահտեսի Թորոս, համեցէք, խօջայ Մկօ, համեցէք, խօջայ Ցակօ, ո՞ւր էք այդպէս գնում, առանց մի բան ուտելու, առանց մի բան խմելու։

Մահտեսի Թորոսը, խօջայ Մկօն, խօջայ Ցակօն նախ շնորհակալութեամբ մերժեցին պառաւի հրաւէրքը, յայտնելով, որ շտապում են, բազարի ժամանակ է, շուկայում շատ գործեր ունեն, յետոյ, պառաւի սիրտը չը կոտրելու համար, ընդունեցին նրա հրաւէրքը և մտան նրա հետ գինիների մառանը։

Ես զարմացայ, ո՞վքեր էին այդ մարդիկը, որ տանտիկինը այնպէս յարգանքով էր վերաբերվում նրանց։ Երբ հարցրի սպասաւորից, որ ձեռքում նախաճաշիկ էր տանում մառանը, նա պատասխանեց։

— Չէ՞ք ճանաչում, մեր քաղաքի ամենահարուստ վաճառականներից են։ Խոզն այնքան ճարպ չունի, որքան դրանք ոսկիներ ունեն։

Վերադառնալով սենեակը, Ասլանին սաստիկ վրդովուած դրութեան մէջ գտայ։ "Ո՛րքան ցածութիւն... ո՛րքան ստորութիւն„... ասում էր նա, և զայրացած կերպով անցուդարձ էր անում սենեակի մէջ։

— Գիտե՞ս, այդ մարդիկը Վանի ամենահարուստ վաճառականներից էին, — ասեցի նրան։

— Ես տարակոյս չունեմ, որ ճշմարիտ է։ Անցէք, խնդրեմ, — դարձաւ նա դէպի ինձ, — ի՞նչ գաղափար կը կազմէի ես Հայերի մասին, եթէ իսկապէս եւրոպացի լինէի։ Ահա այդ գարշելի արարածներն են, որ խայտառակում են ամբողջ ազգը, ահա դրանց հանդիպելով եւրոպացին, Հայոց ամբողջ ժողովրդի վրայ վատ կարծիք է կազմում։

Նրա աչքը ընկաւ իրեղէնների վրայ, որ գնել էր վաճառականներից, վեր առեց մի կողմը նետեց, ասելով.

— Տարէք այդ դրամները մի տեղում կորցրէք։

— Ինչո՞ւ։

— Բոլորը կեղծ է։

— Եւ դու չը ճանաչեցի՞ր սկզբում։

— Ճանաչեցի, բայց դարձեալ գնեցի։ Ես դիտմամբ ընտրեցի կեղծերը։

— Դու թո՞յլ տուեցիր, որ խաբեն քեզ։

— Այո՛ ես թոյլ տուեցի, որ խաբեն ինձ։

— Ինչո՞ւ, այդ ի՞նչ խելք է։

— Որ նրանք կարծեն, թէ ես հետաքրքրվում եմ միայն հնութիւններով, որ նրանք կարծեն, թէ ես միամիտ եւրոպացի եմ, թէեւ վատ հնագէտ եմ։

— Ի՞նչ երկիւղ ունէիր նրանցից։

— Եթէ հասկանային, որ ես հայ եմ, իսկոյն կը գնային, եւ որտեղ հարկն է, կը մատնէին ինձ։

— Նրանք խոստացան նոր իրեղէններ եւս բերել, եւ դու կրկին պիտի ընդունե՞ս նրանց։

— Կ՚ընդունեմ եւ դարձեալ կը գնեմ․․․

Ես զարմանում էի, նա ո՞րտեղից այդքան փող ունէր։

Նա իր ոսկինները այնպիսի առատաձեռնութեամբ էր շպրտում, որպէս սովի կեղեւներ։



Է.

## ՀՈԳԵՒՈՐ ԱՌԱՋՆՈՐԴԸ

Մենք պատրաստուեցանք գնալ հայոց առաջնորդի մօտ։

— Սրբազանի մօտ դատարկաձեռն չէ կարելի գնալ,— ասաց Ասլանը իր արկղներից մէկը բաց անելով,— Նրան պէտք է մի որ եւ իցէ ընծայ տանել։

Նա դուրս բերեց քթախոտի մի գեղեցիկ տուփ, ասելով.

— Արեւելքում պաշտօնական անձինք ընծաներ շատ են սիրում...

— Բայց դու փաշային առանց ընծայի ներկայացար։

— Դրա փոխարէն ես բժշկում եմ նրա որդուն։

Մենք նստեցինք վարպետ Փանոսի ձիերի վրայ եւ սկսեցինք դիմել դէպի քաղաքը։ Այսօր մեզ հետ ղաւազներ չը կային, ես եւ Ասլանը միայնակ էինք։ Ճանապարհին նա կրկին զգուշացրեց ինձ, որ չը մոռանամ իմ դերը...

Հայոց առաջնորդարանը կից էր Սուրբ Նշան եկեղեցուն։

Հոգեւոր առաջնորդի բնակարանը, թէեւ փաշայի ապարանքի շքեղութիւնը չունէր, բայց իր բնաւորութեան կողմից՝ շատ նման էր նրան։ Զանազանութիւնը նրանումն էր միայն, որ այստեղ չը կային ներքիններ, սեւամորթ ստրուկներ, չը կար եւ հարէմ։ Բայց այստեղ եւս կար բանդ, այստեղ եւս մարդիկ տուգանքի էին ենթարկվում, այստեղ եւս կաշառակերութիւնը խեղդում էր, սպանում էր ամեն արդարութիւն։

Երեւում էր, որ Նորին սրբազնութիւնը գիտէր պահպանել իր դիրքի բարձր նշանակութիւնը։ Մի խումբ ծառաներ դուրս թափուեցան, մեր ձիաները բռնեցին, մեզ տարան առանձին ընդունարանում, բայց տասն րոպէից աւել սպասել տուին, մինչեւ պատիւ ունեցանք ներկայանալու։

Ասլանը մօտեցաւ համբուրելու սրբազանի աջը, բայց նա թոյլ չը տուեց, միայն սիրալի կերպով սեղմեց իր այցելուի ձեռքը, յետոյ շատ քաղցրութեամբ տեղ ցոյց տուեց իր աջ կողմում, բոլորովին իր մօտ։

Ասլանը նստեց, իսկ ես նրա աջը համբուրելուց եւ օրհնութիւնը առնելուց յետոյ, կանգնած մնացի ոտքի վրայ։

Սենեակի յատակը ամբողջապէս ծածկուած էր գեղեցիկ գորգերով։ Եւրոպական կարասիք, որպէս ամեն տեղ այդ քաղաքում, նոյնպէս եւ այստեղ չը կային. միայն սենեակի պատուաւոր մասնում, այսինքն սուաքի հանդէպ, գորգերի վրայ տարածուած էր մի փափուկ մինդար, որ պատած էր սեւ թաւիշով. նրա վրայ նստած էր սրբազանը, նրա վրայ նստացրեց նաեւ իր հիւրին։ Յիսուն տարեկան հազիւ կը լինէր սրբազանը, միջահասակ մարդ էր փառաւոր սեւ մօրուքով, որ դեռ նոր էր սկսել ճերմակել, եւ ծանր, լուրջ նայուածքով, որը խիստ յարմարվում էր նրա աստիճանին։ Գլուխը սովորաբար փոքր ինչ կորացրած էր բռնում, եւ տակից նայելու համեստութիւնն ունէր։ Հագել էր երկար, ընդարձակ փարաջայ սեւ ատլասից, որի մետաքսեայ կարմիր աստառով պատած լայն թեւքերը երեւան էին հանում նրա գեղեցիկ թեւնոցները, որ պատրաստուած էին վարդագոյն թաւիշից եւ կապուած էին արծաթեայ կոճակներով։ Աջ ձեռքում բռնած ունէր երկար "տէր-ողորմեա" գեղին սաթից, խոշոր հատիկներով, որի մի մասը փաթաթել էր բազուկի վրայ։ Ճկոյթի վրայ փայլում էր եղիսկո-

պոսական ոսկի մատանին, ահագին վարդագոյն քարով: Այդ պատկառելի անձնաւորութիւնը միացնում էր իր մէջ կրօնաւորի անձնաւորութիւնը եւ իշխանաւորի փառահեղութիւնը:

— Ի՞նչ լեզուով կարող եմ ձեզ հետ խօսել, պարոն բժշկապետ, — հարցրեց սրբազանը, — ես դժբախտաբար եւրոպական ոչ մի լեզու չը գիտեմ:

— Ես արեւելեան համարեա բոլոր լեզուներով խօսում եմ, բացի հայերէնից. — պատասխանեց Ալլանը տաճկերէն լեզուով:

— Այդ շատ լաւ է, որ եւրոպացիք, երբ գալիս են դէպի մեր կողմերը, գիտեն տեղային լեզուներ. դա միջոց կը տայ նրանց աւելի լաւ ծանօթանալ երկրի հետ: Բայց դուք, պարոն բժշկապետ, որպէս ինձ ասեցին, եկած էք մեր քաղաքը գլխաւորապէս բեւեռագիրները քննելու նպատակով. առանց հայերէն գիտնալու, իմ կարծիքով, դժուար կը լինէր ձեզ որ եւ իցէ գաղափար կազմել մեր բեւեռագրների մասին:

— Ձեր նկատողութիւնը բոլորովին ճիշտ է, սրբազան հայր, բայց ինձ անծանօթ է հայոց միայն կենդանի բարբառը, որով այժմ խօսում են, իսկ հին լեզուն ես բաւականաչափ ուսումնասիրել եմ:

— Ներեցէք, խնդրեմ, իմ անտեղի հետաքրքրութեանը, ո՞րտեղ սովորեցիք այդ լեզուները:

— Ես բաւական ժամանակ եղել եմ Հնդկաստանում, այնտեղ սովորեցի պարսկերէնը եւ հայոց հին լեզուն. յետոյ ապրում էի Եգիպտոսում, այնտեղ սովորեցի արաբերէն եւ տաճկերէն:

— Դա մի մեծ հարստութիւն է՝ այդքան լեզուներ գիտենալ, — ասաց սրբազանը մի առանձին բաւականու-

թեամբ։ — Դուք, պարոն բժշկապետ, սովորած լինելով արեւելեան լեզուներ, ի հարկէ, ընտելացած կը լինէք եւ արեւելեան սովորութիւններին։

— Այդ դուք տեսնում էք, սրբազան հայր, — պատասխանեց Ասլանը ծիծաղելով, — տեսնում էք՝ ինչպէս ծալապատիկ նստած եմ մինդարի վրայ։

Սրբազանը նոյնպէս ծիծաղեց։

Մի մանկահասակ պատանի, լաւ հագնուած, բաւական գրաւիչ դէմքով, ներս մտաւ, մի ձեռքում բռնած արծաթեայ փոքրիկ սրճամանը, միւս ձեռքում՝ արծաթեայ փոքրիկ մատուցարան, որի վրայ դրած էին երկու չինէական ֆինջաններ, նոյնպէս արծաթեայ տակերի մէջ։ Այդ բոլոր հրապուրիչ անօթները, անուշահոտ ըմպելիքով, չափազանց մաքրութիւնից փայլում էին։ Պատանին ծանրութեամբ մօտեցաւ, ածեց սեւ հեղուկը, նախ տուեց հիւրին եւ ապա սրբազանին։ Սուրճից յետոյ մի այլ պատանի ներս բերեց արծաթեայ նարգիլէն։ Այդ բոլորը, եթէ կարելի է այդպէս ասել, բաւական փաշայական էր, բաւական նման էր փաշայի տան հիւրասիրութեան ձեւերին։

— Հիմա ես բոլորովին համոզուեցայ, պարոն բժշկապետ, — ասաց սրբազանը, — որ դուք բաւական ընտելացած էք մեր սովորութիւններին։

— Ես մինչեւ անգամ սիրում եմ արեւելեան սովորութիւնները, — պատասխանեց Ասլանը, նկատելով, որ սրբազանի հարցմունքները քննական ձեւ են ստանում։ — Երբ ես վերադառնում եմ իմ հայրենիքը, իմ ամենալաւ ընծաները իմ ընտանիքին, լինում են արեւելեան գորգեր, շալեր, արեւելեան կարասիք։ Մի սենեակ իմ տան մէջ, ուր ես պարապվում եմ, զարդարուած է բոլորովին արեւելեան ճաշակով։ Արեւելքը հրապուրիչ է, սրբազան հայր, նա

անփառասէր կրօնաւորների վրայ անգամ ունենում է իր ազդեցութիւնը։

— Ինչպէս ինձ վրայ, պարոն բժշկապետ, — պատասխանեց սրբազանը, հասկանալով իր խօսակցի խուլ ակնարկութիւնը։ — Ես, պարոն բժշկապետ, հետեւում եմ մեր նշանաւոր պատրիարքներից մէկի օրինակին, որը հագնում էր ամենաթանգագին զգեստներ, օծվում էր անուշահոտ իւղերով, մօրուքի եւ գլխի մազերի վրայ սփռում էր ոսկու փոշի, եւ իրան շրջապատում էր ամեն տեսակ շքեղութիւններով։ Միանգամ սուլթանի հետ սեղան նստած ժամանակ, թագաւորը նկատողութիւն արեց նրան, թէ կրօնաւորին վայել չէ այդ աստիճան պճնասիրութիւնը։ Նա փոխանակ պատասխանելու, բացարեց իր օձիքը եւ ցոյց տուեց. փառաւոր մետաքսեայ զգեստի ներքոյ, մերկ մարմնի վրայ, նա հագած ունէր այծի մազից գործուած, կոշտ, ծակոտող խարազն, որ մի ժամանակ հագցնում էին յանցաւորներին, երբ կամենում էին աւելի տանջել նրանց. յետոյ սովորութիւն եղաւ հագնել ճգնաւորներին, որոնք իրանց անձը ենթարկում էին ամենախիստ փորձութիւնների։

Ասլանը շատ լաւ գիտէր, որ Նորին սրբազնութիւնը իր սեւ աղլասի փարաջայի տակից այստեսակ խարազն հագած չունի, բայց դարձեալ համաձայնուեցաւ նրա հետ, ասելով.

— Արեւելքում արտաքին փայլը մեծ նշանակութիւն ունի։

— Մինչեւ անգամ հարկաւոր է, — աւելացրեց սրբազանը. — այստեղ մարդկանց խելքը աչքերումն է եւ ոչ գլխումը։ Իմ նախորդը երբ որ գնում էր փաշայի մօտ, նրան ժամերով սպասել էին տալիս, մինչեւ թոյլտուութիւն էր ստանում ներկայանալու, — որովհետեւ ոտքով էր գնում եւ աբեղայական հասարակ հագուստով։ Բայց ինձ հետ այնպէս չեն վարվում...

— Ձեր փաշան բաւական քաղաքավարի մարդ է, — խօսքը փոխեց Ալանը։

— Ամենապատուական մարդ է, բարի, առաքինի, ժողովրդասէր, աշխարհաշէն, մի խօսքով, թէ՛ իբրեւ մարդ եւ թէ՛ իբրեւ երկրի կառավարիչ, անգնահատելի է, իր նմանը չունի։ Նա բոլորովին հիացած է ձեզանով, պարոն բժշկապետ, նա ձեզ Լօղմանի հետ է համեմատում. ձեր սակաւաժամանակեայ բժշկութիւնը թէ՛ փաշայի վրայ եւ թէ նրա որդու վրայ մեծ օգուտ է բերել։ Քանի օր առաջ նրա մօտ էի, միշտ ձեզ վրայ էր խօսում, եւ միշտ այն էր հարցնում, թէ ի՞նչով կարող է երախտամատոյց լինել ձեզ։

— Ես նրան մի մեծ ծառայութիւն չեմ արել, — պատասխանեց Ալանը, — բայց պատրաստ կը լինէի, եթէ իմ ժամանակը ներէր, աւելի մեծ ծառայութիւններ անել, որովհետեւ նա արժանաւոր մարդ է, եւ մանաւանդ որ դուք այդքան գովում էք։

— Ճշմարիտ է, արժանաւոր մարդ է եւ գովութեան արժանի է, — կրկնեց սրբազանը։

— Ուրեմն ժողովուրդը պէտք է շատ գոհ լինի մի այդպիսի լաւ կառավարչից։

— Ժողովուրդը չափազանց գոհ է, մանաւանդ քրիստոնեաները։ Բայց . . .

Վերջին բառը արտասանելու միջոցին սրբազանի աչքը ընկաւ իմ երեսին եւ նա ընդհատեց իր խօսքը։ Ալանը այդ նկատելով, ինձ նշան արեց, որ հեռանամ։ Ես դուրս եկայ նախասենեակը եւ նստեցի դրան մօտ։ Նրանց խօսակցութիւնը պարզ լսելի էր եւ այնտեղ։

— Դուք մի բան էիք ուզում ասել, սրբազան։

— Այո՛, այն էի ուզում ասել, որ ժողովուրդը չափազանց գոհ է, մանաւանդ քրիստոնեաները։ Բայց մեր մէջ

այժմ դուրս են եկել մի տեսակ խենթ ու խելառ նորելուկներ, որոնք, ամենայիմար ցնորքներով ոգեւորուած, ազատութեան հրապոյրներով յուզմունքներ են յարուցանում ժողովրդի մէջ եւ միամիտներին մոլորեցնում են։ Եւ այդ՝ երիտասարդութիւն կոչուած, ցնորամիտ փոքրամասնութիւնն է, որ դժգոհ է տիրող կառավարութիւնից։ Ցաւալին այն է, որ նրանց դժգոհութիւնը արտայայտւում է այնպիսի ապօրինի եւ յանցաւոր եղանակներով, որ ոչինչ լաւ արդիւնք չունենալուց յետոյ, մեծամեծ վնասների եւ կորուստների պատճառ է դառնում։

— Որպիսի՞ վնասներ, — հարցրեց Ասլանը։

— Այդքանն էլ մեծ վնաս եւ մեծ կորուստ պէտք է համարել, պարոն բժշկապետ, որ մենք կորցնում ենք մեր բարեխնամ կառավարութեան աչքում մեր հաւատարմութիւնը, որ ստացել ենք դարեւոր, անձնանուէր ծառայութեամբ։ Մեր ժողովուրդը մի քանի խելագարների պատճառով, կասկածաւոր է դառնում կառավարութեան աչքում։

— Մի՞թէ կայ հայերի մէջ այդ տեսակ երիտասարդութիւն, — հարցրեց Ասլանը զարմացած կերպով։

— Դժբախտաբար կայ, բայց դեռ նոր է ծնվում, դեռ նոր է կազմակերպվում։ Բայց թէ՛ ես, որ իմ սուրբ պարտաւորութիւնն եմ համարում, եւ թէ՛ փաշան, որ նոյնքան նախանձախնդիր է այդ գործում, ամեն ջանք պէտք է գործ դնենք, որպէս զի այդ չարիքը խեղդենք հէնց իր ծնունդի մէջ։

Ասլանը ոչինչ չը պատասխանեց եւ ինձ ներս կանչեց։

— Ասեցէք, խնդրեմ, սրբազան հայր, — խօսքը փոխեց նա, — ձեր վանքերում չե՞ն գտնվում հին բժշկարաններ, դա ինձ համար, որպէս բժշկի, շատ հետաքրքիր է։

Հայոց բժշկարանները, ըստ մեծի մասին թարգմանուած լինելով արաբականից, այժմ արաբերէնի մէջ շատերի բնագիրը կորած է. ես մեծ յոյս ունեմ հայերէն թարգմանութիւնների մէջ գտնել այն կորած գրքերը:

— Գրչագիր բժշկարաններ կարելի է գտնել մեր վանքերում, — պատասխանեց սրբազանը, — ինձ եւս շատ անգամ պատահել է տեսնել: Կարելի է գտնել նաեւ մասնաւոր տներում:

— Ի հարկէ, ձեզ պէտք է յայտնի լինեն այն վանքերը, որոնց մէջ աւելի մեծ թուով գրչագիրներ են պահպանուել:

— Ինչպէս չէ, բոլորը յայտնի են, օրինակ. Վարագայ վանքը, Ծովի մէջ գտնուած երեք կղզիները, որոնց իւրաքանչիւրի մէջ մի-մի անապատ կայ, եւ ուրիշ շատ վանքեր, որոնք գտնվում են իմ վիճակի մէջ:

— Դուք ինձ շատ կը պարտաւորէիք, սրբազան հայր, եթէ կը շնորհէիք ինձ մի թուղթ, որ ձեր թեմի մէջ գտնուած վանքերում, որտեղ կը պատահէր ինձ լինել, ցոյց տային ինձ գրչագիրները: Ես նրանց չէի շարժի իրանց տեղից, բայց եթէ իմ նպատակներին յարմար բան գտնէի, կը խնդրէի, որ արտագրեն ինձ համար:

— Մեծ ուրախութեամբ: Ես կը հրամայեմ հէնց այսօր պատրաստեն այդ թուղթը: Նրա մէջ նշանակուած կը լինեն բոլոր վանքերի անունները, որոնց մէջ գտնվում են գրչագիրներ:

— Շատ շնորհակալ եմ, ձեր թուղթը ինձ համար միեւնոյն ժամանակ մի տեսակ ուղեցոյց կը լինի:

Սրբազանը հրամայեց երկրորդ անգամ սուրճ տան եւ կանչեց իր քարտուղարին:

— Մինչեւ դուք մի անգամ եւս նարգիլէ կը ծխէք, թուղթը պատրաստ կը լինի:

Քարտուղարը հարկաւոր պատուէրը ստանալուց յետոյ, գլուխ տուեց եւ հեռացաւ: Ասլանը դարձեալ շարունակեց խօսել բժշկութեան վրայ:

— Եւրոպան արեւելքից սովորելով բժշկութիւնը, սկսեց բոլորովին մոռանալ իր վարժապետին: Յառաջադէմ աշակերտը, իրաւ է, կարող է աւելի զարգանալ եւ իր սովորածը աւելի կատարելագործել, բայց հին վարժապետի մօտ դարձեալ շատ բան մնում է: Ես, օրինակ, հիացած եմ հայոց ժողովրդական բժշկութեամբ: Ճանապարհորդութեանս ժամանակ ըստ մեծի մասին խոյս էի տալիս քաղաքներից, անցնում էի հայոց գիւղերով, ժողովրդի բժշկութեան եղանակները ուսումնասիրելու համար: Ինձ յաջողուեց մի քանի նշանաւոր գիւտեր անել, որ մեր բժշկութեան մէջ բոլորովին անծանօթ են:

Ասլանը սուտ չէր խօսում. նա, իրաւ, հետաքրքրւում էր ժողովրդական բժշկութեամբ եւ նրա գրքերով, բայց այդ չէր նրա ճանապարհորդութեան իսկական նպատակը: Հանգամանքներից օգուտ քաղելու զարմանալի ընդունակութիւն ունէր այդ մարդը, եւ աւելի զարմանալի էր նրա մէջ այն ճարպկութիւնը, որ իր ցանկացած նպատակը հէնց իր հակառակորդի ձեռքով կատարել կը տար: Օրինակ, նա պէտք է գնար Վարագայ վանքը, եւ ինձ լաւ յայտնի էր, թէ ինչ նպատակով: Նրա այցելութիւնը այդ վանքին՝ կարող էր մեծ կասկած յարուցանել սրբազանի սրտում, որովհետեւ, ինչպէս յետոյ կը տեսնենք, նա Վարագայ վրայ շատ վատ աչքով էր նայում: Այժմ Ասլանը այնպէս պտըտացրեց գործը, որ ինքը սրբազանը նրան թուղթ տուեց Վարագ գնալու, թէեւ ես հաւատացած էի, որ Վարագայ գրադարանը նրան շատ չէր հետաքրքրում:

— Ես կը ցանկանայի տեսնել նաեւ մի տեսակ աղ, որ պատրաստվում է Վանում, — ասաց Նա։

— Այդ աղը պատրաստվում է Աւանց գիւղում, — պատասխանեց սրբազանը, — այստեղից շատ հեռու չէ գիւղը, ընդ ամենը մի քանի ժամուայ ճանապարհ է։ Պատրաստում են ծովի ջրից, "բորակ" է կոչվում, այստեղ գործ են ածում լուացքի մէջ, մաքրելու զարմանալի զօրութիւն ունի։

— Նա բորակ չէ, — ասաց Ալանը, — անկասկած մի այլ բաղադրութիւն պէտք է լինի։ Եթէ իմ կարծած աղից լինի, որի մէջ տարակոյս չունեմ, կարելի է յուսալ, որ այդ աղը ժամանակով կը դառնայ վանեցոց հարստութեան գլխաւոր աղբիւրներից մէկը։

— Հարստութիւններ շատ կան մեր երկրում, պարոն բժշկապետ, — ասաց սրբազանը ցաւակցական եղանակով, — մեր հանքերը լի են արծաթով, զառիկով, պղնձով, մենք ունենք նաւթի աղբիւրներ, առատ քարածուխ եւս գտնվում է մեր լեռներում, ուրիշ ինչեր չունենք մենք, բայց օգուտ քաղողներ չը կան։ Եթէ ձեզ նման ճանապարհորդներ յաճախ այցելէին մեր կողմերում եւ ուսումնասիրէին երկիրը, մենք բախտաւոր կը լինէինք։

— Այդ իրաւ է, — ասաց Ալանը եւ, նայելով ժամացոյցին, աւելացրեց, — ներեցէք, սրբազան հայր, ես բաւական ժամանակ խլեցի ձեզանից։ Ճանապարհորդները առհասարակ սաստիկ շատախօս են լինում, բայց ես չափը անցայ։ Ձեր հաղորդած տեղեկութիւնները այն աստիճան թանգագին էին ինձ համար եւ գրաւիչ, որ ես չէի կարող օգուտ չը քաղել։

— Շատ ուրախ եմ, պարոն բժշկապետ, — ասաց սրբազանը մի առանձին բարեսրտութեամբ, — դուք ինձ մեծ

բաւականութիւն կը պատճառէիք, եթէ, որքան ժամանակ այստեղ կը մնայիք, շուտ-շուտ տեսնուէինք, գուցէ ես կարող կը լինէի ուրիշ ծառայութիւններով եւս պիտանի լինել ձեզ։

— Շատ շնորհակալ եմ, սրբազան հայր։

Այդ միջոցին սրբազանը վերկացաւ, մտաւ կից սենեակը, եւ քանի րոպէից յետոյ վերադարձաւ, ձեռքում բերելով մի օտարոտի բան, որը առաջարկեց Ասլանին, ասելով.

— Դուք ինձ շատ յարգած կը լինէիք, եթէ յիշատակի համար՝ այդ չնչին նուէրը ընդունէիք ինձանից եւ դասէիք ձեր հաւաքած հնութիւնների կարգում։

Դա փոքրիկ թիակի ձեւով մի գործիք էր փղոսկրից շինուած։ Նրա կոթը զարդարած էր ամենանուրբ քանդակներով, իսկ գլուխը կնոջ քնքոյշ ձեռքի նմանութիւն ունէր, որի ափի մէջ երեւում էին խարտոցի ատամների պէս փափուկ խազեր։ Ասլանը, ձեռքում բռնած, երկար նայում էր նրա վրայ, յետոյ երեխայի պէս ուրախանալով, ասաց.

— Ես այն աստիճան սիրահարուած եմ հնութիւնների վրայ, սրբազան հայր, որ եթէ դուք չը տայիք այդ գեղեցիկ ընծան, ես պատրաստ կը լինէի մինչեւ անգամ գողանալ ձեզանից։

— Իսկ ես ձեր այդ փոքրիկ մեղքը կը ներէի, որպէս հոգեւորական, — պատասխանեց սրբազանը նոյնպէս ուրախանալով։

Ուղիղն ասած, ես էլ չը կարողացայ զսպել ինձ, սկսեցի ծիծաղել այդ հանաքների վրայ։

— Ձեր ընծան որքան հիանալի է, սրբազան հայր, — ասաց Ասլանը, — բայց խոստովանում եմ, որ նոյնքան ես վատ հնագէտ եմ նրա նշանակութիւնը հասկանալու համար։ Բացատրեցէք, խնդրեմ, դա ի՞նչ բանի է ծառայում։

— Դա մեր վանական աբեղաների հնարած մի գործիք է, կոչվում է “տիրուհի„, հէնց այդ անուան մէջն է նրա նշանակութիւնը, որովհետեւ կատարում է նոյն ծառայութիւնը, ինչ որ տան տիրուհին կատարում է ընտանիքի մէջ։ Հայոց ընտանիքներում դեռ պահպանուել է վաղեմի սովորութիւնը, որ տան տիրուհին քորում է իր սկեսուրի, սկեսրայրի եւ մինչեւ անգամ յարգելի հիւրերի մէջքը, մաժում է նրանց ոտները եւ հանգստացնում է նրանց քնելու ժամանակ։ Որովհետեւ աբեղաները զրկուած են տիրուհիներից, հնարել են մի այսպիսի գործիք իրանց մէջքը քորելու համար։

— Շատ սուր կատակ է աբեղաների կողմից, — խօսեց Ասլանը ժպտելով։ — Ասեցէք խնդրեմ, ո՞ր դարու գործ է այդ “տիրուհին„։

— Պէտք է տասներկուերորդ դարու գործ լինի, որովհետեւ այն կաթողիկոսը, որին ընծայուած է եղել այդ “տիրուհին„, ապրում՛ էր տասներկուերորդ դարում, — դա Դաւիթն էր, որ Աղթամարայ կաթողիկոսութեան սկիզբը դրեց։

Ասլանը, փոքր ինչ դժուարութիւն ցոյց տալով, կարդաց հետեւեալ մակագրութիւնը.

“Ի վայելումն Դաւթի Աղթամարայ սրբազնասուրբ կաթողիկոսի„։ “Ի Հնդիկս„։ — Ուրեմն Հնդկաստանի գործ է. երեւում է, հայերը դեռ տասներկուերորդ դարում Հնդկաստանում գաղթականութիւն են ունեցել։

— Այդ չը գիտեմ, — պատասխանեց սրբազանը։

— Ասեցէք, խնդրեմ, այս տեսակ “տիրուհիներ„ մինչեւ այսօ՞ր գործ են ածվում ձեր վանքերում։

— Այո՛, գործ են ածվում, մանաւանդ այն վանքերում, ուր բոլորովին փակուած կեանք են վարում։

— Հիանալի գեղարուեստ կայ դրա մէջ, — ասաց Ալանը խիստ պէս հրճուելով, — այդ «տիրուհին» կարող է Եւրոպայի ամենանշանաւոր մուզէումներից մէկի զարդը լինել, բայց ես ինձ մօտ կը պահեմ, իբրեւ թանգագին յիշատակ։ Ուրեմն թոյլ տուեցէք, սիրազան հայր, իմ կողմից եւս ձեզ մօտ մի փոքրիկ յիշատակ թողնել։

Ալանը նայեց իմ երեսին, ես մօտեցայ եւ քթախոտի փղոսկրեայ տուփը, որ պահուած էր գեղեցիկ պատեանի մէջ, դրեցի նրա առջեւ։ Նա վեր առեց եւ տուեց սրբազանին, որը շնորհակալութեամբ ընդունելով, ասաց.

— Որքան անգամ այդ տուփը ձեռքս առնելու լինեմ, ձեր անունը օրհնութեամբ կը յիշուի իմ բերանում, պարոն բժշկապետ։

Ալանը այլ եւս երկար չը նստեց, երբ քարտուղարը պատրաստած թուղթը ներս բերեց։ Սրբազանը կնիքը դրեց եւ ստորագրեց թուղթը, յետոյ իր ձեռքով տուեց Ալանին։ Նա շնորհակալութեամբ ընդունեց թուղթը եւ, «տիրուհին» առնելով, վեր կացաւ։ Երբ սրբազանի աջը սեղմելով կամենում էր հեռանալ, նա կանգնեցրեց, ասելով.

— Կիրակի գիշեր ինձ մօտ հիւրեր կը լինեն, որոնց թւում կը լինի փաշան եւ մեր քաղաքի մի քանի նշանաւոր անձինք։ Խնդրեմ, դուք եւս յարգէք մեր սեղանը։

— Մեծ ուրախութեամբ, — ասաց Ալանը եւ մենք դուրս եկանք։

Բակի դրան մօտ տեսանք քարտուղարին, որ դարան մնած կատուի պէս սպասում էր մեզ։

— Դրան պէտք է մի բան տալ, — ասեցի Ալանին։

— Գիտեմ, — ասաց նա եւ, կանչելով քարտուղարին, դրեց նրա ափի մէջ մի հատ ոսկի։

*Քարտուղարը, ի նշան իր շնորհակալութեան, բռնեց Ալանի ձիու ասպանդակը; որ նա հեծնէ։ Ալանը մերժեց այդ ցած ծառայութիւնը, որ վայել չէր նրա աստիճանին։*

*Ճանապարհին ես ասեցի Ալանին.*

*— Բաւական քաղաքավարի մարդ երեւաց ինձ սրբազանը։*

*— Ու յիմար մարդ չէ։*



Ը.

## ՆԱՒԱՀԱՆԳՍՏԻ ԴՌՈՒՌԸ

Առաջնորդարանից դուրս գալուց յետոյ, մենք այլ եւս չը վերադարձանք Այգեստան, որովհետեւ Ասլանը կամենում էր Աւանց գիւղը գնալ, ծովային աղերի պատրաստութիւնը տեսնելու համար։ Նա ինձ ասաց, որ ճանապարհը գիտէ եւ առաջնորդի ամենեւին կարօտութիւն չը կայ։

Մինչեւ կէս օր դեռ բաւական ժամանակ կար։ Մենք դուրս եկանք Իսքալէ-Կափուսի կոչուած քաղաքադռնից, որ տանում է դէպի Նաւահանգիստը։ Այդ պատճառով եւս նա կոչվում է Իսքալէ-Կափուսի, որ նշանակում է Նաւահանգստի դուռ։ Այստեղից մինչեւ Աւանց գիւղը, որի մօտ գտնվում է եւ Նաւահանգիստը, կէս ժամու ճանապարհ է, բայց մենք զանազան հետազօտութիւնների պատճառով բաւական ուշ հասանք։ Ճանապարհը ձգվում էր մշակուած դաշտերի, ագարակների, այգիների եւ կանաչազարդ մարգագետինների միջով։ Դա բանուկ ճանապարհներից մէկն էր, որ քաղաքից տանում էր դէպի Նաւահանգիստը։ Խիստ յաճախ պատահում էինք խումբերով ուղեւորների, որոնք զարմացած կերպով նայում էին Եւրոպացու վրայ եւ, գլուխ տալով, անցնում էին։ Ճանապարհի եզերքին շատ անգամ տեսնում էինք մենաւոր մարդիկ, որ անշարժ նստած գետնի վրայ, անխորհուրդ կերպով նայում էին անցուդարձ անողների վրայ։ Նրանց մօտ ուրիշ ոչինչ չկար, բացի անբաժան չիբուխից, որ դրած էր նրանց կշտին։ Այդ անգործ, ծոյլ, աննպատակ մարդիկը ժամերով այդպէս անշարժ կը նստեն եւ կը նայեն, ինչի՞ համար, իրանք եւս չը գիտեն։ Եւրոպացու երեւոյթը խռովում էր եւ նրանց հանգստութիւնը. նրանք եւս ոտքի էին կանգնում, խոնարհութեամբ

գլուխ էին տալիս, եւ երբ մենք անցնում էինք, դարձեալ նստում էին ու նայում։

Մեզ պատահեց քուրդի քարաւան։ Դա յիշեցնում էր հովիւ ժողովրդի այն խորին, նախնական դրութիւնը, երբ բոլոր չորքոտանիներից ընտանիացրել էր նա կովին ու եզին միայն։ Քարաւանի ամբողջ դրաստները եզներ էին։ Քուրդը նրանց վրայ բարձել էր այն մթերքները, որ գնել էր քաղաքից. նրանց վրայ նստացրել էր եւ իր կնոջը, մի երեխայ գրկումը, միւսն էլ ետեւում, մօր մէջքին կպած։ Քարաւանը դիմում էր դէպի նաւահանգիստը։ Առանց սանձի, առանց համետի, հլու եւ հնազանդ անասունները, դանդաղկոտ քայլերով, տանում էին իրանց ծանրութիւնները։ Մտրակի կարօտ չէին նրանք, նրանց կառավարում էր տիրոջ ձայնը։ Ճանապարհի ամբողջ լայնութիւնը, երկար տարածութեան վրայ, լցուած էր այդ խառնիճաղանճ բազմութեամբ։ Բայց երբ մենք մօտեցանք, քարաւանը իսկոյն երկու մասն բաժանուեցաւ, մեզ ճանապարհ տուեց, մենք մէջտեղից անցանք։ Եւրոպացուն հանդիպելը դռեհիկ քուրդի մէջ անգամ մեծարանք էր ազդում։

Իսքալէ-Կափուսիից անցնելով, շուտով մենք հասանք այն նշանաւոր տեղը, ուր, ճանապարհի մի կողմում, մենք տեսանք ահագին, մեծահատոր քարեր, որ կարծես, հսկաների ձեռքով շարուած լինէին միմեանց վրայ։ Քարերի ծերպերից վազում էին պարզ, սառն աղբիւրներ, եւ մամուռը իր կանաչ թաւիշով պատել էր հին արհեստագործութեան հրէշաւոր կերպարանքը։

Վանեցի հայերի աւանդութիւնը յիշեալ քարերի մասին հրաշքներ է պատմում. դրանց վերաբերում է այն ժամանակներին, երբ մարդիկ այժմեան նման փոքրիկներ չէին, այլ հսկաներ էին։ Նրանք պատերազմում էին դեւերի

*եւ վիշապների հետ, եւ ահագին քարաժայռը, թեթեւ գնդակի նման, նետում էին դէպի թշնամին։ Յիշեալ քարերի կառուցումը եւ նրանց շինուածքը տղամարդի գործ չէ, ասում է վանեցին, այլ այն ժամանակի տկար կնոջ ձեռքի գործն է։ Մայրը տուել է այն ահագին քարերը աղջկան, եւ աղջիկը մօր ձեռքից առնելով, շարել է միմեանց վրայ։*

*Երբ այդ աւանդութեան մասին հարցրի Ասլանից, նա պատասխանեց.*

*— Երեւում է, որ ամենահին ժամանակներում մի կին թագաւոր Վանի մէջ եւ կամ նրա շրջակայքում մեծ գործեր է կատարել։ Այդ միմեանց վրայ շարած քարերը, որ տեսանք, ուրիշ ոչինչ չեն, եթէ ոչ, փշրանքները այն հսկայական ամբարտակի կամ պատնէշի, որ մի ժամանակ կառուցուել է ծովի ջրերի աճելու առաջն առնելու համար, որ չը մտնեն քաղաքին։ Խորենացին այս ամբարտակի կառուցումը վերաբերում է Շամիրամին, որ գործ է դրել նրա շինութեան վրայ 12 հազար բանուորներ եւ 6 հազար արհեստաւորներ։ Բայց Խորենացու նկարագրութիւններից երեւում է, որ նա Վանը կամ ամենեւին չէ տեսել, կամ մի ժամանակ տեսել է, բայց իր պատմութիւնը գրելու միջոցին շատ բան մոռացել է։ Եթէ Խորենացին հետեւած լինէր ժողովրդի մէջ պահպանուած աւանդութիւններին, նա ամենեւին այդ բոլոր մեծագործութիւնները Շամիրամին չէր վերաբերի, այլ մի թագուհու, որ տեղային ժողովրդից էր։ Այսօր ժողովուրդը մոռացել է այդ թագուհու անունը, բայց նրա գործը դեռ յիշում է։ Նա ասում է, այդ քարերը մի աղջիկ է շարել միմեանց վրայ։ Բայց Խորենացու ժամանակ, եթէ նա դիմած լինէր ժողովրդին, նրան կ'ասէին, թէ ով էր այդ աղջիկը։*

ծովը մեր առջեւն էր: Միջօրէի պայծառ արեգակի լուսաւորութեան ներքոյ, աքանչելի տեսարան էր ներկայացնում նա: Նրա բարձր նկարչական եզերքը, պատած թուփերով եւ կանաչազարդ խոտերով, կամաց-կամաց ցած էին իջնում, միախառնվում էին ջրերի պարզ-կապուտակութեան հետ եւ, կազմելով մի հրաշալի պատկեր, կարծես, ձգտում էին միցել երկնքի Փէրուզայի գոյն յստակութեան հետ: Սիփանը, ծովը շրջապատող լեռներից ամենաբարձրը, երեւում էր իր վեհափառ գագաթով: «Վարդապետիկների» (կէւ-կէւների) ուրախ երամը, սուր վեղարները գլխներին, աղմկում էին օդի խաղաղութիւնը իրանց զիլ ձայներով: Ջրերի խորքերից, կիսալուսնաձեւ թեւիկներով, թռչում էին նրանք դէպի ափերը: Այդ ուրախ, մշտազուարթ թռչունները, կարծես, այն աբեղաների ոգիները լինէին, որոնք ձանձրացած իրանց մռայլ խուցերի տխրութիւնից, թողել էին Կտուց անապատի կղզին եւ սլանում էին դէպի աշխարհ, դէպի կեանքը, դէպի մարդկութիւն...

Իսքալէ-Կափուսիից մենք անցանք Աւանց գիւղը: Այդ գիւղը գտնվում է քաղաքի արեւմտեան կողմում, ծովի ափի մօտ, եւ նրա նաւահանգիստն է: Այստեղից քաղաքը ջրային հաղորդակցութիւն ունի Մուշի, Բաղէշի եւ այլ ծովեզերեայ գաւառների հետ: Աւանց գիւղը երկու մղոնով միայն հեռու է քաղաքից: Նա ամբողջապէս հայաբնակ է եւ ունի մօտ 300 տուն հայ բնակիչներ, որոնց գլխաւոր պարապմունքն է նաւավարութիւն եւ ծովի ջրերից «բորակ» կոչուած աղը գոյացնելը: Եօթանասուն ընտանիքից աւելի տներ ունէին իրանց սեպհական նաւակները ջրերի վրայ: Աւանցիք պարապում էին եւ երկրագործութեամբ. այդ գիւղի այգիները ամենագեղեցիկներն են Վանի շրջակայքում:

Մտնելով գիւղը, հէնց առաջին փողոցում հանդիպեցինք վարպետ Փանոսին, որ մի խումբ գիւղացիներով շրջապատուած, ինչ-որ խօսում էր նրանց հետ։ Նա, երեւի, այնտեղ սպասում էր մեզ։

— Ի՞նչ էք շինում այստեղ, — հարցրեց Ասլանը։

— Եկել եմ “Նխախաններ„ հաւաքելու, — պատասխանեց նա։ — Չը գիտեմ՝ ի՞նչ պէտք է անել այդ գիւղացիների հետ, բերում են իրանց գործուածները, ներկել են տալիս, իսկ փողը չեն վճարում։ Լաւ է, որ պատահեցինք, պարոն բժշկապետ, — խօսքը փոխեց նա. — դուք, երեւի, եկել էք այստեղի աղերը հետազօտելու, ուրեմն, այսօր այստեղ կը մնաք, եւ եթէ գնալու ցանկութիւն եւս ունենաք, մենք ձեզ չենք թողնի, կը պահենք այստեղ։ Գիւղում մի քանի վտանգաւոր հիւանդներ կան, պէտք է նրանց օգնութիւն հասցնել։ Առ այժմ ձեզ հարկաւոր է մի տեղ հանգստանալու համար։

Երեւում էր, որ վարպետ Փանոսը այդ գիւղում մեծ ծանօթութիւններ ունէր. ամեն կողմից նրան խնդրում էին, որ մեզ իրանց մօտ տանէ, բայց նա տարաւ մեզ մի տուն, ուր, նրա ասելով, հիւանդներից մէկը հէնց այնտեղ էր։

Այդ տունը իր ընդարձակ բակով եւ ծառախիտ պարտէզով ամառուայ համար ամենայարմար իջեւանը կարելի էր համարել։ Նա բոլորովին մօտ էր ծովեզրին եւ առաւօտեան ընդունում էր ծովային հովասուն օդը։ Քառակուսի բակը շրջապատած էր մէկ ու կէս կանգնաչափ քարեայ պարսպով, որը այնքան ցած էր, որ վրայից շատ հեշտութեամբ կարելի էր թռչել։ Երեւում էր, որ տան տէրը երկիւղ չունէր գողերի գիշերային արշաւանքից։ Բակի մի կողմում, չորս սիւների վրայ կանգնած էր, չորս կողմիցն էլ բաց՝ մի ծածկոց, որին կոչում էին “չարդախ„։ Նրա տակին

*ածած էին զանազան մեծութեամբ հին ու նոր տախտակներ, դեռ չըսղոցած գերանների կտորներ, եւ հիւսնի զանազան ատաղձներ։ Այդ բոլորը տեսնելով, առաջի անգամից, այդ տունը հիւսնի արհեստանոցի տպաւորութիւն էր գործում։ Զարդախից մի դուռ բացվում էր դէպի փոքրիկ խրճիթը․ այնտեղից ուրագի ձայն էր լսվում։ Այնտեղ գործում էր ալեւոր արհեստաւորը, բայց նա տան տէրը չէր, նա մի օտարական էր, որին ժամանակաւոր բնակարան էին տուել աշխատելու։*

*Տան տէրը չէր երեւում․ չէր երեւում եւ ոչ ոք տանեցիներից, միայն մի քանի սագեր, որ դեռ նոր էին վերադարձել ծովեզրից, որոնում էին մի հովանաւոր տեղ, արեւի կիզող ճառագայթներից պատսպարուելու համար։ Նրանցից մէկը գլխեց դէպի ուռիների տարածած ստուերը եւ, կըչկըչալով, համեցէք անելով, իր ընկերներին ու ընկերուհիներին հրաւիրեց այնտեղ։ Ամբողջ երամը հանգստացաւ սառն ստուերի ներքոյ, ուր արեւի կրակից եւ ոչ մի նշոյլ չէր թափանցում։ Մենք դեռ բակումը մնն էինք գալիս, սպասում էինք տան տիրոջը։*

*Վերջապէս յայտնուեցաւ նա։ Դա մի հաստաբազուկ, թիկնաւէտ, բարձրահասակ տղամարդ էր, արեւակէզ դէմքով, որի սուր, թափանցող հայեացքը, կարծես, նետի նման մխվում էր մարդու սրտի մէջ։ Գլխին դրած ունէր կապոյտ եւ կարմիր թելերով նախշած արախչին, հագել էր միայն հաստ, սպիտակ կտաւից շապիկ, որի նոյնպէս կապոյտ եւ կարմիր թելերով ասղնագործած օձիքից երեւում էր թաւամազ, հզօր կուրծքը։ Օրուայ ջերմութիւնը ստիպել էր նրան փոքր ինչ զովութիւն տալ իր թոքերին։ Մէջքը պնդած էր մետաքսեայ գօտիով, որից քարշ էր ընկած մի մեծ դանակ։ Կապտագոյն շալվարը, վերեւից բաւական լայն,*

իսկ հետզհետէ սաստիկ նեղնալով, իջնում էր մինչեւ նրա ծնկները։ Սրունքները մնացել էին բոլորովին մերկ. մերկ էին եւ ոտները։ Հոլանի բազուկները ծալած էին մինչեւ արմունկները, երեւում էր, որ ծովեզրից էր գալիս եւ այնտեղ ջրերի հետ գործ էր ունեցել։ Եւ իրաւ, այդ ամենատաղանդաւոր արձանագործի քերիչին արժանի աղամարդը պարապմունքով նաւավար էր եւ նաւահանգստում կապած էր նրա սիրուն նաւակը։

Վարպետ Փանոսի հետ նա նախածանօթ էր երեւում. մօտեցաւ նրան եւ ինչ-որ խօսեց, բայց իմ եւ Ալանի վրայ առանձին ուշադրութիւն չը դարձրեց։ Եւրոպացին նրան չէր զարմացնում, կարելի էր կարծել, որ նա եւրոպացիք շատ էր տեսել։

Վարպետի հետ իր խօսքը վերջացնելուց յետոյ, նա անփոյթ կերպով մօտեցաւ մեզ եւ, առանց բարեւելու, ասաց.

— Այստեղ ի՞նչու էք կանգնած։

Նրա անքաղաքավարութիւնը, որ կոպտութեան էր հասնում, սաստիկ վիրաւորեց ինձ։ Ալանը ոչինչ չը պատասխանեց։ Պատասխանեց վարպետ Փանոսը իր սովորական ծիծաղով.

— Օրհնած, ո՞ւր գնանք, ամբողջ ժամ սպասում էինք այստեղ, ոչ տան տէր էր երեւում եւ ոչ տան տիրուհի, որ մեզ մի տեղ ցոյց տար։

— Այդ մարդիկը, ասենք թէ, օտարներ են, դու խօ իմ տան բոլոր ծակուծուկը գիտես, ի՞նչու չէիր տեղ ցոյց տալիս։ — Նա դարձաւ դէպի մեզ ասելով. — Եկէք։

Նա տարաւ մեզ մի երեսը բաց սրահ (էյվան), որ նայում էր դէպի պարտէզը։ Սրահի բաց կողմը բաժանուած էր պարտէզից փայտեայ վանդակապատով, իսկ նրա միջից

բացվում էր մի դուռ դէպի միւս սենեակները։ Սրահը տան ամառնային կեցութեան համար էր։

— Աղջի՛, Ծովինար, ո՞ւր ես, — ձայն տուեց նա։

Սենեակի դուռը բացուեցաւ եւ ներսից յայտնուեցաւ մի գեղեցիկ աղջիկ, տասն եւ չորս տարեկան, որի արախչինը ամբողջապէս ծածկուած էր արծաթեայ եւ ոսկեայ դրամնե-րով, եւ թասի ձեւ էր ստացել։ Արախչինի տակից սփռուած էին նրա թիկունքի վրայ, առանց հիւսերի, արձակ ծամերը եւ կիսով չափ պքօղում էին նրա թուխ դէմքը։ Աղջիկը աւելի քաղաքավարի գտնուեցաւ, քան թէ հայրը. երբ որ տեսաւ մեզ, հեռուից գլուխ տուեց եւ լուռ կանգնեց, սպասելով հօր հրամանին։

— Բեր այստեղ մի շոր քցիր, որ այդ մարդիկը նստեն, — ասաց հայրը։

Աղջիկը շուտով ջուր բերեց, ճարպիկ մատներով սրսկեց սրահի կաւով ծեփած յատակի վրայ, յետոյ տա-րածեց եղէգներից հիւսած ընդարձակ հասիրը, իսկ նրա վրայ մի քանի նախշուն կապերտներ։ Մենք կանգնած սպա-սում էինք, մինչեւ նա իր գործը վերջացնէ։

— Մի մինդար էլ բեր այդ պարոնի համար, — նա ցոյց տուեց Ասլանի վրայ, — այդ պարոնը Ֆրանկ է, նրա տեղը պէտք է փափուկ լինի, իսկ մենք շոր գետնի վրայ էլ սովոր ենք նստել։

Աղջիկը ներս վազեց, բերեց մինդարը, տարածեց իր պատշաճաւոր տեղում։ Ասլանը նստեց, իսկ ես ոտքի վրայ կանգնած մնացի։

— Դու ի՞նչու այդպէս ցցուած մնացիր, կարծես, փայտ է կուլ տուել, նստել չէ կարող, — ասաց մեր հիւրընկալը ես, տեսնելով, որ ես փոքր ինչ ծանր շարժուեցայ, բռնեց

իմ ուսից եւ իր ձեռքի երկաթի ծանրութեամբ համարեա թէ ինձ թխեց կապերտի վրայ։

Ես չը գիտէի ինչպէս ընդունել այդ վայրենի փաղաքշանքը։ Ես սաստիկ բարկացայ, մանաւանդ երբ տեսայ, որ սիրուն աղջիկը ձեռքով աչքերը բռնեց, եւ ծիծաղելով փախաւ միւս սենեակը։ Ես իմ մտքում արդէն սկսել էի տրտնջալ վարպետ Փանոսի վրայ։ Ինչո՞ւ այստեղ բերեց մեզ, միթէ ամբողջ գիւղում մի օրինաւոր տուն չը կար։ Բայց Ասլանի դէմքի վրայ դժգոհութեան նշաններ չէին երեւում։

— Աղջի՛, — դարձեալ ձայն տուեց նա, — մի բան պատրաստեցէք դրանք ուտեն, ճանապարհից են գալիս, քաղցած կը լինեն։

Նրա ձայնը աւելի որոտում էր քան թէ խօսում էր։

— Ճանապարհից եկած հիւրերի նախ ձիերին են կերակրում, — նկատեց վարպետ Փանոսը։

— Այդ որ իմանում ես, դէ վեր կաց, ահա այնտեղ խոտ է դրած, տարածիր ձիերի առջեւը, — պատասխանեց նա, խոտի դէզը ցոյց տալով։ — Տեսնում ես, որ ծառաները տանը չեն։

Վարպետ Փանոսը գնաց ձիերին ճարակ տալու։ Նա դարձաւ դէպի Ասլանը.

— Զարմանալի մարդիկ են այդ քաղաքացի կոչուածները, սովորել են միշտ գիւղացուն բանեցնել, իսկ իրանք հանգիստ նստել։

Մեր հիւրընկալին կոչում էին Բէկրդէն-Օղլի, որ նշանակում է յոյնի որդի։ Նա ազգով հայ էր եւ նոյն գիւղացի, բայց երկար ժամանակ Յունաստանում ապրելով, եւ Բալկանեան թերակղզու վրայ թափառելով, այդպիսի անուն էր ստացել։ Տեսնելով նրան, ես մտաբերում էի “Գժին„, բայց

բարեսիրտ, սրտաբաց եւ ուղղախօս քաՀանայի եւ կոպիտ նաւավարի մէջ այն զանազանութիւնը միայն կար, որ վերջինս սաստիկ մաղձոտ եւ դառնացած էր երեւում ինձ։ Գուցէ աստանդական կեանքը, անաջողութիւնները եւ ինձ անյայտ Հանգամանքներ՝ նրա բնաւորութեանը տուել էին այդպիսի կոշտ, կոպիտ եւ մթին յատկութիւններ։ Մի՞թէ ծովի, գեղածիծաղ ալիքների, լուսնկայ գիշերների Հետ միշտ գործ ունեցող մարդը, մի թէ ծովային զեփիւռի քաղցր մեղեդին միշտ լսող մարդը, կարո՞ղ էր այդպէս մաղձոտ լինել...

— Դուք եղա՞ք Մօնտէնեգրօյում, — Հարցրեց Ասլանը։

— Եղայ եւ Մօնտէնեգրօյում, եւ Սերբիայում, եւ Բօլգարիայում... ամեն տեղ եղայ... պատասխանեց նա տխուր կերպով։

Ասլանը ժպտաց։

— Ի՞նչու էք զարմանում, վանեցին ուր չէ գնում. աշխարՀի բոլոր անկիւններում կարելի է տեսնել նրան։ Մէկը Հնդկաստանում տեսել էր մի կաղ վանեցի եւ ծիծաղելով ասել էր. «Եթէ վանեցու կաղը մինչեւ Հնդկաստան է Հասել, ոտներ ունեցողը Չինաստանից էլ կ՚անցնի»։ — Այդպէս է մեր վիճակը...

Վաղ առաւօտեան դուրս գալով Այգեստանից, մենք մի թեթեւ նախաճաշիկ էինք արել։ Ասլանը թէեւ ուտելու ցանկութիւն չունէր, բայց ես մի առանձին ախորժակով էի նայում սեղանի վրայ, որ մանկաՀասակ աղջիկը սկսել էր պատրաստել։ Դա, որպէս երեւում էր, մեր Հիւրընկալի դուստրն էր, բայց ո՞ւր էր նրա մայրը։ Այդ կողմի շինական կանայք սովորութիւն չունէին՝ քաղաքացոց նման ծածկուել տղամարդերից, այլ երեւում էին եւ մինչեւ անգամ խօսում էին օտարների Հետ։ Գիւղացոց մէջ մնացել էր այդ պար-

զուլթինը։ Բայց ինչո՞ւ չէր երեւում մեր տանտիկինը։ Այդ մասին հիւրերից ոչ ոք չը հարցրեց եւ ոչ ինքը, տան տէրը, մի բան ասաց։ Սեղանը գիւղական պարզ սեղանից աւելի համադամ եւ ճոխ էր, տարակոյս չը կար, որ վարպետ Փանոսը այդ մասին նախապէս առանձին հոգ էր տարել։

Ճաշից յետոյ անմիջապէս գնացինք ծովեզրը։ Այնտեղ Ալանը ցանկանում էր տեսնել, թէ ինչպէս են պատրաստում ծովային աղերը։ Պատրաստելու եղանակը շատ պարզ էր. ափերի մօտ փորած էին փոքրիկ ածուներ, ջուրը ծովից բաց էին թողնում ածուների մէջ, այնչափով, որ բոլորովին լցվում էին, յետոյ թողնում էին նրանց այնքան ժամանակ, մինչեւ արեւի ջերմութեան ներքոյ ջուրը բոլորովին գոլորշիանում էր, իսկ յատակի վրայ մնում էին աղի փայլուն բիւրեղները։ Այդ բոլորը տեսաւ Ալանը եւ իր հետ վեր առեց պատրաստած աղերից։ Գիւղացինները, որ այդ գործով էին զբաղուած, հետաքրքրութեամբ հարցնում էին, թէ ի՞նչ պէտք է անէ։ Նա բացատրեց, թէ այդ աղերը, որ դուք միայն օճառ պատրաստելու համար էք գործածում, ուրիշ շատ բաների մէջ կարող էին գործածուել եւ մեծ օգուտներ բերել։ Նրանք զարմացան եւ ուրախացան։ Ես իսկոյն նկատեցի, թէ ինչպէս այդ բարի մարդիկը սկսեցին դրանից յետոյ մի առանձին յարգանքով վերաբերուել դէպի Ալանը։ Երբ գիւղացուն մի բան ես սովորեցնում, որի մէջ տեսնում է իր շահը, նա այնուհետեւ դառնում է քո ամենալաւ բարեկամը։

Յետոյ գնացինք նաւահանգիստը։ Ոչ մի առագաստաւոր նաւ չը կար այնտեղ, բոլորը նաւակներ էին, թէ հին եւ թէ նոր տեսակներից։ Հիները, որոնց թիւը աւելի շատ էր եւ որոնց տեղացիք կոչում էին լաստ կամ սանդալ, դեռ կրում էին այն նախնական ձեւը, երբ մարդ առաջին ան-

գամ սկսեց ճանապարհորդել ջրի վրայ: Մի քանի գերաններ, հաւասար երկարութեամբ եւ հաւասար հաստութեամբ, կցել էին միմեանց հետ, այնպէս, որ բոլորը միասին քառակուսի ձեւ էին ստացել: Այդ քառակուսիի մակերեւոյթը պատել էին տախտակամածով, իսկ եզրերը՝ մի կանգնաչափ վանդակապատով: Քառակուսիի տակից, չորս անկիւններում, կապած էին չորս եզան կամ գոմէշի տիկեր, փչած, օդով լիքը: Նայելով նրանց վրայ, Ասլանը ժպտալով ասաց.

— Այդ սանդալները յիշեցնում են այն կաշուց կազմած հայկական նաւակները, որ նկարագրում է Հերոդոտոսը իր պատմութեան մէջ, եւ որ գործ էին ածում հայերը մի քանի հազար տարի առաջ:

Հերոդոտոսի նկարագրած նաւակները, ինչպէս ասաց Ասլանը, բոլորակ ձեւ ունէին եւ, զամբիւղի նման ամբողջապէս հիւսած էին ուռենիի ճիւղերից: Ներսից այդ նաւակները պատած էին մորթիներով, եւ ջուրը դժուարութեամբ կարող էր անցնել նրանց մէջ: Նրանք այնքան թեթեւ էին եւ ընդարձակ, որ կարող էին տանել բաւական ծանրութիւններ: Հայոց վաճառականները տեղաւորում էին նրանց մէջ իրանց վաճառքները, նստում էին եւ վեր էին առնում իրանց հետ մի քանի աւանակներ կամ ջորիներ: Եփրատ գետի ընթացքով լողում էին նրանք մինչեւ Բաբելոն: Հասնելով այն տեղ, վաճառում էին տարած մթերքը, յետոյ նաւակները քանդում էին, մորթիներն էին միայն վեր առնում, իսկ բոլոր հիւսուածքը մի կողմ էին ձգում: Երբ պատրաստւում էին վերադառնալ դէպի Հայաստան, մորթիները բառնում էին ջորիների վրայ եւ ցամաքով ճանապարհ էին ընկնում: Ամէն տեղ նրանք կարող էին պատրաստել նոյն տեսակ նաւակներ, որովհետեւ գլխաւոր նիւթը,

մորթիները, իրանց հետ ունէին, իսկ ուռենի ճիւղեր բոլոր գետերի եզերքի մօտ կարելի էր գտնել։

— Ինչո՞ւ էք հեռու գնում մինչեւ Հերոդոտոսի ժամանակները, — մէջ մտաւ Բէրզէն-Օղլին, — այս տեսակ նաւակներ գործ են ածում մինչեւ այսօր հայերը Եփրատի եւ Տիգրիսի ջրերի վրայ, այն զանազանութեամբ միայն, որ մորթիների փոխարէն իրանց զամբիւղաձեւ նաւակները պատում են կաշիով, որովհետեւ հիմայ սովորել են կաշու պատրաստութիւնը։

Նաւահանգստում կային մի քանի նաւակներ եւս նոր ձեւով, որոնց մէջ իր գեղեցկութեամբ եւ յարմարութեամբ առաջին տեղը բռնում էր Բէրզէն-Օղլու նաւակը։ Նա ցոյց տուեց իր նաւակը, ասելով.

— Այդ այն արհեստաւորի գործն է, որ այժմ բանում է իմ տանը։ Նա ընդունակ է մինչեւ անգամ թեթեւ առագաստաւոր նաւեր կառուցանելու։ Այդ արհեստով նա երկար ժամանակ աշխատել է Կ. Պոլսի նաւահանգիստներում։ — Սաստիկ դիւրաշարժ է այդ նաւակը. նրան կարելի է կառավարել ինչպէս մի լաւ վարժուած նժոյգ ձի։

Բէրզէն-Օղլին մնաց նաւահանգստում, իսկ մենք վերադարձանք գիւղը։ Ալանը վարպետ Փանոսի հետ գնացին մի քանի հիւանդներ տեսնելու (գոնէ այդպէս ասացին ինձ) բայց ես գնացի մեր հիւրընկալի տունը։

Չը գիտէի ինչպէս անցկացնել ժամանակը։ Նաւաստիի տունը դարձեալ դատարկ էր, դարձեալ ոչ ոք չէր երեւում։ Բակում տիրում էր ընդհանուր լռութիւն. մի տերեւ անգամ չէր շարժվում ծառերի վրայ։ Օրուայ տօթը անտանելի էր։ Սագերը, գլուխները թեւերի տակ թագցրած, քնել էին ուռիների ստուերի ներքոյ։ Նրանցից մէկը միայն, իմ ոտնաձայը լսելով, գլուխը վեր բարձրացրեց եւ ծոյլ

կերպով մի քանի անգամ կչկչաց։ Միւսները զարթնեցան։ Բայց հիւսնի արհեստանոցում, ինչպէս երեւում էր, հանդարտութիւն չը կար. այնտեղից դեռ ուրագի ձայն էր լսվում։ Պարապութիւնից հետաքրքրուեցայ այնտեղ մտնել եւ սպասել մինչեւ Ասլանի վերադարձը։ Ամբողջ արհեստանոցը լցուած էր տախտակներով եւ զանազան ատաղձներով։ Այնտեղ եւ կարկատում էին նաւակները եւ նորերն էին շինում։ Ծերունի վարպետը աշխատում էր իր մի քանի աշակերտների եւ օգնականների հետ։ Տեսնելով ինձ, բոլորը նայեցին իմ վրայ եւ շարունակեցին իրանց գործը։ Միայն վարպետը մի կողմ դրեց կարկինը, որով տախտակի վրայ ինչ-որ չափումներ էր անում, գլուխը վեր բարձրացրեց եւ, ակնոցները ուղղելով, հարցրեց.

— Դուք, երեւի, այն Ֆրանկի հե՞տ էք եկել։

— Այո, նրա հետ եմ եկել։

— Նստեցէք, խնդրեմ։

Ես չը գիտէի որտեղ նստել. նստելու տեղ չը կար։ Իսկ վարպետը այդ մասին չը հոգաց, նա դարձեալ վեր առեց կարկինը, սկսեց իր չափումները անել։ Ես նստեցի դռան շէմքի վրայ։

— Հովի առաջը կտրում ես, — նկատեց ինձ աշակերտներից մէկը, ճակատի քրտինքը սրբելով, — առանց դրան էլ շատ շոգ է։

Նրա նկատողութիւնը թէեւ բաւական յանդուգն էր, բայց իրաւացի էր։ Ամբողջ գործարանը լոյս եւ օդ էր ընդունում միայն դռնից. ուրիշ լուսամուտ չը կար. առաստաղից թէեւ երդիկ էր բացուած, բայց այնտեղից հով չէր փչում։ Ես վերկացայ եւ ոտքի վրայ կանգնած մնացի։ Լռութեամբ նայում էի։ Գործիքների ձայնը մի այնպիսի աղմուկ էր բարձրացրել, որ անկարելի էր մի բան խօսել։ Մի կողմում սղո-

ցում էին, միւս կողմում տաշում էին, մէկը րանդայ էր տալիս, միւսը շաղափով ծակում էր, մի խօսքով, ոչ ոք անգործ չէր։ Անգործը միայն ես էի։ Իմ դրութիւնը շատ յիմար էր։ Նայեցի, նայեցի․ եւ վերջապէս ձանձրացայ, եւ դուրս եկայ։

Գալով սրահը, որտեղ ճաշեցինք մենք, ոչոքի չը գտայ։ Ասլանը եւ վարպետ Փանոսը դեռ չէին վերադարձել։ Միայն յատակի սփռոցները, աւաջուայ կարգով, դեռ իրանց տեղումն էին։ Ես մօտեցայ, պառկեցի նոյն մինդարի վրայ, ուր ճաշի ժամանակ նստած էր Ասլանը։

Սրահի միջով ես նայում էի դէպի ընդարձակ պարտէզը։ Նա բաժանուած էր սրահից փայտեայ ցած վանդակապատով միայն։ Ծառերը այն աստիճան սերտ կերպով գրկուած էին միմեանց հետ, որ ես շատ հեռուն չէի տեսնում։ Աւելի քան տերեւները, նրանց ճիւղերը ծանրաբեռնուած էին հասունացած պտուղներով։ Արեգակը կրակ էր թափում։ Նրա ջերմութիւնից ամեն մի ծառ, ամեն մի թուփ, ամեն մի պտուղ, ամեն մի խոտ եւ ծաղիկ լցրել էր օդը ախորժելի անուշհոտութեամբ։ Ես սիրում էի այդ մեղմ, քնքոյշ անուշհոտութիւնը, որ բուրում է ծառաստանը, ոգեւորուած միջօրէի ջերմութիւնից։ Բայց իմ քունը չէր տանում։ Ճնճղուկները, թագնուած տերեւների խտութեան մէջ, լուռ մրափում էին։ Ծիծեռնակը, որ սրահի ձեղունի գերաններից մէկի կողքին կպցրել էր իր բաժակաձեւ բոյնը, նա էլ, իր ձագերի մօտ թառած, քաղցր թմրութեան մէջ նիրհում էր։ Իսկ ես քնել չէի կարողանում։

Ինձ տանջում էին զանազան մտածութիւններ։ Մինչեւ այն օր տեսած, լսած, հասկացած, չը հասկացած առարկաների կատարեալ խառնաշփոթութիւնը ամբարուած էր

իմ գլխում: Այդ մռայլ քաօսից ոչինչ ելք գտնել չէի կարողանում: Ո՛րտեղից էի գալիս, ո՛ւր էի գնում, ի՞նչ նպատակների էի ձգտում, ո՞ւր կը տանէին ինձ այդ թափառումները, — ինձ բացատրել չէի կարողանում: Ես խարխափում էի անստուգութեան եւ անգիտակցութեան խաւարի մէջ: «Լաւ է, մտածում էի ես, ամենեւին չը հաւատալ, քան թէ կիսով չափ հաւատալ»... Բայց մի զգացմունք միայն ինձ հաշտեցնում էր իմ անորոշ վիճակի հետ, — դա էր այն ջերմ սէրը, որ ես ունէի դէպի Ալմասը: Այդ սէրը լցնում էր իմ թերահաւատութիւնը: Սիրում էի այդ եռանդոտ երիտասարդին: Նրա մէջ կար մի բան, որ շատ սիրելի էր: Բայց թէ ի՞նչ էր այդ բանը, — ես ոչինչ կերպով ըմբռնել չէի կարողանում...

Ամեն տեղ, ուր եւ գնում էինք, ես հանդիպում էի նորանոր պատրանքների, նորանոր կեղծիքների: Կարծես, իմ աչքերը պատած լինէին թանձր մշուշով, հեռուն չը տեսնելու համար: Եւ ինչո՞ւ համար տեսնէի: Գուցէ նա այնքան սարսափելի էր, որ հէնց այդ պատճառով Ալմասը չէր կամենում խլել իմ աչքերից կախարդական քօղը եւ իմ առջեւ բաց անել ապագայի սոսկալի պատկերը: Գուցէ նա չէր կամենում միանգամից վախեցնել ինձ: Գուցէ նա այնքան հրապուրիչ եւ այնքան գեղեցիկ էր, որ նա չէր կամենում ինձ միանգամից յափշտակութիւնների մէջ ձգել: Եւ մի՞թէ ես ունէի այնքան պատրաստականութիւն ամեն ինչ հասկանալու համար: Ես ինքս զգում էի իմ դատարկութիւնը, իմ մտաւոր աղքատութիւնը: Եւ նա շատ անգամ նկատում էր ինձ, թէ «քեզ պէտք է դեռ շատ բան սովորել»...

Ինձանից շատ հեռու չէր խնձորենին, որի տերեւների սօսափիւնը ընդհատեց իմ մտածութիւնները: Ես նայեցի դէպի այն կողմը: Ծառի վրայ նկատեցի նոյն աղջկան, որ

ճաշի ժամանակ մեզ համար սեղան էր պատրաստում։ Դա ծովեզն էր, նաւավարի աղջիկը։ Ահա մի էակ եւս, որ ինձ նման արթուն էր, որի վրայ օրուայ ջերմութիւնը չէր ազդում։ Բայց ի՞նչ էր շինում այդ մանկահասակ արարածը այն ծառի վրայ։ Կապիկը միայն կարող էր այնպէս համարձակ մի ոստից միւսը թռչել։ Պտուղներ չէր քաղում նա. խնձորները դեռ ոչ բոլորովին հասած էին։ Նա ընտրում էր նրանցից խոշորները, իրանց ձեւով կանոնաւորները, եւ ինչ-որ կպցնում էր նրանց վրայ։ Ես իսկոյն հասկացայ այդ գործողութեան նպատակը։ Խնձորները այն տեսակից էին, որ հասունացած ժամանակ ստանում էին սաստիկ մուգ-կարմիր գոյն, իսկ այժմ դեռ բաց-կապտագոյն էին։ Նա կպցնում էր նրանց վրայ զանազան ձեւով մանր եւ գեղեցիկ տերեւներ։ Խնձորները հասունացած ժամանակ, շատ հասկանալի է, որ նրանց մակերեւոյթի բաց մնացած տեղերը արեւից կըստանան կարմիր գոյն, իսկ տերեւներով ծածկուած տեղերը կը մնան սպիտակ գոյնով, եւ այսպիսով նրանց վրայ կը ձեւանան զանազան նկարներ։ Այդ տեսակ նախշուն, հոտաւէտ խնձորները կոչվում են “սիրականի խնձոր„։ Առհասարակ խնձորը հայոց մէջ սիրոյ նշան է։ Հարսանիքների ժամանակ, ումը որ կամենում են հրաւիրել, մի հատ կարմիր խնձոր են ուղարկում նրան։ Իսկ այդ տեսակ նախշուն խնձորները մեծ աղջիկները ծածուկ ուղարկում են սիրած պատանիներին։ Բայց ո՞ւմ համար էր պատրաստում այդ փոքրիկ աղջիկը իր խնձորները։ Նա, անտարակոյս, դեռ չը գիտէր, թէ ի՞նչ էր սէրը։ Երեւի, նա տեսել էր, թէ ի՞նչ են անում մեծ աղջիկները, ինքն էլ հետեւում էր նրանց օրինակին, առանց հասկանալու իր պատրաստութեան նշանակութիւնը։ “Ահա մի անգիտակցութիւն եւս, մտածեցի ես, նա դեռ չը սիրած, սիրոյ համար նուէրներ է

պատրաստում„... Մի՞թէ ես էլ նոյնը չէի անում... մի՞թէ ես էլ սիրոյ համար զոհեր չէի պատրաստում, առանց իմ սիրած առարկայի հետ ծանօթ լինելու... Բայց ծովլեկը ինձանից խելացի էր. նա գոնէ ընտրում էր խնձորներից այն միայն, որը աւելի գեղեցիկ էր, որը փթած կամ որդնակեր չէր։ Իսկ ես այդ ընտրութիւնը չունէի, ես չը գիտէի, թէ իմ զոհաբերութիւնները ո՛ր աստիճան նպատակայարմար են... Ես հետեւում էի միայն ինձանից մեծերի օրինակին, որպէս ծովլեկը հետեւում էր իրանից մեծերի օրինակին...

Ցանկարծ սրահի մէջ բացուող դռնից դուրս վազեց մի փոքրիկ երեխայ։ Դա, երեւի, մեր հիւրընկալի արու զաւակն էր, որովհետեւ սաստիկ նման էր հօրը։ Նա այնպիսի մի ուժգին թափով սենեակից դուրս նետուեցաւ, որ գնդակի նման իմ մօտից անցնելով, ինձ չը տեսաւ։ Նա նոյն արագութեամբ վազեց մինչեւ պարտէզի դուռը, մի քանի անգամ շարժեց, երբ տեսաւ, որ փակ է, բարկացաւ, եւ կրկին նետուեցաւ դէպի սրահը։ Այժմ միայն տեսաւ ինձ եւ, որպէս վաղեմի ծանօթ, մօտեցաւ, գրկեց իմ պարանոցը։

— Եթէ գնայի պարտէզը, քեզ համար ծիրան կը բերէի, — ասաց ինձ։

— Ինչո՞ւ չը գնացիր, — հարցրի ես, փայփայելով նրա սիրուն գլուխը։

Նա իր խոշոր, խաժ աչքերը դարձրեց դէպի ինձ եւ գանգատուելու եղանակով պատասխանեց.

— Դուռը փակ էր։ Դու չես իմանում ի՞նչ սատանայ է այդ ծովլեկը. երբ որ նա պարտէզն է գնում, դուռը միշտ փակում է, որ ես չը մտնեմ։ Ասում է, դու ծաղիկները փչացնում ես։ Դու խօ գիտես, որ ես չեմ փչացնում։

Փոքրիկի գանգատը իր քրոջ մասին էր։ Բայց ի՞նչ առիթով այդ չարաճճիի գլխին փչեց՝ ինձ վկայ բռնել, որ նա չէ փչացնում։

— Ի՞նչպէս է քո անունը — հարցրի ես։

— Քօթօթ, — պատասխանեց նա, ինքն էլ ծիծաղելով իր օտարոտի անուան վրայ։

— Քօթօթ, — ի՞նչ լաւ անուն է։

— Ես էլ լաւ տղայ եմ, — ասաց նա մի առանձին պարծանքով։ — Հայրիկը ինձ ասում է՝ դու Քօթօթ ես, արջի քօթօթ, — դու խօ տեսնում ես, որ ես քօթօթ չեմ։

— Դու քօթօթ տեսե՞լ ես։

— Տեսել եմ. մի անգամ մեր բակում պար էին ածում։ Ո՜հ, ինչպէս մազոտ թաթիկներ ունէր։ Մտիկ տո՛ւր իմ ձեռքերին, իմ ձեռքերը խօ այնպէս մազոտ չեն։

Նա իր սիրուն ձեռքերը դրեց իմ ափի մէջ։

— Քո ձեռքերը այնպէս չեն։

— Էլ ի՞նչու են ասում ինձ քօթօթ։

— Ես կ'ասեմ հայրիկին, որ էլ չասէ։

Նա փոխանակ շնորհակալութեան, դարձեալ դրկեց իմ պարանոցը եւ ջերմ կերպով համբուրեց ինձ։

— Ասա՛ հայրիկին, որ ծովիկը սուտ է ասում. դու խօ իմանո՞ւմ ես, որ ես ծաղիկները չեմ փչացնում։

— Իմանում եմ։ Բայց ի՞նչ է անում հայրիկը, երբ ծովիկը այդպիսի սուտեր է հնարում։

— Բարկանում է, պատուիրում է, որ ինձ պարտէզը չը թողնեն, որ միրգ ուտեմ։

— Հայրիկին կ'ասեմ, որ չը բարկանայ. դու խելացի տղայ ես. կ'ասեմ, որ պարտէզի դուռը քո առջեւ չը փակեն։

Նա իմ խոստմունքներից բաւական գոհ մնալուց յետոյ, մի այլ խնդիրք եւս առաջարկեց.

— Ասա, որ մայրիկն էլ խելացի է, նրա առջեւ էլ դուռը չը փակեն։

— Ո՞ր դուռը։

— Սենեակի դուռը։ Հիմա այնտեղ է. դուռը փակած է։ Ես այսօր ուզեցի, որ գնամ տեսնեմ, չը կարողացայ...

Վերջին խօսքերը այնպիսի զգացմունքով արտասանեց փոքրիկ երեխան, որ ինձ վրայ խիստ տխուր ազդեցութիւն գործեցին։

— Ի՞նչու են կղպում մայրիկին սենեակի մէջ։

— Չեմ իմանում։ Մայրիկը այնտեղ աղաղակում է, լաց է լինում... ես էլ լաց եմ լինում, երբ մայրիկը լաց է լինում...

Երեխայի աչքերում արտասուք երեւաց։

— Հիմա այնտե՞ղ է մայրիկը։

— Այնտեղ է. ներսում, շատ ներսում... Հայրիկը չէ թողնում, որ դուրս գայ։

Այդ միջոցին երկու աղաւնիներ իջան, նստեցին սրահի վանդակապատի վրայ։ Տեսնելով նրանց, փոքրիկը իսկոյն մոռացաւ այն ցաւը, որ զգում էր իր սիրելի մօր մասին։ Նա խորամանկ կերպով նայեց իմ երեսին, աչքերը ծռմռեց, եւ նշաններով հասկացրեց ինձ, որ սուս կենամ։ Իսկ ինքը կուզեկուզ սկսեց մօտենալ թռչուններին։ Նրանք աւելի զգոյշ գտնուեցան եւ, նկատելով փոքրիկ դարանակալին, թռան, բայց շատ հեռու չը գնացին, նստեցին բակի մէջ, մի կտրած ծառի բունի վրայ։ Մանուկը շարունակեց հետամուտ լինել, եւ մի քանի րոպէից յետոյ՝ թէ աղաւնիները եւ թէ նա այլ եւս չերեւացին։ Ես խիստ սակաւ անգամ տեսել էի մի այնպիսի աշխոյժ եւ կայտառ երեխայ։

“Տան գաղտնիքը երեխայից հարցրու„, ասում է յայտնի առածը։ Հիմա ես աղօտ կերպով հասկանում էի, թէ ինչու

չէր երեւում մեր տանտիկինը։ Անտարակոյս, մի պատճառ պէտք է լինէր, որ նրան թագստի մէջ էին պահում։

Երեւում էր, որ ծովլեկը խնձորի ծառից տեսել էր ինձ։ Վերադառնալով պարտիզից, մի զամբիւղի մէջ բերեց ինձ համար մրգերի ամենաընտիր տեսակներից եւ, ամբողջ զամբիւղը դնելով իմ մօտ, ասաց.

Որից որ սիրում ես, նրանից կեր։

— Բոլորը լաւ է, քո քաղածը վատ չի լինի, — պատասխանեցի ես, նայելով ուղիղ նրա արեւի ջերմութիւնից շառագունած երեսին։

Նա ժպտաց եւ հեռացաւ, երբ նկատեց, որ Ասլանը վերադարձաւ իր հօր հետ։

Տեսնելով իմ մօտ դրած զամբիւղը, նրա հայրը ասաց ինձ.

— Դուք, փոքրիկներդ, աւելի բախտաւոր էք մեզանից, որ աշխարհի դարդերը չէք հասկանում...

Յետոյ նա դարձաւ դէպի Ասլանը.

— Տեսնո՞ւմ էք, ի՛նչպէս ջահիլները միմեանց յարգել իմանում են. այդ պտուղները անպատճառ ծովլեկի քաղածը պէտք է լինի։

Նրանք մտան սրահի մէջ բացուող դռնից եւ երկար ժամանակ մնացին ներսի սենեակներում։ Երբ Ասլանը դուրս եկաւ, նրանից հարցրի.

— Ի՞նչ կար այնտեղ։

— Մի հիւանդ կար... պատասխանեց նա, էլ չը խօսեց։



Թ.

# ԳԻՇԵՐԸ ԱՒԱՆՑ ԳԻՒՂՈՒՄ

Երեկոյեան դարձեալ բոլորը հաւաքուեցան սրահի մէջ։ Ասլանը նստած էր իր մինդարի վրայ, վարպետ Փանոսը նրա մօտ, ես իմ տեղում, իսկ տան տէրը երբեմն նստում էր, երբեմն կանգնում էր, երբեմն գնում էր իր մարդիկներին զանազան պատուէրներ տալու։

Փայտեայ բարձր աշտանակի վրայ դրած էր մի խեցեղէն ճրագ, որը աղաւնու նմանութիւն ունէր. նրա միջում կտաւատի ձէթ էր լցրած, իսկ կտուցից դուրս ընկած պատրոյգը հանդարտ վառուելով, տարածում էր աղօտ, կանաչագոյն լոյս իր շրջակայքում։ Ձէթից եւ մուխից բոլորովին սեւ գոյն էր ստացել այդ աղաւնին։

Խօսակցութիւնը գլխաւորապէս ծովակի մասին էր։ Խօսում էին նրա բնաւորութեան վրայ, արդեօք նա խաղա՞ղ է, թէ անհանգիստ, տարուայ ո՞ր ամիսներում սովորաբար պատահում են ալէկոծութիւնները. խօսում էին նաւահանգիստների մասին, թէ ո՞ր կողմերի կամ ո՞ր եզերքի մօտ են գտնվում, կամ ի՞նչ տեղերի հետ հաղորդակցութիւն ունեն. խօսում էին նաւակների թուի եւ նրանց փոխադրած ծանրութիւնների քանակութեան մասին, թէ տարուայ ընթացքում ո՞րքան մթերքներ կարող են փոխադրել, — այդ բոլորի մասին, ի հարկէ, հաշիւ ու համար տալիս էր գլխաւորապէս Բէրդէն-Օղլին։ Նա այնպէս լաւ ուսումնասիրել էր ծովակը եւ նրա շրջակայքը, որպէս մի լաւ վարժապետ

ուսումնասիրում է իր դասագիրքը: Նրան ծանօթ էին ծովակի բոլոր խորշերը, բոլոր եզերքը եւ այն բոլոր դիրքերը, որտեղից կարելի էր ցամաքի հետ յարաբերութիւն ունենալ: Ասլանը իր լսածներից այն եզրակացութիւնն էր դուրս բերում, թէ երկու առագաստաւոր նաւեր բաւական կը լինեն կատարելու այն գործը, ինչ որ կատարում են բազմաթիւ նաւակներն ու սանդալները:

Նրանք խօսում էին, դատում էին, վիճում էին, իսկ ես համարեա չէի լսում: Ես չէի կարողանում մոռանալ Քօթօթի տուած տեղեկութիւնները իր մօր մասին, եւ նրա վրայ էի մտածում: Ասլանը այնօր տան ներսի սենեակներից դուրս գալու ժամանակ ինձ ասաց, թէ այնտեղ մի հիւանդ կայ. դա, անտարակոյս, նաւավարի կինը պէտք է լինէր. բայց Քօթօթի տուած տեղեկութիւնները այդ հիւանդի դրութեան մասին՝ բաւական կասկածաւոր էին դարձնում նրան: Այստեղ անպատճառ մի բան պէտք է լինի, մտածում էի ես:

Մեզ ընթրիք տալուց յետոյ տանեցիք, այսինքն ծովիկը եւ Քօթօթը, գնացին կտուրի վրայ քնելու: Գիւղացի երեխաները քնում են արեւի հետ եւ զարթնում են նրանից առաջ: Սրահի մէջ մեզ համար եւս քնելու անկողիններ պատրաստեցին: Սրահը, որ պատշգամբի նախնական ձեւն է, շատ յարմարութիւն ունի ամառնային կեցութեան համար. այնտեղ եւ հով է, եւ մաքուր օդ կայ, եւ անքուն գիշերներում մարդ չէ տաղտկանում, նայում է աստղազարդ երկնքի վրայ, զուարճանում է անթիւ լուսաորներով: Իսկ այն գիշերը ինձ աւելի գրաւում էր այն խուլ, խորհրդաւոր ձայնը, որ լսվում էր օդի մէջ, — դա ծովակի ալիքների ձայնն էր, որ գալիս էր հեռուից:

Հիւսնի արհեստանոցում գործը դադարել էր, այնտեղից ձայն չէր լսվում: Բայց արհեստանոցի բաց դռնից

ճրագի լոյս էր երեւում։ Ծերունի արհեստաւորը, երեւի, դեռ չէր քնած։ Նաւավարը Ալանին եւ վարպետ Փանոսին տարաւ այնտեղ մի քանի բաներ ցոյց տալու համար։ Ես չը գնացի, ես արդէն ցերեկով տեսել էի այն տախտակների եւ փայտերի մթերանոցը, եւ դրանք ինձ համար մի առանձին նշանակութիւն չունէին։ Ես պառկած մնացի իմ անկողնի վրայ եւ իսկոյն քունս տարաւ։

Մի օտարոտի ձայն զարթեցրեց ինձ։ Ո՞րքան ժամանակ անցել էր գիշերից, չը գիտեմ, բայց աքաղաղները խօսում էին։ Գլուխս վեր բարձրացրի, նայեցի իմ շուրջը։ Ճրագի ձէթը արդէն սպառուել էր եւ պատրոյգը երբեմն աղօտ կերպով պլպլում էր, երբեմն հանգչում էր։ Բայց սրահի մէջ բաւական լոյս կար. կիսալուսինը դեռ ոչ բոլորովին անհետացել էր հորիզոնից։ Նայեցի Ալանի եւ վարպետ Փանոսի անկողինների վրայ, նրանք դատարկ էին։ Երեւում էր, որ դեռ չէին վերադարձել։ Նայեցի դէպի հիւանի արհեստանոցը, այնտեղ դեռ ճրագի լոյս էր երեւում։

Օտարոտի ձայնը, որ զարթեցրեց ինձ, որքան յիշում եմ, դռան սաստիկ բաղխման ձայնի էր նմանում. Նայեցի դէպի սրահի մէջ բացուող դուռը. Նա բոլորովին բաց էր. իսկ երեկոյեան, մեր քնելու ժամանակ, ես նրան փակած էի տեսել։ Գլուխս դարձեալ դրեցի բարձի վրայ, բայց քնել չը կարողացայ։ Քանի րոպէից յետոյ՝ մի մեղմ սօսափիւն, որ հագուստի խշխշոցի էր նմանում, գրաւեց իմ ուշադրութիւնը։ Գլուխս կրկին վեր բարձրացրի եւ ստուերի մէջ նկատեցի մի ինչ-որ անորոշ կերպարանք։ Նա սկզբում անշարժ էր, յետոյ շարժուեցաւ եւ հանդարտ կերպով անցաւ, առանց ամենաթեթեւ ձայն անգամ հանելու։ Կարծես, նա օդի միջով էր գնում եւ նրա ոտները գետնին չէին դիպչում։ Նա ցած իջաւ սրահի սանդուղքներից, դիմեց դէպի բակը։

տեղ շնչում էր մի այլ կեանք, երեւում էր մի այլ աշխարհ, այստեղի մթնոլորտը ներշնչուած չէր անապատական մշտավառ խունկի թուլացնող եւ վհատեցնող ծխով, — այստեղ միացրել էին հոգեւորը եւ երկնայինը՝ աշխարհայինի հետ։

Վանքը թէ՛ արտաքուստ եւ թէ՛ ներքուստ հովանաւորուած էր ծառերով ու պարտէզներով. վազում էին սառն, յստակ աղբիւրներ, եւ ջրերի վտակները հաւաքուելով, մեծ աղմուկով դարձնում էին վանական ջրաղացի ծանր աղօրիքը։

— Այդ ծառերը Հայրիկի տնկածն է, — ասաց մեր առաջնորդը, — այն ջրաղացը երկար ժամանակ խանգարուած էր, չէր բանում, Հայրիկը նորոգեց։

Երիտասարդ աբեղան տարաւ մեզ մի բաւական մաքուր եւ ճաշակով կահաւորած սենեակ, եւ իսկոյն սկսեց մեզ հետ խիստ մտերմական խօսակցութիւն, թէ ո՞րտեղից ենք գալիս, ո՞ւր պիտի գնանք, արդեօք պարոն բժշկապետը երկա՞ր պիտի մնայ Վանում, ի՞նչ ազգից է պարոն բժշկապետը, քանի՞ լեզու գիտէ եւ այլն։ Այդ բոլոր հարցմունքները այն աստիճան անկեղծ էին, որ Ասլանը առանց ձանձրանալու պատասխանում էր նրան։

— Շա՞տ ժամանակ է, որ Հայրիկը այդ վանքի վանահայրն է, — հարցրեց Ասլանը։

— Շատ ժամանակ չէ, — պատասխանեց աբեղան, — բայց այդ փոքր ժամանակում նա այնքան գործ կատարեց, որ մի ուրիշը, որքան եւ մեծ ջանք ու եռանդ ունենար, հազիւ թէ տասն, քսան տարիների ընթացքում կարող կը լինէր կատարել։

Երիտասարդ աբեղան Հայրիկի աշակերտներից էր։ Ես իսկոյն նկատեցի, եւ այնուհետեւ ինձ շատ անգամ էր պա-

տահել նկատել, որ նրա աշակերտները նրա մասին խօսելիս, նրանց տիրում էր խորին ոգեւորութիւն, եւ նրանք մի առանձին պարծանքով էին յիշում այն մարդու անունը, որին այնքան սիրում էին, որին այնքան պաշտում էին։

— Հայրիկից առաջ, — շարունակեց նա, — այդ վանքը համարեա թէ աւերակ էր․ ոչ դպրոց կար, ոչ աշակերտ եւ ոչ կանոնաւոր տնտեսութիւն։ Նրա եկամուտները կողոպտւում էին թէ ներքին եւ թէ արտաքին աւազակներից։ Վանքը պարտքերի ներքոյ խեղդւում էր։ Մինչեւ անգամ Ս. Նշանը գրաւ էր դրուած Թուրք վաշխառուների մօտ։ Բայց Հայրիկը կեանք տուեց այդ վանքին։ Բոլորը, ինչ որ տեսաք եւ ինչ որ պիտի տեսնէք, նրա աշխատութեան պտուղն է։ Բայց փոխարէնը, ինչ որ ստացաւ նա եւ ինչ որ ստանում է, — միշտ եղել է ատելութիւն, հալածանք եւ դաւադրութիւն իր խաւարասէր թշնամիների կողմից...

Վերջին խօսքը արտասանելու միջոցին երիտասարդի ձայնը դողաց։ Նա պատմեց մի ցաւալի անցք, որ պատահել էր հէնց նոյն օրերում։ Հայրիկը Վարագայ վանքից, որպէս նրա սովորութիւնն էր, միայնակ, ոտքով Վան քաղաքը գնալու ժամանակ, ճանապարհին հանդիպում է նրան մի քուրդ։ Երբ Հայրիկը իր արծուի հայեացքով նայում է նրա երեսին, աւազակը շփոթւում է, նրա ձեռքերը սկսում են դողալ։

— Ինչո՞ւ շփոթուեցար, բարեկամ, — հարցնում է Հայրիկը իր սովորական մեղմ ժպիտով։

— Ուզում էի քեզ սպանել, — պատասխանում է աւազակը եւ, չոքելով նրա առջեւ, գրկում է նրա ոտները։

— Ինչո՞ւ չը սպանեցիր, — հարցնում է Հայրիկը, վեր բարձրացնելով նրան։

— Աստուած իմ ձեռքը բռնեց, — ասում է քուրդը եւ սկսում է պատմել, թէ ո՛րպէս Հայրիկի թշնամիները

կաշառեցին նրան, եւ որպէս ինքը խոստացաւ կատարել այդ եղեռնագործութիւնը, բայց խղճի ձայնը ասաց նրան, թէ պէտք չէ սուր բարձրացնել Աստուծոյ օրհնեալի վրայ։

— Դու էլ օրհնեալ լինիս, որդի, — ասում է նրան Հայրիկը։ — Գնա խաղաղութեամբ, բայց այդ բոլորը, ինչ որ պատմեցիր ինձ, ուրիշ ոչ ոքի չը պիտի յայտնես։

— Դու խնայում ես քո թշնամիներին, — հարցնում է աւազակը զարմանալով։

— Աստուած այդպէս է պատուիրում, — պատասխանում է Հայրիկը։

Բայց, չը նայելով Հայրիկի պատուէրին, քուրդը ամեն տեղ պատմում է նրա կեանքի դէմ դաւադրութիւն սարքող անձինքների անունները, եւ այդ լսում է ամբողջ քաղաքը։

— Ովքեր են այդ դաւաճանները, — հարցրեց Ասլանը։

— Մի քանի եկեղեցականներ, միացած մի քանի աղաների հետ, որոնց պարագլուխն է մեր քաղաքի սրբազան Առաջնորդը, — պատասխանեց արեղան։

— Ի՞նչ էր առիթ տուել նրանց՝ մինչ այդ աստիճան անիրաւութեան դիմել, թափել տալով մի անմեղ արիւն, — հարցրեց Ասլանը փոքր ինչ զայրացած ձայնով։ — Միթէ դպրոցը, լոյսը, կրթութիւնը այդքան ատելի է նրանց։

— Ես չեմ կարծում, — ասաց արեղան, — որ նրանք լուսաւորութեան թշնամի են եւ այդ պատճառով զինուորվում են նրա տարածողների դէմ։ Նրանք չեն կարող թշնամի լինել լուսաւորութեան, որի մասին ամենեւին հասկացողութիւն չունեն, որի վրայ երբէք չեն մտածել։ Խնդիրը բոլորովին տնտեսական է։ Մի ժամանակ, որպէս քանի բոպէ առաջ ասեցի, այդ վանքում կանոնաւոր տնտեսութիւն չը կար. Նրա եկամուտները վատնում էին միաբանները, եւ ինչ

էլ որ մնում էր, Առաջնորդի կոկորդումն էր անցնում։ Բայց երբ Հայրիկը վանահայր դարձաւ, նախ վանքը մաքրեց անպիտան միաբաններից, նրանց փոխարէն խմբեց այստեղ աւելի արժանաւոր անձինք, եւ այնուհետեւ վանական արդիւնքները սեպհականացրեց իր նոր կառուցած հիմնարկութիւնների պահպանութեան համար։ Այդ բոլորից յետոյ, շատ բնական է, որ այն անձինքը, որոնք առաջ վատնում էին վանքի եկամուտները, կը թշնամանային Հայրիկի հետ։

— Բայց մի՞թէ Հայրիկը բարեկամներ չունի։

— Ունի, բայց Հայրիկի բարեկամները այնպիսի կարող, այնպիսի հզօր մարդիկ չեն, որպէս նրա թշնամիները։ Հայրիկի բարեկամները ժողովրդի հալածուած, հարստահարուած եւ ամեն իրաւունքներից զրկուած դասակարգն է։ Հայրիկի բարեկամները աղքատ շինականներն են, քաղաքի արհեստաւորներն են, եւ անտուն, անտեղ, անհող, անջուր սարակներն ու բանուորներն են, — եւ մի քանի երիտասարդներ, որոնք ազնիւ սիրտ եւ բարի ցանկութիւններ ունեն, բայց իրանց ցանկութիւնները կատարելու համար ոչինչ միջոցներ չունեն։

Հայրիկը եկեղեցական աստիճանով դեռ վարդապետ էր, բայց նրա կատարած գործերը, ստացած հռչակը, վայելած ժողովրդական մեծ համարումը, — այդ բոլորը չէր կարող չը գրգռել միւս եկեղեցականների նախանձը, որոնք թէ՛ աստիճանով եւ թէ՛ դիրքով աւելի բարձր էին քան թէ նա, թէեւ երիտասարդ արեղան նրանց թշնամութիւնը բացագրում էր միայն տնտեսական պատճառներով։ Նրա կառուցած նոր հիմնարկութիւնները՝ իրանց նորութեամբ անգամ՝ կարող էին օտարոտի եւ վնասակար թուել միւս եկեղեցականներին։ Նա հիմնել էր իր վանքում մի գիշերօթիկ դպրոց, որը մի տեսակ վարժապետանոց կարելի էր համարել,

ուր հաւաքել էր նա զանազան տեղերից մանուկներ, այն նպատակով, որ վարժապետացուք կամ կրթեալ քահանայացուք պատրաստուեն եւ, վերադառնալով իրանց հայրենիքը, գիւղական քահանաներ կամ վարժապետներ դառնան: Դպրոցը ունէր եւ երկրագործական բաժին: Գիւղական վարժապետը կամ գիւղի քահանան, Հայրիկի կարծիքով, բաւական չէ, որ պէտք է սովորեցնէին գրել, կարդալ, հաշուել, կամ կատարէին գիւղացու հոգեւոր, եկեղեցական պէտքերը, — այլ, միեւնոյն ժամանակ, նրանք պէտք է ցոյց տային, թէ որպէս պէտք է գիւղացին վարէր իր հողը եւ որպէս պէտք է դարմանէր իր անասունները, որ աւելի արդիւնք ստանար: Բացի դպրոցից, Հայրիկը զանց չէր արել հիմնել կրթութեան երկրորդ գործիչը՝ տպագրական մամուլը: Նրա տպարանից լոյս էին տեսնում զանազան դասագրքեր եւ, ժողովրդի մէջ ընթերցանութիւն տարածելու համար, փոքրիկ դիւրիմաստ գրքոյկներ աշխարհիկ լեզուով, այլ եւ մի ամսագիր, որ խմբագրվում էր գլխաւորապէս նրա միաբանութեան աշխատութեամբ: Այդ բոլորի ի կատար ածելը արժել էր այնքան մեծ ջանքերի եւ այնքան անտանելի տառապանքների, որոնց դէմ միայն Հայրիկի նման մարդու երկաթեայ հաստատամտութիւնը կարող էր պատերազմել: Քանի՛, քանի՛ անգամ նա ոտքով Պօլիս էր գնացել, հարուստ ամիրաների դռները բախելու եւ իր հիմնարկութիւնների համար օժանդակութիւն խնդրելու: Նա միայնակ ստեղծեց այն բոլորը. Նա առաջին օրինակը եղաւ, որ դատարկամոլ եւ ձրիակեր կրօնաւորների անկելանոց դարձած վանքին տուեց մի այնպիսի կազմակերպութիւն, որ նա սկսեց այնուհետեւ ծառայել իբրեւ մի բարձր հիմնարկութիւն ժողովրդի հոգեւոր, բարոյական եւ մտաւոր կրթութեան համար:

Ո՜րքան մեծ անհամբերութեամբ ցանկանում էի տեսնել այդ մարդուն, լսել նրա ձայնը եւ խօսել նրա հետ։ Նա մեզ երկար սպասել չը տուեց, շուտով վերադարձաւ գութանի մօտից, քրտնած, փոշիների մէջ թաթախուած։ Նախ վազեց իր սենեակը, երեւի, լուացուելու համար, յետոյ եկաւ մեզ մօտ։ Նա ուրախ էր, որովհետեւ նորաձեւ գութանի առաջին փորձը յաջողութիւն էր խոստանում։

Նա դեռ երիտասարդ էր, երեսուն եւ վեց տարեկան հազիւ կը լինէր. այդ հասակի համեմատ "Հայրիկ" մականունը շատ օտարոտի կարող էր լինել, եթէ նա չունենար մի սիրող հօր խնամքը, հոգածութիւնը եւ բոլոր բարեմասնութիւնները՝ թէ դէպի իր վանքը ու միաբանութիւնը եւ թէ դէպի ժողովուրդը։ Բարձրահասակ էր նա եւ ամուր կազմուածքով. երեւում էր, որ ծոմը, մշտական աղօթքը եւ խիստ ճգնութիւնները, — որոնք մեր անապատականների բարեպաշտութեան գլխաւոր արդիւնքն են համարվում, — չէին մաշել նրա մարմինը։ Գլխին վեղար չունէր. շագանակի գոյն խիտ մազերը կիսով չափ ծածկում էին նրա լայն ճակատը եւ, դէպի յետ սփռուելով, անփոյթ կերպով թափվում էին հզօր ուսերի վրայ։ Մօրուքը թաւամազ էր, որպէս անապատական աւիւծի բաշը։ Ինչ որ աւելի նշանաւոր էր նրա հեզ, միեւնոյն ժամանակ, այրական դէմքի վրայ, դրանք էին՝ արծուի խոշոր աչքերը եւ արծուի կտցաձեւ քիթը, որոնք թռչունների այդ վեհափառ արքայի բնաւորութեան յատկանիշներն էին արտայայտում — թէ նրա հեռատեսութիւնը եւ թէ նուրբ հոտառութիւնը։ Գուցէ այդ էր պատճառը, որ նա ստացել էր մի երկրորդ մականուն եւս "Վասպուրականի Արծիւ"։ Հագուստը պարզ էր եւ վայելուչ, իսկ վարվողութեան ձեւերի մէջ խիստ հասարակ էր նա եւ անկեղծ։ Նայելով այդ կրօնաւորի վրայ, ի նկատի

առնելով նրա անցեալը եւ ներկան, խնկոյն երեւում էր՝ մինչեւ շինականի աղքատ խրճիթը խոնարհուած մարդու ռամկամտութիւն, ռամկի բոլոր առաքինութիւններով, ռամկի բոլոր անփառասիրութեամբ, — եւ մարդասիրական բարձր գաղափարներով ոգեւորուած մի եկեղեցականի անձնազոհութիւն, որ իր աշխատութեան հոգեւոր մխիթարութիւնը որոնում է նոյն խոկ ռամկի, դարերով թշուառացած ռամկի, հանգստութեան եւ բարօրութեան մէջ: Նա ժողովրդի մարդ էր եւ ժողովրդի համար ծնուած:

Ես առաջին անգամ էի տեսնում մի այսպիսի սիրելի անձնաւորութիւն: Նա այն տեսակ արեղաներիցն էր, որի բերանում Յիսուսի, Մովսէսի եւ Պօղոսի անունների հետ ստէպ յիշվում էին իր ազգի նահապետների անունները, ոչ միայն հասարակ խօսակցութեան մէջ, այլ եւ սուրբ տաճարի բեմից: Նա չէր խօսում բիբլիական Պաղեստինի եւ "Վերին Երուսաղէմի„ երանութիւնների մասին. նրա ուխտեալ երկիրը Վասպուրականն էր: Հայրենասիրութիւնը հասնում էր նրա մէջ մինչեւ մոլեռանդութեան, խսկ կրօնասիրութիւնը մինչեւ բարձր առաքինութեան:

Նրան տեսնելիս, ես մտաբերում էի մեր հինգերորդ դարերի աբեղաներից մէկին, որ, կարծես, նոր էր վերադարձել Աթէնքից, եւ ցուպը ձեռին, մի թափառական դէրվիշի նման, շրջում էր հայրենի երկրի զանազան կողմերը եւ տարածում էր այն լոյսը ու գիտութիւնը, որ իր հետ բերել էր Սոկրատի եւ Արիստոտէլի մայրաքաղաքից: Հայրենիքը չէ ընդունում իր մէջ կրթութեան նոր առաքեալին, իսկ խաւարասէր կղերը ատելութեամբ կատաղած է նրա դէմ: Բայց նա արհամարհում է խաւարասէրների հալածանքը եւ հաստատ, անվեհեր կամքով առաջ է տանում սուրբ գործը: Մի տեղից հալածվում է նա, միւս օրը յայտնվում

է մի այլ տեղում եւ սկսում է ցանել իր հայրենակիցների անապատ դարձած մտաւոր անդաստանում այն բարի սերմերը, որ ինքը բերել էր հեռաւոր երկրներից։ Այդպէս էր վարուել եւ Հայրիկը. ամբողջ Վասպուրականը նրա ընդարձակ ագարակն էր, իսկ ինքը — մի անձնանուէր մշակ։

Այդ մարդը կատարելապէս սիրահարուած էր իր հայրենիքի՝ Վասպուրականի վրայ։ Իսկ Վարագը, Վանը, Վանայ ծովակը իր շրջակայ գաւառներով — նրա մտածութեան գեղեցիկ առարկաներն էին։ Բայց նա իր հայրենիքում նոյն դրութեան մէջն էր, որպէս մի ժամանակ Խորենացին Տարօնում։ Կղերը նրա դէմ եւս լարում էր զանազան որոգայթներ։ Այդ էր պատճառը, որ Ասլանը, յիշելով քանի օր առաջ պատահած աղէտաւոր անցքը, եւ յայտնելով իր խնդակցութիւնը նրա ազատութեան մասին, ասաց.

— Մի՛ վհատեցէք, Հայրիկ, նահատակութիւնը առաքելութեան հետ միշտ ընկերաբար է ընթանում։

Հայրիկը պատասխանեց իր սովորական ժպիտով.

— Այդպիսի դէպքեր ինձ չեն կարող վհատեցնել. ես մահից չեմ վախենում։ Բայց չէի կամենայ եւ մեռնել, պարոն բժշկապետ, որովհետեւ, ով որ նպատակներ ունի, ով որ գործ ունի կատարելու, կեանքը նրան պէտք է։

Երկար խօսակցութիւններից յետոյ, որ մի առ մի չեմ ուզում յիշել, Ասլանը խնդրեց Հայրիկից, որ ցոյց տայ իր վանքի հիմնարկութիւնները։

— Մենք ամէն ինչ դեռ նոր ենք սկսում, պարոն բժշկապետ, — ասաց Հայրիկը, — այդ պատճառով մեր հիւրերին ցոյց տալու դեռ մի արժանաւոր բան չունենք։ Մեզ մօտ ամէն ինչ դեռ իր տղայութեան մէջն է։

— Հէնց այդ հասակից կ՚երեւայ ապագայ էակը, գոնէ ֆիզիքական կողմից, թէ որքան առողջ է եւ որքան լաւ է կազմուած։

— Այդ ճշմարիտ է, բայց շատ անգամ ամենաառողջ տղան եւս ջլատվում է, այլանդակվում է վատ դայեակների եւ խորթ մայրերի ձեռքում։

Մենք դուրս եկանք սենեակից։ Վանքի բակում ոչ ոք չէր երեւում, մի զոյգ աղաւնիներ միայն, ճեմում էին պարտէզի կանաչազարդ ածուների շուրջը, նրանք եւս, երբ մեզ տեսան, թռան նստեցին բարձր զանգակատան գմբեթի վրայ։ Ոչ մի վանքում զանգակները այնպէս հանգիստ չէին, որպէս այստեղ։ Կտուց անապատում նրանք հնչում էին ամեն ժամ, ամեն րոպէ, եւ հրաւիրում էին "մշտապաշտօն" միաբաններին շարունակելու անընդհատ ժամերգութիւնը։ Իսկ այստեղ մերթ ընդ մերթ լսվում էր դպրոցի զանգակի ձայնը, որ որոշում էր դասամիջոցները։ Աշակերտները խմբով դուրս էին թափվում, եւ վանական լուռ, խաղաղ պարիսպների մէջ տիրում էր մի կենդանի աղմուկ։ Ոչինչ այնպէս ախորժելի չէր կարող լինել, քան թէ այդ աղմուկը, մանուկ սերունդի սրտի եւ հոգու ձայնը, որի արձագանքը լսելի է լինում ապագայում...

Հայրիկը տարաւ մեզ նախ գրատունը, որ բաղկացած էր երեք սենեակներից, որոնց դռները բացվում էին միմեանց մէջ։ Երբ մտանք առաջին սենեակը, նա ասաց.

— Այստեղ հաւաքուած են բոլոր տպագրուած գրքերը, թէ՛ հայոց եւ թէ՛ օտար լեզուներով։ Մեր միաբաններից իւրաքանչիւրը կարող է որոշեալ ժամերում մտնել այստեղ եւ օգուտ քաղել գրքերից։

Սենեակում բաւական լոյս կար. մէջտեղում դրած էր երկար գրասեղան, ծածկած կանաչագոյն մահուդով, իսկ նրա վրայ դարսած էին մի քանի լրագիրներ եւ ամսագիրներ, որ նոր էին ստացուել։ Սենեակի շուրջը, փայտեայ մեծ պահարանների մէջ, կարգով դասաւորած էին զանազան գրքեր,

Պատահմամբ դա լինում է Խորենացու գրքի հէնց այն կտորը, որտեղ գրուած է լինում նրա սգաւոր ողբը, որի մէջ նա այնքան դառն կերպով նկարագրում է իր ժամանակի եկեղեցականների անպիտանութիւնները։ Վեհափառի հանդէպ, նաւակի մէջ, նստած է լինում կղզու վանահայրը, որ դուրս էր եկել ցամաքը նրան ընդունելու։ Վեհափառը տալիս է նրան կարդալու սգաւոր ողբի հետեւեալ տողերը. “վարդապետք տխմարք„ եւ այլն։

— Այդ պատմութիւնը, որքան հետաքրքիր, այնքան եւ տխուր է, — ասաց Ալլանը։ — Բայց ես լսել եմ, որ ձեր կաթողիկոսներից մէկը նոյնպէս ազատ չէ եղել մի այդ տեսակ մեղքից. նա իր նախորդների յիշատակները ոչնչացնելու համար, այրել է տուել նրանց գործերի բոլոր ատենական թղթերը։ Բայց ես շատ ուրախ եղայ, որ ձեր ցուցակի մէջ գտայ, բացի գրքերի անուններից, եւ մի ամբողջ շարք զանազան կոնդակների, զանազան հրովարտակների, պարսից եւ տաճկաց թագաւորներից ստացուած, զանազան պայմանագրերի եւ հին կալուածագրերի, — այդ բոլորը կարող է առատ նիւթ տալ պատմութեան։

Մատենադարանի մի առանձին պահարանում հաւաքուած էին հայոց ամենահին տպագրութիւնները, որոնք եղել են մի քանի դարեր առաջ Վենետիկում, Հռոմում, Միլանում, Նոր-Ջուղայում, Ամստերդամում եւ այլ տեղերում։

Գրչագրերը քննելուց յետոյ, մտանք երրորդ սենեակը, որ աւելի ընդարձակ էր քան առաջինները։

— Այդ մեր թանգարանն է, — ասաց Հայրիկը, — բայց դեռ աղքատ թանգարան, որովհետեւ շատ ժամանակ չէ, որ գոյութիւն ունի։

Չը նայելով, որ Հայրիկը խիստ համեստութեամբ էր վերաբերվում դէպի թանգարանը, բայց այդ սենեակը աւելի

քան միւսները գրաւեց իմ ուշադրութիւնը։ Ինչե՞ր ասէք այնտեղ չը կային։ Ինչ որ միանգամ գտնուել էին Վանայ շրջակայքում կամ նրա աւերակների մէջ, հաւաքել էին այնտեղ։ Մի տեղ, փոքրիկ գզրոցներում, որոնց վերեւի երեսները ծածկուած էր ապակիով, դասաւորած էին զանազան հին դրամներ։ Մի տեղ, նոյնպէս գզրոցներում, կային զանազան կանացի զարդեր, որպիսիք են՝ ականջի օղեր, ապարանջաններ, յուլունքներ եւ այլն։ Մի այլ տեղ կային հնադարեան զէնքեր. պղնձեայ ծանր վահաններ, սեպաձեւ արձանագրութիւններով եւ առասպելական դրոշուածներով զարդարած, նիզակների եւ նետերի ծայրեր, տապարներ, սաղավարտների եւ զրահների կտորներ, — բոլորը պղնձից։ Այդ բոլոր հնութիւններից իմ ուշադրութիւնը գրաւեցին երկու փոքրիկ արձաններ միայն, որոնցից մէկը պատած էր ոսկով եւ ներկայացնում էր մի գեռահաս կնոջ։ Նա այնքան գեղեցիկ էր, որ ես պատրաստ էի ծունր իջնել եւ երկրպագել նրան։ Երբ իմ հոգեզմայլութիւնը յայտնեցի, Հայրիկը ծիծաղելով ասաց.

— Մեզ եւս մի ժամանակ մեղադրում էին այդ մեղքի մէջ։

— Ի՞նչպէս, — հարցրեց Ասլանը։

Հայրիկը պատմեց մի քանի հետաքրքիր անցքեր, թէ որքան անախորժութիւնների է պատահել թանգարանի պատճառով։ Թանգարանը շինվում է գլխաւորապէս այն նպատակով, որ այնտեղ հետզհետէ հաւաքուեն բոլոր հնութիւնները, որոնք խիստ յաճախ գտնվում են Վանայ շրջակայքում, եւ ժողովուրդը նրանց նշանակութիւնը չը հասկանալով՝ ոչնչացնում է։ Օրինակ, պատահել էին այսպիսի դէպքեր. մի գիւղացի գտել էր մի մեհեանի երկաթեայ դռհարանի մի մասը, տարել էր դարբնի մօտ կտրել

էր տուել եւ իր համար արօրի խոփ էր պատուիրել: Մի այլ գիւղացի գտել էր Սենեքերիմ Թագաւորի փղոսկրեայ գահի առաջին ոտները, խիստ չնչին արժէքով վաճառել էր մի զինագործի, որը գնել էր խէնջարի կոթեր շինելու համար: Մի քանի տարի առաջ միանգամից գտնվում են այն երկու արձանները, որ մենք տեսանք Թանգարանում: Հայրիկը մեծ դժուարութեամբ կարողանում է ազատել այդ գեղեցիկ հնութիւնները ռամկի մոլեռանդութիւնից. «կուռքեր են» ասելով, ամեն կողմից հաւաքվում են եւ կամենում են փշրել: Նրանցից մէկը յայտնի չէր թէ ինչ աստուածութիւն էր ներկայացնում, իսկ միւսը, այն դեռահաս դիցուհին, որի գիսակների մէջ փայլում էր մի ճաճանչաւոր աստղ, — դա կարծվում էր, թէ պէտք է Վասպուրականի տիկինը՝ Աստղիկը լինի: Արձանները տեղաւորում են Թանգարանի այն մասնում, ուր աւելի լոյս կար եւ որտեղ դրած էր մի հին Աստուածամօր պատկեր: Անցնում են մի քանի օրեր, յանկարծ զայրացած խուժանը յարձակվում է վանքի վրայ, փոքր է մնում, որ կործանէ Թանգարանը եւ ոչնչացնէ ամեն ինչ: Հայրիկի երկար աղաչանքները հազիւ կարողանում են մեղմացնել խառնիճաղանճի կատաղութիւնը: Նրա յուզմունքի պատճառը այն է լինում, որ Թանգարանը համարում է մի կռքատուն, ուր Աստուածամօր պատկերը դրած է կուռքերի մօտ եւ նրանց հետ հաւասար պաշտվում է:

— Միամիտ խուժանը կարող էր այդպէս մտածել, — ասաց Հայրիկը իր պատմութիւնը վերջացնելուց յետոյ, — բայց ցաւալին այն է, որ նրան գրգռել էին մեր դէմ իմ թշնամի եկեղեցականները: Ես հաւատացած եմ, որ նրանք այդ արել էին ոչ թէ չարամտութեամբ, ոչ թէ մեր վանքին վնասելու նպատակով, այլ իրանք եւս համոզուած էին, որ

մենք վանքումը կուռքեր ենք պաշտում, եթէ ոչ, նրանց կարծիքով, ի՞նչ նպատակ կարող էր ունենալ, որ մենք կուռքերի արձանները վանքն էինք տարել եւ դրել էինք Աստուածամօր պատկերի մօտ։

— Իսկ եթէ նրանց պատահում է կուռքերի արձաններ գտնել, ի՞նչ են անում, — հարցրեց Ասլանը, աչքերը չը հեռացնելով Աստուածամօր պատկերից, որի մասին էր խօսքը։

— Փշրում են, ոչնչացնում են։

— Իսկ այդ Աստուածամայրը հրաշալի՜ բան է, — ասաց Ասլանը, շարունակելով նայել պատկերի վրայ։ — Դա, որպէս երեւում է, XV-րդ դարու իտալացի երեւելի նկարիչներից մէկի գործն է։ Բայց ինձ զարմացնում է այն, թէ ինչպէս պատահել, որ այդ պատկերը յայտնուել է այստեղ։

— Շատ հաւանական է, — ասաց Հայրիկը, -- որ բերուած լինի այն ժամանակներում, երբ վանեցի վաճառականները Վենետիկի եւ Իտալիայի հետ յարաբերութիւններ ունէին։ Բայց գիտէ՞ք, որտեղից եմ դուրս բերել այդ պատկերը։

— Ո՞րտեղից։

— Մի կիսաւեր գիւղական եկեղեցիից, որի հայ բնակիչները բոլորովին սպառուել էին եւ նրանց տեղը քրդեր էին բնակվում։ Այդ վերջինները, թուցէ իրանք եւս հայկական ծագումից լինելով, դեռ պահպանել էին իրանց հաւատը թէ՛ դէպի եկեղեցին եւ թէ՛ դէպի նրա սրբութիւնները։

Աստուածամօր պատկերը, որի մասին այնքան հիացած խօսում էին թէ՛ Ասլանը եւ թէ՛ Հայրիկը, ինձ ամենեւին չէր գրաւում, թուցէ այն պատճառով, որ ես գեղարուեստի

մասին ամենեւին գաղափար չունէի։ Ներկերը, որ առաջուց եւս խիստ մռայլ գոյն էին ունեցել, ժամանակների ընթացքում, աւելի եւ աւելի սեւացել էին խունկի եւ մոմի ծուխից։ Մի տեղում մոմը, ինչպէս երեւում էր, լուսարարի անհոգութիւնից, ընկած է եղել եւ այրել է Աստուածամօր գրկում մանուկ Յիսուսի ոտները. մի այլ տեղում կտաւը պատռած էր։

Հայրիկը ցոյց տուեց մեզ մի այլ հնութիւն, որը, որպէս ասում էր նա, Արծրունեաց իշխանուհի օրիորդներից մէկի ձեռագործն էր, որ նուիրուած էր Վարագայ վանքին։ Սեղանի ծածկոց էր այդ գեղեցիկ աշխատութիւնը, որի վրայ օրիորդի ճարտար մատները ասեղնագործել էին զանազան պատկերներ Ս. Գրիգոր Լուսաւորչի չարչարանքներից։

— Շատ անգամ մեր վանքերում կամ եկեղեցիներում պատահում են այնպիսի անօթներ, զգեստներ կամ այլ իրեղէններ, որոնք մաշուած, հնացած եւ գործածութիւնից ընկած լինելով, այնպէս, իբրեւ մի անպէտք բան, ձգած են լինում եկեղեցիների խորշերում կամ պահարաններում, եւ այնտեղ փտում են։ Երբեմն նրանց մէջ գտնվում են այնպիսի հազուագիւտ իրեղէններ, որոնք, իբրեւ հնութիւն, արհեստի համար մեծ նշանակութիւն ունեն, — ասաց Հայրիկը, — մենք հոգ ենք տանում հաւաքելու այդպիսիները։ — Եւ նա ցոյց տուեց մեզ զանազան սաղաւարտներ, վահաններ, շուրջառներ, եպիսկոպոսական կամ վարդապետական գաւազաններ, հնամաշ գորգերի կտորներ, կաթողիկոսական հողաթափներ եւ այլ իրեղէններ, որոնք ամենահին ժամանակներում բերուել էին Հնդկաստանից, Չինաստանից, Սպահանից կամ այլ հեռաւոր երկրներից, որտեղ եղել են հայոց վաճառականներ։

Յետոյ Հայրիկը ցոյց տուեց իր դպրոցը, որ գտնվում էր վանքի շինուածքների մի առանձին բաժնում։ Ես մինչեւ այսօր տեսած էի երկու դպրոցներ միայն, մէկը՝ Տէր Թօդիկի դպրոցը, այն սարսափելի դժոխքը, որի աշակերտը լինելու դժբախտութիւնն էի ունեցել, միւսը՝ Սիմօն պատուելիի դպրոցը, որ տեսայ Վանայ մէջ, եւ որը իր կազմակերպութեամբ շատ չէր զանազանվում առաջինից։ Այդ երկու հիմնարկութիւններից մէկը Պարսկաստանի, միւսը Տաճկաստանի հայոց մանկավարժութեան կատարելատիպն էր, եւ գրեթէ երկուսն էլ սահմանուած էին մանուկներին բթացնելու, եւ թէ՛ բարոյապէս, թէ՛ մտաւորապէս սպաննելու համար։ Այդ դպրոցներից յետոյ, Հայրիկի դպրոցը, տարակոյս չը կայ, որ աշխարհի եօթն հրաշալիքներից մէկն էր երեւում ինձ։ Եւ իրաւ, նա իր տեսակի մէջ առաջին օրինակն էր այդ երկրում եւ գուցէ այդ էր պատճառը, որ իբրեւ նորութիւն, ենթարկուել էր այնքան հալածանքների։ Ես, ի հարկէ, չէի կարող քննել նրա ներքին, ուսումնական կազմակերպութիւնը, նրա ծրագիրը, — ինձ գրաւում էր նրա արտաքինը միայն։ Այստեղ առաջին անգամ տեսայ, որ աշակերտները դասաւորած էին կարգով նստարանների վրայ, եւ ոչ թէ, որպէս տէր Թօդիկի դպրոցում, խառն ի խուռն նստած էին յատակի վրայ, իրանց տակին փռած ունենալով մի կտոր հասիր կամ այծի մորթի, որ բերում էին իրանց տներից։ Այստեղ առաջին անգամ տեսայ, որ աշակերտները դասաւորած էին զանազան դասատներում, եւ իւրաքանչիւր դասատան մէջ վարժապետը պարապում էր բոլորի հետ միասին։ Բայց Տէր Թօդիկի դպրոցում, առանց ուշադրութիւն դարձնելու նրանց հասակի եւ ուսման աստիճանի վրայ, բոլոր աշակերտներին անխտիր ածել էին մէկ սենեակում, ինչպէս ոչխարներին ածում են

մէկ գոմի մէջ, եւ վարժապետը պարապում էր իւրաքանչիւրի հետ առանձին-առանձին, — մէկը վայելչագրութեամբ էր զբաղուած, միւսը ընթերցանութեամբ, երրորդը վարժապետի կօշիկներն էր մաքրում, մի խօսքով, որքան աշակերտներ կային, նոյն թուով եւ բաժանմունքներ կային նոյն դասատան մէջ։ Այստեղ առաջին անգամ տեսայ սեւ գրատախտակը, որի վրայ կաւիճով էին գրում։ Առաջին անգամ տեսայ, որ աշակերտներին սովորեցնում էին առանց փայտի ու ծեծի։ Այստեղ փալախկայ, ճիպոտներ, խրատելու քանոն եւ դրանց նման պատժական գործիքներ չը կային։

Բոլոր դասատները այցելելուց յետոյ։ Հայրիկը մեզ տարաւ մի դահլիճ, որտեղ ես տեսայ զանազան հանքային վէմեր, չորացրած միջատներ, գոյնզգոյն թիթեռներ եւ ամենամանր պողոճներ։ Մի եւ նոյն դահլիճում կային զանազան բոյսեր ու ծաղիկներ, այնպէս լաւ չորացրած, որ բնաւ չէին կորցրել իրանց ձեւը կամ գեղեցկութիւնը։ Կային եւ մի քանի թռչունների պաճուճապատաններ, որոնք ինձ այնպէս էին թւում, որ կարծես թէ, կենդանի լինէին։

— Այդ բոլորը մեր աշակերտների հաւաքածուն է, պարոն բժշկապետ, — ասաց Հայրիկը, այնպիսի հրճուանքով, որ, կարծես, ինքն եւս ուրախանում էր իր սաների առաջին երախայրիքի վրայ։ — Նրանք երբեմն իրանց վարժապետների հետ փոքրիկ արշաւանքներ են կատարում մեր շրջակայ լեռների վրայ, եւ բնութեան մէջ՝ ծանօթանում են բնութեան հետ։

— Դա յառաջադիմութեան մի մեծ քայլ պէտք է համարել, Հայրիկ, — ասաց Ասլանը, — որ այստեղ, փոխանակ աշակերտներին զբաղեցնելու աստուածաբանական մթին խնդիրներով, սովորեցնում են բնական գիտութիւններ.

Իմ համոզմունքն այն է, պարոն բժշկապետ, — ասաց Հայրիկը, — որ մեր մանուկների կրթութեան հետ պէտք է

կապուած լինի եւ այն նպատակը, որ նրանք, բացի լաւ քրիստոնեայ լինելուց, դառնան եւ լաւ արհեստաւորներ եւ լաւ հողագործներ։ Մեր ժողովուրդը աղքատ է եւ սոված, նա հաց է պահանջում, պէտք է ուսումը միջոց տայ նրան իր ապրուստը հայթայթելու։ Եւ հէնց այդ նպատակով՝ ես միացրի այդ դպրոցի հետ եւ երկրագործական բաժին, իսկ եթէ կը յաջողի ինձ, ժամանակով կ'աւելացնեմ եւ մի արհեստանոց։ Իմ վանքի սուրբերը խիստ բարի են եւ ներողամիտ, նրանք չեն ձանձրանայ սղոցի, խարտոցի եւ մուրճի ձայնից։ — Այդ ասելով, — աւելացրեց նա, — իմ նպատակն այն չէ, թէ պէտք է բոլորովին զանց առնել հոգեւոր կրթութիւնը, այլ, ընդհակառակն, պէտք է աւելի մեծ հոգ տանել նրա մասին։ — Եւ այդ խնդրի վրայ երկար խօսելով, նա իր միտքը բացատրում էր նրանով, թէ գաղթականութիւնը դէպի օտար երկիրներ, բացի բազմաթիւ կործանաբեր հետեւանքներից, տուեց եւ մի անբուժելի բարոյական հարուած Վասպուրականի ժողովրդին. Հայոց պանդուխտները, օտար երկրներում թափառելով, օտար երկրներից տեղափոխեցին իրանց դեռ կուսական դրութեան մէջ մնացած հայրենիքը՝ բազմատեսակ մոլութիւններ։ Նախնական բարք ու վարքի սրբութիւնը կորաւ, եւ մարդիկ ընկան ապականութեան մէջ։ Ժողովուրդը այժմ կարօտ է բարոյական մաքրութեան։ Դա, ի հարկէ, գլխաւորապէս կրօնի եւ հոգեւոր կրթութեան գործը պէտք է լինի։ Ճշմարիտ կրօնը եւ նպատակայարմար հոգեւոր դաստիարակութիւնը թէ՛ եկեղեցու, թէ՛ դպրոցի եւ թէ՛ ընտանիքի մէջ, կարող է այդ նպատակին հասցնել, կարող է մեր մանուկներին բարոյական ուղղութիւն տալ։

Վանքի բոլոր ուշադրութեան արժանի հիմնարկութիւնները ցոյց տալուց յետոյ, Հայրիկը մեզ տարաւ իր

սենեակը։ Այստեղ պատրաստուած գտանք մի պարզ նախաճաշիկ։ Սեղանի վրայ նա դեռ շարունակում էր խօսել վանական կրթութեան մասին։

— Շատերը, — ասում էր նա, — հակառակ են վանական կրթութեան, եւ կարծում են, թէ վանքի խուլ եւ առանձնական կամարների տակ, հին նահատակների ու ճգնաւորների պատկերների ազդեցութեան ներքոյ, չեն կարող պատրաստուել աշխարհի համար պիտանի մարդիկ։ Այդ կարծիքը կարելի էր իրաւացի համարել, եթէ հայոց վանքը լինէր այնպիսի մի հիմնարկութիւն, որպէս առհասարակ լինում են վանքերը։ — Եւ նա բացատրում էր հայոց վանքի նշանակութիւնը թէ անցեալում եւ թէ ներկայում, ցոյց էր տալիս, որ նա երբէք անջատուած չէ եղել ժողովրդից, երբէք չէ ունեցել իր առանձին շահերը, այլ նրա շահերը միշտ կապուած են եղել ժողովրդի շահերի հետ։ Թէպէտ եղել են բացառութիւններ, որ հիմնուել են կղերական ուղղութեամբ վանքեր, բայց դրանք, խորթ եւ օտար լինելով հայոց ժողովրդի յատկութիւններին, չեն կարողացել երկար ժամանակ պահպանել իրանց գոյութիւնը։

— Ի՞նչու օգուտ չը քաղել վանքերից, — ասում էր նա. — մեր հայրերը թափեցին այնտեղ իրանց արծաթը, նուիրեցին նրանց ընդարձակ անշարժ կալուածքներ, եւ այդ հարստութիւնների մեծ մասը դեռ մնացել է։ Առաջ նրանց արդիւնքը ծախսվում էին ուրիշ բարեգործական նպատակների համար, իսկ այժմ կը ծախսենք մեր ժողովրդի զաւակների կրթութեան համար։ Ժողովրդից ստացածը կրկին կը վերադարձնենք ժողովրդին։

— Դուք կարծում էք, Հայրիկ, միայն կրթութիւնը բաւակա՞ն կը լինի, — հարցրեց Ասլանը։

— Բաւական չի լինի, — պատասխանեց Հայրիկը, — ժողովրդի զաւակներին ուսում տալով եւ նրանց միջոցներ չը տալով իրանց համար ապրուստ գտնելու, մենք միայն կը պատրաստենք ուսումնական թշուառներ։ Աղքատութիւնը այդ ժամանակ աւելի զգալի է լինում, որովհետեւ որքան աւելանում է մարդու մտաւոր զարգացումը, այնքան աւելանում են եւ նրա կենսական պահանջները։ Ռամիկը մի կտոր ցամաք հացով գոհ է մնում, բայց երբ այբ ու բենը մտցրին նրա գլխում, նա կը հասկանայ, որ միսը աւելի սնունդ է տալիս։ Եւ սեւ կը լինի նրա օրը, եթէ միս գտնել չը կարողանայ։

Նա զարմանում էր այդ եկեղեցականի դատողութիւնների վրայ, նա բոլորովին հակառակն էր ասում, ինչ որ խօսում էին միւս եկեղեցականները, նա չէր քարոզում աշխարհի ունայնութիւնը, նա չէր պախարակում կեանքի վայելչութիւնները, պնդելով, թէ մարմինը զրկելով, մարդիկ աւելի մօտենում են երկնքին, ուր պէտք է սպասել իսկական երջանկութիւնը։

— Այո, — աւելացրեց Ասլանը, — ուսումը պէտք է լինի միջոց կեանքի իրական պահանջները հայթայթելու համար։ — Ասացէք, խնդրեմ, Հայրիկ, ո՞րն է ձեր կարծիքով ժողովրդի այժմեան ամենաանհրաժեշտ պահանջը, կամ, այլ խօսքով, ի՞նչումն է նրա գլխաւոր հիւանդութիւնը, որը շուտափոյթ բժշկութեան կարօտ է։

— Կարծես, տխրութեան մի ամպ անցաւ Հայրիկի պայծառ դէմքի վրայ, եւ նրա գոյնը մռայլուեցաւ։

— Մեր ժողովրդի հիւանդութիւնը, — ասաց նա, — այնքան բազմատեսակ է եւ բաղադրեալ որ անկարելի է մի քանի խօսքով բացատրել, պարոն բժշկապետ։ Բայց ձեզ, որպէս բժշկի, աւելի հասկանալի պէտք է լինի, երբ հիւան-

դութիւնները բաղադրեալ են, այդ դէպքում, գտնում են ամենագլխաւորը, որ մահ է սպառնում հիւանդի կեանքին, եւ նրանից են սկսում բժշկութիւնը։

— Այդ իրաւ է։ Բայց ո՞րն է գլխաւոր հիւանդութիւնը։

— Իմ կարծիքով — գաղթականութիւնը։

Եւ նա սկսեց երկար խօսել այդ առարկայի վրայ, բացատրելով այն միտքը, թէ հային պէտք է հնար տալ, որ կարողանայ ապահովել իր ապրուստը հայրենի հողի վրայ, եւ ստիպուած չը լինի օտար երկրներում հաց որոնել։

— Ես հասկանում եմ, երբ եւրոպացին գաղթում է, — ասաց նա։ — Նրա երկիրը այնքան նեղ է, մարդիկը այնքան բազմացել են, որ հողը չէ բաւականանում։ Իսկ մեզ մօտ՝ հողը ընդարձակ է, բայց մարդիկ նրանից օգուտ քաղել չեն կարողանում։

— Ուրեմն ինչի՞ց է յառաջ գալիս գաղթականութիւնը։

— Շատ եւ շատ պատճառներից. — Նրանից, որ երկրագործութիւնը դեռ իր նահապետական դրութեան մէջն է, նրանից, որ ժողովրդի արդիւնաբերող մասը, մշակը, կողոպտվում է զանազան հարստահարողներից, նրանից, որ ճանապարհների հաղորդակցութիւնները վատ են եւ երկրի բերքը չէ արտահանվում, նրանից, որ մենք չունենք ոչ մի ընկերութիւն, ոչ մի հիմնարկութիւն, որ նպաստէր երկրի տնտեսական դրութիւնը բարւոքելու ... — Ո՞ր մէկը ասեմ։

— Դուք կարծում էք, այժմեան հանգամանքների մէջ՝ հնար կա՞յ բարւոքելու ...

Խօսակցութիւնը անցաւ այն առարկայի վրայ, թէ արդեօք կարելի՞ է մի այնպիսի երկրում, ուր տիրող կառավարութիւնը, փոխանակ նպաստելու, ինքն է արգելք դնում ամեն յառաջադիմութեան, ուր մահմեդական ցեղերի կա-

մայականութիւնը չափ եւ սահման չունի, ուր մարդու կեանքը, կայքը, ամեն րոպէ վտանգի ենթակայ էր, — մի այդպիսի երկրում կարո՞ղ է հայը անձնատուր լինել խաղաղ աշխատութեան եւ տնօրինել իր կեանքի բարին։ Հայրիկը ասաց․

— Մեզ շրջապատող աննպաստ հանգամանքների մէջ, իրաւ է, մեր ժողովուրդը չէ կարող իրան նուիրել խաղաղ աշխատութեան, եւ այդ պէտք է գլխաւոր պատճառներից մէկը համարել, որ շատերը դուրս են փախչում հայրենիքից, գնում են օտար երկրներում բախտ որոնելու։ Բայց խօ բոլոր յանցանքը չէ՞ կարելի գնել միայն չարագործի վրայ, որ կողոպտում է, յափշտակում է ուրիշի աշխատութեան արդիւնքը։ Նոյնքան յանցաւոր պէտք է համարել եւ նրան, որ թոյլ է տալիս իրան կողոպտել։ Ես հաւատացած եմ, որ քուրդ աւազակը երբէք չի մօտենայ հայի ոչխարների հօտին, եթէ գիտենայ, որ կը հանդիպի տիրոջը — հրացանը ձեռին։

— Ես էլ այդպէս եմ կարծում, — ասաց Ասլանը։ — Բայց ինչո՞ւ հոգեւորականութիւնը, որ կարող էր աւելի ազդել, չէ քարոզում հայերին փոքր ի շատէ անձնապաշտպանութեան սովորել։ Արեւելքում կրօնը եւ հոգեւորականութիւնը միշտ դեր են խաղացել ամեն մի հասարակական շարժումների ժամանակ, եւ պիտի խաղան։

Հայրիկի դէմքը դարձաւ մռայլուեցաւ։

— Ես իմ պաշտօնակիցներից մի՛րդ չեմ սպասում, — ասաց նա, — որ նրանք քարոզէին ժողովրդին անձնապաշտպանութեան սովորել․ եւ նրանցից շատ դոհ կը լինէի, եթէ ստրկութեան չը սովորեցնէին։ Նրանք ամեն հոգսեր կառավարութեան վրայ են գնում։ Կառավարութեան գործն է, ասում են, հսկել կարգի եւ ժողովրդի հանգստութեան

վրայ։ Իսկ երբ ինքը՝ կառավարութիւնը թոյլ է, անկարգ է, այլեւս ի՞նչպէս կարող է կարգ պահպանել։ — Նրանք այդ չեն մտածում, եւ միշտ սպասում են, որ մի օր ամեն բան ինքնիրան կը լաւանայ…

Յետոյ Հայրիկը մեծ ցաւակցութեամբ սկսեց խօսել այն երկպառակութեան վրայ, որի պատճառով ամբողջ տասնեակ տարիներ Վանայ հայ հասարակութիւնը ալեկոծութեան մէջ էր գտնվում, եւ որը այնքան աղետաւոր չարիքների առիթ եղաւ։ Ժողովուրդը երկու կուսակցութեան էր բաժանուած. մէկի պարագլուխն էր տեղային հոգեւոր առաջնորդը մի քանի հարուստ աղաների եւ դաւաճան էֆէնդիների հետ, որոնք կառավարութեան պաշտօնների մէջ էին գտնվում, — իսկ միւս կուսակցութեան պարագլուխը նորահաս երիտասարդութեան մի խումբ էր, որոնց թուին պատկանում էր եւ Հայրիկը։ Մի կողմում՝ ուժ, հարստութիւն եւ իշխանութիւն, միւս կողմում — եռանդ, բարի ցանկութիւններ եւ տկարութիւն։ Մէկը անկարգ կառավարութեան կողմն էր, իսկ միւսը — նեղուած, հարստահարուած ժողովրդի։ Մէկը պահանջում էր կուրութիւն եւ անպայման հնազանդութիւն, իսկ միւսը բողոքում էր կատարուող անիրաւութիւնների դէմ։ — Այդ բոլորը լսելուց յետոյ, ես այն ժամանակ միայն աւելի պարզ հասկացայ, թէ ի՞նչն էր դրդել հոգեւոր առաջնորդին եւ նրա կուսակից էֆէնդիներին՝ դաւադրութիւն գործ դնել Հայրիկի կեանքի դէմ։ Եւ այդ բոլորը պատմում էր նա հանդարտ եւ հանգիստ կերպով, առանց վրդովուելու եւ առանց բարկութեան։ Ատելութեան մի նշոյլ անգամ չէր նկատվում նրա խաղաղ դէմքի վրայ։ Բայց նրա սառնասրտութիւնը առաջ էր գալիս ոչ թէ անտարբերութիւնից, այլ նրա մեծահոգութիւնից եւ բարձր առաքինութիւնից, որով ներողամտութեամբ էր վերաբեր-

վում դէպի իր թշնամիների չարութիւնները։ Բայց, մի եւ նոյն ժամանակ, չէր կարելի չը նկատել նրա խօսքերի ու ձայնի մէջ մի ցաւ, մի դառն եւ խորին ցաւ, որ թագնուած էր նրա սրտում, թէ ինչո՞ւ այդպէս պէտք է լինէր, թէ այդ անհամաձայնութիւնը, այդ երկպառակութիւնները, այդ ներքին կռիւը՝ ո՛րքան ջլատում էին նրանց ուժերը, ո՛րքան ժամանակ էին խլում նրանցից, երբ կարող էին աւելի օգտաւէտ, աւելի նպատակայարմար գործերով զբաղուած լինել։

— Ահա՛ այդպէս է լինում, — շարունակեց նա, — երբ հոգեւորականութիւնը չէ հասկանում, կամ չէ ցանկանում հասկանալ իր իսկական կոչումը, թէ ինքը Քրիստոսի եկեղեցու, այսինքն հաւատացեալ ժողովրդի՝ սպասաւորն է եւ նրանից ընտրուած մի պաշտօնեայ, թէ իր բոլոր գործունէութիւնը պէտք է նուիրուած լինի նոյն եկեղեցու սպասաւորութեանը եւ բարեկարգութեանը, — այդ դէպքում, նա շեղվում է ուղիղ ճանապարհից եւ ընկնում է մոլորութիւնների մէջ։ Նա ծառայից դառնում է տէր, սկսում է իշխել եւ ծառայեցնել, ի հարկէ, ծառայեցնել իր շահերի համար։ Այդ ժամանակ նա միանում է մարմնաւոր իշխանութեան հետ, որ իրան նոյնպէս տէր է համարում, եւ նրա կողմն է բռնում։ Որքան եւ անկարգ լինէր այդ իշխանութիւնը, այնքան աւելի նպաստաւոր է նրա համար։ — Ուրեմն, այլ եւս ինչո՞ւ ենք զարմանում, որ մեր քաղաքի հոգեւոր առաջնորդը միացած է նահանգապետ փաշայի հետ, եւ ինքն էլ մի կողմից է կեղեքում խեղճ ժողովրդին...

— Ես փաշայի հետ տեսնուեցայ, — ասաց Ասլանը, — նա չափազանց խորամանկ մարդ երեւաց ինձ։

— Եւ խաբեբայ մարդ, — աւելացրեց Հայրիկը։ — Ինչպէս ամեն թուրք պաշտօնեայ։

վրայ։ Իսկ երբ ինքը՝ կառավարութիւնը թոյլ է, անկարգ է, այլեւս ի՞նչպէս կարող է կարգ պահպանել։ — Նրանք այդ չեն մտածում, եւ միշտ սպասում են, որ մի օր ամեն բան ինքնիրան կը լաւանայ...

Յետոյ Հայրիկը մեծ ցաւակցութեամբ սկսեց խօսել այն երկպառակութեան վրայ, որի պատճառով ամբողջ տասնեակ տարիներ Վանայ հայ հասարակութիւնը ալեկոծութեան մէջ էր գտնվում, եւ որը այնքան աղետաւոր չարիքների առիթ եղաւ։ Ժողովուրդը երկու կուսակցութեան էր բաժանուած. մէկի պարագլուխն էր տեղային հոգեւոր առաջնորդը մի քանի հարուստ աղաների եւ դաւաճան էֆէնդիների հետ, որոնք կառավարութեան պաշտօնների մէջ էին գտնվում, — իսկ միւս կուսակցութեան պարագլուխը նորահաս երիտասարդութեան մի խումբ էր, որոնց թուին պատկանում էր եւ Հայրիկը։ Մի կողմում՝ ուժ, հարստութիւն եւ իշխանութիւն, միւս կողմում — եռանդ, բարի ցանկութիւններ եւ տկարութիւն։ Մէկը անկարգ կառավարութեան կողմն էր, իսկ միւսը — նեղուած, հարստահարուած ժողովրդի։ Մէկը պահանջում էր կուրութիւն եւ անպայման հնազանդութիւն, իսկ միւսը բողոքում էր կատարուող անիրաւութիւնների դէմ։ — Այդ բոլորը լսելուց յետոյ, ես այն ժամանակ միայն աւելի պարզ հասկացայ, թէ ի՞նչն էր դրդել հոգեւոր առաջնորդին եւ նրա կուսակից էֆէնդիներին՝ դաւադրութիւն գործ դնել Հայրիկի կեանքի դէմ։ Եւ այդ բոլորը պատմում էր նա հանդարտ եւ հանգիստ կերպով, առանց վրդովուելու եւ առանց բարկութեան։ Ատելութեան մի նշոյլ անգամ չէր նկատվում նրա խաղաղ դէմքի վրայ։ Բայց նրա սառնասրտութիւնը առաջ էր գալիս ոչ թէ անտարբերութիւնից, այլ նրա մեծահոգութիւնից եւ բարձր առաքինութիւնից, որով ներողամտութեամբ էր վերաբեր-

վում դէպի իր թշնամիների չարութիւնները։ Բայց, մի եւ նոյն ժամանակ, չէր կարելի չը նկատել նրա խօսքերի ու ձայնի մէջ մի ցաւ, մի դառն եւ խորին ցաւ, որ թագնուած էր նրա սրտում, թէ ինչո՞ւ այդպէս պէտք է լինէր, թէ այդ անհամաձայնութիւնը, այդ երկպառակութիւնները, այդ ներքին կռիւը՝ ո՛րքան ջլատում էին նրանց ուժերը, ո՛րքան ժամանակ էին խլում նրանցից, երբ կարող էին աւելի օգտաւէտ, աւելի նպատակայարմար գործերով զբաղուած լինել։

— Ահա՛ այդպէս է լինում, — շարունակեց նա, — երբ հոգեւորականութիւնը չէ հասկանում, կամ չէ ցանկանում հասկանալ իր իսկական կոչումը, թէ ինքը Քրիստոսի եկեղեցու, այսինքն հաւատացեալ ժողովրդի՝ սպասաւորն է եւ նրանից ընտրուած մի պաշտօնեայ, թէ իր բոլոր գործունէութիւնը պէտք է նուիրուած լինի նոյն եկեղեցու սպասաւորութեանը եւ բարեկարգութեանը, — այդ դէպքում, նա շեղվում է ուղիղ ճանապարհից եւ ընկնում է մոլորութիւնների մէջ։ Նա ծառայից դառնում է տէր, սկսում է իշխել եւ ծառայեցնել, ի հարկէ, ծառայեցնել իր շահերի համար։ Այդ ժամանակ նա միանում է մարմնաւոր իշխանութեան հետ, որ իրան նոյնպէս տէր է համարում, եւ նրա կողմն է բռնում։ Որքան եւ անկարգ լինէր այդ իշխանութիւնը, այնքան աւելի նպաստաւոր է նրա համար։ — Ուրեմն, այլ եւս ինչո՞ւ ենք զարմանում, որ մեր քաղաքի հոգեւոր առաջնորդը միացած է նահանգապետ փաշայի հետ, եւ ինքն էլ մի կողմից է կեղեքում խեղճ ժողովրդին...

— Ես փաշայի հետ տեսնուեցայ, — ասաց Սալմանը, — նա չափազանց խորամանկ մարդ երեւաց ինձ։

— Եւ խաբեբայ մարդ, — աւելացրեց Հայրիկը։ — Ինչպէս ամեն թուրք պաշտօնակալ։

Երեկոյեան պահուն, երբ օդը փոքր ինչ զովացաւ, Հայրիկը մեզ տարաւ եւ երկար ման էր ածում իր վանքի շրջակայքում։ Մեծ բաւականութեամբ ցոյց էր տալիս նա այն բոլորը, ինչ որ արել էր, եւ ինչ որ դիտաւորութիւն ունէր անելու։ Այդ եռանդոտ մարդը այն տպաւորութիւնն էր գործում ինձ վրայ, որպէս մի լաւ հողագործ, որին ծանօթ են իր ագարակի բոլոր բոյսերը, բոլոր տունկերը, եւ որը գիտէ նրանց բնաւորութիւնը, ուսումնասիրել է նրանց կեանքը, եւ որը այնքան սիրում է նրանց, որպէս մի քնքոյշ տիկին սիրում է իր ձեռքով ցանած եւ իր ձեռքով հասցրած ծաղիկները։ Նա ցոյց էր տալիս այս եւ այն դաշտերը, ասելով, ահա այնտեղ սկսել են տորոնի մշակութիւնը, այդ առաջին փորձն է մեր կողմերում, որը մեծ արդիւնք է խոստանում, — ահա այնտեղ թթենիներ են տնկած, դիտաւորութիւն ունենք շերամապահութիւնը փորձել։ Խօսում էր գետնախնձորի մշակութեան մասին, ասելով.

— Գիտէ՞ք, պարոն բժշկապետ, մի քանի տարի առաջ գետնախնձորը այստեղ բոլորովին անծանօթ էր. մեր վանքը առաջինը եղաւ, որ սկսեց մշակել, եւ մինչեւ այսօր մեծ դժուարութիւններ է կրում գիւղերում տարածելու։ Մեր տէր-տէրները դեռ եւս չեն լուծել այն հարցը, թէ արդեօք գետնախնձորը կարելի՞ է ուտել պահոց օրերում։

Ասլանը ժպտաց։

— Շատերը ինձ մեղադրում են, — շարունակեց նա, — թէ ինչո՞ւ վանքում ես հիմնեցի երկրագործական դպրոց, թէ մի այդպիսի հիմնարկութիւն բոլորովին հակառակ է վանքի նշանակութեանը եւ այլն։ Ասեցէք խնդրեմ, պարոն բժշկապետ, ո՞վ արդեօք, աւելի քան վանականը, պէտք է ծանօթ լինի երկրի ու նրա մշակութեան գործի հետ։ Վանքը լոկ աղօթատեղի չէ, նա ունի ընդարձակ

*տնտեսութիւն, որը կանոնաւոր կերպով կառավարելու համար, պէտք է երկրագործական մեծ հմտութիւններ ունենալ: Կարդացէք մեր վանքերի պատերի վրայ քանդակած արձանագրութիւնները եւ դուք կը տեսնէք, որ սկսեալ մեր հին թագաւորներից, իշխաններից եւ իշխանուհիներից, մինչեւ մեր ժամանակների բարեպաշտները, ընծայել են մեր վանքերին ամբողջ գիւղեր, ագարակներ, ընդարձակ անտառներ, այգիներ եւ այլն, — այնպէս որ, վանքերը մեր կողմերում, եւ առհասարակ Հայաստանի մէջ, ամենահարուստ կալուածատէրերն են: — Վանականները ի՞նչպէս կարող են կառավարել այդ կալուածները, եթէ ծանօթ չեն գիւղատնտեսութեան հետ: Ամենաբարեխիղճ կապալառուն անգամ կարող է խաբել նրանց: Բացի դրանից, իրանց անընդունակութեամբ միշտ կարող են վատնել կալուածները, ինչպէս շատ վանքերինը վատնուած է:*

*Ասլանը, որ բոլոր ժամանակը ուշադրութեամբ լսում էր, հարցրեց.*

*— Դուք որեւիցէ վտանգ չէ՞ք նախատեսում, Հայրիկ, երբ վանականները իրանց կալուածական հարստութեան հետ՝ կը ստանան և՛ւ կրթութիւն, և՛ւ ուսում:*

*— Ի՞նչ վտանգ կարելի է սպասել կրթութիւնից, — հարցրեց Հայրիկը, ոչ սակաւ զարմանալով:*

*— Այն վտանգը, որ կոչվում է "կղերականութիւն": Մինչեւ այսօր ձեր վանականները անզօր եւ անվնաս էին, որովհետեւ անկիրթ էին, բայց կրթուելով, նրանք ուժ կը ստանան, կ՚աշխատեն իշխել ժողովրդի վրայ եւ հարստահարել նրան:*

*— Այդ հագիւ կարող է պատահել մեր մէջ, — պատասխանեց Հայրիկը: "Կղերականութիւնը" հակառակ է մեր եկեղեցու ոգուն, որը կատարեալ ժողովրդական բնաւորու-*

թիւն ունի։ Եւ եթէ վանականները կրթուելով՝ կարող են բռնանալ ժողովրդի վրայ եւ հարստահարել նրան, — չէ՞ որ, որքան կը կրթուին վանականները, նոյն չափով եւ գուցէ աւելի կը կրթուի ժողովուրդը, եւ այսպիսով ուժերի հաւասարութիւն կը պահպանուի, եւ մէկը միւսին չէ կարող ճնշել։ Հոգեւորականութիւնը այն ժամանակ միայն սկսում է վտանգաւոր դառնալ, երբ իր զարգացման աստիճանով շատ բարձր է լինում ժողովրդից։

Ասլանը չը կամեցաւ այդ հարցի մասին երկար խօսել, որովհետեւ շատ վիճելի էր։ Արեգակը արդէն սկսել էր խոնարհուիլ դէպի իր մուտքը։ Հայրիկը չէր շտապում վերադառնալ զբօսանքից, եւ ինչպէս երեւում էր, նա դիտաւորութիւն ունէր այն գիշեր պահել մեզ վանքում։ Բայց Ասլանը շնորհակալութեամբ հրաժարուեցաւ, ասելով, որ քաղաքում հարկաւոր գործ ունի, եւ չէ կարող մնալ։ Երբ վերադարձանք վանքը, Ասլանը ինձ պատուիրեց, որ իսկոյն ձիաները պատրաստել տամ։ Ես գնացի դէպի ախոռատունը, իսկ նրան թողեցի Հայրիկի հետ միայնակ։



ԺԶ.

# ՄԱՏՆՈՒԹԻՒՆ

*Արեւը մտել էր եւ երեկոյեան մութը բաւական թանձրացել էր, երբ մենք, մեր ձիաները հեծնելով, մեծ գոհունակութեամբ մնաք բարեաւ ասացինք Հայրիկին եւ, դուրս գալով վանքից, սկսեցինք իջնել Վարագայ լեռան զառիվայրը։ Ճանապարհը Հայրիկի շնորհիւ հարթած էր, եւ մենք մեծ դժուարութիւն չէինք կրում իջնելու ժամանակ։ Մեզ հետ ուղեկցում էր մի քահանայ, որին կոչում էին տէր Եղիշէ։ Թէ ի՛նչ գործ ունէր նա վանքում, կամ ինչո՞ւ եկաւ նա մեզ հետ, եւ կամ ի՞նչ էր խօսում նա ճանապարհին Ալանի հետ, — այդ ես չը գիտեմ, որովհետեւ նրանք հիսուն քայլով ինձանից առաջ էին գնում, իսկ ես իմ ձիու դանդաղ ընթացքով գնում էի նրանց ետեւից։ Միայն այդ մարդու անցեալ եւ ներկայ կեանքը բովանդակում էր իր մէջ մի քանի այնպիսի գծեր, որ անկարելի էր չը հետաքրքրուիլ նրանով։ Նա ոչ մի տեղում կանոնաւոր ուսում չէր ստացել. սկսեալ իր պատանեկութեան հասակից, նա եղել էր այն ըղձախնդիր ուսումնասէրներից մէկը, որ հին դարերի փիլիսոփաների նման, երկար թափառել էր զանազան երկրներում գիտութիւն սովորելու նպատակով։ Նա դիմել էր այս եւ այն նշանաւոր քերականին, ճարտասանին, տրամաբանին, աստուածաբանին, նա մտել էր նաեւ անապատական աբեղաների միաբանութեան մէջ, բայց ոչ մի տեղում իր ու-*

սումնասիրութեանը չէր կարողացել յագուրդ տալ: Նա մտել էր մինչեւ անգամ մի եզուիտական դպրոց եւ շուտով թողել էր: Նա կենակցութիւն էր ունեցել Դամասկոսի շէյխերի եւ Լիբանանի ռաբբիների հետ: Նրա մոլաշրջիկ կեանքը եւ ամեն տեղ իր որոնածը չը գտնելը՝ ծնեցրին նրա մէջ մի տեսակ թերահաւատութիւն դէպի ամեն ինչ: Ու այլ կերպ լինել կարող չէր: Նրան չը յաջողուեցաւ հասնել այն աղբիւրներին, որտեղից մաքուր ու պարզ բղխում է ճշմարտութիւնը: Նրա ժամանակում կանոնաւոր դպրոցներ չը կային, այլ կային միայն անհատներ, որոնք իրանց չքաւոր գիտութեանը այնքան մեծ նշանակութիւն էին տալիս եւ այնքան թանգ գնով էին վաճառում, որպէս մի քուրմ իր սրբութիւնը: Դրանց մօտ պէտք էր շատ տարիներ սպասաւորել եւ նրանց բոլոր հաճոյքը կատարել, մինչեւ նրանք արժան կը համարէին մի փոքրիկ մասն տալ իրանց գիտութիւնից:

Բայց տէր Եղիշէն առողջ դատողութեան տէր մարդ էր: Երկարամեայ փորձերը, ամեն տեսակ անձանց հետ շփուիլը՝ առաջ էին բերել նրա մէջ բոլորովին ինքնուրոյն համոզմունքներ, եւ նրա բոլոր գաղափարները, թէեւ ըստ մեծի մասին անճիշտ, բայց իր սեպհական մտածութեան արդիւնքն էին: Վերադառնալով իր հայրենիքը, Վան, նա հանդիպեց Հայրիկին, որի հետ իսկոյն բարեկամացաւ, եւ որի ազդեցութեան ներքոյ բոլորովին ուրիշ ուղղութիւն ստացաւ: Այստեղ նա վճռեց իրան նուիրել մանուկների կրթութեան գործին, եւ մտածելով, որ իբրեւ կրօնաւոր, աւելի հեշտ կը լինի իրան գործել ժողովրդի մէջ, ձեռնադրուեցաւ քահանայ: Որպէս քահանայ, նա հրաժարուեցաւ ծուխից, հրաժարուեցաւ եւ այն արդիւնքներից, որ իւրաքանչիւր քահանայ ստանում է իր ծուխից: Այդ արեց նա այն մտքով,

որ փոքր ինչ անկախ դիրք ստանայ, եւ մանաւանդ, որ ընդհարումներ չունենայ միւս եկեղեցականների հետ, որը անխուսափելի է դառնում, երբ մէջ տեղում շահերի խնդիր կայ։ Նա բաւականացաւ մի փոքրիկ օրիորդական դպրոցով, որ պահում էր իր տան մէջ։ Այս առաջին օրիորդական դպրոցն էր, որ բացուեցաւ Վանայ մէջ, բայց որպէս առաջինը, եւ որպէս մի նոր եւ անսովոր հիմնարկութիւն, նրա կեանքը կարճատեւ եղաւ։ Սկզբում նոյն իսկ քահանաներն եղան, որ գրգռեցին հասարակութեան տգիտութիւնը նրա դէմ, ցոյց տալով ուսումը աղջկանց համար՝ մի անբարոյականացնող ձեռնարկութիւն։ Քաղաքի սրբազան առաջնորդը, որ կարող էր խաղաղացնել հասարակութեան յուզմունքը, ինքը աւելի բորբոքեց, եւ դպրոցը երեք տարի գոյութիւն ունենալուց յետոյ փակուեցաւ։ Այդ անցքը խիստ դառն կերպով ազդեց տէր Հօր սրտին, երբ իր գործունէութեան հէնց առաջին քայլում հանդիպեց այդ տեսակ անյաջողութեան։ Բայց նա համբերող եւ երկայնամիտ մարդ էր, նա վշտացաւ, բայց չը յուսահատուեցաւ։

Գիշեր էր, երբ մենք հասանք Այգեստան։ Տէր Հայրը հրաւիրեց մեզ իր տունը ընթրիք ուտելու։ Ասլանը, որ սովորութիւն չունէր այդ տեսակ հրաւէրքներ ընդունելու, սիրով յանձն առեց նրա առաջարկութիւնը։ Ընթրիքը անցաւ բաւականին զուարճալի կերպով. տէր Հայրը պատմում էր զանազան արկածներ իր ճանապարհորդութիւններից, պատմում էր, թէ ինչ էր տեսել եւ ինչ էր արել զանազան երկրներում, խօսում էր Հայրիկի մասին, նրա աշխատութիւնների մասին, խօսում էր տեղային քահանաների տգիտութեան մասին, եւ նրա խօսակցութիւնները այնքան հետաքրքիր էին, որ բոլորը ես մեծ ուրախութեամբ լսում էի։

— Դուք կարծում էք տիկինը կարո՞ղ է գալ, — հարցրեց Ալանը քահանայից, ընթրիքի սեղանը հաւաքուելուց յետոյ:

— Կարող է, եւ անպատճառ այս գիշեր այստեղ կը լինի, — պատասխանեց քահանան վստահութեամբ:

— Բաւական դժուար կը լինի նրա համար... Ի՞նչպէս կարող է... կրկնեց Ալանը թերահաւատութեամբ:

— Նա իր բանը գիտէ... նա այդ տեսակ գործերի համար բաւական խելք ունի... ասաց քահանան:

Ալանը մեծ անհամբերութեամբ սպասում էր մի տիկնոջ, այդ տիկինը տէր հօր քոյրն էր: Տէր հայրը իր հայրենիքից բացակայ գտնուած ժամանակ, նրա տանը պատահել էր երկու անփոխարինելի կորուստ. մայրը վախճանուել էր, իսկ միակ քոյրը, անտէր մնալով, բռնութեամբ յափշտակուել էր, եւ մի տաճկի ամուսին էր դարձել: Այդ յափշտակութիւնը, որովհետեւ երկրի սովորական դէպքերից մէկն էր, անցել էր խիստ ներողամտութեամբ հայ հասարակութեան կողմից. իսկ տէր հայրը, որ անչափ սիրում էր իր քրոջը, որպէս երեւում էր, չէր կարող մոռանալ այդ դժբախտութիւնը: Մահմեդականութիւնը շատ պայմաններ ունի, ոչ միայն օտարազգիներին ամենայն դիւրութեամբ որսալու, այլ, եւ նրանց թէ՛ կրօնապէս եւ թէ՛ ազգայնապէս իր հետ միացնելու: Այդ էր, որ աւելի ցաւեցնում էր տէր հօրը: Մի հայ աղջիկ կամ տղայ, կամաւ, թէ ակամայ, երբ մահմեդականի հետ է ամուսնանում, այնուհետեւ կտրվում են նրա բոլոր յարաբերութիւնները իր ազգակիցների հետ եւ այլ եւս իրան հայ կոչել չէ կարող: Մի հայի պատահելիս՝ նա իրաւունք չունի հայերէն խօսել. նա զրկվում է մինչեւ անգամ իր ծնողների տունը գնալուց, եւ “հայ„ անունը նրա բերանում այնուհետեւ փոխվում է “գաւուր„ անունով,

որից պէտք է խորշել, որին պէտք է պիղծ համարել: Բայց տէր Հօր քոյրը այդ մասին մի գեղեցիկ բացառութիւն էր կազմում. Նա մնացել էր հաւատարիմ թէ՛ իր ազգին եւ թէ՛ կրօնին, թէեւ ամենայն զգուշութեամբ մահմեդականներից թագցնում էր իր զգացմունքները: Նա սիրում էր իր եղբօրը եւ երբեմն գաղտնի կերպով գալիս էր նրա տունը, ուրախանում էր նրա երեխաներով, եւ փառք էր տալիս Աստուծուն, որ իր հօր տան օջախը իսպառ մարած չէր:

Թէլլի-խաթունը, — այդպէս էին կոչում այժմ նրան, — քաղաքի ոստիկանութեան գլխաւորի կինն էր: Նրա ամուսինը կոչվում էր Լաթիֆ-բէկ: Դա այն չարագործների տեսակից էր, որոնց ոստիկանի պաշտօնը բաւական ընդարձակ յարմարութիւններ է ընծայում, իրանց անբարոյական ցանկութիւնները կատարելու: Գողերի գաղտնի ընկեր էր նա, աւազակների պաշտպան, սպանութիւնների մասնակից, մի խօսքով, հազիւ թէ քաղաքում մի որեւիցէ անիրաւութիւն գործուէր եւ նրա մատը խառն չը լինէր: Բայց միեւնոյն ժամանակ նահանգապետ փաշայի սիրելին էր նա:

Իսկ տիկինը այնքան բարոյական ուժ ունէր, որ իր քաղցր բնաւորութեամբ, խելքով ու շնորհքով, եթէ ոչ բոլորովին կարողացել էր զսպել այդ գազանին, բայց շատ անգամ յաջողվում էր նրան՝ մեղմացնել իր ամուսնի բարբարոսութիւնները: Նա միեւնոյն ժամանակ սիրելի էր իր ամուսնին: “Ի՞նչ անեմ... սովորել եմ... եթէ այն հացը, որ ուտում եմ հ ա ռ ա մ չը լինի, չեմ կարող մարսել„ — այդ էր լինում ոստիկանի պատասխանը, երբ տիկինը խրատում էր նրան: Նրա տան մէջ շատ անգամ կատարվում էին եղեռնական խորհուրդներ՝ մէկին սպաննելու, միւսին կողոպտելու, երրորդի տանը կրակ տալու, եւ այդ տեսակ խորհուրդներ ըստ մեծի մասին վերաբերում էին քրիստոնեա-

*ներին։ Եթէ տիկինը չէր կարողանում խափանել չարու-
թիւնը, այն ժամանակ նա, իրան բոլորովին անյայտութեան
մէջ պահելով, զգուշացնում էր, որտեղ որ հարկն էր, և
չարիքի առաջն առնում էր։ Այդպէս, երբ որ նա յայտնի
կերպով անկարող էր ներգործել, դիմում էր գաղտնի մի-
ջոցների։*

*Նա թշուառ էր, նա անբախտ ամուսին էր։ Բռնու-
թեամբ յափշտակեցին նրան հայրենի տնակից, բռնութեամբ
ստիպեցին նրան ուրանալ իր կրօնը, իր ազգը, — նա սովորեց
ատել բռնութիւնը, և նրա վշտացած սրտում զարգացաւ
մի խուլ բողոք դէպի ամեն չարութիւն։ Իր թշուառութեան
գիտակցութիւնը ծնեց նրա մէջ կարեկցութիւն և դէպի
օտարի թշուառութիւնը։ Մասնաւոր, անձնական զգաց-
մունքը ընդարձակ կերպարանք առաւ և տարածուեցաւ
իր ազգայինների վրայ, որոնք մի և նոյն տառապանքների
մէջն էին։ Այն եղեռնական տեսարանները, որոնք շատ ան-
գամ հանդիսանում էին նրա տան մէջ, այն անիրաւու-
թիւնները, որոնք համարեա ամեն օր կատարվում էին իր
շուրջը, աւելի և աւելի բորբոքում էին նրա դառն ատելու-
թիւնը դէպի այն ազգը և դէպի այն կառավարութիւնը, որ
այդ բոլորը մեքենայում էր։ “Ես վաղուց կը թողնէի այդ
տունը, ես շուտով կը հեռանայի այդ գազաններից, —
երբեմն ասում էր նա իր եղբօրը, — բայց համբերեցի և
մնացի, որ, որքան կարող եմ, օգնեմ թշուառներին„...
Նա իրան զոհել էր, ուրիշ զոհեր պաշտպանելու համար։
— Այդ էր միայն մխիթարում նրան։*

*Ես յետոյ աւելի մօտ ծանօթութիւն ունեցայ այդ
տիկնոջ հետ, այն ժամանակ միայն նկատեցի, որ նրա աշ-
խատութիւնները՝ դարման տանելու իր ազգայինների թշուա-
ռութիւններին՝ չէին սահմանափակվում միայն այսպիսի*

մասնաւոր օգնութիւններով. Նրա նպատակները շատ ընդարձակ էին. Նա ունէր բաւականին հիմնաւոր գաղափարներ՝ տիրող չարիքը բառնալու համար։ Այդ գաղափարները զարգացել էին նրա մէջ մասամբ իր անբախտ եւ ճնշեալ դրութիւնից, իսկ առաւելապէս եղբօր ազդեցութիւնից։ Նրա յարաբերութիւնները Ալանի հետ, որպէս երեւում էր, նոր չէր։ Այդ ես նկատեցի իսկոյն, երբ նա եղբօր հետ ներս մտաւ մեր սենեակը։ Նա մօտեցաւ եւ մի տարապայման համարձակութեամբ, որ խիստ օտարոտի էր հարեմի կնոջ համար, նստեց Ալանի մօտ եւ, նրա աջը առնելով իր ձեռքերի մէջ, ժպտալով ասաց.

— Ա՜խ, որքան ցանկանում էի քեզ տեսնել... ո՞ւր էիր, ի՞նչ ես այդքան թափառում այդ վանքերում...

— Վանքերն էլ պէտք է տեսնել, — ասաց Ալանը, նոյնպէս ժպտալով, — մեր ժողովուրդը դեռ չէ ազատուել վանքերից...

— Բայց քո դէմ որոգայթներ են լարվում, գիտե՞ս։

— Գիտեմ... եւ հէնց դրա համար ուզում էի տեսնել քեզ։

— Դու մատնուած ես...

— Այդ ես վաղուց սպասում էի։

Տիկինը տուեց Ալանին մի նամակ, որի կարդալու միջոցին, դէմքը բոլորովին այլայլուեցաւ, յետոյ իր սովորական սառնասրտութեամբ հարցրեց.

— Այդ նամակը ի՞նչպէս ընկաւ քո ձեռքը։

Տիկինը պատմեց, թէ մի քանի օր առաջ փաշայի քարտուղարը բերեց իր ամուսնի մօտ այդ նամակը եւ յանձնեց նրան, փաշայի կողմից պատուիրելով, որ ամեն հնարներ պէտք է գործ դնել, որպէս զի գտնուի նամակի մէջ

— Նոյնպէս։

— Ուրեմն, եթէ չէք մերժի իմ փոքրիկ ծառայութիւնը, ես կը տամ ձեզ երկու յանձնարարական նամակներ, մէկը Բաղէշ, միւսը Մուշ, այդ քաղաքներում ես երկու լաւ բարեկամներ ունեմ, նրանք կարող են պիտանի լինել ձեզ։ — Դուք, կարծեմ, հետաքրքրվո՞ւմ էք հնութիւններով, պարոն բժշկապետ։

— Այո, շնորհակալ եմ, խօջա Թորոս, — ասաց Ասլանը, ընդունելով նամակները եւ սեղմելով մուսուլցու ձեռքը։ — Մնաք բարեաւ, խօջա Թորոս։

— Յաջողութիւն եւ բարի ճանապա՜րհ, պարոն բժշկապետ, — ասաց նա եւ պինդ սեղմեց Ասլանի ձեռքը։

Մենք բաժանուեցանք։ Ընթերցող, դու խօ չես մոռացել, թէ ով էր այդ մուսուլցին իր արաբական ապարօշով եւ իր շէկ, վառվռուն աչքերով...

Քարաւան, — դա արեւելքի շարժական կեանքն է. քարաւան տեսնելով, կարելի է արեւելքի կենդանի, գործունեայ եւ եռանդոտ մասը տեսած լինել։

Նեղ ու անձուկ ճանապարհի երկարութեամբ բռնել էր նա մի քանի փարսախ տարածութիւն։ Մինը միւսի ետեւից շարուած էին բեռնակիր գրաստները։ Այդ երկար, կենդանի շղթան, որի ծայրը չէր երեւում, դանդաղ կերպով շարժվում էր, առաջ էր ընթանում եւ, ճանապարհի խոտորնակի ուղղութեամբ, օձի նման պտոյտներ էր գործում, գալարվում էր, եւ դարձեալ ուղիղ ընթացք էր ստանում, երբ ճանապարհը փոքր ինչ հարթ էր եւ ուղղաձիգ։ Բեռնակիր գրաստները բաղկացած էին ջորիներից։ Նրանք ղաթար-ղաթար, այսինքն խումբ-խումբ, դասաւորուած էին միմեանց ետեւից։ Իւրաքանչիւր խումբը բաղկացած էր տասն ջորիից, բոլորը միագոյն։ Մի խումբը սպիտակներ էին, միւսը

սեւեր, երրորդը մոյգ-մոխրագոյն եւ այլն: Բոլորից առաջ գնում էր սպիտակների խումբը: Ուրաքանչիւր խումբը կազմում էր մի միութիւն: Մէկ ջորին կապած էր միւսի համետի ետեւից երասանակի շղթայով: Ամեն մի խումբի հետ գնում էին երկու ծառաներ, որ եթէ բեռները ծռուելու լինեն, ուղղեն, կամ եթէ անասուններից մէկը սայթաքելու եւ ընկնելու լինի, կանգնեցնեն: Բոլոր ջորիների գլուխը, պարանոցը եւ գաւակը զարդարած էին գոյնզգոյն յուլունքներով, գոյնզգոյն խոունջներով, գոյնզգոյն փնջիկներով եւ փոքրիկ, ընկուզաձեւ զանգակներով: Ամեն մի քարւանապետ մի առանձին պարծանքով է զարդարում իր գրաստները, մանաւանդ երբ քարւանը մտնում է մի նոր քաղաքի, կամ դուրս է գալիս քաղաքից: Եւ այդ պճնասէր անասունները այն աստիճան սովորած են իրանց զարդարանքներին ու զանգակներին, որ եթէ զանգակներ չունենան, լաւ չեն գնայ:

Երբ հարիւրաւոր անասուններ շարժվում են, շրջակայ լեռները, բլուրները դղրդվում են զանգակների խլացնող ձայնից: Նրանց քայլերի չափով՝ հնչիւնները պահպանում են մի առանձին ներդաշնակութիւն, որ խիստ կախարդիչ տպաւորութիւն է գործում, մանաւանդ գիշերային լռութեան պահուն, երբ քարւանը գնում է ամայի ձորերի միջով:

Բոլորի առջեւը ընկած, միայնակ գնում էր "փիշանգը" — քարւանի առաջնորդը: Դա մի սպիտակ, ամեհի ջորի էր, հզօր կուրծքով եւ գեղեցիկ գլխով: Իր հետեւողներից որոշվում էր նա իր աւելի շքեղ զարդարանքներով, որ կազմուած էին թանգագին իրեղէններից: Նա ջորիների արքան էր. նա ազատ էր բեռնից. նա միայն առաջնորդում էր:

Նայելով այդ խելացի անասունի վրայ, ես մտածում էի. ո՜րքան լաւ կը լինէր, եթէ այդ երկրի առաջնորդները, կամ նրա կառավարիչները այդպէս բարեխիղճ կերպով կատարէին իրանց պաշտօնը, որպէս այդ սպիտակ ջորին...:

"Փիշանգը" արժանի է նկարագրութեան: Լինում է ձմեռ, թանձր ձիւնը ծածկում է ճանապարհների բոլոր շաւիղները, բոլոր հետքերը: Դար ու փոսեր հաւասարվում են, եւ առջեւում դրած է ձիւնային ընդարձակ, հարթ տարածութիւն: Նեղ հորիզոնը միախառնվում է մառախլապատ երկնքի հետ: Դէպի ամեն կողմ նայում ես, ոչինչ չես տեսնում: Ճանապարհը նշաններ չունի. ո՞ւր պէտք է գնալ: Ցուրտը սաստկանում է եւ կատաղի քամին ձիւնային թանձր փոշին պտըտեցնում է օդի մէջ: Սարսափելով մտածում ես՝ ահա ամբողջ քարաւանը կը կորչի, կ՚անհետանայ սպիտակ թանձրութեան ներքոյ: — Անապատի միջով գնալիս, քամին, մրրիկը, նոյն գործողութիւնն են կատարում աւազի հետ, որպէս ձմեռը ձիւնի հետ: Բոլոր ճանապարհները ծածկվում են աւազի ներքոյ: Դէպի երկինք նայում ես՝ աւազ, դէպի գետին՝ աւազ, աւազային մոխրագոյն փոշին լցրել է ամեն տեղ: — Այդ տագնապի եւ ճգնաժամի միջոցներում օգնութեան է հասնում "փիշանգը": Նա, որպէս մարմնացած բնազդում, գիտէ ուղիղ ճանապարհը, որքան էլ ծածկուած լինէր ձիւնի կամ աւազի ներքոյ: Իր հզօր կուրծքով պատառում է նա ձիւնը եւ քարաւանը առաջ է տանում: Ամեն ինչ սառել է, մարդկանց աչքերի թերթերունքից անգամ կախ են ընկած սառցային լուլաներ: Բայց նրա մարմինը պատած է սպիտակ փրփուրով եւ ջերմ գոլորշին թանձր սիւներով դուրս է հոսում լայն ռնգածակերից: Երբ մի տեղ ճանապարհը նրան երկբայական է թւում, նա զգուշութեամբ կանգ է առնում: Ամբողջ քա-

բուանը նոյնպէս, նրա ետեւում, դադարեցնում է իր ընթացքը։ Նա խորին ուշադրութեամբ գլուխը այս կողմ ու այն կողմ է դարձնում, ականջները ցցում է, կարծես, հողմերի ընթացքն է ուզում հետազօտել։ Նայում է դէպի երկինք, կարծես, աստղերի ուղին է ուզում գիտել։ Դունչը տանում է դէպի գետին եւ հոտ է քաշում, ստուգելու, արդեօք անցե՞լ էր այնտեղից մի որ եւ իցէ արարած։ Մի մեղմ խրխինջ արտայայտում է նրա սրտի ուրախութիւնը։ Նոյն ուրախութիւնը անցնում է անասունների ամբողջ շղթայով. բոլորը ընդհանուր ձայնով խրխնջում են։ Նրանց առաջնորդը գտաւ ուղին, փոխեց քայլերը։ Եւ ամբողջ շղթան շարժւում է նրա ետեւից։ — Գիշերային խաւարը նրա համար չէ։ Նրա երկու լուսաւոր աչքերը՝ երկու լապտերներ են, որ առաջնորդում են նրան։ Երբեմն նա սարերի, ձորերի միջով է գնում, կամ խորին անդունդների եզերքով է ընթանում։ Մի սխալ քայլ կարող էր գլորել նրան անյատակ վիհը եւ նրա հետ ամբողջ քարաւանը կործանման մատնել։ Բայց նա երբէք այդպիսի սխալներ չէ անում, կարծես, նրա ամուր սմբակներն եւս աչքեր ունեն։ — Երբ մօտենում են իջեւանին, որքան էլ մութ ու խաւար լինէր, նա մի քանի մղոն հեռաւորութիւնից իմանում է այդ, եւ դարձեալ ուրախաձայն խրխնջում է։ Նրա հետեւողները ձայնակից են լինում նրան եւ շտապեցնում են իրանց քայլերը, որ շուտ տեղ հասնեն եւ հանգստանան։

Բեռնակիր ջորիները առաջ էին ընկած, իսկ նրանց ետեւից գնում էին ճանապարհորդները, ոմանք ձիաների վրայ նստած, ոմանք աւանակների վրայ։ Այդ խեղճ անասունների բեռը աւելի ծանր էր։ Ուրաքանչիւրի վրայ բարձած էին երկու մեծ ջուալներ, լցրած զանազան իրեղէններով, որ անհրաժեշտ են ասիական ճանապարհորդութեան

համար: Ջուալների մէջ տեղաւորած էին զանազան կարասիք, ինչպէս՝ կաթսայ, պղնձէ ամաններ, ջրի աֆթաֆայ, սուրճ պատրաստելու ղաւանոց, նարգիլէ իր բոլոր պարագաներով եւ այլն: Նրանց թւում կար եւ ամբողջ պաշար ուտեստի համար, ինչպէս՝ հաց, իւղ, բրինձ, պանիր, աղ, սոխ, քամած մածուն եւ այլն: Իւրաքանչիւրը իր խոհանոցը իր հետ էր ման ածում. ինքը իր խոհանոցի եւ խոհարարն էր եւ վայելողը: Առանց այդ պատրաստութիւնների, կարելի էր քաղցած մնալ, որովհետեւ ամառը քարաւանը սովորաբար իջեւանում է բնակութիւններից հեռու, բացօթեայ տեղերում, անասուններին ճարակ գտնելու համար: Բնակութիւնների մօտ՝ գիւղացիք թոյլ չեն տալիս, որ անասունները արածեն: Ջուալների վերեւից կապած է ճանապարհորդի անկողինը, եւ այդ փափուկ տեղի վրայ նստած է նա: Ձին այդ բոլոր ծանրութիւնների տակին հազիւ է երեւում: Աւելի ունեւոր ճանապարհորդները նստած էին թեթեւ, թամքած ձիաների վրայ: Նրանց ծանրութիւնները տանում էին առանձին ձիաներ, որոնց վրայ նստած էին ծառաները: Այդ հարուստները ման էին ածում իրանց հետ եւ վրաններ: Քարաւանի մէջ կային եւ կանայք, որոնք փաթաթուած իրանց չադրաների մէջ, աչք ու երես կապած, մի շորեղէն գունդի նման, դրուած էին գրաստների վրայ: Հարուստների կանայքը նստած էին ծածկուած պատգարակների մէջ. իւրաքանչիւր պատգարակը տանում էին երկու ջորիներ:

Մահմեդական ունեւորը իր բաւականութիւնների ոչ մէկից յետ չէ մնում եւ ճանապարհորդութեան ժամանակ: Նա սովորել է ամեն րոպէ նարգիլէ ծխել, ամեն րոպէ մի ֆինջան ղահուէ խմել, որը մի մեծ մատնոցի չափ հազիւ կը լինի: Այդ երկուսի պատրաստութիւնը բաւական հոգսերի է կարօտ. կրակ է հարկաւոր, ջուր է հարկաւոր

եւ, վերջապէս, զանազան անօթներ են հարկաւոր։ Նրա ծառան այդ բոլորը իր հետ ունի։ Նրա նստած ջորիի մի կողքից, երկաթեայ շղթայից, քարշ է ընկած մի թաղարաձեւ մանղալ, որի մէջ, որմզդական հուրի նման, պահվում է մշտավառ ածուխը։ Ջորիի միւս կողքից, հաստ կաշեայ տիկի մէջ, քարշ է ընկած ջուրը։ Ջուրը մահմեդականի ամենաանհրաժեշտ պիտոյքն է, որ միշտ պէտք է իր հետ ունենայ։ Գուցէ այդ է առիթ տուել, որ այդ տիկերի պատրաստութիւնը զարմանալի կերպով կատարելագործուած է արեւելքում։ Նրանք ջուրը եւ սառն են պահում, եւ ամենաստիկ տօթերի ժամանակ երբէք չեն հոտում։ Կաշին արհեստաւորի շնորհիւ դարձել է մի տեսակ խեցեղէն աման, որ ազատ թոյլ է տալիս օդի հաղորդակցութիւնը ջրի հետ։ Նոյն ջորիի վրայ, զանազան անօթների մէջ կայ եւ թրջած թամբաքու եւ սուրճի բոլոր պարագայքը։ Բաւական է, որ ծառան լսում է իր տիրոջ հրամանը. "ղահուէ՛, նարգիլէ՜"։ Ծառան խկոյն պատրաստում է նախ ղահուէն, ապա նարգիլէն, մատուցանում է իր տիրոջը։ Հետաքրքիր է նայել այդ տեսարանի վրայ։ Ծառան նարգիլէն բռնած ունի իր ձեռքում, իսկ երկար, օձի նման գալարուող, կաշեայ ծխաքարշի ծայրը գտնվում է տիրոջ բերանում։ Ջորիները գնում են, իսկ տէրը մեծ բաւականութեամբ ծխում է, կարծես, իր տանը լինի։

Քարաւանի մէջ կային եւ մի խումբ չինգեանաներ (ցիգաններ) իրանց կապիկներով եւ պարեկող արջերով ու աղջիկներով։ Տղաների, աղջիկների եւ կապիկների վրայ հաւասար կերպով խնամք էին տանում։ Այդ թափառող արարածները նստած էին աւանակների վրայ, իսկ նրանց տէրերը գնում էին ոտքով։ Այդ ուրախ, թափառական խումբը, որ ճանապարհի բոլոր ընթացքում միշտ երգում էր,

ծիծաղում էր, կատակներ էր անում, իր վրայ էր դարձրել ամբողջ քարաւանի ուշադրութիւնը։

Կային եւ մէկ խումբ վանեցի մշակներ, որոնք մերձակայ գիւղօրայքից էին։ Դրանք պանդխտութիւնից էին վերադառնում։ Ո՛րքան հեռու տեղից էին գալիս եւ ո՛րքան ժամանակ բացակայ էին հայրենիքից, — այդ երեւում էր նրանց թախծալի դէմքերից։ Բայց որքան մօտենում էին հայրենի տնակին, այնքան նրանց դէմքերը հետզհետէ զուարթանում էին։ Նրանցից եւ ոչ մէկը դրամ չունէր։ Մի-մի պարկ ուսներին կապած, ուղեւորի երկար ցուպը ձեռքերին, այրուած, սեւացած արեւի բոցերից, գնում էին ոտքով։

Թափառական չինգանէ, թափառական վանեցի՛։ Երկուսի մէջ սերտ համեմատութիւն կայ։ Զանազանութիւնը նրանումն է միայն, որ մէկը հայրենիք, տուն ու տեղ չունի, այլ որպէս աշխարհաքաղաքացի, թափառում է ամբողջ աշխարհում։ Իսկ միւսը ամեն ինչ ունի՝ եւ հայրենիք, եւ ընտանիք, եւ հայրենական տուն ու տեղ, բայց դարձեալ թափառում է եւ օտար երկրներում հաց է որոնում։

Քարաւան-բաշին (քարաւանի պետը) ազգով հայ էր յայտնի Թօխմախ-Արթինը, որը բնիկ արզրումցի լինելով, սովորութիւն ունէր ամեն խօսքի մէջ կրկնել այդ առածը՝ "մինչեւ չը պղտորուի, չի պարզուի"։ Նա առանց պատճառի չէր ստացել իր Թ օ խ մ ա խ մականունը, որ նշանակում է երկաթեայ մեծ կռան, որով դարբինները երկաթ են կռում ու կոփում։ Միջին հասակով մարդ էր Արթինը, ամրակազմ, որպէս ծառի բուն։ Նրա խոշոր դէմքի վրայ մազերից ազատ մնացել էր միայն քիթը եւ ճակատի մի փոքրիկ մասը։ Մինչեւ անգամ ականջները ծածկուած էին խիտ ու կոշտ մազերով։ Նա սովորութիւն ունէր ինքն իրան ծաղրել, ասելով թէ մայրը իրան գողացել է արջերի որջից։ Բայց

երբ խօսում էիր այդ կոշտ ու կոպիտ մարդու հետ, նրա դէմքի խոշոր գծերը մեղմանում էին եւ, կարծես, հետզհետէ գեղեցկանում էր նա: Այն խիստ եւ կարծր կեղեւի մէջ կար ազնիւ սիրտ, կային եւ ազնիւ զգացմունքներ: Նստած մի սեւ նժոյգի վրայ, հրացանը ուսին, ատրճանակները թամքի ղաշին կապած, թուրը գօտիից քարշ ընկած, նա կայծակի արագութեամբ մի րոպէ քարաւանի առջեւումն էր, միւս րոպէ նրա ետեւումն: Ճանապարհների եւ անցքերի բոլոր վտանգաւոր տեղերը գիտէր նա: Երբ այսպիսի տեղերի էր հասնում, բաժանվում էր քարաւանից, հեռանում էր, բարձրանում էր բլուրների վրայ, դիտելու՝ արդեօք ճանապարհը ազատ էր աւազակներից, թէ փակել էին անցքը:

Թօխմախ-Արթինը մօտ յիսուն տարեկան կը լինէր, բայց դեռ պահպանել էր իր երիտասարդական աշխոյժը ու կայտառութիւնը: Քսան տարիից աւելի նա ջորեպան էր: Ամբողջ Փոքր Ասիան, Արաբիան, Միջագետքը մինչեւ Եգիպտոս նրա քարաւանի ընդարձակ ասպարէզն էր: Շատ անգամ բեռներ էր վերառնում դէպի Կովկաս, Պարսկաստան եւ հասցնում էր մինչեւ Սպահան, Շիրազ եւ Բանդար-Բուշեր: Նրա հաւատարմութիւնը օրինակելի էր: Վաճառականները ոսկիների տոպրակները առանց համբարելու էին յանձնում նրան: Ամեն մի քաղաքում, երբ գիտէին, որ Թօխմախ-Արթինի քարաւանը մի կամ երկու ամսից յետոյ պէտք է յայտնուի, վաճառականները, որքան էլ շտապելիս լինէին, դարձեալ սպասում էին, մինչեւ նա գայ, որ իրանց բեռները կամ արծաթը նրան յանձնեն: Ամենքին յայտնի էր այն անցքը, որ մի անգամ Լօրիստանի անապատներով անցնելիս դէպի Պարսից ծոցը, Բախտիարի (հին բակտրիացիք) կոչուած եղուզակները մի քանի հարիւր հոգով յարձակուեցան նրա քարաւանի վրայ եւ ամեն ինչ կողոպտեցին:

Ինքը Արթինը կռուի ժամանակ սաստիկ վէրքեր ստացաւ։ Նրա ծառաներից շատերը սպաննուեցան։ Այդպիսի դէպքերում վաճառականները շատ ներողամիտ են լինում. եթէ քարաւանի մէջ փող ունեն, գիտեն, որ կողոպտուած պէտք է լինի, իսկ եթէ մնացած եւս լինի, գիտեն, որ քարաւանբաշին իրաւացի պատճառներ ունի ասելու, թէ կողոպտել են։ Մի համադանցի պարսիկ վաճառական յանձնել էր Արթինին հինգ հազար ոսկի Բաղդադ տանելու, երբ պատահեց յիշեալ անցքը։ Համադանցին իր ոսկիները բոլորովին կորած էր համարում։ Բայց մի տարուց յետոյ յայտնուեցաւ Արթինը, եւ դրեց նրա առջեւ ոսկիների պարկը։

— Այդ ինչ է, Արթին, — հարցրեց վաճառականը։

— Ձեր ոսկիները, — պատասխանեց Արթինը։

— Միթէ նրանք մնացել են, — հարցրեց վաճառականը, չը հաւատալով իր աչքերին։

Արթինը պատմեց, թէ ելուզակների յարձակման ժամանակ նա այդ պարկը ձգեց մի փոսի մէջ, ծածկեց հողով ու քարերով։ Ամիսներից յետոյ, երբ ինքը առողջացաւ, վէրքերը լաւացան, գնաց, որոնեց եւ պարկը իր տեղումը գտաւ, եւ եթէ այնքան ժամանակ ուշացրեց վերադարձնել, պատճառը իր հիւանդութիւնն էր։

— Շատ ապրես, Արթին, — ասաց պարսիկը։ — Եթէ դու քրիստոնեայ չը լինէիր, քո այդքան հաւատարմութեան համար, քո տեղը միւս կեանքում Մուհամմէդի դրախտի ամենափառաւոր բաժնումը կը լինէր։ Ե՛կ դու մահմեդական դարձիր, իմ աղջիկը եւ իմ հարստութեան կէսը քեզ կը տամ։

Արթինը այդ ժամանակ երիտասարդ էր, դեռ չէր ամուսնացած։ Նա, ի հարկէ, ծիծաղում է մոլեռանդ մահմեդականի առաջարկութեան վրայ, որը, մահմեդականների

սովորութեամբ, իրան պարտաւորութիւն էր համարում, ամեն մի բարեխիղճ քրիստոնեայ տեսնելիս, ասել նրան. "ամեն ինչ քո մէջ լաւ է, միայն մի բան պակաս է, որ մահմեդական չես":

Պարսիկը բաժանում է ոսկիների մի մասը եւ առաջարկում է Արթինին, բայց նա շնորհակալութեամբ մերժում է, ասելով.

— Ի՞նչու էք տալիս ինձ այդ ոսկիները. իմ պարտքն էր ձեր աւանդը ամբողջութեամբ կամ տեղ հասցնել կամ ձեզ վերադարձնել: Եւ եթէ ելուզակները չը տարան, — այդ ձեր բախտից էր:

Արթինը իր կեանքում դժբախտութիւններ, աղքատութիւններ շատ էր կրել, բայց երբէք նրա մեծահոգութիւնը թուլացած չէր: Վերջին անգամի դժբախտութիւնը աւելի ծանր եղաւ: Վարակիչ հիւանդութեամբ նրա ջորիները համարեա բոլորը կոտորուեցան: Նա մնաց առանց մի փարայի, եւ բացի դրանից, մասնաւոր պարտքեր եւս ունէր: Բոլորը կատարելապէս մոռացած էին համարում նրան: Շատ չանցաւ, կարծես, մի հրաշքով կրկին կազմակերպեց նա իր քարաւանը, եւ հարիւրից աւելի ջորիներով դղրդեցնում էր Արզրումի լեռները: Այդ յաջողութիւնը նրա բոլոր ծանօթներին զարմացրեց. մտածում էին, թէ նա որտեղից ձեռք բերեց այդքան փողեր: Մարդկանց երեւակայութիւնը զանազան կարծիքներ ստեղծեց նրա մասին. ոմանք ասում էին, թէ նա մի մեծ գանձ է գտել. ոմանք ասում էին, թէ նրա բարեկամ վաճառականները մի բաւական նշանաւոր գումար հաւաքեցին եւ տուեցին նրան, որ կրկին կազմակերպէ իր քարաւանը. ոմանք աւելի հեռու էին գնում, ասելով, թէ նա մի "անյայտ ձեռքից" փող է ստացել, եւ այլն: Թէ այդ կարծիքներից ո՞րն էր ուղիղ, ո՞րն էր սխալ, —

այդ աւելորդ է քննել. այդքանը միայն ճշմարիտ էր, որ այժմ նրա ջրերն ամենաընտիրներն էին, եւ նա Արզրումի հայ ջրեպանների մէջ առաջինն էր համարվում:

Երեկոյեան մութը դեռ բոլորովին չէր պատել, դեռ բաւական լոյս կար, երբ մեր քարաւանը անցնում էր Արտամէտի միջով: Արտամէտը առաջ մի փառաւոր քաղաք էր, իսկ այժմ մի փառաւոր աւան: Նա ունէր մօտ հինգ հարիւր տուն բնակիչ, որոնց կէսից աւելին մահմեդականներ էին: Այդ աւանը Վանից երկու ու կէս ժամ հեռաւորութիւն ունի, գտնվում է լայնանիստ, եռանկիւնաձեւ բարձրութեան վրայ, որը, հետզհետէ խոնարհուելով, իջնում է մինչեւ ծովեզրը:

Գեղեցիկ է Արտամէտը իր ընդարձակ այգիներով, գեղեցիկ է նա իր բարձր, սքանչելի, ծովահայեաց դիրքով: Տասն եւ ութ դար առաջ այդ բարձրութիւնների վրայ կանգնած էին Արտաշէս Բ-ի հրաշալի ապարանքները, նրա ամրոցները՝ հզօր աշտարակներով ու պարիսպներով: Իսկ այժմ նրանց տեղում կանգնած է թուրք բէկի անշուք տնակը: Տասն եւ ութ դար առաջ Արտամէտի բուրաստաններում, իր նաժիշտների նազելի խումբով, ճեմում էր Սաթենիկ տիկինը, Ալանաց գեղեցկուհին, Արտաշէսի սիրելին: Իսկ այժմ, ծառերի հովանիի ներքոյ թրքուհի խաթունն է իր թուլամորթ ամուսնին փայփայում: Տասն եւ ութ դար առաջ Աստղկայ հոյակապ տաճարն էր կանգնած բլուրի գագաթի վրայ եւ իր մարմարեայ սիւնազարդ ճակատով նայում էր դէպի լայնածաւալ, կապուտակ ծովը: Հայոց դեռահաս աղջիկները ամեն առաւօտ զարդարում էին սիրոյ դիցուհու տաճարը թարմ ծաղիկներով եւ նրանից բախտ էին խնդրում:

Ասլանը մի քանի հետաքրքիր հնութիւններ եւս ցոյց տուեց ինձ այստեղ:

Նա ցոյց տուեց մի վիմափոր աղբիւր, որ գտնվում էր Հայոց Թաղի մօտ, ուղիղ ճանապարհի եզրի վրայ, որը տանում է դէպի Ոստան, Բաղէշ, Մուշ եւ այլն: Մարդու հասակի բարձրութեան չափով եւ բաւական լայն փորուած է ժայռը, եւ ներս տարած: Այդ վիմափոր խորութիւնից դուրս է հոսում մի ջրաղաց բանեցնելու չափ մաքուր եւ սառն ջուր: Այդ յորդաբուխ աղբիւրը պահպանել էր մինչեւ այսօր մի աւանդութիւն, որ խիստ բնայատիչ է Արտամէտի հեզնասէր աղջիկներին, որոնք, սկսեալ Աստղկայ օրերից, պահպանել են ուրախ, մշտածիծաղ բնաւորութիւն եւ սիրող, մշտաբորբոք սիրտ: Տասն եւ վեց դար առաջ այդ աղբիւրի մօտով անցնում էր Յակոբ Մծբնայ հայրապետը, Գրիգոր Լուսաւորչի հօր քեռորդին: Նա վերադառնում էր Արարատից, ուր ջերմ փափագով գնացել էր Մասիսի գագաթը բարձրանալու եւ Նոյի տապանը տեսնելու: Նա բարձրացաւ մինչեւ կէսը. այնտեղ մի խորին քուն տիրեց նրան: Աստուծոյ հրեշտակը, խնայելով նրա ծերութեանը, տուեց տապանի տախտակներից մէկը, ասելով, որ անհնարին կը լինի նրան մինչեւ գագաթը բարձրանալ: Տապանի այդ փոքրիկ մասը գոհացրեց հայրապետի բաղձանքը, եւ նա մեծ ուրախութեամբ հեռացաւ Արարատից, իր հետ բերելով Թանգագին աւանդը: Անցնելով Արտամէտից, նա մօտեցաւ յիշեալ աղբիւրին իր ծարաւը զովացնելու: Արտամէտի կատակասէր աղջիկները այդ միջոցին ջուր էին լցնում աղբիւրից: Տեսնելով ծերունուն, սկսեցին ծաղրել նրան: Հայրապետը անիծեց անպարկեշտներին եւ բոլորի սեւ ծամերը սպիտակեցան: Այն օրից, իբրեւ նշան, Արտամէտի աղջիկների մազերից մի փունջ, հէնց ծնած օրից, մնաց ճերմակ...

Երբ ես եւ Ալանը մօտեցանք աղբիւրին, հայոց աղջիկները դարձեալ սափորներով ջուր էին տանում այնտեղից:

Ես մեծ հետաքրքրութեամբ նայում էի նրանց ծամերին, որ երկայն, հաստ հիւսերով թափուել էին թիկունքի վրայ, գլխներին դրած արախչինների տակից։ Բայց այժմ այնքան մութն էր, որ ստուգել չը կարողացայ, արդեօք դեռ եւս կա՞յին նրանց սեւ գիսակների մէջ ճերմակ մազեր։ Արախչինների վրայ այնքան խիտ եւ միմեանց մօտ դրամներ էին կարած, որ արծաթեայ թասի ձեւ էին ստացել։

Ալանը ցոյց տուեց եւ Շամիրամայ հռչակաւոր գետը, որի ամրակառոյց եւ վիթխարի ամբարտակների մասին խօսում է Խորենացին։ Թէ հին ժամանակներում ինչպէս էր կոչվում, ես չը գիտեմ, իսկ այժմ Սար-Բուլախ (աղբիւրի ակն կամ գլուխ) կոչուած մեծ լեռան ստորոտի ժայռերը մինչեւ տասն տեղ պատառելով, այնտեղից դուրս բերեց մեծագործ թագուհին լեռան սրտումը ամբարուած ջուրը, եւ արհեստական առուակով, որի երկարութիւնը մինչեւ տասն եւ հինգ մղոն տարածութիւն ունի, Հայոց Ձորի միջով բերեց գետը եւ հասցրեց մինչեւ Արտամէդ։ Այստեղ ճիւղաւորվում է նա եւ ոռոգում է Արտամէդի լայնատարած այգիներն ու անդաստանները, եւ դարձեալ միանալով, ամրակուռ, քարակերտ ամբարտակների վրայով, ահագին գոռում-գոչումով անցնում է, եւ գնում է դէպի Վան քաղաքը ոռոգելու Այգեստանի այգիները։

Արտաշէս Բ-ից քան եւ երկու դար առաջ Արտամէդը եղել է Շամիրամի զբօսավայրը։ Արայի հետ ունեցած սիրային անյաջող կռուից յետոյ, հեշտասէր թագուհին, այստեղ, Արտամէդի հովանոցներում ու բուրաստաններում, հայոց իշխանազուն երիտասարդների հետ էր լցնում այն սէրը, որ նա սպասում էր Արայից։ Նա հրապուրում էր երիտասարդներին այն յուլունքներով, որոնց շարքը, իբրեւ մանեակ, կրում էր պարանոցին, եւ որոնք ունէին կախար-

Նա ցոյց տուեց մի վիմափոր աղբիւր, որ գտնվում էր Հայոց Թաղի մօտ, ուղիղ ճանապարհի եզրի վրայ, որը տանում է դէպի Ռոստան, Բաղէշ, Մուշ եւ այլն։ Մարդու հասակի բարձրութեան չափով եւ բաւական լայն փորուած է ժայռը, եւ ներս տարած։ Այդ վիմափոր խորութիւնից դուրս է հոսում մի ջրաղաց բանեցնելու չափ մաքուր եւ սառն ջուր։ Այդ յորդաբուխ աղբիւրը պահպանել էր մինչեւ այսօր մի աւանդութիւն, որ խիստ բնայատիչ է Արտամէտի հեգնասէր աղջիկներին, որոնք, սկսեալ Աստղկայ օրերից, պահպանել են ուրախ, մշտածիծաղ բնաւորութիւն եւ սիրող, մշտաբորբոք սիրտ։ Տասն եւ վեց դար առաջ այդ աղբիւրի մօտով անցնում էր Յակոբ Մծբնայ հայրապետը, Գրիգոր Լուսաւորչի հօր քեռորդին։ Նա վերադառնում էր Արարատից, ուր ջերմ փափագով գնացել էր Մասիսի գագաթը բարձրանալու եւ Նոյի տապանը տեսնելու։ Նա բարձրացաւ մինչեւ կէսը. այնտեղ մի խորին քուն տիրեց նրան։ Աստուծոյ հրեշտակը, խնայելով նրա ծերութեանը, տուեց տապանի տախտակներից մէկը, ասելով, որ անհնարին կը լինի նրան մինչեւ գագաթը բարձրանալ։ Տապանի այդ փոքրիկ մասը գոհացրեց հայրապետի բաղձանքը, եւ նա մեծ ուրախութեամբ հեռացաւ Արարատից, իր հետ բերելով թանգագին աւանդը։ Անցնելով Արտամէտից, նա մօտեցաւ յիշեալ աղբիւրին իր ծարաւը զովացնելու։ Արտամէտի կատակասէր աղջիկները այդ միջոցին ջուր էին լցնում աղբիւրից։ Տեսնելով ծերունուն, սկսեցին ծաղրել նրան։ Հայրապետը անիծեց անպարկեշտներին եւ բոլորի սեւ ծամերը սպիտակեցան։ Այն օրից, իբրեւ նշան, Արտամէտի աղջիկների մազերից մի փունջ, հէնց ծնած օրից, մնաց ճերմակ...

Երբ ես եւ Ասլանը մօտեցանք աղբիւրին, հայոց աղջիկները դարձեալ սափորներով ջուր էին տանում այնտեղից։

Ես մեծ հետաքրքրութեամբ նայում էի նրանց ծամերին, որ երկայն, հաստ հիւսերով թափուել էին թիկունքի վրայ, գլխներին դրած արախչիների տակից: Բայց այժմ այնքան մութն էր, որ ստուգել չը կարողացայ, արդեօք դեռ եւս կա՞յին նրանց սեւ գիսակների մէջ ճերմակ մազեր: Արախչիների վրայ այնքան խիտ եւ միմեանց մօտ դրամներ էին կարած, որ արծաթեայ թասի ձեւ էին ստացել:

Ալանը ցոյց տուեց եւ Շամիրամայ հռչակաւոր գետը, որի ամրակառոյց եւ վիթխարի ամբարտակների մասին խօսում է Խորենացին: Թէ հին ժամանակներում ինչպէս էր կոչվում, ես չը գիտեմ, իսկ այժմ Սար-Բուլախ (աղբիւրի ակն կամ գլուխ) կոչուած մեծ լեռան ստորոտի ժայռերը մինչեւ տասն տեղ պատառելով, այնտեղից դուրս բերեց մեծագործ թագուհին լեռան սրտումը ամբարուած ջուրը, եւ արհեստական առուակով, որի երկարութիւնը մինչեւ տասն եւ հինգ մղոն տարածութիւն ունի, Հայոց Ձորի միջով բերեց գետը եւ հասցրեց մինչեւ Արտամէտ: Այստեղ ճիւղաւորվում է նա եւ ոռոգում է Արտամէտի լայնատարած այգիներն ու անդաստանները, եւ դարձեալ միանալով, ամրակուռ, քարակերտ ամբարտակների վրայով, ահագին դոռում-գոչումով անցնում է, եւ գնում է դէպի Վան քաղաքը ոռոգելու Այգեստանի այգիները:

Արտաշէս Բ-ից քան եւ երկու դար առաջ Արտամէտը եղել է Շամիրամի զբօսավայրը: Արայի հետ ունեցած սիրային անյաջող կռուից յետոյ, հեշտասէր թագուհին, այստեղ, Արտամէտի հովանոցներում ու բուրաստաններում, Հայոց իշխանազուն երիտասարդների հետ էր լցնում այն սէրը, որ նա սպասում էր Արայից: Նա հրապուրում էր երիտասարդներին այն յուլունքներով, որոնց շարքը, իբրեւ մանեակ, կրում էր պարանոցին, եւ որոնք ունէին կախար-

դական զօրութիւն։ Հայոց ծերունի նահապետներից մէկը, մտածեց ազատել թեթեւամիտ երիտասարդներին Թագուհու մոլորութիւններից եւ, միեւնոյն ժամանակ, Թագուհուն զինաթափ անել երիտասարդներին դիւթելու հնարքներից։ Մի անգամ Թագուհին լողանում էր իր բուրաստանի մարմարօնեայ աւազանում, եւ մարգարտացող ջուրը բարձր շատրուաններից ցօղում էր նրա ախտաբորբոք մարմինը։ Նրա հագուստը, նրա զարդարանքները, որոց թւում եւ կախարդական յուլունքները՝ դրած էին աւազանի մօտ, վարդենիների հովանիի տակ, կանաչ խոտերի վրայ։ Թագուհին, գիսակների երկար հիւսերը արձակած, սանտրվում էր։ Այդ միջոցին գաղտագողի կերպով մօտեցաւ ծերունի նահապետը եւ, իմանալով, որ Թագուհու հրապուրանքների բոլոր գաղտնիքը յուլունքների մէջն է, խլեց մանեակը, սկսեց փախչել դէպի ծովը։ Զայրացած Թագուհին, այնպէս հերարձակ, վազեց ծերունու ետեւից։ Երբ չը կարողացաւ հասնել, իր անհնարին կատաղութեան մէջ, խլեց մի ահագին քարաժայռ եւ, գլխի երկար մազերին պարսատիկի ձեւ տալով, ժայռը դրեց նրա մէջ եւ նետեց ծերունու ետեւից։ Ժայռը չը դիպաւ եւ, անցնելով ընդարձակ տարածութիւն, ընկաւ Արտամէտի մօտ, մի փոսի մէջ։ Իսկ ծերունին վազելով հասաւ մինչեւ Դատվանի ծովեզերքը, ձգեց ծովի մէջ կախարդական յուլունքները եւ երկիրը ազատեց հեշտասէր Թագուհու խարդաւանքից։ Արտամէտի երգիչները երգ յօրինեցին եւ այն երգի խօսքերից իր գրքի մէջ ժլատ Խորենացին յիշում է երեք բառ միայն. “Ուլունք Շամիրամայ ի ծով„։

Ալանը, ցոյց տալով ինձ յիշեալ քարաժայռը ասաց.

— Դիմեցէք իւրաքանչիւր արտամէտցուն, նա այդ բոլորը կը պատմէ ձեզ։ Զուարճալի Արտամէտը ստեղծել է երգիչներ, բանաստեղծներ, ինչպէս զուարճալի Գողթնիքը։

Բայց ո՞ւր են նրանց վաստակները։ Ժողովրդի բերանում մնացել է միայն հին աւանդութիւնը։ Աւելի քան չորս հազար տարուայ աւանդութիւնը դեռ պահպանել է նա։ Մի այդպիսի աւանդապահ ժողովուրդ երբէք չի մեռնի, եւ այդ է, որ նրան պահպանել է ժամանակների ամենածանր հարուածներից։ Ով որ իր անցեալը չէ մոռանում, ներկայի մասին նա կարող է հոգալ։ Նայեցէք մեր շուրջը, ամեն մի ժայռ, ամեն մի աւերակ, ամեն մի բլուր, ամեն մի աղբիւր եւ առուակ ձեզ մի բան կը պատմէ ամենահին անցեալից։ Եւ այդ պատմութիւնների մէջ դուք կը տեսնէք երկրի ու ժողովրդի անցեալ մեծութիւնը...

Հայրենի երկրի յիշատակները տեսնելիս, հայրենի երկրի աւանդութիւնների վրայ խօսելիս, Ասլանին տիրում էր մի առանձին ոգեւորութիւն, եւ նրա զգայուն սիրտը լցվում էր անսահման հոգեզմայլութեամբ։ Հնութիւնները եւ շրջակայ տեսարանները նրան բոլորովին մոռանալ տուին, որ քարաւանը անցել էր եւ մենք բաւական յետ էինք մնացել։ Երբ յիշեցրի այդ, նա պատասխանեց.

Կը գնանք, կը հասնենք, բայց քեզ հարկաւոր է այդ բոլորը իմանալ։

Հայոց եկեղեցիների, մատուռների եւ զանազան սրբավայրերի աւերակներով լի է Արտամէտը։ Նրանց խաչերով զարդարած քարերը, սրբապիղծ մահմեդականների տների շինուածքներին երկար տարիներ ծառայելուց յետոյ, տակաւին մեծ մասը տխուր, սրտառուչ կոյտերով, մնում են իրանց տեղում։ Բայց ինձ այնքան չէին գրաւում այդ քրիստոնէական ժամանակների աւերակները. Նրանցից շատ էի տեսած։ Ինձ գրաւում էին այն վիմափոր սենեակները, մեծմեծ այրերը, որ գտնվում էին ժայռերի մէջ։ Նրանք իմ վրայ մի անբացատրելի, խորհրդաւոր ազդեցու-

*թիւն էին գործում։ Ինձ գրաւում էին երկու ահագին ժայռեր, որոնց ճակատը պատած էր բեւեռագիր արձանագրութիւններով։ Որքան դարեր էին սահել այդ հնութիւնների վրայ. որքան ազգեր եկել, անհետացել էին, իսկ նրանք տակաւին մնում էին...*

*Արտամէտում լինել եւ Արտամէտի հոտաւէտ, անուշահամ խնձորը չուտել, — դա մի յանցանք է։ Երբ պատրաստուեցանք ճանապարհ ընկնելու, նկատեցի, որ մի փոքրիկ աղջիկ, ճանապարհի եզրում նստած, իր առջեւ դրել էր մի մաղ լի խնձորներով։ Ես մօտեցայ։*

*— Ծախո՞ւմ ես։*

*Նա գանգրահեր գլուխը շարժեց եւ, նստած տեղից չը շարժուելով, նայեց իմ երեսին։ Նրա թշերը կարմրեցան, ինչպէս իր առջեւ դրած խնձորները։*

*— Ո՞րքան արժէ։*

*— Հինգ փարա։*

*— Մաղն էլ հե՞տը։*

*— Չէ՛, ես էլ հետը։*

*Արտամէտուհին ցոյց տուեց իր սրախօսութիւնը։*

*Հի՛նգ փարա, գիտէք ո՞րքան է, — երկու կոպէկ։ Մի ամբողջ մաղ լի խնձորներով՝ երկու կոպէկ։ Իմ թաշկինակը հազիւ կարողացաւ վերառնել քառորդ մասը, մնացածը թողեցի։*

*— Տո՛ւր նրան մի բան աւել, — ասաց Ասլանը, — երեւում է, որ շատ աղքատ է այդ սիրուն աղջիկը։*

*Երբ ստացաւ ինձանից մի արծաթեայ հինգ ղուռուշնոց, մօտեցաւ Ասլանին, խնդրում էր նրա ձեռքը համբուրել։*

*— Մեր կողմերում տղամարդիկն են համբուրում աղջկայ ձեռքը, — ասաց Ասլանը եւ նրա ձեռքը սեղմեց իր շրթունքների վրայ։*

Աղջիկը ժպտաց եւ շնորհակալութեամբ հեռացաւ։ Նրա գեղեցիկ մարմինը երեւում էր քրքրուած ցնցոտիների ճեղքերից։

Ես նայեցի Ալանի տխրամած երեսին, եւ այդ երկրորդ անգամն էր, որ տեսնում էի նրա աչքերում արտասուք։ Ես հաւատացած էի, որ ամենագեղեցիկ իշխանուհիների ձեռքը չէր համբուրի նա, իսկ այդ աղքատ աղջիկը նրա սիրտը շարժեց։

Մենք նստեցինք մեր ձիանները եւ ճանապարհ ընկանք, խիստ տխուր յիշողութիւններ տանելով մեզ հետ Արտամէդից։

Արտամէդը համարեա մի գիւղ է, որտեղից պէտք է մտնել Հայոց-Ձորը — մեր Հայկ նահապետի սխրագործութեանց վայրը։

Զով գիշերը նպաստել էր քարաւանին բաւական ճանապարհ կտրել։ Մեր ձիաների արագ ընթացքով մենք հազիւ կարողացանք հասնել նրան այն ժամանակ, երբ նա արդէն հասել էր Անգղ գետի ափի մօտ եւ այնտեղ, կանաչազարդ մարգագետնի վրայ, պատրաստւում էր իջեւանել։

Քարաւանապետի ծառաները շտապով ցած էին բերում ջորիների կռնակից բեռները եւ կարգով դարսում էին միմեանց վրայ։ Նրանց շարքերը բարձր ամբարտակների ձեւ էին ստանում։ Յետոյ, երբ բոլոր գրաստների բեռները ցած էին դրած, վերառին նրանց համետները, քորոցներով քորեցին, թիմարեցին, քրտինքը ցամաքեցրին եւ ապա, հրացաններով զինուած, տարան ջորիները իջեւանից հեռու, մերձակայ տեղերում արածացնելու։ Ճանապարհորդները, իւրաքանչիւրը իր ընկերի հետ, խումբ-խումբ տեղաւորուեցան գետի ափերի մօտ, իրանց շուրջը հաւաքելով իրանց իրեղէնները։ Կապերտները եւ գորգերը տարածեցին փափուկ

խոտերի վրայ, անկողինները բացարին, մութաքանները դրեցին եւ մի առանձին բաւականութեամբ նստեցին: Ոմանք գետի ափի մօտ լուացման ծէսն էին կատարում, որ յետոյ նամազ անեն: Ոմանք այդ ծէսը կատարել, վերջացրել էին, եւ բաց երկնքի ներքոյ, կանաչ խոտերի վրայ չոքած, նամազ էին անում: Ոմանք նամազը վերջացրել էին, եւ իրանց տեղերում նստած, "տէր-ողորմեայի" հատիկները դարձնելով, նրանց թուի համեմատ, լռութեամբ աւելորդ աղօթքներ էին կարդում, մինչեւ ծառաները ընթրիք կը պատրաստէին: Մահմեդականը ճիշտ է իր կրօնական պահանջների մէջ եւ ճանապարհորդութեան ժամանակ: Այդ նկատի առնելով, քարաւանի պետը, թէեւ քրիստոնեայ էր, բայց ճանապարհորդութեան ընթացքը այնպէս էր յարմարացրել, որ նրանց միջոց տայ իրանց պարտաւորութիւնները իրանց ժամանակին կատարելու, եւ այդ շատ հաճոյական էր մահմեդականներին, որոնք միշտ քարաւանի մեծամասնութիւնն էին կազմում:

Ծալովի երկար լապտերները, որ քարշ էին ընկած երկաթեայ ցցերից, լուսաւորում էին ճանապարհորդների ընթրիքի սեղանը եւ նրանց ուրախ դէմքերը, որոնց վրայ յոգնութիւն ամենեւին չէր նշմարվում: Արդէն զանազան տեղերում խարոյկներ էին վառվում, մեծ եւ փոքր կաթսաները եփ էին գալիս, եւ փլաւի, խաշի, տապակած մսի հոտը բուրում էր օդի մէջ՝ ախորժակ բացանող անուշհոտութեամբ:

Ոմանք ընթրիքը վերջացրել էին եւ, թիկն տուած բարձերին, թեք էին ընկած, եւ խորին գոհունակութեամբ ծխում էին նարգիլէ: Սեւամորթ արուկը կրակի վրայ պատրաստում էր փրփրացող ղահուէն: Այդ բոլորը իմ վրայ այն տպաւորութիւնն էր գործում, կարծես թէ, այդ

ամբողջ քարաւանը ուխտաւորների մի մեծ բանակ լինէր, որ խմբուած է լինում մի վանքի շուրջը, եւ ամենքը վառուած են լինում կրօնական ջերմեռանդութեամբ, ամենքի սրտերը փափկանում են, եւ ամենքի մէջ զարթնում է ընդհանուր կարեկցական ոգին, մինը միւսին օգնելու, մինը միւսին բարիք գործելու։ Այստեղ եւս ես նկատում էի մի տեսակ միութիւն, մի տեսակ եղբայրութիւն, մի տեսակ հաւասարութիւն բոլորի մէջ։ Աւելի ունեւորները հրաւիրում էին իրանց սեղանի մօտ աղքատ ուղեկիցներին։ Նրանք խղճի դէմ էին համարում միայնակ վայելել այն բարիքը, երբ մի ուրիշը հեռուից կարօտութեամբ նայում է։ Քարաւանը միացրել էր բոլորին, եւ տարբեր, այլասեռ տարրերից կազմել էր մի մեծ ընտանիք։

Քարաւանի մէջ կազմուեցան եւ կանանոցներ։ Կանայքը առանձին մի կողմն էին մեկուսացած, եւ նրանց հասարակութիւնը բաժանուած էր տղամարդերից։ Քարաւանի պետը սկզբից այդ մասին հոգացել էր, եւ կարգի էր դրել հարեմի բոլոր պարտ ու պատշաճ պահանջները։ Նա միմեանց վրայ դարսած հակերից կազմել էր մի շրջապատ, որի մէջ զետեղուած էին կանայքը եւ ամենեւին չէին երեւում։ Հարուստները իրանց հետ վրաններ ունէին, որոնք այնպէս էին պատրաստուած, որ թէ տղամարդերի համար եւ թէ կանանց համար առանձին բաժիններ կային։

Քարաւանի մէջ կային երգիչներ, մօլլաներ, դէրվիշներ, մի աշուղ եւ ցիգաններ, որոնք գնում էին զանազան քաղաքներ։ Այստեղ, քարաւանի սովորութեամբ, նրանք, առանց որ եւ իցէ նիւթական ակնկալութեան, զուարճացնում էին իրանց ուղեկիցներին։ Իւրաքանչիւրը գտել էր իր սիրող հասարակութիւնը։ Մի տեղ կրօնասէր, ծանրաբարոյ էֆէնդին լսում էր մօլլայի զրոյցները նախկին խալիֆաների

եւ իմամների հրաշքների ու գործերի մասին: Մի տեղ դէրվիշը, արեւելքի փիլիսոփան, նստած իրանից անբաժան ընծու մորթիի վրայ, զբաղեցնում էր իր ունկնդիրներին զանազան իմաստասիրական հարցերով: Մի տեղ աշուղը դեռ նոր էր սկսել մի վէպ, ոգեւորուած պատմում էր, եւ պիտի շարունակէր պատմել ամեն իջեւաններում, մինչեւ կը վերջացնէր: Աւելի երիտասարդները, քարաւանի բանակից դուրս առանձնացած, լսում էին ցիգանների երգը ու նրանց նուագածութիւնները: Իսկ հեռու, ամենից հեռու, լսելի էր լինում արածացող ջորիների զանգակների հնչիւնը եւ նրանց վրայ հսկող ծառաների երգը: Բայց մօտից, շատ մօտից, երգում էր Անգղ գետը իր մեղմ, քաղցրաձայն խոխոջմունքով: Գիշերային լռութեան մէջ այդ բոլորը, միախառնուելով, կազմում էին խիստ ախորժ, սրտաշարժ ներդաշնակութիւն:

Ինքը, Արթինը, ոտքի վրայ, անդադար պտտվում էր քարաւանի մէջ, իւրաքանչիւրի առողջութիւնը հարցնում էր, իւրաքանչիւրի դրութեան մասին տեղեկանում էր, արդեօք նրան պէտք չէ՞ր մի որ եւ իցէ բան, եւ իւրաքանչիւրին մի հաճոյական խօսք ասելով, հեռանում էր: Ամեն կողմից նրան հրաւիրում էին, բայց նա շնորհակալութեամբ հրաժարվում էր, ասելով, որ կատարելու դեռ շատ գործեր ունի:

Ես եւ Ալանը, գետի ափի մօտ նստած, հեռուից լսում եւ դիտում էինք՝ ինչ որ կատարվում էր: Այդ միջոցին մօտեցաւ մեզ Արթինը եւ իր սովորական զուարճախօսութեամբ ասաց.

— Պարոն բժշկապետ, եթէ չէք կամենում քաղցած մնալ, շնորհ բերէք իմ վրանը. ինչպէս երեւում է, դուք ուտելու ոչինչ չէք վերառել ձեզ հետ:

Եւ իրաւ, մենք այդ մասին ամենեւին չէինք մտածել, կարծելով, թէ քարաւանը բնակութիւնների մէջ կ'իջեւանէ եւ այնտեղ ամեն ինչ կարելի կը լինի գտնել, թէեւ այդ կողմերի գիւղերում, բացի գարիի ալիւրից պատրաստած հացից եւ ձուաներից, ուտելու ուրիշ ոչինչ բան չէ կարելի գտնել:

Ասլանը, կարծես, Արթինի հրաւէրքին էր սպասում, շնորհակալութիւն յայտնելով, հետեւեց նրան:

Ջորեպանի սպիտակ վրանը այնքան ընդարձակ էր, որ նրա մէջ կարող էին տեղաւորուել մի քանի ընտանիքներ: Նա զուրկ չէր եւ շքեղութիւնից: Երեւում էր, որ այդ “անապատի մարդը„, ինչպէս ինքն իրան կոչելու սովորութիւն ունէր Արթինը, սիրում էր փոքրիկ վայելչութիւններ: Երբ կատակի համար այդ մասին նկատեցի, նա պատասխանեց.

— Օրհնած, երեսուն տարի է, որ տան ծածկի տակ չեմ մտել, իմ անասունների հետ միշտ ձորերում, լեռներում, անապատների մէջ եմ կեանք վարել եւ իմ մխիթարութիւնը միայն այդ վրանի մէջ եմ գտել:

Արթինը դժբախտ էր եւ որպէս ամուսին. կնոջը անհաւատարմութեան համար արձակեց, իսկ նրանից ծնած միակ որդին մեռաւ ծաղկի հիւանդութիւնից: Այնուհետեւ նա վճռեց չամուսնանալ, միշտ ասելով կանանց, թէ “նրանք մի դառն պատիժ են տղամարդի համար„, եւ իր բոլոր սէրը դարձրեց իր ջորիների վրայ:

— Բայց պէտք է գիտենաք, — ասաց նա, շարունակելով իր առաջին խօսակցութիւնը, — որ այդ վրանը ոչ այնքան ինձ համար է, որքան իմ ուղեւորների համար: Ցօթի եւ անձրեւի ժամանակ շատերը այստեղ պատսպարան են գտնում:

— Ինչպէս մենք, — ընդմիջեցի ես։ — Եւ դուք ամենին կերակրում էք։

— Պատահում է, երբ աղքատ են լինում եւ ուտելու ոչինչ չեն ունենում։ Շատ անգամ եւս հիւանդներ եմ ունենում, — նրանց խնամք է հարկաւոր, հանգստութիւն է հարկաւոր, մինչեւ տեղ հասցնեմ, — այսպիսիների համար իմ վրանը միշտ պատրաստ է։

Ընթրիքից յետոյ Ալանը հարցրեց.

— Ի՞նչպէս են ճանապարհները։

— Ճանապարհները միշտ վատ են, — ասաց նա, — ե՞րբ է եղել մի ժամանակ, որ ճանապարհները լաւ լինէին։ Ահա հէնց այստեղ, ինչպէս տեսնում էք, բնակութիւններից շատ հեռու չենք։ Անգղ գիւղը կէս ժամի ճանապարհով միայն հեռու է մեզանից, բայց դարձել ամենավտանգաւոր տեղերից մէկն է։ Եթէ դուրս գաք, կը տեսնէք, որ ամեն մի ժայռի ետեւում, ամեն մի փոսի մէջ, ամեն մի թուփի տակ մի-մի աւազակ է թաղնուած։ Մի քանի րոպէ առաջ բռնեցին մէկին, եւ ի՞նչ էք կարծում, կին էր, քրդի կին։

— Դա շատ հետաքրքիր է։

— Այդ անիրաւները աւելի վտանգաւոր են, քան թէ իրանց ամուսինները. մութի մէջ, գետնի վրայից սողալով, սոտեհնում են քարաւանին, ինչպէս աղուէսը մօտենում է հաւաբունին, յետոյ սատանայի նման կուչ են գալիս մի հակի տակ, սուր դանակով կտրում են հակը եւ մէջի եղածը տանում են։ Անկարելի է տեսնել նրանց։

— Իսկ դուք ի՞նչ արեցիք ձեր բռնած գողին, — հարցրի ես։

— Ի՞նչ պէտք է անէի, մազերից փոքր ինչ ձիգ տուի, յետոյ բաց թողեցի։

— Իսկ եթէ տղամա՞րդ լինէր։

— Ուրիշ կերպ կը վարուէի։

— Չէ՞ք վախենում։

— Ի՞նչից պէտք է վախենամ. նրանց մարմինը խօ երկաթից չէ, իմը մսից. նրանք էլ ինձ նման մարդիկ են։

— Բայց գազան մարդիկ են։

— Վախլուկ գազաններ, հաւատացէք, շատ վախլուկ։ Բոլորովին սխալ է, որ ասում են, թէ քուրդը քաջութիւն ունի։ Նա քաջ է, երբ անզէն, անպաշտպան մարդկանց վրայ է յարձակվում։ Իսկ երբ փոքր ինչ ընդդիմադրութիւն է տեսնում, իսկոյն երեսը դարձնում է ու փախչում։ Բոլոր վայրենիները այդպէս են. ես տեսել եմ նրանց, շատերի հետ գործ եմ ունեցել։ Ի՞նչ քաջութիւն կարող է լինել բարբարոսի մէջ, որ առաջնորդվում է միայն յափշտակութեան գաղափարով։

— Բոլորովին ճիշտ է, — ընդմիջեց Ասլանը, որ լուռ լսում էր։ — Բարձր քաջութիւնը անձնազոհութիւն է պահանջում, իսկ անձնազոհութիւնը առանց բարձր իդէալների չէ կարող լինել։

Նա դարձեալ լռեց եւ, կարծես, այլ եւս չէր լսում մեզ։ Ես հարցրի.

— Ուրեմն ձեզանից վախենո՞ւմ են։

— Ասած է՝ «Թուրքին ծեծիր, հետը բարեկամացիր», — պատասխանեց Արթինը։ — Ախար այդ առածը խօ այսօր չէ կազմուել, դա հարիւրաւոր, գուցէ հազարաւոր տարիների փորձերի վերջին խօսքն է։ Ու ես ինքս փորձել եմ այդ։ Այդ գառան խորովածը, որ հիմա կերանք, գիտէ՞ք ով էր ուղարկել, — մի քուրդ աւազակապետ, որի ոչխարները արածում են մեզանից փոքր ինչ հեռու ձորի մէջ։ Իմանալով, որ իմ քարաւանը իջեւանել է իր չադրների

մերձակայքում, իր որդու ձեռքով ուղարկել էր երկու գառ եւ պատուիրել էր հարցնել իմ առողջութիւնը:

— Իսկ դուք գառների փոխարէն ի՞նչ ուղարկեցիք նրան:

— Իմ ողջոյնը եւ մի թօփ Ճամի ալաջայ նրա կանանց հագուստի համար:

— Երեւի, այդ քուրդը մի ժամանակ գործ է ունեցել ձեզ հետ:

— Այո, միանգամ սաստիկ ջարդուեցան, եւ այնուհետեւ բարեկամացանք: — Ինձ ներեցէք, — ասաց նա վեր կենալով, — ես երկար նստեցի եւ շատ խօսացի: Ես պէտք է տեսնեմ, թէ ի՞նչ են շինում տղերքը, իսկ դուք կարող էք այստեղ հանգստանալ: Ձեզ համար ամէն ինչ պատրաստել են:

Առաւօտեան հարկաւոր են երկու լաւ ձիաւորներ — ասաց Ալանը: — Ես պէտք է քարաւանից առաջ ընկնեմ, մի քանի տեղեր տեսնելու համար:

— Ես կը տամ քեզ իմ մարդիկներից երկու այնպիսի ձիաւորներ, որոնց մէկը հարիւրի պատասխան կը տայ, — խոստացաւ նա եւ, բարի գիշեր ասելով, հեռացաւ:

Ալանը այս գիշեր սովորականից վաղ քնեց: Վանի մէջ կատարած ծանր աշխատութիւններից յետոյ, այդ առաջին գիշերն էր, որ նա հանգստանում էր: Տէր Աստուած, ի՞նչ էր նրա դրութիւնը, մի տենդային դրութիւն, մի սաստիկ լարուած մեքենայի դրութիւն, որ հանգիստ եւ դադարում չունի:

Ես դեռ պառկած էի իմ անկողնի մէջ, քունս չէր տանում. իմ աչքերի առջեւ դեռ նկարուած էր Թօխմախ-Արթինի թաւամազ դէմքը իր մռայլ կերպարանքով եւ սեւ, վառվռուն աչքերով: Այդ մարդը պարծենկոտ չէր.

ինչ որ խօսում էր նա, ինչ որ պատմում էր, բոլորը ճշմարիտ էր։ Նա, իրաւ, քաջ մարդ էր։ Ես յետոյ առիթ ունեցայ շատ բաներ լսել նրա մասին, որոնց բոլորի մէջ փայլում էր նրա անհամեմատ արիութիւնը։ Քարաւանի պետը չէ կարող երկչոտ լինել, երբ միշտ վտանգների հետ կռիւ ունի։ Բայց նա աւելի քան արիասիրտ էր։ Նա ընդունակ էր մի ամբողջ զօրագունդ կառավարելու։ Նա զուրկ չէր եւ մարդասիրական զգացմունքներից. ամեն դէպքում ես նկատում էի նրա ունեցած մեծ հակումը դէպի բարին եւ դէպի լաւը։ Այդ պարապմունքի մէջ, որպիսին նա ունէր, պահպանել այնպիսի մաքուր բնաւորութիւն, — դա ինձ զարմացնում էր։ Բեռնակիր ձիապանները, ջորեպանները, անդադար գործ ունենալով անասունների հետ, այնքան կոպտանում են, որ մի աստիճան միայն բարձր են լինում անասուններից։ Բայց նա ջորեպանութիւնից համարեա մի արհեստ էր շինել եւ այնքան կատարելագործել էր, որ ես մեծ զարմանքով էի տեսնում այն կարգը, այն կանոնները, որ տիրում էին նրա քարաւանի մէջ։

Լապտերները հետզհետէ մարում էին, ուղեւորների շարժողութիւնը դադարում էր եւ քարաւանի մէջ տիրում էր խորին լռութիւն։ Միայն գետի մեղմաղձոտ ձայնն էր լսվում եւ այն ձայնի մէջ, կարծես, ես կարդում էի քառասուն եւ հինգ դար առաջ այստեղ կատարուած անցքերի պատմութիւնը . . .



*մերձակայքում․ իր որդու ձեռքով ուղարկել էր երկու գառ և պատուիրել էր հարցնել իմ առողջութիւնը։*

*— Իսկ դուք գառների փոխարէն ի՞նչ ուղարկեցիք նրան։*

*— Իմ ողջոյնը և մի թօփ Շամի ալաջայ նրա կանանց հագուստի համար։*

*— Երևի, այդ քուրդը մի ժամանակ գործ է ունեցել ձեզ հետ։*

*— Այո, միանգամ սաստիկ ջարդուեցան, և այնուհետև բարեկամացանք։ — Ինձ ներեցէք, — ասաց նա վեր կենալով, — ես երկար նստեցի և շատ խօսացի։ Ես պէտք է տեսնեմ, թէ ի՞նչ են շինում տղերքը, իսկ դուք կարող էք այստեղ հանգստանալ։ Ձեզ համար ամէն ինչ պատրաստել են։*

*Առաւօտեան հարկաւոր են երկու լաւ ձիաւորներ — ասաց Ասլանը։ — Ես պէտք է քարաւանից առաջ ընկնեմ, մի քանի տեղեր տեսնելու համար։*

*— Ես կը տամ քեզ իմ մարդիկներից երկու այնպիսի ձիաւորներ, որոնց մէկը հարիւրի պատասխան կը տայ, — խոստացաւ նա և, բարի գիշեր ասելով, հեռացաւ։*

*Ասլանը այս գիշեր սովորականից վաղ քնեց։ Վանի մէջ կատարած ծանր աշխատութիւններից յետոյ, այդ առաջին գիշերն էր, որ նա հանգստանում էր։ Տէր Աստուած, ի՞նչ էր նրա դրութիւնը, մի տենդային դրութիւն, մի սաստիկ լարուած մեքենայի դրութիւն, որ հանգիստ և դադարում չունի։*

*Ես դեռ պառկած էի իմ անկողնի մէջ, քունս չէր տանում․ իմ աչքերի առջև դեռ նկարուած էր Թօխմախ-Արթինի թաւամազ դէմքը իր մռայլ կերպարանքով և սև, վառվռուն աչքերով։ Այդ մարդը պարծենկոտ չէր․*

ինչ որ խօսում էր նա, ինչ որ պատմում էր, բոլորը ճշմարիտ էր: Նա, իրաւ, քաջ մարդ էր: Ես յետոյ առիթ ունեցայ շատ բաներ լսել նրա մասին, որոնց բոլորի մէջ փայլում էր նրա անհամեմատ արիութիւնը: Քարաւանի պետը չէ կարող երկչոտ լինել, երբ միշտ վտանգների հետ կռիւ ունի: Բայց նա աւելի քան արիասիրտ էր: Նա ընդունակ էր մի ամբողջ զօրագունդ կառավարելու: Նա զուրկ չէր եւ մարդասիրական զգացմունքներից. ամէն դէպքում ես նկատում էի նրա ունեցած մեծ հակումը դէպի բարին եւ դէպի լաւը: Այդ պարապմունքի մէջ, որպիսին նա ունէր, պահպանել այնպիսի մաքուր բնաւորութիւն, — դա ինձ զարմացնում էր: Բեռնակիր ձիապանները, ջորեպանները, անդադար գործ ունենալով անասունների հետ, այնքան կոպտանում են, որ մի աստիճան միայն բարձր են լինում անասուններից: Բայց նա ջորեպանութիւնից համարեա մի արհեստ էր շինել եւ այնքան կատարելագործել էր, որ ես մեծ զարմանքով էի տեսնում այն կարգը, այն կանոնները, որ տիրում էին նրա քարաւանի մէջ:

Լապտերները հետզհետէ մարում էին, ուղեւորների շարժողութիւնը դադարում էր եւ քարաւանի մէջ տիրում էր խորին լռութիւն: Միայն գետի մեղմաղձոտ ձայնն էր լսվում եւ այն ձայնի մէջ, կարծես, ես կարդում էի քառասուն եւ հինգ դար առաջ այստեղ կատարուած անցքերի պատմութիւնը...



ԻԱ.

## ՀԱՅԿԱՅ ԲԵՐԴԸ

*Դեռ արեգակը չէր ծագել, դեռ նոր զարթած թռչունները սկսել էին իրանց առաւօտեան ճլվլոցը, երբ ես աչքերս բաց արի, տեսայ՝ վրանի մուտքի առջեւ սպասում էին մեր թամքած ձիաները։ Ասլանը ինձանից վաղ էր վեր կացել, պատրաստել էր, ինձ եւս ասաց, որ շուտով հագնուիմ։ Արթինը վրանում չէր։ Ջորիները վաղուց արդէն բերել էին արօտից, համետում էին, գարի էին տալիս, որ դեռ լոյսը չը ծագած, ճանապարհ ընկնեն։*

*Քարաւանը այդ րոպէում ներկայացնում էր մի վանք, որ կանխում էր հանդիպել տունջեան լուսատուին։ Ամեն կողմից լսելի էր լինում աղօթքի եւ հոգեւոր երգերի ձայն։ Ես միշտ ախորժանօք էի լսում, երբ մահմեդականը Ղօրանից այաթներ էր կարդում. Նրա ընթերցանութեան մրմունջը ինձ յիշեցնում էր ջերմ, հրաբորբոք Արաբիայի անապատները եւ այդ անապատների կրակի միջից յայտնուած կրակոտ մարգարէին։ Որքան մեծ զօրութիւն ունի գիրքը։ Մի գիրք, մի լաւ երգուած գիրք, իր բարձր բանաստեղծութեամբ, իր հրաշալի լեզուով, կարողացել էր երկրագնդի մի նշանաւոր մասը կապել մի կրօնի հետ։ Ես նախանձով էի նայում այդ մահմեդականների վրայ։ Քարաւանի մէջ կային եւ հայեր, բայց նրանք չէին աղօթում։ Հայը աղօթում է միայն այն ժամանակ, երբ տէրտէրը նոյնպէս աղօթում է։ Եկեղեցու պատերից դուրս՝ նա Աստծուն չէ մտաբերում։*

Ըշտապելուց ես մոռացայ մինչեւ անգամ կոճակներս կցել: Ասլանը խոստացել էր այն օրը ցոյց տալ ինձ մեր Հայկ Նահապետի բերդը: Իմ սիրտը տրոփում էր անհամբերութիւնից, թէ ե՞րբ պէտք է տեսնէի Հայաստանի առաջին ամրոցը, որ մնացել էր այն օրից, երբ հայութեան սկիզբը դրուեցաւ:

Երբ ձի նստեցինք, ճանապարհ ընկանք, Արթինի խոստացած երկու ձիաւորները, բոլորովին զինուած, մեր առջեւով գնում էին, թէ որպէս առաջնորդ եւ թէ որպէս զինակից: Նրանք սկզբից մեզ զգուշացրին, թէ վտանգաւոր տեղերից պէտք է անցնենք: Ես կատարեալ զինավառութեան մէջ էի, Ասլանը նոյնպէս ունէր իր հետ մի զոյգ ատրճանակ: Չը գիտեմ ինչո՞ւ սաստիկ փափագում էի ես, որ աւազակների հանդիպենք: Այնքան խօսել էր դրանց մասին, այնքան բաներ էի լսել. բայց երբէք աւազակ չէի տեսել:

Գիշերով եկած լինելով, ես դեռ բոլորովին չէի դիտել Հայոց-Ձորը: Երբ լոյսը ծագեց, երբ արեւի առաջին ճառագայթները սկսեցին ոսկեզօծել լեռների մռախլապատ կատարները, այդ ժամանակ միայն հանդիսացաւ իմ առջեւ գեղեցիկ հովիտը իր շքեղ տեսարաններով: Ես հիացած էի, եւ իմ հիացմունքը մեծանում էր այն չափով, որքան բնութեան գեղեցկութիւնները միախառնվում էին անցեալի, ամենահին անցեալի յիշատակների հետ: Ի՞նչեր չէր տեսել այդ հովիտը, ինչ սխրագործութիւնների վկայ չէր եղել նա: Այստեղ մեր Հայկ Նահապետը պատերազմեց Բէլի բռնակալութեան դէմ, եւ խորտակեց ամբարտաւան հսկայի զօրութիւնը: Այստեղ, Ցազկերտի կրօնական հալածանքների ժամանակ, հայ կինը մահակը ձեռին, հայ շինականը զինուած իր մանգաղով, առաջին բողոքը բարձրացրին խղճի

բռնաբարութեան դէմ եւ, յարձակուելով պարսից մոգերի վրայ, ջարդեցին նրանց, եւ կրակ տալով նոր հիմնուած բոլոր ատրուշաններին, եւ մոխիրը ածելով ծովի մէջ, մաքրեցին իրանց հայրենիքը այդ պղծութիւնից: Ալանը ինձ ցոյց տուեց հին Մոխրաբերդը ծովի մօտ, որ այժմ մի գիւղ էր. այստեղից ածեցին ծովի ալիքների մէջ հրդեհուած ատրուշանների եւ որմզդական մշտավառ կրակի մոխիրը, եւ այդ պատճառով կոչուեցաւ Մոխրաբերդ:

Հայոց-Ձորում գրուեցաւ քրիստոնէութեան սկիզբը մեր Աբգար թագաւորի օրով: Ալանը այդ մասին շատ բաներ էր պատմել ինձ, ինչ որ գրուած էր գրքերի մէջ: Բայց ես սիրում էի ժողովրդի պատմածը, կենդանի ժողովրդի պատմածը, որ նա աւանդաբար լսել էր իր նախորդներից: Ես կը դնեմ այստեղ այդ աւանդութիւնը, աւելի այն պատճառով, որ նրանով բացատրվում է Անգղ գետի անուան ծագումը: Այսպէս է պատմում ժողովուրդը:

Այն խոստման համեմատ, որ Փրկիչը արել էր մեր Աբգար թագաւորին, Նրա համբառնալուց յետոյ, Բարդուղիմէոս եւ Թադէոս առաքեալներին վիճակուեցաւ գալ Հայաստանը լուսաւորելու: Բարդուղիմէոս առաքեալը եկաւ Աղբակայ կողմերը, իսկ Թադէոս առաքեալը Հայոց-Ձորը, բերելով իր հետ աստուածամուխ գեղարդը, ս. Աստուածածնի քօղը եւ անուշահոտ իւղի շիշը, որով Փրկչի գլուխը օծեցին: Նա սկսեց քարոզել եւ իր բերած սրբութիւններով հրաշքներ գործել: Անգղ գետի ափի մօտ, ճիշտ այնտեղում, ուր այժմ սուրբ Աստուածածնի վանքն է կանգնած, կար մի մեհեան: (Այստեղից փոքր ինչ հեռու իջեւանել էր մեր քարաւանը): Աստուածամայրը երազում երեւում է Փրկչի առաքեալին եւ ասում է, որ այդ մեհեանի տեղում, իր համար մի տաճար կանգնեցնէ: Առաքեալը մի հրաշքով կործանում է

մեհեանն ու կուռքերը, եւ սկսում է տաճարը կառուցանել։ Այդ ժամանակ սկսվում է մի խուլ, աներեւոյթ կռիւ առաքեալի եւ կուռքերի մէջ։ Ինչ որ առաքեալը ցերեկով շինել էր տալիս, գեւերը գիշերով քանդում էին եւ քարերը ձգում էին Անգղ գետի մէջ։ Այդ քարերի կուտակութիւնից կազմուեցաւ այն բարձրութիւնը, որի վրայից գետը ջրվէժի նման ցած է թափվում եւ կոչվում է Սաչան։ Յետոյ առաքեալը Աստուածամօր խորհրդով, իր հետ բերած հրաշագործ իւղով օծում է մի խաչքար եւ կանգնեցնում է շինուելիք տաճարի տեղում։ Այնուհետեւ դեւերը այլ եւս չէին համարձակվում մօտենալ շինուածքին, բացի դրանից, նրանք սեւ ագռաւների կերպարանք էին ստանում եւ աչքի էին երեւում։ Բայց որովհետեւ նրանք օդի մէջ աղմուկ էին բարձրացնում եւ վերեւից անհանգստացնում էին բանուորներին, այդ պատճառով անգղների կերպարանքով յայտնըվում են Աստուծոյ հրեշտակները եւ սկսում են պատերազմել ագռաւների հետ։ Անգղները յաղթում են, բոլոր ագռաւներին կոտորում են, եւ նրանց դիակները նետում են գետի մէջ, միեւնոյն տեղում, ուր նրանք ձգել էին տաճարի քարերը։ Ի յիշատակ այդ յաղթութեան, գետը կոչուեցաւ Անգղայ գետ, իսկ գիւղը, որտեղ կառուցուեցաւ ս. Աստուածամօր տաճարը, կոչուեցաւ Անգղ գիւղ։ Առաքեալի հրաշագործ իւղով օծած խաչքարը մինչեւ այսօր էլ մնում է տաճարի մէջ, եւ նոյն քարից անընդհատ կերպով ծորում է հրաշագործ ձէթ, որը ուխտաւորները տանում են իրանց հետ եւ գործ են դնում զանազան ախտերի բժշկութեան համար։ Պատմում էին, թէ առաջ այդ ձէթը այնքան շատ եւ առատութեամբ էր բղխում, որ բաւականացնում էր վանքի բոլոր կանթեղների լուսաւորութիւնը։ Բայց մի վարդապետի ագահութեան պատճառով ձէթը նուազեցաւ, երբ նա սկսեց վաճառել։

Մենք երկար չէինք բաժանվում Անգղ գետից, գնում էինք նրա հակառակ ուղղութեամբ։ Ձկնորսները, նրա ընթացքի ուղղութեամբ, շտապում էին դէպի այն տեղը, ուր գետը թափվում է ծովը։ Այստեղ սարքել էին նրանք իրանց ձկնորսութեան սապաթները, որ ամեն առաւօտ դուրս էին բերում լի անուշահամ տառեխներով։

Անգղ գետի վերին մասը կոչվում է Խօշ-աբ՝ քանի որ Խօշաբ կամ Անձեւացեաց կոչուած գաւառի միջովն է հոսում։ Իսկ երբ մտնում է Հայոց-Ձորը, նա իր ամբողջ երկարութեամբ բաժանում է այդ հովիտը երկու մասների՝ հիւսիսային եւ հարաւային։ Իսկ Շամիրամի առուն, հիւսիսից գալով, կտրում է Անգղին եւ, արհեստական կամուրջի վրայից անցնելով, գնում է դէպի Արտամէտ, իսկ այնտեղից Վան։ Այդ վերջինը աւելի օգուտ է տալիս Հայոց-Ձորին, քան թէ առատաջուր Անգղը։ Իր հոսման ընթացքում Շամիրամի առուն ոռոգում է շատ գիւղերի անդաստանները, արտաբայքը։ Երբեմն ագուգայների ու խողովակների միջով, երբեմն բաց առուակով հոսում է նա, իսկ երբ խրամատների, փոսերի վրայով պէտք է անցնի, այսպիսի տեղերում նրա համար բարձր ամբարտակներ են կառուցած, որոնց վրայով, կարծես, օդի միջից թռչում է ջուրը, առանց նեղութիւն կրելու, առանց շեղուելու իր ճանապարհից։ Այդ բոլորը այնքան ճարտար կերպով է կառուցուած, այնքան մեծագործ է, որ եթէ հռչակաւոր Նինուէացի թագուհու գործը չը համարենք, անշուշտ մեր Արտաշէս երկրորդի գործը համարելու է, որ արհեստական ջրանցքով այդ գետը տարաւ Արտամէտի բուրաստանները զարդարելու եւ կոչեց այն աւանը Զարդ։ Եւ իրաւ, նա մի ժամանակ Վասպուրականի զարդն էր։

Արեւը բարձրացաւ։ Այժմ շրջակայքը աւելի պայծառութեամբ էին երեւում։ Ալանը խորասուզուած էր, ծվ

գիտէ, ինչ մտածութիւնների մէջ, եւ ամենեւին չէր խօսում։ Նա հիացած էր շրջակայ տեսարաններով, որոնք եւ ուրախութիւն էին ազդում ինձ, եւ տրտմութիւն։ Որքան խիտ ազգաբնակութիւն է եղել այստեղ, ո՛րքան երջանիկ ապրելիս են եղել այստեղ մարդիկ։ Իսկ ա՞յժմ։ Այժմ աւերակ, բոլորովին անմարդաբնակ գիւղերի թիւը աւելի շատ էր քան թէ չէն գիւղերը։ Ամենուրեք հանդիպում էինք կիսակործան եկեղեցիների, ամայի վանքերի եւ լայնատարած գերեզմանատների, որոնց շուրջը մի ժամանակ մարդիկ են բնակուել։ Իսկ այժմ այդ նուիրական վայրերը ծառայում էին որպէս որջ վայրենի գազանների, կամ նրանցից չը տարբերուող քուրդ աւազակների։ Կարծես, մի կործանիչ ձեռք անցել էր այդ հովտով, եւ բոլորը՝ ինչ որ լաւ էր, ինչ որ բարի էր՝ ոչնչացրել էր։

— Մեր նախնիքը ծոյլ մարդիկ չեն եղել, — ասաց Ասլանը. — նրանք հոգ են տարել երկրի շէնութեան համար, եւ դրա ապացոյցը կարող է լինել այդ հսկայական ջրանցքը, որ անց են կացրել այդ հովտի միջով։ Բայց այն օրից, որ տիրեց թուրքը, ամեն աշխատութիւն, ամեն կենդանութիւն մեռաւ։

— Իսկ այդ չէն գիւղօրայքը հայաբնա՞կ են։

— Հայաբնակ են, բայց իւրաքանչիւրի մէջ կը գտնէք մի քանի տուն քուրդ բնակիչներ։ Այդ մի քանի տունը ամբողջ գիւղի ցեցը պէտք է համարել։

Նա դարձեալ լռեց։

Ճանապարհը հարթ էր. բնութիւնը եւ մարդու ոտն էր հարթել։ Անդղ գետի յորդութիւնից տեղ-տեղ գոյացել էին ճահիճներ, որոնց միջից դեղին, փայլուն ջրածաղիկը զաւլիկի նման փողփողում էր արեւի ճառագայթներից։ Տեղ-տեղ գոյացել էին շամբուտներ։ Կրիաները, որ դուրս էին

եկել ցամաքը՝ արեւի տաքութիւնը վայելելու, մեր ձիաների ոտնաձայնը լսելով, խմբովին ներս էին սահում եւ թագչում էին եղէգների մէջ: Ձիւնի նման սպիտակ արագիլը իր երկար, կարմիր կտցով, եւ նոյնպէս երկար, կարմիր ոտներով, հանդարտ շրջում էր ճահճի մէջ եւ իր սիրած որսն էր որոնում: Մենք համարեա թէ նրա մօտովն անցանք: Ծանրաբարոյ թռչունը ամենեւին չը վրդովուեցաւ, ուշիմ կերպով նայեց մեզ վրայ եւ կրկին շարունակեց իր որսորդութիւնը: Ուրուրը վերեւում շրջաններ էր գծում օդի մէջ, լայն թեւերը բացարած, որոնց երբեմն թեթեւ կերպով շարժում էր, կարծես, թիավարելիս լինէր օդը: Ահա նա նետի նման սլացաւ դէպի ցած, մի քանի վայրկեան անհետացաւ եղէգների մէջ եւ կրկին վեր բարձրացաւ, մագիլների մէջ բռնած ունելով մի ինչ-որ բան: Նա տարաւ իր աւարը: Արեգակը աւելի եւ աւելի այրում էր: Եթէ ծովի կողմից փչող մեղմ քամին չը լինէր, տօթը կարող էր խեղդել: Ամեն ինչ անշարժ էր, ամեն ինչ լուռ էր: Միայն լսելի էր լինում անհանգիստ արտուտի ճռնչող երգը: Միջօրէի տապի ժամանակ, երբ բոլոր թռչունները թուլացած, շնչասպառ, մի զով տեղ են որոնում հանգստանալու, նա այդ պահուն աւելի ոգեւորվում է, տաքանում է, սկսում է երգել: Բայց որտեղ էր թագնուած այդ հողագոյն թռչունը: Որտեղ էլ որ լինէր, մենք նրան չէինք կարող նշմարել: Հնձած արտերի մոխրագոյն ծղօտները, տօթի ազդեցութիւնից ցամաքած եւ դալկացած մացառների տերեւները՝ ամենեւին չեն որոշվում նրա փետուրների գոյնից: Խելացի թռչունը ընտրում է այսպիսի տեղեր: Նրա գոյնը միախառնվում է իր թագստի տեղի գունաւորութեան հետ, եւ նա անտեսանելի է դառնում թշնամու աչքից: Գոնէ դրա խելքն ունենային այստեղի հայերը...

Մենք անցանք մարգագաշտերից, անցանք ճահիճներից, անցանք հնձած արտորայքից: Այժմ մեր ճանապարհի աջ եւ ձախ կողմերում բարձրանում էին ժայռոտ բլուրներ: Կանանչ բուսականութեան մի նշոյլ անգամ չէր մնացել նրանց վրայ. ամէն ինչ այրել էր տօթը: Միայն օշինդրը բուրում էր իր սուր, կծու հոտով:

Ահա ճանապարհը խաչաձեւ կտրելով, անցաւ չարագուշակ նապաստակը: Նա բըբզեց մի քարի վրայ եւ, ականջները ցցած, հեռուից նայում էր մեզ վրայ: Երբ մօտեցանք, անյայտացաւ մացառների մէջ: Գոնէ մի աղուէս անցնէր, դա կ'ուրախացնէր ինձ, դա արդէն նշան կը լինէր, որ մեր ճանապարհորդութիւնը, ինչ նպատակով էլ եւ լինէր, բարեյաջող վախճան կ'ունենար: Բայց նապաստակը չար է գուշակում: Այդ նախապաշարմունքը, սկսեալ մանկութիւնից, իմ մէջ այն աստիճան արմատացած էր, որ ես սկսեցի կասկածել, որ անպատճառ մի որ եւ իցէ անյաջողութեան կը հանդիպենք: Այդ մասին, ի հարկէ, ամաչեցի Ալանին մի բան ասել, վախենալով նրա յանդիմանութիւնից:

Մենք անցանք մի հայոց գիւղի մօտով: Գետնափոր խրճիթները հազիւ բարձրանում էին գետնի մակերեւոյթից: Տափակ կտուրների վրայ կալ էին կալսում: Որպէս ծանրութիւն, երեխաներին խմբով ածել էին կամնասայլի վրայ, մի զոյգ եզներ քաշում էին եւ պտտեցնում էին դեռ չը մանրած յարդի վրայ: Մայրը, հեծանոցը ձեռին, խառնում էր յարդը: Ջաղջաղի սուր ատամները, որ կազմուած էին կայծքարի կտորներից, կտրատում էին յարդի խոշոր մասները: Տղամարդիկ չէին երեւում: Նրանց մի մասը դաշտերում ուրիշ աշխատանքներով էին զբաղուած, իսկ շատերը գնացել էին օտար երկիրներ, պանդխտութեան մէջ էին ապրում: Մի քանի ծերունիներ նստած էին կալի մօտ,

դիզած խուրձերի հովանիի ներքոյ, ծխում էին: Մեզ տեսնելով ամենքը կանգնեցին եւ խորին կերպով գլուխ տուին: Մեր առաջնորդներից մէկը սօտեցաւ նրանց եւ կրակ խնդրեց, որ իր չիբուխը վառէ: Մենք անցանք: Երբ նա կրկին եկաւ եւ հասաւ մեզ, ես հարցրի.

— Ի՞նչ էին խօսում այն ծերունիները:

— Հարցնում էին, թէ ո՞վ է այդ մարդը:

— Դուք ի՞նչ ասացիք:

— Ասացի՝ եւրոպացի ճանապարհորդ է:

— Նրանք ի՞նչ ասացին:

— Հարցնում էին, թէ ի՞նչ նպատակով է ճանապարհորդում:

— Էլ ուրիշ ոչինչ չը հարցրի՞ն:

— Հարցրին, թէ ո՞ւր է գնում: Ես ասացի՝ գնում է Հայկայ բերդը տեսնելու: Նրանք երանի տուեցին եւրոպացու աչքերին, որ կը տեսնէ Հայկայ բերդը:

— Միթէ նրանք չեն տեսել:

— Չեն տեսել. այդքան մօտիկ են ապրում, եւ չեն տեսել:

— Դա շատ զարմանալի է:

— Զարմանալու ոչինչ չը կայ, ես աւելի զարմանալին կ'ասեմ ձեզ. ինձ պատահել է տեսնել գիւղացիներ, որոնք մի քանի մղոնով միայն հեռու են ապրում մի վանքից, երբ օտար երկրներից եկած ուխտաւորների քարաւանը նրանց գիւղի մօտով անցնում է, նրանք խորին բաղձանքով ասում են ուխտաւորներին. «երանի ձեր աչքերին, որ կը գնաք, կը տեսնէք մեր վանքը»...

Այդ խօսակցութեան միջոցին՝ մեր առաջնորդի միւս ընկերն էլ մօտեցաւ մեզ: Ես այժմ միայն սկսեցի ուշադրութեամբ քննել նրանց դէմքերը: Այդ դէմքերը ինձ շատ

ծանօթ էին երեւում։ Ինձ թւում էր, թէ մի տեղում պէտք է տեսած լինէի նրանց։ Բայց ե՞րբ եւ ի՞նչ տեղում, մտաբերել չէի կարողանում։ Այդ տարակուսանքը երկար տանջում էր ինձ։ Մի՞թէ կարելի էր մոռանալ այդ տեսակ մարդկանց։ Երկուսն էլ բարեկազմ երիտասարդներ էին, կարծես, մի զոյգ Այաքսներ լինէին։ Ես անիծում էի իմ բթամտութիւնը։ Եթէ տեսել էի, անպատճառ պէտք է ուրիշ հագուստով, ուրիշ կերպարանքով տեսած լինէի, եւ ոչ որպէս այժմ, լազի հագուստով, ինչպէս հագնուած էին Արթինի բոլոր ծառաները։

Ես տատանվում էի անստուգութեան մէջ։ Մտածում էի հարցնել։ Մի՞թէ նրանք կ'ասէին, թէ ովքեր են, կամ մենք մի ժամանակ տեսնուել ենք։ Եթէ ասելու լինէին, հէնց առաջին անգամից կ'ասէին։ Բայց նրանք ոչինչ կերպով չէին ցոյց տալիս, որ ինձ ճանաչում են, կամ որ եւ իցէ ժամանակ հանդիպել ենք միմեանց։ Իմ յիշողութեան մէջ այդքանը միայն պարզ էր, որ այդ երկուսին միասին, միաժամանակ, մի տեղում էի տեսել։ Եւ այդ շատ զարմացնում էր ինձ։ Ես թողեցի, որ հանգամանքները պարզեն այդ մթութիւնը, այժմ դարձայ դէպի միւս ընկերը, հարցնելով.

— Դեռ երկա՞ր ճանապարհ է մնում մինչեւ Հայկայ բերդը։

— Եթէ այդպէս արագ գնալու լինենք, կէսօրից փոքր ինչ անցած կը հասնենք, — պատասխանեց նա։

Իմ հետաքրքրութիւնը այնքան անզուսպ էր դարձել, որ ցանկանում էի՝ նախ քան բերդը տեսնելը՝ նրա մասին տեղեկութիւններ ստանալ։

— Դուք տեսե՞լ էք Հայկայ բերդը, — հարցրի նրանից։

— Տեսել եմ։

դիզած խուրձերի հովանիի ներքոյ, ծխում էին։ Մեզ տեսնելով ամենքը կանգնեցին եւ խորին կերպով գլուխ տուին։ Մեր առաջնորդներից մէկը մօտեցաւ նրանց եւ կրակ խնդրեց, որ իր չիբուխը վառէ։ Մենք անցանք։ Երբ նա կրկին եկաւ եւ հասաւ մեզ, ես հարցրի.

— Ի՞նչ էին խօսում այն ծերունիները։

— Հարցնում էին, թէ ո՞վ է այդ մարդը։

— Դուք ի՞նչ ասացիք։

— Ասացի՝ եւրոպացի ճանապարհորդ է։

— Նրանք ի՞նչ ասացին։

— Հարցնում էին, թէ ի՞նչ նպատակով է ճանապարհորդում։

— Էլ ուրիշ ոչինչ չը հարցրի՞ն։

— Հարցրին, թէ ո՞ւր է գնում։ Ես ասացի՝ գնում է Հայկայ բերդը տեսնելու։ Նրանք երանի տուեցին եւրոպացու աչքերին, որ կը տեսնէ Հայկայ բերդը։

— Միթէ նրանք չեն տեսել։

— Չեն տեսել. այդքան մօտիկ են ապրում, եւ չեն տեսել։

— Դա շատ զարմանալի է։

— Զարմանալու ոչինչ չը կայ, ես աւելի զարմանալին կ՚ասեմ ձեզ. ինձ պատահել է տեսնել գիւղացիներ, որոնք մի քանի մղոնով միայն հեռու են ապրում մի վանքից, երբ օտար երկրներից եկած ուխտաւորների քարաւանը նրանց գիւղի մօտով անցնում է, նրանք խորին բաղձանքով ասում են ուխտաւորներին. «երանի ձեր աչքերին, որ կը գնաք, կը տեսնէք մեր վանքը»...

Այդ խօսակցութեան միջոցին՝ մեր առաջնորդի միւս ընկերն էլ մօտեցաւ մեզ։ Ես այժմ միայն սկսեցի ուշադրութեամբ քննել նրանց դէմքերը։ Այդ դէմքերը ինձ շատ

ծանօթ էին երեւում։ Ինձ թւում էր, թէ մի տեղում պէտք է տեսած լինէի նրանց։ Բայց ե՞րբ եւ ի՞նչ տեղում, մտաբերել չէի կարողանում։ Այդ տարակուսանքը երկար տանջում էր ինձ։ Մի՞թէ կարելի էր մոռանալ այդ տեսակ մարդկանց։ Երկուսն էլ բարեկազմ երիտասարդներ էին, կարծես, մի զոյգ Այաքսներ լինէին։ Ես անիծում էի իմ բթամտութիւնը։ Եթէ տեսել էի, անպատճառ պէտք է ուրիշ հագուստով, ուրիշ կերպարանքով տեսած լինէի, եւ ոչ որպէս այժմ, լազի հագուստով, ինչպէս հագնուած էին Արթինի բոլոր ծառաները։

Ես տառապում էի անստուգութեան մէջ։ Մտածում էի հարցնել։ Մի՞թէ նրանք կ'ասէին, թէ ովքեր են, կամ մենք մի ժամանակ տեսնուել ենք։ Եթէ ասելու լինէին, հէնց առաջին անգամից կ'ասէին։ Բայց նրանք ոչինչ կերպով չէին ցոյց տալիս, որ ինձ ճանաչում են, կամ որ եւ իցէ ժամանակ հանդիպել ենք միմեանց։ Իմ յիշողութեան մէջ այդքանը միայն պարզ էր, որ այդ երկուսին միասին, միաժամանակ, մի տեղում էի տեսել։ Եւ այդ շատ զարմացնում էր ինձ։ Ես թողեցի, որ հանգամանքները պարզեն այդ մթութիւնը, այժմ դարձայ դէպի միւս ընկերը, հարցնելով.

— Դեռ երկա՞ր ճանապարհ է մնում մինչեւ Հայկայ բերդը։

— Եթէ այդպէս արագ գնալու լինենք, կէսօրից փոքր ինչ անցած կը հասնենք, — պատասխանեց նա։

Իմ հետաքրքրութիւնը այնքան անզուսպ էր դարձել, որ ցանկանում էի՝ նախ քան բերդը տեսնելը՝ նրա մասին տեղեկութիւններ ստանալ։

— Դուք տեսե՞լ էք Հայկայ բերդը, — հարցրի նրանից։

— Տեսել եմ։

Բէլուն, որը Բէլի անունն է կրում։ Նա հեռուից ինձ ցոյց տուեց Աստուածաշէնը, — մեր Դիւցազնի եւ նահապետի հիմնած առաջին աւանը, որ մինչեւ այսօր մնացել էր շէն, որ մինչեւ այսօր պահպանել էր իր անունը։ — Աստուածաշէնի բնակիչը միշտ պարծանքով է յիշում, որ դա մեր նախահօր՝ Հայկ դիւցազնի՝ անունն է կրում, որովհետեւ հսկաների հայրը, որ աստուածների հետ էր պատերազմում, ինքն եւս պաշտվում էր իբրեւ Աստուած։ Այդ աւանի մօտ էր եւ նրա ամրոցը, ուր մենք գնում էինք։

Վերջապէս մենք հասանք մեր բաղձանքի տեղը։

Աստուածաշէն գիւղի մօտ, արեւելեան կողմում, ընդարձակ դաշտի միջից բարձրանում է մի երկայնաձեւ լեռ, որ իր ահաւոր գագաթից իշխում է շրջակայ տափարակների վրայ։ Ահա այդ սարի բարձրութեան վրայ մինչեւ այսօր մնում են հայոց հսկաների մեծագործ շինուածքների փշրանքները, որ ժողովրդի մէջ յայտնի են Հայկայ բերդ անունով։

— Ի՞նչպէս է այդ սարի անունը, — հարցրի Ասլանից։

— Բօզ-դաղ, որ նշանակում է մոխրագոյն սար, թուրքաց անուն է, — պատասխանեց նա, յետոյ աւելացրեց. — Թուրքերը, տիրելով մեր երկրին, աշխատեցին բոլորը, ինչ որ մեզ համար սուրբ էր եւ նուիրական, ջնջել եւ ոչնչացնել։ Աշխատեցին, այն բոլորը, որ հային յատուկ էր, որ ազգային էր, օտարացնել, խորթացնել։ Նրանք փոխեցին մեր լեռների, մեր գետերի, մեր հովիտների ու մեր գիւղերի անունները։ Այդ երկիրը, որ մեր ազգի նախկին օրօրոցն է եղել, եւ մինչեւ այսօր բնակեցրած է հայերով, նրանք Քուրդիստան կոչեցին։

— Բայց ի՞նչպէս էր այդ սարի հին անունը։

— Դժբախտաբար չը գիտեմ։ Այդ մասին գրքերի մէջ ինձ ոչինչ չէ պատահել կարդալ, իսկ ժողովուրդը մոռացել է։

— Երեւի, շատ ամուր բերդ է. բարձր աշտարակներ եւ ահագին պարիսպներ ունի։

— Անտարակոյս, մի ժամանակ ունեցել է։ Բայց մինչեւ այժմ ի՞նչպէս կը մնային այդ ամրութիւնները։ Գիտէ՞ք, երբ էր Հայկը։

Նա սկսեց ժպտալ իմ միամտութեան վրայ։ Զօրեպանի կոպիտ ծառան Հայկի մասին եւս տեղեկութիւն ունէր։ Այդ աւելի գրգռեց իմ կասկածը։ Ես դարձեալ ընկայ առաջին մտածութիւնների մէջ, որ այդ անձինքը ծանօթ էին ինձ։

Հայոց-Ձորը, մեր Հայկ նահապետի բնագաւառը, լի է բազմաթիւ յիշատակներով, որ յիշեցնում են մեր Դիւցազնի պատերազմը Բաբելոնի հսկայի հետ։ Ասլանը ինձ բացատրեց, թէ որպէս այժմեան յիշատակարաններով եւ ժողովրդի մէջ պահպանուած առասպելներով ստուգվում է պատմութիւնը։

— Հայրենագիտութիւնը, — ասաց նա, — գլխաւոր ուսմունքներից մէկը պէտք է լինի, որ պարտաւոր է սովորել ամեն մի հայի որդին։ Ով որ չէ ճանաչում իր հայրենիքը, չէ կարող ճշմարտապէս սիրել նրան։

Յետոյ նա ցոյց տուեց այն տեղերը, որոնք նուիրական էին դարձել Հայկի եւ Բէլի յիշատակներով։ Նա ցոյց տուեց այն բլուրը, որի վրայ տապալուեցաւ մեր հսկայի հզօր բազկից նետահար եղած Բէլը, որ եւ մինչեւ այսօր նրա դրած անունով կոչվում է Գերեզմանք, որովհետեւ այնտեղ ընկան Բէլի քաջերից շատերը, եւ այն բլուրը, որի վրայ պաշտպանուած էին նրանք, եղաւ նրանց գերեզմանը։ Նա ցոյց տուեց ճակատամարտի տեղը, ուր առաջին անգամ հանդիպեցան միմեանց երկու հսկաները։ Այդ տեղը կոչուեցաւ Հայք, որ այժմ ժողովրդի լեզւում աղճատուելով, ասվում է Խէք։ Նա ինձ ցոյց տուեց, թէ դէպի ո՛ր կողմն է ընկնում

Բէլուն, որը Բէլի անունն է կրում։ Նա հեռուից ինձ ցոյց տուեց Աստուածաշէնը, — մեր Դիւցազնի եւ նահապետի հիմնած առաջին աւանը, որ մինչեւ այսօր մնացել էր չէն, որ մինչեւ այսօր պահպանել էր իր անունը։ — Աստուածաշէնի բնակիչը միշտ պարծանքով է յիշում, որ դա մեր նախահօր՝ Հայկ դիւցազնի՝ անունն է կրում, որովհետեւ հսկաների հայրը, որ աստուածների հետ էր պատերազմում, ինքն եւս պաշտվում էր իբրեւ Աստուած։ Այդ աւանի մօտ էր եւ նրա ամրոցը, ուր մենք գնում էինք։

Վերջապէս մենք հասանք մեր բաղձանքի տեղը։

Աստուածաշէն գիւղի մօտ, արեւելեան կողմում, ընդարձակ դաշտի միջից բարձրանում է մի երկայնաձեւ լեռ, որ իր ահաւոր գագաթից իշխում է շրջակայ տափարակների վրայ։ Ահա այդ սարի բարձրութեան վրայ մինչեւ այսօր մնում են հայոց հսկաների մեծագործ շինուածքների փշրանքները, որ ժողովրդի մէջ յայտնի են Հայկայ բերդ անունով։

— Ի՞նչպէս է այդ սարի անունը, — հարցրի Ասլանից։

— Բօզ-դաղ, որ նշանակում է մոխրագոյն սար, Թուրքաց անուն է, — պատասխանեց նա, յետոյ աւելացրեց. — Թուրքերը, տիրելով մեր երկրին, աշխատեցին բոլորը, ինչ որ մեզ համար սուրբ էր եւ նուիրական, ջնջել եւ ոչնչացնել։ Աշխատեցին, այն բոլորը, որ հային յատուկ էր, որ ազգային էր, օտարացնել, խորթացնել։ Նրանք փոխեցին մեր լեռների, մեր գետերի, մեր հովիտների ու մեր գիւղերի անունները։ Այդ երկիրը, որ մեր ազգի նախկին օրօրոցն է եղել, եւ մինչեւ այսօր բնակեցրած է հայերով, նրանք Քուրդիստան կոչեցին։

— Բայց ի՞նչպէս էր այդ սարի հին անունը։

— Դժբախտաբար չը գիտեմ։ Այդ մասին գրքերի մէջ ինձ ոչինչ չէ պատահել կարդալ, իսկ ժողովուրդը մոռացել է։

Ձիաներով անհնար էր բարձրանալ սարը։ Ցած իջանք, երկու երիտասարդները ներքեւում պահեցին ձիաները, ես եւ Ասլանը սկսեցինք վեր բարձրանալ։ Ժամանակը մաշել ու եղծել էր բոլոր շաւիղները, որ տանում էին դէպի վեր։ Մենք համարեա մագլցելով էինք անցնում սարսափելի առապարները, ուղղաձիգ ժայռերը, նեղ կիրճերը եւ աճած, միմեանց հետ հիւսուած թուփերն ու մացառները, որ հանդիպում էին մեր ճանապարհի վրայ։ Բայց այդ ահագին դժուարութիւնները հեշտանում, բոլորովին անզգալի էին դառնում այն մեծ բաղձանքի ուժգնութեան ներքոյ, որ տիրում էր իմ մէջ՝ տեսնելու մեր Նախահօր Նուիրական ամրոցը, որտեղ ապրել էր նա, որտեղից պատերազմել էր իր ժամանակի խոլ եւ վիթխարի տիտանների հետ, պաշտպանելով իր գերդաստանը, որ երեք հարիւր հոգուց էր բաղկանում։ Այդ երեք հարիւր հոգին կազմում էր այդ ժամանակ հայոց ամբողջ ազգը։ Այդ երեք հարիւր հոգով տիրեց նա Հայաստանը։ Դարերի, մի քանի տասնեակ դարերի սասանմունքից ու աւերմունքից յետոյ, դեռ շատ բան էր մնացել, որ յիշեցնում էր հսկայ ձեռքի հսկայական գործը։ Հանդիպում էինք արհեստական այրերի, որոնց ծայրը կորչում էր լեռան խորքերում, եւ որոնք ծառայելիս էին եղել որպէս գաղտնի հաղորդակցութեան անցքեր։ Հանդիպում էինք վիմափոր ջրամբարների, որոնց մէջ զանազան կողմերից խողովակներով հաւաքվում էր անձրեւի ջուրը եւ պահվում էր պաշարման ժամանակի համար, որովհետեւ լեռան վրայ աղբիւր չը կար։ Հանդիպում էինք զանազան մթերանոցների, որոնց մէջ պահվում էր թէ պաշար եւ թէ զէնքեր։ Երկայնաձիգ լեռը, որ ներքեւից դանակի նման սուր էր երեւում, վերեւում հետզհետէ ընդարձակվում էր եւ տափարակ ձեւ էր ստանում։ Այդ տափարակի վրայ

երեւում էին բազմաթիւ բնակութիւնների հետքեր։ Վտանգի ժամանակ այստեղ էին պատսպարվում սարոտի բնակիչները։ Բոլորովին գագաթի վրայ շինուած էր միջնաբերդը։ Պարիսպները, աշտարակները, այլ եւ այլ ամրութիւնները, իրանց կանգուն ժամանակ, այն աստիճան վիթխարի ձեւ են ունեցել, որ նրանցից ցած թափուած քարերը իրանց կուտակութեան ներքոյ ծածկում էին ընդարձակ տարածութիւն եւ հասնում էին մինչեւ սարոտի դաշտավայրը։ Հմուտ մուրճի ու կարկինի գործը եւ անջնջելի կրային ծեփը միայն՝ որոշում էին այդ ահագին քարերը լեռան մեծամեծ ժայռերից, որոնց հետ խառնուած էին։ Հսկաների ձեռքը միայն կարող էր այդ ահագին մեծահատոր քարերը միմեանց վրայ շարել եւ լեռնային բուրգեր կառուցանել։

Ալլանը կանգնած էր այդ դիցական աւերակների բեկորների վրայ, եւ մի առանձին ոգեւորութեամբ նայում էր դէպի շրջակայքը, նայում էր դէպի ընդարձակ հեռաստանը եւ, կարծես, իր սրատես աչքերով չափում էր կանաչազարդ հովտի տարածութիւնը, մինչեւ հեռաւոր լեռները, մինչեւ կապուտակ ծովը...



ԻԲ.

## ԳՈՒՇԱԿՈՂԸ

Երբ ցած իջանք բերդից, Ասլանը իսկոյն նստեց իր ձին եւ, առանց մի բան ասելու, քշեց դէպի Հայոց-Ձորի հարաւային կողմը՝ Ռշտունեան լեռները։ Երկու երիտասարդները, երեւի, գիտէին թէ նա ուր է գնում, իրանց ձիաների գլուխը դարձրին դէպի այն կողմը։ Ես եւս հետեւեցի նրանց։

Երկար գնում էինք առանց խօսելու։ Մեզանից իւրաքանչիւրը, այն տպաւորութիւններից յետոյ, որ թողեց մեզ վրայ Հայկայ քայքայուած բերդը, խորասուզուած էր իր մէջ։

Տօ՛թ էր, յետ-կէսօրեան այն խեղդող տօթը, երբ սար ու քար տաքանում է, կրակ է կտրում, երբ օդը սաստիկ բորբոքվում է, կարծում ես, թէ հնոցի մէջ տապակվում ես։ Քրտինքը հոսում է մարմնից եւ թողնում է երեսի վրայ թանձր, աղային կեղեւ։ Շրթունքներդ ճաքճքում են եւ աչքերդ սկսում են այրուել։ Որպէս մանր, հազիւ նշմարելի փոշի, գլխիդ շուրջը վըժ-վըժում են միլիոնաւոր միջատներ։ Շունչ ես քաշում, բերանդ, քիթդ լցվում է այդ չարաճճիկ արարածներով. աչքերդ բաց ես անում, լցվում են աչքերիդ մէջ, իսկ ականջներիդ մէջ իրանց ուրախ երաժշտութիւնն են կատարում։ Հնար չը կայ ազատուելու նրանց խայթոցից։ Մարմնիդ վրայ որքան բաց տեղեր են մնացել, — երեսդ, պարանոցդ, ձեռքերդ, — կարծես, ծակծկում են մանր ասեղներով։ Ծակած տեղերը իսկոյն բորբոքուելով,

սկսում են այրուել: Նրանք ծծում են քո արիւնը եւ փոխարէնը թոյն են թողնում: Մտածում ես, երեւի, այդ երկրի ճակատագիրն է՝ ծծել բոլոր հիւթը, կշտանալ, իսկ տեղումը թոյն թողնել...

Բորբոքուած օդը բորբոքում է եւ մարդու երեւակայութիւնը: Նայում էի դէպի երկինք. Տէր Աստուած, ինչեր չէի տեսնում մի ամբողջ վանք կախուած էր օդի մէջ. ես նշմարում էի՝ մինչեւ անգամ գմբէթները, զանգակատները եւ վանքը շրջապատող ծառերը: Դէպի հեռուն, շատ հեռուն էի նայում, դէպի ծովի կողմը, ինձ թւում էր, թէ երկնային հրեշտակները, զինուորուած, ձի նստած, շրջում են օդի մէջ: Ես տեսնում էի եւ ոչխարների մի ամբողջ հօտ, իրանց արօտամարգերով եւ լեռներով, այնտեղ վերեւում արածում էին: Այդ ինչ էր: Ինձ թւում էր, թէ անրջական տեսիլքներ հրապուրում են ինձ եւ այսպիսի պատկերներ են երեւան հանում: Մտածում էի՝ մեր ուղեւորդներին յայտնել տեսածս. երկրի հետ ծանօթ լինելով, գուցէ նրանք կը բացատրէին, թէ ի՞նչ էր այդ: Բայց նրանք ինձ խելագարի տեղ կը դնէին եւ կը սկսէին ծիծաղել: Իսկ վերջը, երբ Ասլանին ասացի, նա բացատրեց այդ օդերեւոյթների բնական պատճառները, եւ ես բոլորովին զարմացայ: Ի՜նչ լաւ բան է եղել գիտութիւնը, որքան նախապաշարմունքներ, որքան սնահաւատութիւններ փարատում է նա:

Օրուայ այն ժամն էր, երբ ճանապարհները բոլորովին դատարկվում են երթեւեկներից: Երբեմն պատահում էին մենաւոր ձիաւորներ, երբեմն մի քանիսը միասին: Փոքրիկ, կրակոտ նժոյգների վրայ նստած, երկայն եղէգնեայ նիզակը ձեռին, երկաթապատ վահանը ուսին, ատրճանակները գօտիի մէջ խրած, աղեղնաձեւ կեռ թուրը կշտից քարշ ընկած, մի խօսքով, կատարեալ զինավառութեան մէջ, այդ ձիաւոր-

ները իմ վրայ այն տպաւորութիւնն էին գործում, որ կամ կռուելու են գնում, կա՛մ վերադառնում են կռուից: Նրանք կասկածաւոր կերպով նայում էին մեզ վրայ, ողջունում էին ու անցնում:

— Դրանք աւազակնե՞ր են, — հարցրի մեր առաջնորդներից մէկին.

— Ի՞նչ է նշանակում աւազակներ, — ժպտալով պատասխանեց նա. — ամեն մի քուրդ աւազակ է, որովհետեւ դա նրա արհեստն է: Դրանք, որ անցան, եւ որոնց նորից կը հանդիպենք, հասարակ ճանապարհորդներ են: Եթէ ճանապարհին իրանց ատամի համեմատ մի որս կը պատահի, կը կողոպտեն եւ կ'անցնեն, իսկ եթէ նկատեն, որ որսը հեշտութեամբ կեղեքել չեն կարող, կ'ողջունեն ու այնպէս կ'անցնեն:

— Ուրեմն դրանք մեզ կը կողոպտէին, եթէ մենք զէնքեր չունենայինք:

— Անպատճառ:

Առաջնորդի խօսքերը ինձ բոլորովին հանգստացնել չը կարողացան, երբ յանկարծ մտաբերեցի նապաստակը, այն չարագուշակ նապաստակը, որ մեր ճանապարհը խաչաձեւ կտրելով անցաւ: Ես մտածում էի, որ անպատճառ մի դժբախտութիւն կը պատահի:

Երբեմն պատահում էին քրդուհիներ, որոնք խմբով, կամ միայնակ դիմում էին դէպի մերձակայ լեռների ստորոտները, ուր գտնվում էին նրանց չադրները: Ցաւալի էր նայել այդ թշուառների վրայ: Պատառոտած հագուստով, բոբիկ ոտներով գնում էին նրանք տատասկներով պատած ճանապարհով, որը, յաճախ երթեւեկութեան ուղի չը լինելով աւելի մի նեղ շաւիղի էր նմանում: Նրանցից իւրաքանչիւրը ծանրաբեռնուած էր չորացած թուփերի ու արմատների շալակներով, որ քաղել էր մերձակայ բլուրներից, տանում

էր վառելու համար։ Ամուսինները այնպէս փառաւոր նժոյգների վրայ նստած, իսկ կանայքը այդպէս ողորմելի, հեծում էին ծանր բեռների ներքոյ։ Ես կրկին դարձայ դէպի մեր առաջնորդը։

— Դրանք ո՞րտեղացի են։

— Քրդի համար կարելի՞ է ասել որտեղացի է։ Խաշնարածներ են, այսօր այստեղ են, էգուց կը տեսնէք նրանց՝ տասն սարերի այն կողմում։

Չը նայելով, որ արեւը բաւական թեքուել էր եւ երեկոյեան ժամը մօտենում էր, բայց օդը դեռ բոլորովին չէր զովացել։ Ծարաւը այրում էր ինձ. մի կաթիլ ջրի համար հոգիս կը տայի. բայց դեռ շատ հեռու պիտի գնայինք, մինչեւ ջրի կը հանէինք.

— Ես հետս Արտամէդի խնձոր ունեմ վերառած, — ասաց մեր առաջնորդը, — դա կը զովացնէ,

Նա կանգնեցրեց իր ձին, ցած իջաւ եւ խուրջինի միջից հանեց մի քանի հիւթալի, թթուաշ խնձորներ, տուեց ինձ։ Այդ միջոցին քրդուհիները հասան մեզ։ Ես դանակով կեղեւը քերծում էի եւ մեծ ախորժակով ուտում։ Իսկ խեղճ կանայքը գետնից հաւաքում էին հողի վրայ թափուած կեղեւները եւ նոյն ախորժակով ուտում էին։ Նրանց համար այդ անուշեղէնը այնքան հրապուրիչ էր, որ, չը նայելով իրանց շալակների ծանրութեանը, վազ էին տալիս մեր ձիաների ետեւից։ Այդ տեսնելով, երիտասարդը տուեց նրանց մի-մի խնձոր։ Անկարելի է նկարագրել նրանց ուրախութիւնը։

— Դու քանի՞ սիրող ունես, — հարցրեց մէկից։

— Ես ամուսին ունեմ, — ծիծաղելով պատասխանեց քրդուհին։ — բայց սիրողներ դա՛ շատ ունի, հողեմ դրա գլուխը։

Վերջին խօսքերի հետ նա ձեռքով խփեց իր ընկերուհիներից մէկի գլխին, որ դեռ ամուսնացած չէր։

— Իսկ ուրիշի սէրը երբէք չե՞ս գողանում։

— Գողանում եմ, երբ ամուսինս ինձ ծեծում է։

— Քանի՞ ոչխար ունէք։

— Հինգ հարիւր։

— Հինգ հարիւր ոչխար ունէք եւ դու այդպէս շալակով ցա՞խ ես կրում։

— Ի՞նչ անեմ, եթէ չը կրեմ, ամուսինս ինձ դուրս կ'անէ եւ մի ուրիշին կը բերէ։

Մենք անցանք։

— Մի՞թէ քրդուհիները այդպէս թեթեւ բարք ու վարքի տէր են, — հարցրի երիտասարդից։

— Չէ կարելի ասել բոլոր ցեղերի համար։ Բայց այդ ցեղի ինչ-որ բօշաների խառնուրդ է։ Ընդհանրապէս խօսելով, օրիորդը աւելի ազատ է քրդերի մէջ, քան թէ ամուսնացած կինը, որ տէր ունի եւ մէկի սեպհականութիւնն է համարվում։

Հեռուից, Արտոս լեռան ստորոտում, սեւ բծերի նման երեւում էին մի խումբ վրաններ։ Արեւի երեկոյեան ճառագայթները թափել էին այդ վրանների վրայ շէկ-ծիրանեգոյն լոյս։ Ինձ թւում էր, որ հրդեհի մէջ այրվում էին նրանք։ Երբ արեւը մտաւ, երբ հետզհետէ պատեց խաւարը, ամեն ինչ կորաւ, եւ գեղեցիկ երեւոյթը ընկղմւեցաւ անվերջ մթութեան մէջ։ Այժմ այնտեղից նշմարվում էին կրակի նշոյլներ, որոնք փարոսի նման ձգում էին մեզ դէպի իրանց կողմը։

Ասլանը ինձ պատմեց, որ անտեղ բնակվում է քրդերի մի նշանաւոր շէյխ, որ մեծ ազդեցութիւն ունի բոլոր ցեղերի վրայ, որին համարեա պաշտում են, եւ մարգարէի հաւասար

յարգանք են մատուցանում: Բոլոր քրդերը Նրա գլխովն են երդվում. «շէյխի գլուխը վկայ», — դա ամենամեծ երդումն է նրանց մէջ: Այն օրը, որ Նա բաղանիք է մտնում, բաղանիքի ջուրը քրդերը բաժանում են իրանց մէջ, եւ սրսկում են մորուքների վրայ, որպէս օրհնած ջուր: Ամուլ կանայք Նրա ոտքերի հետքերից փոշին հաւաքում են եւ ինչ-որ կախարդական արարողութիւններ են կատարում, որ զաւակ ունենան:

— Բայց Նա չափազանց մոլեռանդ է եւ քրիստոնեաների թշնամի, — աւելացրեց Ասլանը: — Նրա ատելութիւնը դէպի քրիստոնեաները այն աստիճանի է հասնում, որ իր վրանից դուրս գալու ժամանակ, երբ կամենում է մի տեղ գնալ, դէմքը քօղարկում է, որ «գաւուրները» Նրա սրբազան երեսը չը տեսնեն: Ո՛րքան վանքեր է քանդել տուել, ո՛րքան հայոց գիւղօրայք է այրել. քրիստոնեաներին ոչնչացնելը — Նրա ամենասիրելի բաղձանքն է:

— Այստեղ ի՞նչ է շինում:

— Պարսից հետ ինչ-որ ընդհարումներ է ունեցել, այդ պատճառով հեռացել է սահմանից, եկել է այստեղ:

— Որպիսի՞ ընդհարումներ:

— Մի քանի ամիս առաջ Նա մի արշաւանք կատարեց դէպի Ուրմիոյ լճակի հարաւ-արեւմտեան կողմերը եւ ասպատակեց մի քանի գաւառներ:

— Մի՞թէ այդքան ուժ ունի:

— Մի օրուայ մէջ կարող է տասն կամ քսան հազար ձիաւորներ զէնքի կոչել:

— Նրա իսկական բնակութեան տեղը ո՞րտեղ է:

— Զաբ գետի հովիտը, որ այլ անունով կոչվում է Նէհրի, գտնվում է Աղբակից եւ Ջուլամերկից փոքր ինչ հեռու: Այնտեղ ընդարձակ կալուածքներ եւ շատ գիւղեր ունի. բաւական հարուստ մարդ է:

— Երեւի, այդ հարստութիւնը բոլորը յափշտակութեամբ է դիզել։

— Անտարակոյս։

— Եւ դու գնում ես մի այդպիսի չարագործի մօտ։

— Ես նրա մօտ չեմ գնում, ես մի ուրիշին պէտք է տեսնեմ։

— Դու չէյխի հետ ծանօթ ես։

— Ծանօթ եմ, բայց եթէ այժմ եւրոպական հագուստով տեսնելու լինի ինձ, երեւի, չի ճանաչի։

Գիշերից բաւական անցել էր, երբ հասանք չէյխի վրաններին։ Խարոյկները մարել էին եւ ամբողջ բանակի վրայ տիրում էր մթին խաւար։ Վրանների շրջակայքում հաւաքուած ձիաների երամակները, ուղտերի հանգրուանները, կովերի ու եզների նախիրները ցոյց էին տալիս, որ այդ բանակը ուրիշ ոչինչ չէր, եթէ ոչ, խաշնարածների մի ընդարձակ իջեւան, որը, հարկաւորած ժամանակ, կարող էր եւ պատերազմական բանակի փոխուել։ Բոլոր դիրքերի վրայ հսկում էին զինուած գիշերապահներ։ Մուտք գործելու հնար չը կար։ Շները խօ վագրների նման թռչում էին մեր ձիաների գլխի վրայ։ Նրանց ձայնից մօտեցան մեզ մի քանի գիշերապահներ, հարցնելով․

— Ովքեր էք, ի՞նչ էք կամենում։

— «Գուշակողի» մօտ ենք գնում, — պատասխանեց մեր առաջնորդներից մէկը։

— «Գուշակողը» ահա այնտեղ է կենում։ — Նա ցոյց տուեց մի առանձնացած վրան, որի մէջ դեռ լոյս էր երեւում, եւ որը բաւական հեռու էր բանակից։

«Գուշակողը», այնքան անհրաժեշտ մարդ էր, որ գիշեր ու ցերեկ այցելուներ միշտ անպակաս էին լինում նրա վրանից, այդ պատճառով, մեր տարաժամ այցելութիւնը

չը զարմացրեց գիշերապահներին։ Խաւարի միջից նրանք չը նկատեցին, թէ մենք ինչ տեսակ մարդիկ ենք։

Մենք գտանք "գուշակողին" միայնակ իր վրանում. Նա դեռ չէր քնած, լապտերի առջեւ նստած, գիրք էր կարդում։ Երբ լսեց մեր ձիաների ոտնաձայնը, գիրքը ցած դրեց եւ դուրս եկաւ։

— Բարի՞ լինի, — հարցրեց նա։

— Ամենակարողի ողորմութեամբ բարի է, — ասաց Ասլանը. — ձեր գուշակութիւնները լսելու ենք եկել։

Նա կանգնած էր վրանի մուտքի առջեւ, եւ լապտերից դուրս ցոլացած լոյսի մէջ՝ նկարվում էր որպէս մի սպիտակ արձան։ Ձիւնի պէս ճերմակ մազերը թափուել էին ուսերի վրայ եւ, միախառնուելով նոյնպէս ճերմակ մօրուքի հետ, կազմում էին մի սպիտակ շրջանակ, որի խտութեան միջից դուրս էր նայում նրա ազդու դէմքը։ Երեսի կաշին, երեւի, մշտական պահեցողութիւնից, դեղնել, դալկացել, մագաղաթի գոյն էր ստացել։ Նրա հագուստը բաղկացած էր մէկ կտորից միայն. դա մի սպիտակ շապիկ էր, որ հայոց ժամի շապիկների նման իջնում էր մինչեւ նրա բոբիկ ոտները։

Ինքը լոյսի կողմում կանգնած լինելով, իսկ մենք խաւարի կողմում, ամենեւին ճանաչել չը կարողացաւ, թէ մենք ինչ երկրի մարդիկ ենք, կամ ինչ ազգից. եւ այդ պէտք էլ չէր նրան գիտենալ, նրա վրանի մուտքը բոլորի համար բաց էր։

— Համեցէք, ցած իջէք, — ասաց նա ճգնաւորի ձայնով, — բայց ձեր ձիաների հոգսը ինքներդ պէտք է տանէք. ես այստեղ բոլորովին միայնակ եմ, ոչ ոք չունեմ։

Մեր առաջնորդները ամեն պատրաստութիւններ ունէին իրանց հետ։ Երբ ցած իջանք, իսկոյն խուրջիններից հանեցին երկաթեայ բխոմները (ոտնակապ) նրանցով կա-

պեցին ձիաների ոտները, բեռները կապեցին բանալներով, յետոյ նոյնպէս երկաթեայ երկար մեխերը ցցելով գետնի մէջ, նրանց գլխին ամրացրած օղակներից կապեցին ձիաների երասանակները, որ վրանի մօտից հեռու չը գնան։ Ես եւ Ասլանը մտանք վրանը, իսկ երկու երիտասարդները մնացին դրսում, որ ձիաներին հոգ տանեն։

Հէնց առաջին անգամից այդ վրանը իմ վրայ այն տպաւորութիւնը գործեց, կարծես թէ, ճգնաւորի խուց լինէր, կամ մի ղալանդէրի (դէրվիշի) տաղաւար, որ ժամանակաւոր կերպով կազմում է մի մեծատան դռան մօտ, նրանից իր պահանջը ստանալու համար։

Արեւելքում այդ սովորութիւնը այնքան յատկանիշ կողմեր ունի, որ աւելորդ չեմ համարում փակագծի մէջ դնել նրա համառօտ նկարագրութիւնը։ Դէրվիշը դիմում է այս եւ այն մեծատանը, պահանջում է կամ մի մեծ գումար եւ կամ մի այլ շնորհ։ Նա ընտրում է ըստ մեծի մասին այնպիսի անձանց, որոնք իրանց հարստութիւնը միայն իրանք են վայելում։ Ժլատ մեծատունը, ի հարկէ, մերժում է նրա պահանջը։ Դէրվիշը իր տաղաւարը կազմում է մեծատան գլխաւոր մուտքի հանդէպ, եւ հանգիստ կերպով սկսում է ապրել այնտեղ։ Նա իր տաղաւարի շուրջը գարի է ցանում, որը արդէն նշան է, որ մինչեւ գարին չը բուսնի, չաճի եւ չը հասունանայ, նա չի հեռանայ իր բռնած տեղից։ Ամեն առաւօտ, ամեն երեկոյ, կէս գիշերին, փչում է նա իր եղջերափողը, նրա անախորժ ձայնով մեծատանը անհանգստացնելու համար։ Իսկ երբ մեծատունը տանից դուրս է գալիս, նա սկսում է պարսաւներ երգել։ Երկրի մէջ ընդունուած սովորութեամբ՝ մեծատունը իրաւունք չունի այդ արտօնաւոր մուրացկանին իր դռնից քշելու։ Եթէ վիրաւորէ նրան, բոլոր դէրվիշները կը հաւաքուեն եւ մեծ խայտառա-

կութիւն կը սարքեն։ Կը շրջապատեն ժլատի տունը, կը սկսեն իրանց եղջերափողերը փչել․ բազմութիւնը կը հաւաքուի, իսկ նրանք կը շարունակեն իրանց խառնաձայն նուագածութիւնը։ Մեծատունը մէկ դերվիշի փոխարէն կ՚ունենայ մի քանի տանեակներ, եւ ստիպուած կը լինի բոլորին բաւականութիւն տալ։ Որպէս զի այսպիսի անախորժութիւններ չը պատահեն, մեծատունը շտապում է կատարել դերվիշի պահանջը, իսկ նա իր ստացած գումարը բաժանում է աղքատներին, եւ հեռանում է։

Մեր մտած վրանը, իրաւ է, դերվիշի տաղաւարի նման էր, բայց նրա մէջ բնակուողը դերվիշ չէր։ Նա մի հոգեւոր անձն էր, որին Ալլահը շնորհել էր գուշակութեան ոգի։

Նանստեց վրանի այն կողմը, որտեղ դրած էր նրա գիրքը․ ես եւ Ասլանը տեղաւորուեցանք նրա աջ եւ ձախ կողմերում։

— Դուք կարդում էիք, — ասաց Ասլանը, — մենք ձեզ խանգարեցինք։

— Կարդալու ժամանակ շատ կ՚ունենամ, — պատասխանեց նա նուաղած ձայնով, — իսկ այժմ Աստուծոյ հիւրերի հոգսը ամենակարեւորն է ինձ համար։

“Գուշակողը„ մեծ հռչակ էր ստացել քրդերի մէջ․ ամենահեռաւոր տեղերից գալիս էին նրա մօտ, ընծաներ էին բերում եւ զանազան հարցմունքներ էին անում։ Իր ստացած ընծաները նա բաժանում էր աղքատներին, իսկ ինքը ապրում էր չքաւորութեան մէջ։ Կերակրվում էր միայն ցամաք հացով ու պարզ ջրով։ Միս ամենեւին չէր ուտում։ Նրա մասին կազմուել էին քրդերի մէջ շատ առասպելներ, որոնք վերաբերում էին նրան զանազան հրաշագործութիւններ։ Շէյխը չափազանց յարգում էր նրան, եւ համարեա իր բոլոր գործերի մէջ դիմում էր նրա խորհուրդներին։ Տարին մի անգամ ամբողջ քառասուն օր անյայտանում էր

նա. ասում էին, որ "չիլլա„ է մտնում, այսինքն իջնում է մի խոր վիրապի մէջ, եւ այնտեղ, առանց ուտելու եւ առանց խմելու, խորհրդակցում է ոգիների հետ կամ երկնային տեսիլքներ է տեսնում։

Վրանի մէջ, լապտերի լուսով, ես նորից ուշադրութեամբ սկսեցի քննել նրա դէմքը։ Այդ դէմքը, ինչպէս երեւում էր, ծերունու առօրեայ հասակում խիստ տաժան արտայայտութիւն է ունեցել բայց նրան նշոյլն անգամ չէր մնացել այժմեան մեղմ եւ հեզ գծերի մէջ։ Ժամանակը, ծերութիւնը եւ հոգեւոր կոչումը, որպէս մեղմացրել էին նրա սիրտը, այնպէս էլ դէմքին տուել էին խիստ բարի եւ առաքինական արտայայտութիւն։ Բայց երբ նա յետ էր քաշում լայն ճակատի վրայ թափուած մազերը, նրա դէմքը կրկին ահռելի էր դառնում։ Կարծես, այդ ճակատի վրայ դրուած լինէր մի սեւ դրոշմ, որ պահում էր իր մէջ մի մռայլ գաղտնիք։ Ճակատի մէջ տեղը շեկացրած երկաթով այրել ու խարել էին. տեղը մոյգ-շագանակի գոյն էր ստացել։ Ցանցաւորների, մահապարտների ճակատները միայն կրում են այս տեսակ նշաններ։ Բայց նրա մասին խօսվում էր, թէ մի անգամ անհաւատների ձեռքը գերի է ընկել եւ նրանք են այդպէս արել։

Ասլանը խօսակցութիւնը դարձրեց նրա մօտ դրած գրքի վրայ, հարցնելով, թէ ի՞նչ գիրք է։

— Արաբերէն մի աստուածաբանական գիրք է, — պատասխանեց նա։ — Գրագիտութիւնը քրդերի մէջ դեռ չէ տարածուել. հոգեւորականներին անգամ կարելի է անգրագէտ համարել։ Արաբական լեզու իմացողները այնքան սակաւ են, որ մատով են ցոյց տալիս։ Բոլոր ցեղերի մէջ գիտէ այդ լեզուն մեր շէյխը միայն, եւ բացի նրանից՝ մի քանի հոգի։

— Իսկ դո՞ւք։

— Ես այժմ կատարելապէս տիրապետում եմ այդ լեզուին եւ կարդացել եմ շատ գրքեր։ Մեծ աշխատութիւն էր պէտք, մինչեւ սովորեցի։ Ես սկսեցի ծերութեան հասակում, բայց այդ դժուարին լեզուն լաւ սովորելու համար՝ ամբողջ կեանք է հարկաւոր։ Շէյխը մեծ համարում ունի դէպի իմ գպրութիւնը. հանդիսաւոր օրերում, երբ ինքը պէտք է քարոզ կարդայ, շատ անգամ ինձ է առաջարկում ամբիոն բարձրանալ։

— Ուրեմն դուք նրան օգնականի պաշտօ՞ն էք կատարում։

— Քրդերը ինձ ընդունում են, որպէս նրա երկրորդականը, որպէս նրա փոխանորդը։ Բայց ես այդ մասին շատ համեստ եմ։ Ինձ համար չէ ոչ փառքը, ոչ աստիճանը. ինձ բաւական է այդ անշուք տաղաւարը, որի մէջ հոգեւոր մխիթարութիւն եմ գտնում։

Ես աչք ածեցի նրա տաղաւարի շուրջը. ամեն կողմում երեւում էր սաստիկ չքաւորութիւն։ Այդ մարդը, որ այնքան համարում ունէր, որին այնքան հաւատում էին, կարող էր շրջապատել իրան ամեն տեսակ բաւականութիւններով, կարող էր հարստութիւն դիզել, բայց նա, որպէս վերեւում յիշեցի, իր ստացածը բաժանում էր աղքատներին եւ ինքը ապրում էր կատարեալ անձնուրացութեան մէջ։ Նրա տաղաւարի միակ կարասին էր մի դդմապրուակ, որ գործ էր ածում որպէս ջրի աման։ Այլ եւս ոչինչ չը կար, բացի գրքերից։ Յատակը ծածկուած էր հասիրով, որի վրայ եւ նստում էր, եւ քնում էր նա։ Բայց ասում էին, որ նա խիստ հազիւ անգամ էր քնում։

Ներս մտաւ մեր առաջնորդներից մէկը, հարցրեց Ասլանից, թէ չէ՞ր կամենայ ուտելու մի բան պատուիրել։ Այդ

միջոցին տեղի ունեցաւ մի սրտաշարժ տեսարան. երբ երիտասարդի եւ ծերունու աչքերը հանդիպեցան միմեանց, երբ մի քանի վայրկեան ապշած, զարմացած նայեցին միմեանց վրայ, — երկուսն էլ որպէս հայր եւ որդի, որոնք երկար ժամանակ միմեանց կորցրած են եղել, միմեանցից անջատուած են եղել, — վազեցին, գրկեցին միմեանց եւ, մի քանի անհասկանալի հառաչանքներ արձակելով, մարեցան միմեանց կուրծքի վրայ։

— Քաւո՜ր Պետրոս... ձայն տուեց երիտասարդը։

— Ա՛խ, Մուրադ... սիրելի՜ Մուրադ... լսելի եղաւ ծերունու դողդոջուն ձայնը։

Ես մնացել էի շուարած, չը գիտէի ի՞նչով բացատրել այդ հոգեզմայլութիւնը։ Ինձ զարմացրեց առաւել այն, որ երկուսն էլ խօսեցին հայերէն լեզուով, քանի որ, մինչեւ երիտասարդի ներս մտնելը, "դուշակողը", քրդերի արեղան, խօսում էր Ասլանի հետ քրդերէն լեզուով։

Ասլանը մնաց սառն եւ անխռով։ Նա բժշկի հոգածութեամբ, մի գուցէ ծերունուն հարուածք պատահի, բաժանեց նրանց միմեանցից եւ օգնեց ծերունուն նստել իր տեղը։

Երիտասարդը դարձեալ բաց չէր թողնում ծերունուն, համբուրում էր նրա ալեւոր գլուխն ու ձեռքերը, համբուրում էր նրա այրած, խարած ճակատը, անդադար կրկնելով․

— Տէ՜ր Աստուած... ո՞վ կը սպասէր...

— Մուրադ, սիրելի՜ զաւակս, — խօսեց ծերունին, երբ փոքր ինչ հանգստացաւ, — դու դարձեալ գտնում ես ինձ մի պախարակելի դերի մէջ եւ իրաւունք ունես մտածելու, որ հին խ ա չ ա գ ո ղ ը, հին չարագործը, տակաւին չէ ուղղուել... Ա՜խ, եթէ գիտենայիր, թէ ի՞նչ հանգամանքներ հարկադրեցին ինձ այդ ամօթալի խարդաւանքը յանձն

տանել, դու կը ներէիր ինձ. դու բարի ես Մուրադ, դու կը ներէիր ինձ...

— Եւ կը սիրէր ձեզ... աւելացրեց Ալմանը:

Երիտասարդը կրկին առեց ծերունու աջը եւ, իր շրթունքներին սեղմելով, ասաց.

— Այո, կը սիրէի ձեզ... եւ սիրում եմ... Ես այժմ հասկանում եմ բոլորը... ամեն ինչ պարզ է ինձ համար... Ոչինչ բարեգործութիւն չէր կարող մոռանալ տալ քո տխուր անցեալը... Ոչինչ ապաշխարութիւն չէր կարող քաւել քո հին մեղքերը... Իսկ այժմ բոլորը պէտք է սրբուած համարել... Այդ անձնազոհութիւնը, որ դու յանձն ես առել մի մեծ նպատակի համար, կը մաքրէ քո հին յանցանքները:

— Իմ հին յանցանքնե՛րը... կրկնեց ծերունին արտասուքը սրբելով: — Միթէ երկինքը կարող էր բովանդակել իր մէջ այնքան գթութիւն, այնքան ողորմածութիւն, որ բաւական լինէր ներելու ինձ նման եղեռնագործին... Ես վաղուց զղջացել եմ... Բայց առանց թողութիւն սպասելու... Այն մխիթարական յոյսը, որ ամեն մի բարի քրիստոնեայ ունի ապագայ կեանքի համար, իմ մէջ մեռած է... Թո՛ղ դժո՛խքը լինի իմ տեղը... Թո՛ղ դեւերի եւ սատանաների հետ լինի իմ յաւիտենական կենակցութիւնը... Թո՛ղ մի նոր յանցանք եւս բարդուի իմ բազմաթիւ մեղքերի հետ... Բայց ես կը կատարեմ... անպատճառ կը կատարեմ, ինչ որ ուխտել եմ...

Ալմանը բռնեց նրա ձեռքը եւ գոհունակութեամբ սեղմեց: Նրա օրինակին հետեւեց եւ երիտասարդը:

Երեւում էր, որ ծերունու եւ երիտասարդի մէջ հին կապեր կային — եւ բոլորովին մթին ու մռայլ կապեր...[1]

[1] Տես խաչագողի յիշատակարանը:

իբրեւ նոր մարդ, նոր հոգւով եւ նոր եռանդով գործել՝ դէպի ազնիւը եւ դէպի լաւը: Մեր բոլոր ընդունակութիւնները, որ զարգացած էին միայն չարիք գործելու համար, թող այսուհետեւ գործ դրուին դէպի հասարակաց բարին…

Ծերունին գրկեց նրա գլուխը, ճակատը համբուրեց:

Այդ բոլորը խօսում էր Ջօրեպանի ծառան, որին ես անկիրթ, անզարգացած մարդու տեղ էի դնում: Այդ ի՞նչ խաղ էր, այդ ի՞նչ հանելուկ էր: Նա վեր կացաւ, Ասլանը ինձ եւս աչքով արաւ, որ հեռանամ: Մենք դուրս եկանք տաղաւարից, Ասլանը եւ ծերունին մնացին այնտեղ: Թէ ի՞նչ խօսեցին եւ ի՞նչ խորհեցին, — ես չը գիտեմ, միայն նրանց խօսակցութիւնը երկար, շատ երկար տեւեց: Մենք բաւական հեռու էինք նստած, ձիաների մօտ, եւ ոչինչ չէինք լսում: Յետոյ նրանք ցած թողեցին տաղաւարի մուտքի վարագոյրը, ես կարծեցի, որ քնեցին: Բայց լապտերը մինչեւ լոյս վառվում էր:

Զով գիշերը մոռանալ տուեց մեզ ցերեկուայ տօթից կրած տանջանքը: Ծովի կողմից փչում էր մեղմ քամի եւ բերում էր իր հետ ծաղկաւէտ Արտօսի սքանչելի անուշհոտութիւնը: Երկինքը ամպամած էր, ոչ մի աստղ չէր երեւում: Երբեմն մաղվում էին անձրեւի խոշոր կաթիլներ: Հայկայ բերդի կողմում փայլատակում էր. լսելի էին լինում որոտման խուլ ձայներ: Ինձ թւում էր, որ Հայոց եւ բաբելացոց հսկաները պատերազմում էին այնտեղ եւ իրանց ահագին լախտերով խորտակում էին լեռները:

Մուրադը եւ իր ընկերը զբաղուած էին ձիաներով. ծածկում էին նրանց չուլերով, զգուշանալով, մի գուցէ յորդ անձրեւ գալու լինի եւ ձիաներին թրջէ: Ես պառկած էի խոտերի վրայ, նայում էի անթափանցելի խաւարի մէջ: Մո՜ւթն էր, մո՜ւթ, ոչինչ չէր երեւում: Ամեն ինչ ընկղ-

մնացած էր մթութեան մէջ, որպէս այդ երկրի մթին ապագան . . .

Իմ աչքերի առջեւն էր մի պատկեր միայն՝ — ալեւոր «գուշակողը»: Իմ գլխում, մայլ առեղծուածների նման, պտըտվում էին այդ խորհրդաւոր ծերունու խօսքերը: Այդ խօսքերը առանձին բացատրութեան էին կարօտ, ես անկարող էի լուծել: Բայց ես այժմ գիտէի երկու անուններ, որոնք շատ բան էին պարզում: — Մուրադ եւ քաւոր Պետրոս, — երկուսն էլ երեւելի խաչագողներ էին: Որպէս երկու հերոսներ այդ մթին արհեստի մէջ, Սալմաստում մեծ հռչակ էին ստացել նրանք: Նրանց մասին ես լսել էի շատ եւ շատ զարմանալի պատմութիւններ . . .

Իմ տարակուսանքները մասամբ փարատուեցան: Ճանապարհին գալու ժամանակ, ինձ երկար տանջում էր այն միտքը, որ ես մի ժամանակ պէտք է տեսած լինէի Մուրադին. նրա դէմքը ինձ ծանօթ էր երեւում: Իմ յիշողութիւնը չը խաբեց ինձ. այժմ գիտէի, թէ որտեղ էի տեսել:

Յիշո՜ւմ ես, ընթերցող, այն տխուր, փոթորկալի գիշերը, երբ ես տէր Թօդիկի դպրոցից փախստական եղած, թափառում էի Հին-քաղաքի շուրջը, եւ անհնարին յուսահատութեան մէջ մոլորուած, չը գիտէի ուր գնալ: Այն ժամանակ հանդիպեց Կարօն, տարաւ ինձ արաբական մինարէթը, այն հին աւերակների մէջ: Այնտեղ առաջին անգամ ես տեսայ Կարօի միւս ընկերներին՝ Ասլանին եւ Սագօին: Այդ խմբի մէջն էր եւ Մուրադը իր այժմեան ընկերի հետ, որին Ջալադ էին կոչում: Երբ գիշերը լուսացաւ, առաւօտեան Մուրադը եւ Ջալադը անյայտացած էին. մինարէթում մնացել էին միայն միւսները: Ի՞նչ եղան, ո՞ւր գնացին, — այդ մասին ինձ ոչինչ չասացին: Ամիսներ անցան, այժմ կրկին հանդիպում էի այդ երկու երիտա-

սարդներին, բայց մի այլ շրջանում եւ բոլորովին տարբեր պարագաների մէջ: Կարօի եւ Ալանի այդ երկու ընկերները արզրումցի Արթինի քարավանում ջորեպանի պաշտօն էին կատարում;" — դա շատ զարմացնում էր ինձ: Ի՞նչ նպատակ ունէին այդ կերպարանափոխութիւնները, ի՞նչ կապ կար Արթինի, Ալանի կամ միւսների մէջ եւ, վերջապէս, ո՞ւմն էին պատկանում ջորիները, — այդ բոլոր խաբուսիկ պատրանքները զբաղեցնում, շուարեցնում էին իմ միտքը, եւ զանազան անորոշ ենթադրութիւնների մէջ էին նետում...

Մուրա́դ եւ քեռի Պետրո́ս, — այդ երկու անունները սարսափեցնում էին ինձ: Այժմ, երկուսն էլ երեւելի խ ա չ ա գ ո ղ ն ե ր էին: Միթէ բարոյապէս փչացած խաչագողը կարող էր ընդունակ լինել մի լաւ գործի: Միթէ կարելի էր հաւատալ նրանց: Միթէ կարելի էր յուսալ նրանց մէջ անկեղծութիւն, որ իրանց ամբողջ կեանքում միշտ կեղծել են, միշտ խաբել են եւ միշտ իրանց հեռու են պահել ճշմարտութիւնից: Գարշելի արարածներ: Ես զարմանում էի Ալանի միամտութեան վրայ, որ այդ տեսակ մարդկանց հետ գործ ունէր: Ի՞նչ մի լաւ բան կարելի էր սպասել նրանցից:

Բայց երբ կրկին անգամ ներկայանում էր ինձ այն սրտաշարժ տեսարանը, որ մի քանի րոպէ առաջ տեղի ունեցաւ տաղաւարի մէջ, երբ մտաբերում էի այն խօսքերը, որ այնքան խորին զգացմունքով արտասանեց Մուրադը, — այդ միջոցին մթութիւնները հետզհետէ փարատվում էին եւ իմ առջեւ բացվում էր մի նոր, լուսափայլ հորիզոն: Ես տեսնում էի, որ զարշելի խ ա չ ա գ ո ղ ն անգամ կարող է ուղղուել, կարող է մաքրուել իր հին կեղտերից եւ ծառայել մի բարի գործի: «Ո՞վ էինք մենք„ — ասում էր ոգելից Մուրադը: «Մենք մի հասարակութիւն էինք: Մեր մէջ կերպարանագործուած էր մի ամբողջ ժողովուրդ իր ան-

բարոյական ախտերով„ . . . Դրանք խորհրդաւոր, շատ խորհրդաւոր խօսքեր էին: Մի՞թէ սալմաստեցին կամ սալրեցին է միայն խաչագողը: Խաչագող կարող է լինել եւ մի քահանայ, եւ մի արհեստաւոր, եւ մի վաճառական, եւ մի վարժապետ, եւ մի աստիճանաւոր, մի խօսքով, ամեն մարդ, որ խաչագողի յատկութիւններ ունի: — Խաչագող կարող է լինել եւ մի ամբողջ ազգ, որ բարոյապէս փչացած է, որը խաչագողի նման հարուստ ընդունակութիւններ ունի, բայց իր ընդունակութիւնները գործ է դնում դէպի վատը, դէպի անազնիւը եւ դէպի անբարոյականը: — “Հասաւ ժամանակը մերկանալ հ ի ն  մ ա ր դ ը  եւ, իբրեւ նոր մարդ, նոր հոգով եւ նոր եռանդով գործել՝ դէպի ազնիւը եւ դէպի լաւը:„ — Այդ խօսքերով վերջացրեց երիտասարդը իր փոքրիկ ճառը. “Մեր բոլոր ընդունակութիւնները, որ զարգացած էին միայն չարիք գործելու համար, թող այսուհետեւ գործ դրուին դէպի հասարակաց բարին„:

Երբ Մուրադը վերջացնելով իր գործը եկաւ նստեց իմ մօտ, ես չը յիշեցրի, որ մի ժամանակ տեսել եմ նրան արաբական մինարէթում: Ես տարակոյս չունէի, որ նա ճանաչում է ինձ: Բայց, երեւի, մտածում էր, որ ես այժմ չէի կարող ճանաչել նրան իր նոր կերպարանափոխութեան մէջ, իր լազի հագուստով, որովհետեւ սկզբում, երբ առաջին անգամ տեսայ նրան արաբական մինարէթում, նա զէյթունցու հագուստ ունէր եւ զէյթունցու բարբառով էր խօսում: Ինչպէս էլ որ լինէր, ես անպատշաճ համարեցի մերկացնել այն, ինչ որ նա ինձանից ծածուկ էր պահում: Բայց հաւատացած էի, որ նա ինձանից չէր թագցնի իր հին յարաբերութիւնները քաւոր Պետրոսի հետ, որոնց վերջին սրտաշարժ գրկախառնութեանը եւ հոգեկան յուզմունքներին ես ականատես եղայ:

— Դուք այդ ծերունուն, երեւի, վաղուց ճանաչում էիք, — հարցրի նրանից։

— Ոչ միայն ճանաչում էի, այլ նա իմ դաստիարակն է եղել, — պատասխանեց երիտասարդը։

— Այդ խաչագո՞ղը։

— Այո՛, այդ խաչագողը։

— Ի՞նչպէս եղաւ, որ դուք ընկաք նրա ձեռքը։

— Դա շատ երկար պատմութիւն է, եթէ պատմելու լինեմ, մինչեւ լոյս չի վերջանայ։

— Պատմեցէք, խնդրեմ։ Ես քաւոր Պետրոսի մասին շատ բաներ էի լսել, բայց իրան չէի տեսել։

— Երեւի, իմ մասին եւս լսած կը լինէիք։

— Այո՛, որովհետեւ ձեր անունը անբաժան է նրա անունից։

— Իրաւ, անբաժան է . . . կրկնեց նա տխուր ձայնով։

Նա պատմեց, թէ ինչպէս պատանեկութեան հասակում ինքը դպրոցի աշակերտ է եղել, պատմեց, թէ ինչ փորձանք պատահեց իր վարպետին, որի պատճառով ինքն եւս, իբրեւ յանցաւոր, կասկածի ենթարկուեցաւ եւ ստիպուեցաւ փախստական լինել, որ ոստիկանութեան ձեռքը չընկնի։ Այդ միջոցին պատահեց նա իր նման փախստական պատանիների մի խմբի, որոնք թողել էին տէր Թօդիկի դպրոցը եւ ծածկուել էին Սաւրայի անտառներում։ Այդ պատանիները, ասաց նա, Կարօն, Ասլանը եւ Սագօն էին, որոնց մօտ մնաց մի քանի շաբաթ։ Իրանց մօտ յայտնվում էր երբեմն մի ալեւոր որսորդ, որին Ավօ էին կոչում, եւ նա լաւ-լաւ խրատներ էր տալիս իր մոլորեալ սանիկներին։ Բայց ինքը, Մուրադը, նրանց հասարակութեան քաղցրութիւնը երկար վայելել չը կարողացաւ, մի դիպուածով անջատուեցաւ այդ խումբից եւ քաւոր Պետրոսի ձեռքն ընկաւ։ Այդ

վերջինը առեց նրան իր հոգաբարձութեան ներքոյ, տարաւ օտար աշխարհներ, եւ վարժեցրեց խաչագողութեան մէջ։ Իսկ Կարօն, Ասլանը եւ Սագօն հետեւեցին Որսորդի խորհրդին, թէեւ, նոյնպէս օտար աշխարհներ գնացին, բայց իր նման չը փչացան, այլ կրթութիւն ստանալով, լաւ մարդիկ դարձան։

Զարմանալի պատմութիւն էր այդ. դա Թափառաշրջիկ, բախտախնդիր ժողովրդի տխուր պատմութիւնն էր, որի մէջ այդ ժողովրդի իւրաքանչիւր անհատը կարող էր գտնել իր մասյլ պատկերը...

— Ուրեմն դուք ձեր պատանեկութեան հասակից ծանօ՞թ էք եղել Ասլանի ու նրա ընկերների հետ, — հարցրի ես, երբ նա վերջացրեց իր պատմութիւնը։

— Այո, իմ պատանեկութեան հասակից, — պատասխանեց նա։ — Բայց որպէս պատմեցի ձեզ, մենք անջատուեցանք միմեանցից, մեր ճանապարհները բաժանուեցան. որսորդ Ավօն առաջնորդեց նրանց դէպի լաւը, իսկ քաւոր Պետրոսը առաջնորդեց ինձ դէպի վատը։ Երկար թափառումներից յետոյ, դարձեալ մեր ճանապարհների ծայրերը միացան միմեանց, եւ դարձեալ մենք ձեռք մեկնեցինք միմեանց...

— Բայց ի՞նչպէս եղաւ, որ դուք ուղղուեցաք, եւ յետ դարձաք վատ ճանապարհից։

— Ես անցայ այն բոլոր մթին, ոլոր-մոլոր շաւիղները, որոնց մէջ պտըտվում է խաչագողը. ես անցայ այն բոլոր շրջանները, որոնց մէջ լայնանում է, զարգանում է խաչագողի ընդունակութիւնը. յետոյ բռնուեցայ իմ յանցանքների մէջ եւ աքսորուեցայ։ Այնտեղ, իմ հեռաւոր աքսորավայրում, ես ծանօթացայ մի լաւ մարդու հետ, որ նոյնպէս աքսորուած էր։ Այդ մարդը իմ վրայ խիստ բարերար ազդեցութիւն ունեցաւ եւ ուղղեց ինձ։

— Ո՞վ էր այդ մարդը, ի՞նչպէս էր նրա անունը:

— Նա մի շատ խորհրդաւոր անձնաւորութիւն էր. ես մինչեւ այսօր էլ չը գիտեմ նրա իսկական անունը. բայց բոլոր դատապարտեալները նրան կոչում էին «Համր», որովհետեւ խիստ սակաւ էր խօսում:

— Գիտէք հիմա որտեղ է նա:

— Չը գիտեմ...

Այժմ ես բոլորովին համոզուեցայ, որ խաչագողը լաւ մարդկանց ազդեցութեան ներքոյ, լաւ հասարակութեան մէջ, կարող է կրթուել եւ լաւ մարդ դառնալ: Բայց ես դեռ կասկած ունէի քաւոր Պետրոսի մասին, երբ հարցրի, Մուրադը պատասխանեց ինձ.

— Նա չափազանց բարի մարդ է, նրան մինչեւ անգամ կարելի է առաքինի կոչել: Միայն նրա անցեալ մեղքերը այն աստիճան ծանրացած են նրա սրտի վրայ, որ ամեն յոյս նրա մէջ մեռել է: Նա չէ կարողանում հաւատացնել իրան, որ Աստուծոյ անսահման գթութիւնը ներում է շնորհում ամեն մի զղջացողին, եւ այդ պատճառով, թշուառ ալեւորը գտնվում է խղճի մշտական տանջանքի մէջ:

Այդ միջոցին մօտեցաւ մեզ Մուրադի միւս ընկերը, որը գնացել էր հեռաւոր դէզերից ձիաների համար խոտ բերելու: Ես խնդրեցի Մուրադից, որ ծանօթացնէ իր ընկերի հետ:

— Դուք, կարծեմ, ծանօթ էք, — ասաց նա խորհրդաւոր ձայնով: — Դուք մի անգամ տեսել էք նրան արաբական մինարէթում... Յիշո՞ւմ էք:

— Յիշում եմ: — Նա ձեզ... աւելացրի ես:

— Այո, եւ ինձ... խոստովանեցաւ նա: — Ես եւ նա միասին էինք...

— Նրան կոչում են Ջալլադ, այդպէս չէ՞:

— Այդպէս է։

Այժմ մեր մէջ ոչինչ տարակուսանք չը մնաց. մենք ճանաչում էինք միմեանց. մենք հին ընկերներ եւ բարեկամներ էինք։

Տարուարից լսելի եղաւ Ասլանի ձայնը, որ պատուիրեց ձիաները պատրաստել։ Առաւօտը դեռ նոր էր բացվում, երբ ճանապարհ ընկանք։ Ալեւոր "դուշակողը" տուեց մեզ իր օրհնութիւնը եւ բարեմաղթեց "յաջողութիւն"։ Այդ բարեմաղթութիւնը լսում էի ամեն անգամ, երբ բաժանվում էինք մեր բարեկամներից։ Շէյխի բանակում դեռ քնած էին. ոչինչ շարժում չէր երեւում։ Միայն անքուն գիշերապահները հեռուից ձայն էին տալիս միմեանց։



ԻԳ.

# ՈՍՏԱՆ

*— Այսուհետեւ երկիւղալի տեղերով պէտք է անցնենք, — զգուշացրեց Մուրադը, խորհուրդ տալով, որ մեր զէնքերը պատրաստ պահենք:*

*Նա առաջ ընկաւ, իսկ նրա ընկերը, Ջալալը, գալիս էր մեր ետեւից: Ես ու Ասլանը պատսպարուած էինք երկուսի մէջտեղում: Լսելով Մուրադի խօսքերը, ես իսկոյն յիշեցի նապաստակին. չէ՞ որ պէտք է մի բան պատահի, մտածում էի ես, եւ անպատճառ վատ բան:*

*Ճանապարհը սարսափելի էր: Անցնում էինք Արտօսի ոլորապտոյտ ձորերով, նեղ փապարներով եւ մթին կիրճերով: Մարդ կարող էր բոլորովին կորչել, անհետանալ այդ խորին անդունդների մէջ: Բայց մեր առաջնորդին այնքան ծանօթ էին բոլոր անցքերը, բոլոր շաւիղները, որքան ծանօթ էին նրան իր ձեռքի հինգ մատները: Արտօսը եւ Կապուտ-Կողը, իրանց ոլոր-մոլոր շղթաներով հիւսուելով միմեանց հետ, կազմում են Ռշտունեաց գաւառի լեռնային ցանցը: Այդ հսկայական ցանցը մի մեծ ծուղակ է, որ, կարծես, այդ քմահաճ լեռները պատրաստել են մարդիկ որսալու համար. Մենք խարխափում էինք այդ ծուղակի մէջ:*

*Երբեմն հանդիպում էին մթին անտառներ: Երբեմն հանդիպում էին ուղեւորների, խումբեր, որ գնում էին մերձակայ արօտատեղիները, իրանց անասունների մօտ: Նայելով*

այդ անտառներին, նայելով այդ մարդիկներին. ինձ թւում էր, որ այդ վայրենի, լեռնային երկրում ամէն ինչ նոյնպէս խոշոր էր, նոյնպէս խիստ էր, որպէս շրջակայ բնութիւնը։ Վաղեմի դիւցազունների փոխարէն՝ ապրում էր մի խոշոր ժողովուրդ։ Վաղեմի հսկայ անտառների փոխարէն՝ ամէհի ծառաստանի։ Բայց անցեալ փառքն ու մեծութիւնը մաշել, տարել էր ժամանակը... Միայն իր վեհութեան մէջ մնացել էր անխորտակելի Արտօսը։

Անհամբերութիւնը խեղդում էր ինձ, մտածում էի, Երբ պէտք է դուրս գանք այդ մթին վիհերից ու վիրապներից։ Գոնէ լոյս լինէր։ Հորիզոնը ամէն կողմից փակուած էր բարձր լեռներով։ Հեռուն չէր երեւում։ Նայում էի դէպի երկինք, ձիւնագոյն ամպերը լողում էին օդի մէջ։ Նրանց մի կողմը ոսկու գոյն էր ստացել։ Երեւի, արեւը ծագել էր։ Բայց մեր գտնուած ձորերի մէջ դեռ տիրում էր գիշերային խաւարը։ Բոլորովին պայծառ օրերում անգամ՝ այդ ձորերի մէջ լոյսը պակաս է լինում։ Իսկ այն գիշեր անձրեւ էր եկել եւ վաղորդեան մառախուղը լցրել էր ձորերը։

Զարագուշակ նապաստակի հանդիպումը այս անգամ եւս մնաց առանց որ եւ իցէ չար հետեւանքի։ Մենք անցանք բոլոր վտանգաւոր տեղերը առանց փորձանքի, միայն սաստիկ ջարդուած, սաստիկ յոգնած։ Բայց իմ յոգնածութիւնը բոլորովին փարատուեցաւ, երբ բարձրացանք մի սարաւանդի վրայ, երբ կրկին մեր առջեւ բացուեցաւ կապուտակ ծովը եւ երբ Ասլանը, ձեռքը մեկնելով դէպի մի հին քաղաքի աւերակները, ասաց.

— Ահա Ոստանը։

Ոստա՛ն, այդ անունը ծանօթ էր ինձ երեխայութիւնից։ Գրքերի մէջ նրա մասին ոչինչ չէի կարդացել։ Բայց շատ անգամ լսել էի, որ մայրերը ձեռքի վրայ օրօրում են, վեր-

վեր են թռցնում իրանց փոքրիկ մանուկներին, երգելով մի երգ, որի մէջ զանազան խոստմունքներ են անում երեխային, թէ երբ նա կը մեծանայ, ինչ կը բերեն նրա համար, — խոստանում են արծաթապատ զէնքեր, ոսկէնկար հագուստներ, հրեղէն ձի եւ այլն, եւ մայրական ջերմ բաղձանքներով լի երգի իւրաքանչիւր տունը վերջանում է հետեւեալ հարց ու պատասխանով:

«Դո՞ր բերեմ, դո՞ր բերեմ, —

«Ի Վանայ, Ռստանայ բերեմ:

(Ո՞րտեղից կը բերեմ, ո՞րտեղից կը բերեմ, — խոստացած առարկան, Վանից, Ռստանից կը բերեմ):

Այդ երգը գոյութիւն է ունեցել Ռստանի փառաւոր անցեալի հետ, այդ երգը լսելով, ես միշտ երեւակայում էի Ռստանը մի մեծ վաճառաշահ քաղաք, որ լի էր աշխարհի բոլոր բարիքներով: Բայց երբ հասանք, երբ իմ առջեւ ներկայացաւ աւերակների մի տխուր տեսարան, ես բոլորովին հիասթափւեցայ իմ մանկական փայլուն երազներից: Ռստանում ոչինչ չէր մնացել: Մի քանի ողորմելի խրճիթներ միայն երեւում էին ձորի մէջ, որոնց մէջ բնակվում էին նոյնքան ողորմելի քրդեր:

Ի՞նչ նպատակով բերեց մեզ այստեղ Ասլանը, մտածում էի ես, — մի՞թէ միշտ պէտք է աւերակներ տեսնենք, մի՞թէ այդ երկրում չը կար մի բան, որ փոքր ի շատէ մխիթարական լինէր:

Սարաւանդի բոլորովին սպառուածքի վրայ, որի ստորոտում ծփում էր ծովը, մենք ցած իջանք ձիաներից: Այդ գագաթը իր բարձր դիրքով իշխում էր բոլոր շրջակայքի վրայ: Այստեղ էին թափուած հին ամրոցի բեկորները, որոնց քարակոյտը իմ վրայ այն տպաւորութիւնն էր գոր-

ծում, կարծես, դարերի կործանիչ սասանմունքից յետոյ, այժմ մի հսկայական քարեղէն կմախք իր վիթխարի գլուխը վեր էր բարձրացրել, տեսնելու, թէ ի՞նչ էր կատարուել իր չորեքկողմում...

Ոստան կոչվում էին այն քաղաքները, որոնց մէջ կամ Թագաւորի արքունիք կար, կամ բարձր դիւան, ինչպէս ոստանիկ կոչվում էին արքունիքում ծառայող ազնուականները։ Այդ անունը ծագել է ա ս թ ա ն բառից. որ նշանակում է դուռն կամ շէմք։

Ոստանը Ռշտունեաց հզօր նախարարութեան մայրաքաղաքն էր։ Բայց իր անմատչելի դիրքի պատճառով, որ մի կողմից պատսպարուած էր ծովով, իսկ միւս կողմից լեռներով, — Ոստանը, մի եւ նոյն ժամանակ, ծառայում էր եւ որպէս ամուր բերդ։

Ռշտունեաց լեռնային աշխարհը մի ժամանակ սնուցանում էր իր մէջ՝ իր ժայռերի նման ամուր եւ անխորտակելի մի ժողովուրդ։ Նրա նախարարները Հայաստանի հարաւային սահմանապահ զօրքերի սպարապետի պաշտօնն էին վարում։ Այդ պաշտօնը միայն Ռշտունեաց նախարարների արտօնութիւնն էր։

Ռշտունեաց աշխարհը տուել է մեզ երեւելի հերոսներ, որոնք հայոց հին պատմութեան մէջ փայլուն անուն են թողել։ Այստեղից էր Բարզափրան սպարապետը, որ Տիգրան երկրորդի օրերում մի արշաւանք գործեց դէպի Պաղեստին եւ, հռոմայեցոց հետ պատերազմելով, ջարդեց, հալածեց նրանց, յետոյ տիրեց Երուսաղէմին։ Այնտեղ Անտիգոնոսին թագաւոր կարգեց Հիւրկանոս քահանայապետի եւ, մի եւ նոյն ժամանակ, արքայի փոխարէն։ Այդ ձեռնտուութեան համար Բարզափրանը ստացաւ Անտիգոնոսից, իբրեւ ընծայ, հինգ հարիւր գեղեցիկ կին եւ հազար քանքար ոսկի։ Իսկ

Հիւրկանոս քահանայապետին հրէից բազմաթիւ գերիների հետ բերեց Հայաստան, բնակեցրեց Վան քաղաքում։

Այստեղից էր Մանաճիհր (Մանուչահր) քաջ նահապետը, որ Տրդատի եւ նրա որդի Խոսրովի ժամանակ հարաւային զօրքերի սպարապետ էր։ Այդ նահապետի օրերում աւելի սաստկացել էր այն խուլ կռիւը, որ սկսուեցաւ Լուսաւորչի ժամանակից եւ տեւեց մինչեւ նրա վերջին ժառանգի՝ Սահակ պարթեւի օրերը։ — Դա նոր հաստատուող քահանայապետական եւ նախարարական իշխանութեան կռիւն էր։ Դա հոգեւոր իշխանութեան կռիւն էր, մի կողմից, եւ մարմնաւոր իշխանութեան կռիւն էր, միւս կողմից։ Հոգեւոր իշխանութիւնը, հոգեւոր ագահութեամբ, աշխատում էր իրաւունքներ, արտօնութիւններ. կալուածքներ ձեռք բերել, եւ սահմանափակել թէ թագաւորի, թէ նրա նախարարների իշխանութիւնը։ Այստեղից ծագեց կռիւը։ Նրա սկիզբը դրեց Լուսաւորիչը։ Եւ այդ կռուի մէջ զոհ գնացին՝ թէ ինքը Լուսաւորիչը եւ թէ նրա բոլոր ժառանգները՝ Արիստակէսը, Վրթանէսը, Յուսիկը, Ներսէս մեծը եւ Սահակը։ Իմ խօսքը Մանաճիհր ռշտունու մասին էր։ Դա մի արշաւանք է գործում դէպի Ասորեստան եւ սուրբ Յակոբ Մծբնայ հայրապետի վիճակից բազմաթիւ գերիներ է բերում, նրա ութն աշակերտների հետ։ Ծերունի հայրապետը անձամբ գալիս՚է Մանաճիհրի մօտ, խնդրելու, որ արձակէ գերիներին։ Բայց խստասիրտ Մանաճիհրը, փոխանակ նրա աղաչանքը լսելու, նրան աւելի վշտացնելու համար, հրամայում է գերիներից ութ հարիւր հոգի՝ հայրապետի ութ աշակերտների հետ՝ նետել ծովը։ Ալանը ինձ ցոյց տուեց այն տեղը, ուր կատարուել էր այդ եղեռնագործութիւնը։ Դա Ոստանից ոչ այնքան հեռու մի ապառաժ հրուանդան էր, որի բարձրութեան վրայ գտնվում էր Մանաճիհրի

Մանակերտ անունով բերդը։ Այդ բարձրութիւնից Թափեցին ծովը խեղճ գերիներին։

Այստեղից էր Թէոդորոս Ռշտունին՝ եօթներորդ դարու հերոսը, որը արաբացոց անընդհատ արշաւանքների ժամանակ, կայծակի նման Հայաստանի մի կողմից դէպի միւսն էր թռչում, եւ հայոց արեան ծարաւի արաբացոց հրոսակներին ջարդում էր, եւ երբեմն իր սուրը նենգաւոր յունաց դէմ էր դարձնում։

Այստեղից էր յիշեալ Թէոդորոս իշխանի որդի Վարդ պատրիկը՝ յունաց ոխերիմ թշնամին, որը յունաց զօրքերի Գայլ գետի շարժական կամուրջից անցնելու ժամանակ, կտրեց կամուրջի ծայրը, ամենքը հոսուեցան գետի մէջ, եւ մնացածներին կոտորել տուեց։ Յոյները այն աստիճան բարկացած էին այդ քաջի դէմ, որ կենդանութեան ժամանակ չը կարողանալով վնասել նրան, մեռնելուց յետոյ որոնում էին հանգուցեալի գերեզմանը, որպէս զի ոսկորներից վրէժխնդիր լինեն։ Բայց Հայոց-Ձորի երախտագէտ ժողովուրդը, զգուշանալով յունաց չարամտութիւնից, Խորգոմ գիւղում, ծովի ափի մօտ, մի եկեղեցի կառուցին եւ քաջի մարմինը նրանում հանգուցին։ Այդ եկեղեցին ծածկեցին հողով եւ կազմուեցաւ մի բարձր բլուր, որի վրայ կառուցին մի այլ եկեղեցի։ Ոստանից փոքր ինչ հեռու։ Մահաշտ բարձրադիր եւ զուարճալի գիւղում, մինչեւ այսօր նկատւում են Վարդ պատրիկի շքեղ ապարանքների աւերակները։ Այդ ծովեզրեայ գիւղը քաջի ամարանոցն էր, իսկ Աղթամար կղզում գտնվում էր նրա հօր բերդը, որ յետոյ ժառանգեց որդին։

Գագիկ Արծրունին աւելի գեղեցկացրեց Ոստանը, նորոգելով եւ ամրացնելով հին բերդը, եւ իր համար փառաւոր պալատներ կառուցանելով։ Այդ բոլորը մի առանձին հրաշ-

մունքով նկարագրում է Վասպուրականի ոգելից պատմագիրը՝ Թովմա Արծրունին։ Իմ նկարագրութիւնը շատ անգոյն կը լինէր նրա գեղարուեստական գրչի առջեւ։ Ես թողնում եմ այդ, միայն մի բան չէ կարելի չը յիշեցնել, որ Ոստանը Ռշտունեաց գաւառի ամուր բերդ լինելուց յետոյ, էր մի եւ նոյն ժամանակ նրա վաճառաշահ քաղաքը։ Նա մի կողմից մօտ էր Դատուանի նաւահանգստին, միւս կողմից, այն մեծ քարաւանի ճանապարհին, որ տանում է Վանից դէպի Մուշ եւ Բաղէշ։ Այդ էր պատճառը, որ Ոստանի հովիտը մի ժամանակ ունէր մինչեւ հարիւր հազար հայ բնակիչ։ Բայց տասն եւ հինգերորդ դարում Սկանդէր-բէկը, որ Հայաստանի մի մասին տիրելով, իրան կոչեց Շահ-Արմէն (Թագաւոր հայոց) — այդ բարբարոսը, Վան քաղաքը աւերակ դարձնելուց յետոյ, Ոստանն էլ բոլորովին անմարդաբնակ դարձրեց։ Նա կործանեց հին բերդը, կործանեց բոլոր արուեստները. — Նա կործանեց Գագիկի կառուցած պալատների մնացորդները։

Այժմ Ոստանի փառքից, նրա հազարաւոր հայ բնակիչներից, մնացել էին մի քանի քրդական խրճիթներ միայն։ Այդ գետնափոր խրճիթների երդիքներից մուխ էր բարձրանում։ Շների ձայնից մի խումբ երեխաներ, կանայք եւ աղջիկներ դուրս սողացին նեղ դռներից, եւ կտուրների վրայից սկսեցին նայել մեզ վրայ։ Մէկը բաժանուեցաւ նրանից եւ, յենուած երկու թեւքերի տակին առած երկու ցուպերի վրայ, սկսեց կաղալով մօտենալ մեզ։ Երբ հասաւ, նա մի երկբայական հայեացք ձգեց մեզ վրայ, մի քանի րոպէ կանգ առեց եւ ապա լուռ նստեց։ Քուրդը առհասարակ քաղաքավարի է լինում, երբ հանդիպում է օտար մարդու, բայց նա մինչեւ անգամ չողջունեց մեզ։ Երեւի, նա տատանվում էր, թէ ինչ ձեւով ողջունէ, որ չը վիրաւորէ մեզ, որովհետեւ

մահմեդականը զանազան ձեւերով ողջոյններ ունի իր լեզուում, նայելով մարդու աստիճանին, ազգութեանը, կրօնին եւ այլն։ Նրան անյայտ էր, թէ մենք ինչ մարդիկ ենք, այդ պատճառով բարւոք համարեց լուռ մնալ։

Սկզբում մենք նրան մուրացկանի տեղ ընդունեցինք, եւ նրա հնոտի հագուստը վկայում էր այդ։ Բայց այդ հնոտիքի մէջ նշմարւում էր մի աչքի զարկող հպարտութիւն։ Շալէ գօտիի մէջ, կուրծքի վրայ, խրած ունէր մի փոքրիկ խէնջար, որի աբենոսեայ սեւ կոթը զարդարած էր արծաթով եւ գունաւոր քարերով։ Այդ զէնքը արդէն նշան էր նրա ազնուական ծագման։

Գետնափոր խրճիթից յայտնուած ազնուականը, վերջապէս, խզեց իր լռութիւնը, հարցնելով.

— Ծխախոտ ունէ՞ք։

— Ունենք, — պատասխանեց Մուրադը, որ լաւ քրդերէն գիտէր։

— Հեռուից տեսայ ձեզ, եկայ մի փոքր ծխախոտ խընդրելու։

Մուրադը տուեց նրան բաւականաչափ ծխախոտ, որը մեծ շնորհակալութեամբ ընդունեց։ Նա իսկոյն վառեց ծխաքարշը, սկսեց ծխել։ Երեւում էր, որ երկար ժամանակ չէր ծխել։

Նա, դարձեալ յենուած իր թեւքերի տակը առած ցուպերի վրայ, սկսեց կաղալով դիմել նոյն խրճիթը, որտեղից դուրս էր եկել։ Բայց քառորդ ժամ չանցած, նա կրկին վերադարձաւ, իր հետ ունենալով մի այլ մարդ։ Այդ վերջինը դրեց մեր առջեւ մի մաղ լի նոր թխած հացերով, որոնց մօտ դրած էր պանիր, որ մակարդած էր զանազան անուշահամ բոյսերով եւ սեր, որ երկու մատի հաստութեամբ լաւաշի ձեւ ունէր։ Հպարտ ազնուականը չը կամեցաւ պարտաւոր

Ճնալ մեզ եւ բերեց մեզ համար մի լաւ նախաճաշիկ։ Մենք սկսեցինք ուտել։

— Դու ո՞ր ցեղից ես, քրիվա՛, — հարցրեց Մուրադը։

(Չը գիտեմ ինչու հայերը սովորութիւն ունեն քրդերին դիմել ք ր ի վ ա բառով, որ նշանակում է կնքաւոր)։

— Վոր շիկների, — պատասխանեց քուրդը մի առանձին բաւականութեամբ։

— Վոր շիկների՞, — կրկնեց Մուրադը մի մեծ գիւտ արածի նման, — դու գիտե՞ս, քրիվա, որ քո նախնիքը հայեր են եղել։

— Ես այդ չը գիտեմ, — պատասխանեց քուրդը վիրաւորուած եղանակով. — ես այդքանը միայն գիտեմ, որ իմ նախնիքը այդ բերդի տէրերն էին։

— Հէնց այդ բերդի տէրերը հայեր էին։

Քուրդը դարձեալ չը համոզուեցաւ եւ ցոյց տուեց մեզանից հեռու մի քանի փառաւոր մահարձաններ, որ ծածկուած էին մամռաձեւ գմբէթների ներքոյ, եւ աւելացրեց.

— Դրանք իմ նախնեաց շիրիմներն են։

— Այդ շիրիմներից շատ առաջ էին քո հայ նախնիքը, — ասաց Մուրադը, պնդելով իր խօսքը։ — Նրանք կոչվում էին ռշտունիք եւ այդ երկիրը կոչվում էր Ռշտունեաց աշխարհ։ Այդ Ռշտունեաց նախարարներից առաջ եկաւ վորշիկների քրդական ցեղը, ինչպէս մեր Մամգունեան նախարարներից առաջ եկաւ քրդերի մ ա մ ը կ ա ն ի ցեղը։ Եւ ուրիշ շատ քրդական ցեղեր կան, որոնք հայոց ծագումից են։

— Կարելի է, — պատասխանեց քուրդը կիսահամոզական եղանակով։ — Մենք առաջ մի հօր որդի էինք եւ եղբայրներ էինք, բայց սատանան մէջ մտաւ, երկպառակութիւն ձգեց, խառնեց նրանց լեզուները, եւ միմեանց չը հասկանալով, բաժանուեցան։

— Դու հայր Ադամի եւ Նոյի ժամանակների բանն ես խօսում, — ընդհատեց Մուրադը։

— Ես գիտեմ եւ մօտ ժամանակների գործը, ինչ որ իմ աչքով եմ տեսել, ինչ որ իմ ականջով եմ լսել, — խօսեց քուրդը, ցոյց տալով իր հմտութիւնը։ — Այդ բերդը, ճշմարիտ է, մի ժամանակ պատկանում էր հայ իշխաններին, այստեղ տիրում էր Ղարա-Մէլիքների տոհմը։ Նրանք շատ բարեկամ էին մեզ հետ. մի մօրից ծնուած եղբայրները այնքան սիրով չէին լինի, ինչպէս մենք էինք։ Մենք միասին էինք գնում թշնամու դէմ պատերազմելու, մենք միասին էինք բաժանում թշնամուց բերած աւարը։ Բայց սատանան լցրեց իմ հօր եղբօր սիրտը չար խորհուրդներով, նա խաբէութեամբ Մէլիքին իր մօտ հիւր կանչեց եւ ընթրիքի ժամանակ հրամայեց սպանել։ Յետոյ եկաւ Մէլիքի ամբողջ ընտանիքը սրից անցկացրեց եւ տիրեց այդ բերդին։

Կարծես, ես լսում էի մի ծանօթ պատմութիւն. անհամբերութեամբ ընդհատեցի քրդի խօսքը, հարցնելով.

— Ի՞նչպէս էր կոչվում ձեր հօր եղբայրը։

— Խան-Մահմուդ։

— Իսկ այն Մէլիքը, որին խաբէութեամբ սպանել տուեց ձեր հօր եղբայրը։

— Միր-Մարտօ։ Նա իմ լաւ բարեկամն էր. նրա եօթն որդիներից ամենակրտսերին, Կարօին, ես եմ եկեղեցի տարել մկրտութեան ժամանակ։ Բայց բոլորին կոտորեցին, ոչ մէկը չը մնաց...

Կարօի անունը տալու ժամանակ ես նայեցի Ալանի երեսին։ Նա աչքով արեց, որ լռեմ։ Քուրդը շարունակեց.

— Այո, նա իմ լաւ բարեկամն էր. շատ անգամ միմեանց հետ "հաց ենք կերել„. շատ անգամ միմեանց հետ որսի ենք գնացել։ Նա աննման մարդ էր։ Նրա պէս քաջ,

նրա պէս մեծահոգի չը կար ոչ միայն հայ ազնուականների մէջ, այլ բոլոր քուրդ բէկերի մէջ։

Երեւի, ազնիւ քուրդը շատ կ'ուրախանար, եթէ սէր, որ նրա լաւ բարեկամի որդին, իր կնքել տուած Կարօն, ազատուել էր սարսափելի կոտորածից եւ այժմ կենդանի էր։ Նա այդ կոտորածի պատմութիւնը լսել էր շատ առաջ, Կարօի տատ Զումրուդից, երբ նա մահուան անկողնի մէջ պատմում էր անբախտ որդուն հօր ցաւալի արկածը։

— Բայց Աստուած պատժեց իմ հօր եղբօրը — առաջ տարաւ քուրդը։ — Իր բարեկամի եւ դաշնակցի հետ այդպէս վատութեամբ վարուելուց յետոյ, եւ խաբէութեամբ այդ բերդին տիրելուց յետոյ, երկար վայելել չը կարողացաւ . . .

— Ի՞նչպէս, — հարցրեց Մուրադը։

— Նա միացաւ այնուհետեւ Ջէզիրէին տիրող անգութ Բէդիր-խան-բէկի հետ, եւ երկուսը միասին սկսեցին անխնայ կերպով ապստամբել, աւերակ դարձնել Վանի, Մուշի, մինչեւ Դիարբէքիրի նահանգները, եւ ամեն տեղ, որտեղ հայ կար, սրից անցկացնել։ Այդ լսելով Ստամբուլի հայոց Խալիֆան (Մատթէոս պատրիարքը) բողոքեց Սուլթանին եւ Սուլթանը բազմաթիւ զօրքերով ուղարկեց Օսման փաշային պատժելու ապստամբներին։ Օսման փաշան եկաւ, նա ոչինչ անել չէր կարող, եթէ հայերը չը օգնէին նրան։

— Հայերը ի՞նչով օգնեցին, — հարցրեց Մուրադը։

Ստամբուլի հայոց Խալիֆան թուղթ էր գրել Վանի, Մուշի, Դիարբէքիրի եւ միւս նահանգների հայոց բոլոր հոգեւոր առաջնորդներին, որ իրանց ժողովրդի հետ օգնեն Սուլթանի զօրքերին։ Այդ ժամանակ յայտնուեցաւ Մէլիք-Միսաքը եւ հայոց կամաւոր զօրքերի գլուխն անցաւ։ Քաջութեամբ պատերազմելով թէ Բէդիր-խան-բէկի եւ թէ

իմ հօր եղբօր Խան-Մահմուդի հետ, նա երկուսին էլ յաղթեց, երկուսին էլ ձերբակալեց, եւ յետոյ յանձնեց Օսման փաշայի ձեռքը։ Երկուսին էլ իրանց ընտանիքների հետ տարան Ստամբուլ, այնտեղ բանտարկեցին. յետոյ Բէդիր-խան-բէկին աքսորեցին Կրէտէ կղզին, իսկ իմ հօր եղբօրը Խան-Մահմուդին իր ընտանիքի հետ աքսորեցին Սիլիստրէ։ Եւ այսպէս Մէլիք-Միսաքը առեց իր վրէժը։

Վերջին խօսքերը արտասանեց ծերունի քուրդը մի առանձին դառնութեամբ։ Մենք ամենքս միմեանց երեսին նայեցինք. մենք դարձեալ լսում էինք մի ծանօթ անուն, բայց ինձ գոնէ անծանօթ պատմութիւն։

— Այդ կռիւների մէջ, — աւելացրեց նա, — ես ստացայ այն վէրքերը, որ բոլորովին անդամալուծեցին ինձ, եւ այն օրից այդ երկու փայտերի վրայ եմ ման գալիս։ Յետոյ եկաւ օսմանցին, այդ բերդը քարուքանդ արեց եւ մեր տոհմի բոլոր նշանաւոր քաջերին մաշեց բանտերի մէջ։ Ինձ խնայեցին, որպէս արդէն անպէտք եւ կիսամեռ մարդու...

Խան-Մահմուդին եւ Բէդիր-խան-բէկին նուաճելուց եւ նրանց աքսորելուց յետոյ, իրաւ է, քրդական բռնապետութեանը վերջ տրուեցաւ արեւելեան Հայաստանում եւ մանաւանդ Տարօնի եւ Վասպուրականի նահանգներում, եւ օսմանցոց իշխանութիւնը այդ ժամանակից աւելի հաստատուեցաւ այդ կողմերում։ Բայց ինձ ուրախացնում էր այդ պատմութեան այն մասը, որ յիշեալ երկու գազանների անկումը կատարուել էր մի հայ հերոսի ձեռքով, այն հայի, որ մեր ամենի դաստիարակը եւ սիրելին էր։ — Դա էր Պարսկաստանում հասարակ որսորդի անուան տակ ծածկուած խորհրդաւոր մարդը — Ավօն, որի իսկական անունը Մէլիք-Միսաք էր, որը բոլորից թագցրած ունէր, թէ՛ իր գործերը, թէ՛ իր անցեալ մեծութիւնը եւ թէ իր ո՛վ կամ ինչ մարդ լինելը։

Ես չեմ մոռացել, ընթերցող, բայց դու եւս յիշո՞ւմ ես այն ցաւալի պատմութիւնը, որ Ս. Տիրամօր տօնախմբութեան ժամանակ, իր վրանում, իմ քեռի Պետրոսը պատմում էր Որսորդի կեանքից։ Նա ասում էր, որ Որսորդը հասարակ մարդ չէ, թէ նա Սասունի եւ Մոգաց երկրի զօրաւոր Մելիքն է եղել, թէ այնտեղ ունեցել է իր սեպհական բերդը, — պատմում էր, թէ ինչպէս Հայ տանուտէրները, միացած իրանց հոգեւոր առաջնորդի հետ, դաւաճանում են նրան, մատնելով մի “քուրդ իշխանի„ ձեռքը, — պատմում էր, որ դաւադրութեան ժամանակ նշանակւում է Զատկի աւագ շաբաթ գիշերը, եւ երբ Մելիքը իր ընտանիքով բոլորել էր ճրագալոյցի սեղանի շուրջը, յանկարծ նրա ամրոցը պաշարվում է բազմաթիւ թշնամիներով։ Նրա ամրոցը հրդեհում են, ընտանիքը կոտորում են, այդ միջոցին կրակի եւ արեան միջից յափշտակում է հաւատարիմ Մըհէն իր վիրաւորուած տիրոջը եւ, իր հզօր ուսերի վրայ բարձած, տեղափոխում է նրան Պարսկաստան, ուր ապրում էր նա անյայտութեան մէջ, Որսորդի անուան ներքոյ։ Իմ քեռի Պետրոսը ծպտեալ Որսորդի պատմութիւնը հասցրեց մինչեւ այստեղը, էլ ուրիշ ոչինչ չասաց։ Բայց այժմ Ծերունի քրդի պատմութիւնից երեւաց, որ նա կրկին յայտնուել է իր իսկական Մելիք-Միսաք անունով, եւ Հայոց կամաւոր զօրքերի գլուխն անցած, կռուել է երկու քուրդ բռնապետների հետ, երկուսին էլ յաղթել է, եւ կալանաւորելով, յանձնել է Օսման փաշայի ձեռքը, եւ իր “վրէժը„ առել է։ Ի՞նչ վրէժ։ Երբ այդ մասին հարցրի, Ծերունի քուրդը պատասխանեց.

— Բէգլէր-խան-բէկը նոյն դաւաճանութեամբ վարուեցաւ իր բարեկամ Մելիք-Միսաքի հետ, որպէս իմ հօր եղբայր Խան-Մահմուդը՝ Միր-Մարտօի հետ։ Երկուսն էլ

խաբէութեամբ ոչնչացրին իրանց լաւ դաշնակիցներին եւ տիրեցին նրանց բերդերին։ Մէլիք-Մխաքը Սասունի եւ Մոգաց երկրի իշխանն էր եւ լաւ բարեկամ Բէդիր-խանբէկի հետ։ Բայց այդ վերջինը այնքան ցած, այնքան վատ գտնուեցաւ, որ մի գիշեր անակնկալ կերպով յարձակուեցաւ նրա տան վրայ եւ բոլորին սրից անցկացրեց։ Մէլիքին նոյնպէս սպաննուած էին համարում, բայց տարիներից յետոյ, կարծես, գերեզմանից վերադարձաւ նա, եւ իր վրէժը առեց...

Երկու հայ իշխաններ, մէկը՝ Ռստամի տէրը, միւսը՝ Սասունի տէրը, միեւնոյն ճակատագրական հարուածքի տակ խորտակուել էին, — երկուսն էլ սոսկ դաւաճանութեան զոհ էին դարձել։ Ալօյանը, երեւի, գիտէր այդ բոլորը. նա ոչինչ չէր խօսում, միայն լռութեամբ լսում էր ծերունի քրդի խոստովանութիւնը, որը, դառն փորձերից խրատուած, խօսում էր մեզ դառն ճշմարտութիւններ...

— Ցեանո՛ւմես, քրիվա, — վերջապէս խօսեց Ալօյանը. — դուք ձեր բարեկամներին ու դաշնակիցներին այդպէս վատութեամբ ոչնչացնելով, ինքներդ միայնակ ու անզօր մնացիք, եւ դուք էլ ոչնչացաք։ Դուք խաբէութեամբ տիրեցիք ձեր բարեկամների ամրոցներին, բայց ձեր ձեռքումն էլ չը մնացին նրանք, եկաւ օսմանցին եւ խլեց ձեզանից։ Եթէ դուք հաշտ մնայիք, դրանցից եւ ոչ մէկը չէր պատահի։

Ալօյանը ծերունի քրդի, — այդ անբախտացած աշնուականի, — սրտից էր խօսում։ Նրա վշտահար դէմքն աւելի մռայլուեցաւ, աւելի թախծալի կերպարանք ստացաւ։

— Ճշմարիտ է, շատ ճշմարիտ, — պատասխանեց նա տխուր ձայնով։ — Մենք մեր ձեռքով մեր տունը քանդեցինք... Բայց ո՞վ կռուացրեց մեզ, ո՞վ բարեկամների ու դաշնակիցների մէջ երկպառակութիւն սերմանեց։ — Նոյն

իսկ օսմանցին։ Ես բոլորը չը պատմեցի ձեզ, պարոն, թէ ինչպէս օսմանցի գործակատարները գաղտնի կերպով գրգռում էին մեզ հայերի դէմ... Բայց մենք այնքան միամիտ եղանք, որ չը հասկացանք, որ դրանով մեր կործանումն են նախապատրաստում...

— Հիմա նոյնը չե՞ն անում, հիմա ձեզ չե՞ն գրգռում հայերի դէմ...

— Գրգռում են, եւ աւելի վատ կերպով... բայց մեր յիմար ազնուականները չեն հասկանում։ Չեն հասկանում եւ մեր հոգեւորականները։ Օրինակի համար, կարելի է լսած լինէք, որ մեզանից ոչ այնքան հեռու, Արտօսի սարորաններում, կենում է մեծ Շէյխը։ Նա Աստուծոյ սուրբ մարդն է, — ես շատ մեղք արած կը լինեմ եթէ այդ մասին ամենափոքր կասկած ունենամ, — բայց կրքոտ մարդ է։ Գիտէ՞ք, ո՞րքան անգամ նրան գրգռել են հայերի դէմ... Որքան անգամ նա ոչնչացրել է հայոց ամբողջ գաւառներ... Եւ բոլոր քրդերը լսում են նրա ձայնը եւ խոնարհվում են նրա հրամանին։ Բաւական է նրան՝ մի առաւօտ վերկենալ ու ասել, թէ մարգարէն երազում հրամայեց բոլոր գաւուրներին կոտորել։ Իսկոյն քրդերը կ՚առնեն իրանց զէնքերը եւ կը հետեւեն նրան։ Եթէ «Գուշակողը» չը լինէր, նա շատ վատ բաներ կ՚անէր...

— Ո՞վ է այդ «Գուշակողը», — հարցրեց Ասլանը, որպէս թէ չէ ճանաչում։

— Ասում են՝ Արաբիայի կողմերիցն է, մարգարէի հայրենիքից։ Բոլորովին սուրբ մարդ է. ամեն բան գիտէ. ինչ որ հարցնէք, նա կ՚ասէ ձեզ։ Մինչեւ անգամ Շէյխը, որ մեծ իմաստութիւն ունի, շատ բաներ նրանից է հարցնում։

— Ուրեմն, դուք գոհ չէ՞ք օսմանցիներից։

— Ի՞նչ ունենք գոհ լինելու։ Նրանք եկան, մեր տան մէջ երկպառակութիւն ձգեցին. մեզ թշնամացրին ոչ միայն մեր դրացի հայերի հետ, այլ թշնամացրին քուրդը քրդի հետ։ Այժմ չէք գտնի մի ցեղ, որ մի այլ ցեղի հետ հաշտ լինէր։ Ցեղայրը եղբօր միսն է ուտում։ Բայց այդպէս չէր առաջ. սէր կար, միաբանութիւն կար, ամեն մարդ իր չափը ճանաչում էր. փոքրը գիտէր մեծի պատիւը, իսկ մեծը գիտէր փոքրին հոգ տանել։ Այժմ ամեն բան փոխուել է։ Այն մարդը, որ երէկ իմ ախոռատան մէջ ծառայ էր, իմ ձիաների աղբն էր մաքրում, այսօր նրան մուդիր գայմագամ, փաշայ է կոչում, եւ ես պէտք է գնամ նրան գլուխ վերբերեմ։ Աւելի լաւ չէ՞ր լինի, որ ես այդ գլուխը գերեզման տանէի, քան թէ անպատուէի...

— Բայց մի բան պէտք չէ ուրանալ, որ օսմանցին գալուց յետոյ, երկիրը բաւական խաղաղացաւ։

— Ի՞նչպէս խաղաղացաւ. աւելի վատթարացաւ։ Առաջ մենք մեր երկրի տէրն էինք եւ գիտէինք մեր տան բանը, — ճանաչում էինք՝ ով է լաւը, ով է վատը, եւ եթէ մէկը մի չար գործ էր կատարում, իսկոյն իմանում էինք, եւ յանցաւորը իր արժանի պատիժն էր ստանում։ Բայց հիմա գողը մնում է իր համար ազատ, եւ բոլորովին անմեղ մարդկանց տանում են, դնում ծակը, եւ այն էլ գիտէ՞ք ինչու համար, որ փող առնեն, յետոյ բաց թողնեն։ Դատաւորը երկու կողմից եւս շահվում է. նախ, գողի հետ ընկեր լինելով, բաժանում է նրա հետ կողոպուտը եւ նրան չէ գիպչում, երկրորդ, անմեղ մարդկանց չարչարում է՝ նրանց կողոպտելու համար։ Այստեղ արդարութիւն կայ։ Երկրի համարեա բոլոր կառավարիչները ամեն գործերի մէջ այդպէս են վարվում։

Նա կրկին լցրեց իր ծխաքարշը, սկսեց ծխել։ Կարծես, դառն ծխի հետ աշխատում էր նա թափել իր սրտի մաղձը։

— Լաւ էր առաջ, — շարունակեց նա, — շատ լաւ... Մեր անասունները ազատ-համարձակ մեր սարերի վրայ արածում էին. մեր վրանները, որտեղ ցանկանում էինք, այնտեղ էինք կազմում: Երկիրը դէպի ամէն կողմ բաց էր մեր առջեւ: Հիմա ամէն տեղի վրայ սահման դրուեցաւ. այստեղը, ասում են Թագաւորական է, այնտեղը, չը գիտեմ, ումն է պատկանում, — եւ բոլորից վատթարն այն է, որ ամէն բանի վրայ հարկ է դրուել. մի ամսական փոքրիկ գառն անգամ, Աստուծոյ խոտը արածալու համար, պէտք է հարկ վճարէ: Ո՞վ է տեսել մի այդպիսի բան:

Նա նայեց իր շուրջը, տեսնելու՝ արդեօք ուշադրութեամբ լսում են իրան, թէ ոչ: Այդ միջոցին նա ինձ ներկայանում էր, որպէս մի քարոզիչ, որը եւ խօսում էր, եւ դիտում էր իր ունկնդիրների դէմքի արտայայտութիւնները, թէ ինչ ազդեցութիւն է գործում նրանց վրայ իր քարոզը:

— Ամէն ինչ, որ լաւ էր, բարի էր, խլեցին մեզանից, — առաջ տարաւ նա. — փոխարէնը տուեցին զրկութիւն, շռայլութիւն, անբարոյականութիւն միայն: Մենք ապրում էինք մեր նախահարց պարզ կեանքով, կերակրվում էինք մեր անասունների իւղով ու պանրով, խմում էինք մեր լեռների մաքուր ջուրը: Մեզ սովորացրին փլաւ ուտել, չէրբէթ ու ղահուէ խմել, եւ որ աւելի չարն է՝ արաղ խմել: Մեր կանայքը մեր անասունների բուրդից իրանց ձեռքով էին պատրաստում մեր հագուստը. թէ աղնուականի կինը եւ թէ գեհկի կինը երբէք չէին խորշում թելից ու ասեղից, իլիկն ու ջահրէն երկուսի ձեռքում եւս ամբողջ օրը պտտվում էր: Հիմա մեր կանայքը օսմանցու հարեմի ծոյլ եւ փափուկ խաթուններ են դարձել, իսկ մեզ սովորացրին մետաքս հագնել, կարմիր մահուդ հագնել, ոսկի թելերով զարդարել մեր հագուստը: Մեր կանայք այժմ սովորել են իրանց երեսները ներկել

զանազան գեղերով, սովորել են Աստուծոյ շնորհած գեղեցկութիւնը կեղծել, խարդախել։ Մեր տղամարդիկը չեն ամաչում կանանց նման իրանց մազերին գոյն տալ հինայով եւ իրանց աչքերը սեւացնել սուրմայով։ Երբ որ զուգուած, զարդարուած մի երիտասարդ է անցնում, նստած գեղեցիկ նժոյգի վրայ, — ինքը փայլում է ոսկու մէջ, ձին արծաթապատ ասպազէնքով, զէնքերը վառվռում են թանգագին ակներով, — ամեն կողմից մատով ցոյց են տալիս նրան, ընկերը ընկերին ասում է. „տե՜ս, ի՜նչ քաջ երիտասարդ է"... Բայց ո՞ր կռուի մէջն է մտել այդ կնամարդը, վէրք տուել ու վէրք ստացել, — այդ ոչ ոք չէ հարցնում։ Առաջ մի երիտասարդ մինչեւ մի քանի տասնեակ մարդիկ սպանած չը լինէր, մինչեւ իր մարմնի վրայ մի քանի վէրքեր ստացած չը լինէր, նրան աղջիկ չէին տալ. եւ մեր աղջիկները անպատուութիւն կը համարէին երկչոտին ու անարիին իրանց փեսայ ընտրել։ Հիմա դրանց նայող չը կայ. հիմա երիտասարդի քսակն են շօշափում, որ տեսնեն՝ քանի ղուրուշ ունի։ Ճշմարիտ քաջութիւնը կորել է եւ նրան փոխարինել է օսմանցու թուլամորթութիւնը։ Այժմ առաջուայ քուրդը չէ մնացել, եւ եթէ մարդիկ կան, այն եւս կարելի է գտնել հին սերունդի մէջ, նորը բոլորովին փճացած է։ Մեր վաղեմի երիտասարդները իրանց մարմնի վրայ կրած սպիները իրանց զարդն էին համարում եւ այդ նշաններով պարծենում էին։ Բայց այժմեանները հոգի են տալիս օսմանլուի շքանշանի համար, եւ գժուածի նման վազ են տալիս պաշտօնների ու աստիճանների ետեւից։ Եւ օսմանցիք, օգուտ քաղելով մեր փառասէրների այդ մոլութիւններից, վատերին առաջ են քաշում, իսկ լաւերին յետ են մղում...։

Ռստամի աւերակների վրայ, ծերունի քրդի բերանով խօսում էր նահապետական ժողովրդի խաբուած ոգին։

Մէկի ներկայացուցիչը բողոքում էր, միւսի ներկայացուցիչը՝
— Ասլանը լռութեամբ լսում էր . . .

Վերջինը հեգնութեամբ հարցրեց.

— Լաւ է, որ դու չը հրապուրուեցար օրմնդուի փայլուն շքանշաններով։

— Ես աւելի պատուաւոր համարեցի այսպէս աղքատ, այսպէս չքաւոր ապրել այն գետնափոր խրճիթի մէջ, իմ քաջ նախահարց շիրիմների մօտ, քան թէ իմ կուրծքը զարդարել օսմնդուի շքանշանով, որ ստանում են շողոքորթները, կեղծաւորները, խաբեբաները միայն, վաճառելով իրանց խիղճն ու պատիւը։ Ես այժմ ունեմ հինգ այծ, եւ դրանով բախտաւոր եմ։ Այդ հինգ այծը փոխարինում է այն հարիւրաւոր անասուններին, որ խլեց ինձանից օսմնցին։ Այդ բոլորից յետոյ՝ գնա՛ եւ օսմնդուի ոտները լիզի՛ր, — քաւ լիցի, — քաղցածութիւնից կը մեռնի ծերունի Օմար-Աղան եւ իրան չի ստորացնի . . .

Նա կրկին անգամ շնորհակալութիւն յայտնեց ստացած ծխախոտի համար, վերկացաւ եւ իր երկու ցուպերի վրայ կաղալով, սկսեց ընթանալ դէպի իր խրճիթը։

— Ահա՛ քրդական բռնապետութեան ճնշակտուր եղած կոճղը . . . — ասաց Ասլանը, ծերունու եւեւից նայելով։ Յետոյ դարձաւ դէպի մեզ այդ խօսքերով.

— Ես իսկապէս հակառակ եմ ազնուականութեան գաղափարին, բայց կը ցանկանայի, որ հայերը ազնուականներ ունենային։ Երբ ժողովուրդը զարգացած չէ, երբ նա դեռ մի որոշ գիտակցութեան չէ հասած, ազնուականութիւնը միշտ յարմար միջնորդ է դառնում նրա բողոքը արտայայտելու, երբ ինքը՝ ազնուականութիւնը՝ նոյն ժողովրդի հետ ճընշուած դրութեան մէջ է գտնվում եւ նրա տառապանքներին մասնակից է լինում։ Նայեցէք այդ ծերունի քրդին,

այդ ոտքից եւ ձեռքից զրկուած անդամալոյծին, հազարաւոր քրդեր չեն կարող այն մտածել, ինչ որ դա է մտածում, հազարաւոր քրդեր չեն կարող այն զգալ, ինչ որ դա է զգում։ Իր խրճիթի մարած օջախի նման մխում է նրա սիրտը, երբ իր ցեղի ազատութիւնը կորած է տեսնում։ Երբ մենք ազնուականութիւն ունէինք, երբ տակաւին բնաջինջ եղած չէին նախարարական տները, ամեն անգամ, երբ ժողովրդի կողմից բռնութեան դէմ բողոք էր յայտնվում, նրա նախաձեռնութիւնը տալիս էր նախարարութիւնը։ Եւ մեր հայրենիքի թշնամիները, յոյները, պարսիկները, արաբացիք, վերջը թաթարները, — լաւ հասկանալով ազնուականութեան նշանակութիւնը, սկսեցին հետզհետէ ոչնչացնել նախարարական տները, որպէս զի կատարելապէս տիրել կարողանան մեր հայրենիքին։

Ինձ համար այժմ շատ բան պարզ էր։ Ծերունի քրդի պատմութիւնից ես լիակատար տեղեկութիւն ստացայ Որսորդի անձնաւորութեան մասին, գիտէի նրա փառաւոր անցեալը, գիտէի նրա աղէտաւոր անկումը, գիտէի նրա խորհրդաւոր ներկան։ Ինձ համար պարզ էր եւ Ղարա-Մելիքների յեղյեղուկ պատմութիւնը. ես ճանաչում էի այդ ազնուական տոհմի վերջին ժառանգին — Կարօին, — ես գտնվում էի նրա հօր դժբախտ ամրոցի փլատակների մօտ, այն ամրոցի, որ սկսեալ Ռշտունի նախարարներից, քսան եւ մէկ դարերի ընթացքում, մի ձեռքից միւս ձեռք անցնելով. վերջը հասել էր նրա հօրը եւ որից դաւաճանութեամբ յափշտակել էին քրդերը։ Կարօն նոյնպէս գիտէր այդ բոլորը, գիտէր իր ծագումը, գիտէր՝ թէ ինչ էին կորցրել իր հայրերը։ Բայց ես հաւատացած էի, որ նա նոյն եռանդով կը գործէր եւ նոյն անձնանուիրութեամբ կ'աշխատէր սրբելու նեղեալների արտասուքը, եթէ գիտենար, որ ինքը մի անյայտ

*գուհկի որդի է։ Երբ այդ միտքը յայտնեցի Ալանին, — երբ Կարօին օրինակ բերելով, ասացի, որ տոհմային ազնուականութիւնը միակ պայմանը չէ, որ մարդ ձգտէ դէպի ազատութիւն, — նա պատասխանեց.*

*— Այո՛, այդ ճիշտ կը լինէր, եթէ ամեն մարդ Կարօի սիրտը եւ զարգացումը կ՚ունենար։*

*Բայց որտեղից ստացաւ նա այդ զարգացումը, — ես այդ մասին ոչինչ չը գիտէի. Չը գիտէի նաեւ նրա միւս ընկերների՝ Ալանի եւ Սագօի կրթութեան գաղտնիքը։ Այդ երիտասարդները իմ աշակերտակիցներն էին, առանց մի բան սովորելու, թողեցին տէր Թոդիկի դպրոցը եւ անյայտացան, բայց տարիներից յետոյ յայտնուեցան, բոլորովին փոխուած, բոլորովին այլ մարդ դարձած։ Մինչեւ այսօր մի առիթ չէր ներկայացել, որ հարցնէի Ալանից, թէ ի՞նչ հրաշք էր այդ։ Երբ այժմ խնդրեցի նրանից պատմել, նա պատասխանեց.*

*— Ես մի օր բոլորը կը պատմեմ քեզ, բայց դեռ ժամանակը չէ...*

*Ոստանայ հովիտը մի երկայնաձեւ ձորադաշտ է, որ սեղմուած է Արտոս լերան գրկում։ Ամեն տեղ սփռուած են պատմական հին յիշատակարաններ։ Իշխանական բերդերի, ամրոցների փշրանքներն են մնացել։ Պահպանուել են միայն սրբութեան տաճարները։ Կրօնասէր ժողովուրդը առաջինը զոհեց՝ երկրորդը չը կորցնելու համար։*

*Մենք երկար չը մնացինք Ոստանայ բերդի աւերակների մօտ։ Երբ ձիաները բաւական հանգստացած էին, երբ մենք եւս բաւական կազդուրուած էինք ճանապարհի յոգնածութիւնից, Ալանը շտապեցրեց, թէ պէտք է ուղի ընկնել։ Ես վերջին անգամ հայեացք ձգեցի աւերակների վրայ, վերջին անգամ նայեցի դէպի ծովը։ Ինձ թւում էր, թէ հէնց այդ*

*բոպէում, նրա պարզ հայելի մէջ, ես տեսնում էի այն գոյնզգոյն ցոլացումները, որ արտափայլում էին, անդրադարձնելով Գագիկի շքեղ դահլիճների գոյնզգոյն ապակիների շողքերը եւ նրա օդաբեր հովանոցների ոսկեզօծ նկարները: Ինձ թւում էր, որ ալիքների մեղմ մեղեդիի մէջ՝ ես լսում էի արձագանքը մի քաղցր նուագածութեան, որով Օշտունեաց գուսանները զուարճացնում էին Վասպուրականի հզօր իշխանի ուրախութեան ժամերը: Սահում են դարեր, անցնում են ժամանակներ: Տեսարանը փոխվում է: Վարդագոյն ապակիների վարդագոյն շողքերի փոխարէն՝ հոսում են արեան վարդագոյն վտակներն: Այլ եւս ոսկեզօծ նկարների փայլը չէ, որ վառվում է արեւի ճառագայթների առջեւ, — այդ հրդեհի բոցն է, որ լափում է փառքի եւ իշխանութեան բոլոր վայելչութիւնները: Լաց ու կոծ է լսվում... աղմուկը սաստկանում է... կրակի լուսաւորութեան առջեւ նշմարվում է դաշոյնների փայլը... մարդիկ անորոշ ուրուականների նման խլրտում են... ոմանք ընկնում են, ոմանք կանգնում են... դահլիճների կործանուող կամարները ծածկում են դիակները.,. Կրակն ու կոտորածը ոչնչացնում է Ղարա-Մէլիքների յիշատակը... Բայց մի կին, մի երեխայ կուրծքին սեղմած, դուրս է սողում կրակի մէջից եւ թաքչում է մերձակայ անտառում... Յետոյ թանձր ծուխը ցած է թողնում իր սեւ վարագոյրը եւ եղերական տեսարանը անհետանում է մթութեան մէջ...*

*— Դու շատ զգայուն սիրտ ունես, — ասաց Ասլանը, երբ նշմարեց իմ արտասուքը: — Նստիր ձիդ, գնանք, հեռանանք, դեռ այդպիսի աւերակներ շատ կը տեսնես...*

*Երբ ճանապարհ ընկանք, հեռուից տեսանք այդ կրակի ու կոտորածի հեղինակներից մէկին — ծերունի Օմար-Աղային: — Նա դեռ նստած էր իր խրճիթի կտուրի վրայ եւ արեւի*

ջերմ ճառագայթներով տաքացնում էր սառած մարմինը: Նա էլ նկատեց մեզ և, հեռուից գլուխն ու ձեռքերը շարժելով, բարի ճանապարհ մաղթեց:

Այնօր մենք անցանք Ոստանայ ամբողջ հովիտը: Ուր և գնում էինք, մեզ հանդիպում էին ամայի վանքեր, ամայի եկեղեցիներ և մենաւոր մատուռներ: Լեռները, ձորերը, անտառների խուլ, անմարդաբնակ խորքերը լի էին այդ սրբավայրերով: Ի՞նչ էր որոնում նրանց մէջ Ասլանը, — ես չը գիտեմ, միայն ինձ յայտնի էր, որ նա վանքերի շատ սիրահար չէր: Իլի գիւղում մենք տեսանք Աստուածածնի "Քառասուն-խորան" կոչուած վանքը Գագիկ Արծրունին հիմնեց այդ մեծաշէն վանքը իր քառասուն հոյակապ տաճարներով: Նրանցից միայն մի քանիսն էին մնացել. միւսները կործանուել էին: Այստեղ դիմում էին հայոց ապաշխարողները և իրանց մեղքերի քաւութեան համար "քառասունք" էին կատարում, այսինքն՝ քառասուն տաճարների իւրաքանչիւրի մէջ մի-մի պատարագ էին մատուցանել տալիս, ի հարկէ, լաւ վճարելով վարդապետներին: Բայց ես հաւատացած էի, որ եթէ այդ վանքի քառասուն տաճարների իւրաքանչիւրի մէջ ամեն օր քառասուն անգամ պատարագ մատուցանէին, հազիւ կարող էին քաւել նրա հիմնողին այն մեծ մեղքից, որ նա կատարեց, ապստամբուելով Բագրատունիների դէմ և Վասպուրականում իր համար մի նոր, հակաթոռ թագաւորութիւն հիմնելով: Դրանով անհնազանդ Արծրունին, արաբացոց տագնապի ժամանակ, երբ Հայաստանը աւելի մեծ զօրութեան պէտք ունէր, Բագրատունիների ուժը ջլատեց, իսկ իր հիմնած թագաւորութիւնը միայն մէկ դար կեանք ունեցաւ...

Ոստանայ հովտի մէջ, Արտօսի կողքի վրայ, կանգնած է մի այլ վանք, և իր գեղեցկագիր, բարձրահայեաց դիրքով

գրաւում է ճանապարհորդի ուշադրութիւնը։ Նա «Քառասուն-խորանի» նման մեծաշէն, փարթամ եւ փառահեղ չէ, նա համեստ է եւ փոքրիկ։ Բայց ամեն մի հայ չէ կարող՝ առանց նրա փոշիները համբուրելու՝ անցնել նրա մօտից, երբ գիտենայ, թէ ում գերեզմանն է դրած նրա անշուք տաճարում։ Նրան կոչում են Զաղար (Զարահան) Ս. Նշանի վանք, որ շինուած է Ս. Աստուածածնի անունով։ Մեծ ջերմեռանդութեամբ մենք մտանք այդ վանքը եւ համբոյր մատուցինք մի մոռացուած գերեզմանի։ Նրա մէջ հանգչում էր Աւարայրի հերոսների երգիչը — Եղիշէն։

Ոստանայ լեռնահովտի մէջ կայ մի այլ սրբավայր, որը նոյնքան սիրելի է ամեն մի հայի սրտին, որպէս վերյիշեալ վանքը։ Ծովեզերքից կէս մղոն հեռաւորութեամբ, կանաչազարդ, հարթ դաշտի մէջտեղում, բարձրանում է մի գեղեցիկ բլուր։ Բարդի եւ ուռենի ծառերը իրանց վարսաւոր ճիւղերի ներքոյ հովանաւորում են շինականների խրճիթները, որ գտնվում են այդ բլուրի վրայ։ Դա Նարեկ (Նորեկք) գիւղն է։ Նա փոքրիկ է, բայց ամեն հայի համար նուիրական է, որովհետեւ ծննդավայրն է մի պաշտելի մարդու։ Գիւղի մէջտեղում, բլուրի ուղիղ գագաթի վրայ, կանգնած է մի հոյակապ վանք։ Բաւական հեռաւորութիւնից երեւում է այդ վանքը, եւ նրան տեսնելիս, ճանապարհորդի սիրտը սկսում է բաբախել։ Խորին, սրբազան ջերմեռանդութեամբ խաչակնքում է նա իր դէմքը եւ ծունր է խոնարհեցնում։ Այդ վանքի մէջ դրած է հայոց ոգելից սաղմոսերգուի Ս. Գրիգոր Նարեկացու՝ մարմարեայ գերեզմանը։

Այդ դաշտը եւ նրա շրջակայքը լի են այն բոլոր նուիրական տեղերով, որ կապուած են Նարեկացու յիշատակի հետ։ Խարզիթ գիւղի մօտ, ծովափնեայ ճանապարհի եզրում, մեզ ցոյց տուին մի գոգաւորուած ժայռ։ Այդ գոգաւորու-

թիւնը մարդու մարմնի նմանութիւն ունէր: Նրա մասին պատմում էին, թէ Նարեկացին այստեղ հովիւ եղած ժամանակը՝ մի անգամ աւազակները յարձակուեցան նրա վրայ․ նա փախաւ եւ դիմեց դէպի յիշեալ ժայռը, նրա մօտ պատսպարան գտնելու համար: Ժայռը բաց արեց իր քարեղէն գիրկը եւ ընդունեց Սուրբին:

Բայց բոլորից հետաքրքիր են այն քարանձաւները, որոնք մի ժամանակ Նարեկացու ճգնարանն են եղել: Նարեկ գիւղից մի ժամ հեռաւորութեամբ, ծովեզրի մօտ, բարձրանում է մի այլ քարաժայռ: Նրա մէջ կան մի քանի մեծ եւ փոքր բնական այրեր: Բացի այդ բնական այրերից, նոյն բարձրադիր ապառաժի մէջ փորուած են թուով ինն սենեակներ: Այդ վիմափոր սենեակները անյիշելի ժամանակների գործ է: Նրանք երկու յարկերի են բաժանուած, որոնցից հինգը ներքին յարկն է կազմում, իսկ չորսը վերին յարկը: Հայոց հին սորամուտների (տրօգլոդիտների) այդ քարեղէն բնակարանը այնքան անմատչելի, այնքան բարձր է գետնի մակերեւոյթից, որ Նարեկացու նման հրաշագործ անձը միայն կարող էր մուտք գործել այնտեղ: Գլխաւոր դուռը բացվում է ներքնայարկի առաջին սենեակի մէջ, յետոյ մէջէ-մէջ դռներով տանում է դէպի միւս սենեակները եւ հանում է մինչեւ վերին յարկը: Իւրաքանչիւր սենեակ պատուհանաձեւ լուսամուտ ունի, որ նայում է դէպի ծովը: Վերնայարկի սենեակներից մէկը ձեւացնում է մի փոքրիկ մատուռ, քարեղէն սեղանով: Այստեղ էր բնակվում Նարեկացին, այստեղ էր գրում իր սքանչելի գիրքը: Այստեղից տեսաւ նա Ս. Աստուածամօրը, Աստուածորդի մանուկը գրկում, որի տեսութեանը այնքան մեծ տենչանքով փափագում էր նա: Փոքրիկ Առաքէլ կղզու վրայ կանգնած էր նրա տենչալին, եւ ամբողջ ծովը վառվում էր հրեղէն ճառագայթներով: Իր քարայրից

ցած իջաւ Նարեկացին, մօտեցաւ ծովեզրին եւ, որպէս ցամաքի վրայ, նա ջրի վրայով ընթանալով, ոտքով անցաւ ծովը եւ հասաւ կղզուն: Աստուածամայրը տուեց երանելի Սուրբի գիրքը Աստուածորդի մանուկին, ասելով. “Առ Տէր„ — այսինքն՝ առ քո Տիրոջը: Եւ այն օրից այդ փոքրիկ կղզին կոչուեցաւ Առ-Տէր:

Հին Ռշտունիքը այժմ երկու գաւառների է բաժանուած՝ Գաւաշ եւ Կարճկան, երկուսն էլ կոչվում են իրանց համանուն աւանների անունով, որոնց մէջ գաւառապետներ են նստած: Սկսեալ Հայոց-Ձորից, որը Գաւաշի հիւսիսարեւելեան սահմանն է, յիշեալ երկու գաւառները՝ Վանայ ծովակի հարաւային եզերքով՝ տարածվում են մինչեւ Մոգաց եւ Բզնունեաց աշխարհները: Ճանապարհը նոյնպէս ոլորվում է ծովակի եզերքով, երբեմն բոլորովին մօտենում է, երբեմն փոքր ինչ հեռանում է, բայց երբէք ծովեզերքից չէ բաժանվում: Նա այնքան նեղ է, այնքան դժուարին ելեւէջներ ունի եւ այնքան սարսափելի են նրա անցքերը, որ ի զուր չըստացաւ իր Կապան անունը: Հայոց երկրի բազմաթիւ կապանների թւում՝ Ռշտունեաց կապանը դժուարանցանելիներից մէկը պէտք է համարել: Ամէն մի քայլում, բաւական են մի քանի հրացանաւորներ, որ փակեն մի ամբողջ քարաւանի անցքը եւ վանդակի մէջ բռնուած թռչունի նման, չը թողնեն, որ տեղից շարժուի: Ճանապարհը պտըտվում է նեղ ձորերի միջով, որոնց երկու կողմերից եւս բարձրանում են անհնարին ապառաժներ: Եւ այդ սատանայական լաբիւրինթոսը քարաւանի միակ ուղին է, որ տանում է դէպի Բաղէշ եւ Մուշ: Մարդ խեղդվում է անձկութեան մէջ: Իսկ երբ դուրս ենք գալիս նեղ կիրճերից եւ Մուշի ընդարձակ դաշտին ենք հասնում, այն ժամանակ միայն հորիզոնը բացվում է մեր առջեւ, սկսում ենք ազատ շունչ առնել:

Ուշտունիք, այդ ռ ա շ ի գ ն ե ր ի (քաջերի) աշխարհը, մնացել է՝ իր խիստ եւ վայրենի բնութեան համեմատ՝ մի ինքնուրոյն ժողովուրդ։ Նրա բնակիչները՝ իր մթին անտառների եւ ահարկու լեռների նման՝ կոշտ, կոպիտ եւ անխորտակելի են։ Հսկայ բնութիւնը ծնել է եւ հսկայ ժողովուրդ։ Այստեղ միայն կարելի է տեսնել սահմանակից Հայոց-Ձորի վաղեմի տիտանների վիթխարի սերունդը, որ իր քաջութեամբ բնաւ յետ չէ մնում դրացի սասունցիներից։ Չէ կարելի տեսնել եւ չը հիանալ այդ առողջ, կենդանի, մշտազուարթ ժողովրդով։ Նա երբէք չէ թառամում, որպէս իր ծմակների մշտականաչ կիպարիսը։ Նա երբէք չէ ծերանում. որպէս իր թաւուտների դարաւոր եղեւինը։ Հզօր կուրծքը մերկ, զօրաւոր բազուկները հոլանի, գլխին թաղիքեայ կոնաձեւ ք օ լ օ զ ը դրած, եւ նրա վրայ գոյնզգոյն թաշկինակներ փաթաթած, որոնց ծայրերը՝ ոսկեգոյն մազերի երկայն գիսակների հետ՝ թափվում են լայն թիկունքի վրայ, հագին մի կարճ ք ա զ ա խ ա յ (կուրտիկ) հագած, որի ամրութիւնը, երկաթեայ զրահի նման, կարող է դիմանալ ամենասուր դաշոյնի առջեւ, ներքին հագուստը մազեղէն զօլ-զօլ շալվարի մէջ հաւաքած, — դուք կը տեսնէք Ուշտունեաց լեռների այդ զաւակին, երկար նիզակը ձեռին, թեթեւ վագրի նման, անցնում է մի ապառաժից դէպի միւսը։ Նրա նիզակը, որ երկու ծայրերում եւս սուր երկաթներ ունի, ծառայում է եւ իբրեւ զէնք եւ իբրեւ նեցուկ, որ գետնի մէջ ցցելով, յենվում է նրա վրայ եւ ոստումներ է գործում սարսափելի վիհերի վրայից։ Այդ բոլորը այնքան արագ է կատարվում, որ դու կարծում ես, թէ նա թռչունի նման թեւքեր ունի եւ օդի մէջ սլանում է։ Նրա թաղիքեայ փափուկ տրեխների տակերը ամբողջապէս գամած են սրածայր բեւեռներով, որ չը սահին, որ չը սայթաքին ժայռերի վրայ ման գալու ժա-

մանակ։ Գօտիի մէջ խրած ունի մի կեռ խենջար, որի կոթը գերձանով կապած է պատեանին. այդ կապանքը նրա համար է, որ մինչեւ արձակելը՝ նրա բարկութիւնը անցնի, իսկ երբ մերկացրեց սուրը՝ գործողութիւնը արդէն վճռուած է, մինչեւ արեան մէջ չը զովացնէ, իր տեղը չի դնի։ Թշնամու հետ անգութ է, իբրեւ գազան. բարեկամի հետ բարի է, իբրեւ հրեշտակ։ Իր հովիտների բարձրահասակ սօսիների նման գեղեցիկ է նա։ Երբ նայում է քո երեսին, դու զմայլվում ես։ Նրա կապուտակ աչքերը այնքան լուսափայլ, այնքան ընդարձակ եւ այնքան խորն են, որպէս այն կապուտակ ծովը, որ ծփում է նրա աշխարհի մօտ։ Նրա այրական դէմքը այնքան արձակ եւ այնքան պայծառ է, որպէս Ռշտունեաց պարզ երկինքը։ Ռշտունեաց պարզ երկնքի նման, այդ խաղաղ դէմքը յանկարծ մռայլվում է, մթնում է, շանթեր է արձակում, երբ խաղաղ եղանակը փոխվում է, եւ տեղի է ունենում վերահաս փոթորիկը… Այդ միջոցին նա չէ խօսում, այլ որոտում է, եւ այդ որոտման ձայնի մէջ դու լսում ես նախկին հայի ուժեղ բարբառը իր բոլոր կոշտ եւ անտաշ ձեւերով։ Բայց այդ կոշտ հնչիւնները քո հոգուն այնքան ազդու են. քո սրտին այնքան կախարդիչ են, որ, որքան էլ եւ ընկած լինէիր դու հոգով, յանկարծ ներշնչվում ես մի անբացատրելի ոգեւորութեամբ… Եւ երբ դու տեսնում ես, թէ ինչպէս նա իր միակ զէնքով՝ նիզակով կռւում է մթին ծմակից դուրս պրծած ամեհի վարազի հետ, իսկոյն հին առասպելը կենդանանում է քո մտքում, եւ դու յիշում ես "վիշապաքաղ„ Վահագնին, հայոց անպարտելի Հերքուլէսին, — յիշում ես, եւ պքանչանում ես նրա արժանի ժառանգների քաջութեան վրայ, որոնք, գազանների հետ բնակուելով, սովորեցին գազանների հետ մարտնչել…



ԻԴ.

## ՄԻ ԳԻՒՂ ՌՇՏՈՒՆԵԱՑ ԱՇԽԱՐՀԻՑ

Օրը երեկոյանում էր: Նախորդ գիշերը, «Գուշակողի» տաղաւարի մօտ, բոլորովին անքուն էինք մնացել, իսկ այսօր անդադար ճանապարհորդում էինք: Մեր ձիաները յոգնածութիւնից դժուարութեամբ էին շարժվում. մենք եւս հանգստանալու սաստիկ պէտք էինք զգում:

— Իմ ձին ընկնելու վրայ է, — ասացի Մուրադին, որ իմ կողքով գնում էր:

— Մինչեւ հիմա նրանք էին մեզ տանում, շուտով կը սկսենք մենք նրանց տանել, — պատասխանեց նա ծիծաղելով:

Ես նրա կատակը չը հասկացայ, բայց երբ մի փոքր առաջ գնացինք, նա դարձաւ դէպի մեզ այդ խօսքերով.

— Ցած իջէք, այսուհետեւ անկարելի է ձիով գնալ, եթէ ոչ, թէ՛ մենք եւ թէ՛ մեր ձիաները կը գլորուենք անդունդի մէջ եւ կը կորչենք:

Մենք հնազանդուեցանք մեր առաջնորդի խորհրդին: Եւ իրաւ, մի նեղ շաւիղ իջնում էր դէպի անդնդային ձորը եւ, նրա խորքից կրկին բարձրանալով, ոլորվում էր լեռան առապարներով, յետոյ կորչում էր անտառի մթութեան մէջ: Այդ ընդարձակ վիհից պէտք է անցնէինք մենք, որի յատակը նայելիս՝ մարդու գլուխը պտըտվում էր, աչքերը սեւանում էին:

Մեզանից իւրաքանչիւրը, իր ձիու սանձից բռնած, խարխափելով իջնում էր դէպի ձորը: Ձին նրա ետեւից՝ ամբողջ մարմնով դողդողալով, գլուխը ցած խոնարհեցրած, փռնչալով դէպի ամեն կողմն էր նայում, թէ ոտը ո՛ր քարի վրայ դնէ, որ ցած չը գլորուի: Մի քանի ժամ այսպէս մաքառում էինք ժայռերի, մացառների եւ միմեանց մէջ հիւսուած թուփերի հետ, մինչեւ ձորի խորքից դուրս եկանք մի բարձր սարաւանդի վրայ: Մեր առջեւ բացուեցաւ մի սքանչելի հորիզոն:

Հազար անգամ աւելի տաժանական տանջանքներ ես պատրաստ կը լինէի յանձն առնել, եթէ առաջուց գիտենայի, թէ դէպի ո՛ւր է տանում մեզ այն ոլորտապտոյտ շաւիղը, որ ընտրեցինք մենք, խուսափելով երթեւեկութեան մեծ ճանապարհից: Մեր դուրս եկած սարաւանդը, կարծես, մի բարձր դիտանոց լինէր, որտեղից երեւում էին գեղեցիկ տեսարաններ: Ստորոտում ծփում էր լայնածաւալ ծովակը, որի եզերքը, կանաչազարդ շրջանակի նման, պատած էին շքեղ բուսականութեամբ: Մեղմ հովիկը շնչում էր մետաքսանման փափուկ խոտերի վրայ եւ, երեկոյեան ճառագայթներից լուսաւորուած, փայլուն ծղօտները հանդարտ կերպով տատանվում էին, ծածանվում էին, եւ իրանց բաց-կանաչագոյն ալիքներով միախառնվում էին ծովակի արծաթեայ ալիքների հետ, որ զգուշութեամբ զարկվում էին եզերքին, կարծես, վախենալով, մի՛ գուցէ խանգարեն ծաղիկների խորհրդաւոր խաղաղութիւնը:

Վերեւում, լեռան լանջացը վրայ, սփռուած էին ոչխարների հօտերը, իսկ ներքեւում, հարթ մարգագետնի վրայ, — որը ծովի ափերով, կանաչագոյն լայն ժապաւէնի նման, ձգվում էր հեռու եւ հեռու, — արածում էին ձիաների երամակները եւ արջառների նախիրները: Մի փոք-

րիկ գետակ շտապելով դուրս էր վազում ձորի միջից, եւ մի բան որոնողի նման, մի քանի պտոյտներ գործելով արօտամարգերի վրայ, քմահաճ երեխայի պէս կարկաչում էր, տրտնջում էր, պատահած քարերի կուրծքին էր խփում, պատահած թուփերի արմատներն էր քանդում եւ, բաւական աղմուկ բարձրացնելուց յետոյ, մի առանձին գոհունակութեամբ մտնում էր ծովը, այնտեղ ձայնը կտրում էր, կարծես, մի մեծ գործ էր կատարել։ Նրա պարզ, թափանցիկ յատակի գոյնզգոյն խիճերը ժպտում էին, ծիծաղում էին նրա միամիտ չարութեան վրայ։ Տեղ-տեղ երեւում էին փոքրիկ ձկներ։ Ինձ թւում էր, որ այդ ապստամբները, որ եւ իցէ դժգոհութեան պատճառով, բաժանուել էին ծովից եւ նրա ափերի մօտ իրանց համար անկախ, փոքրիկ աւազաններ էին հիմնել։ Բայց գոնէ միմիայն նրանք, այն ժամանակ դարձեալ մի միտք կ'ունենար։ Այդ դրութեան մէջ, բաւական էր արեւի մի քանի օրուայ տապն ու կրակը, որ լափէր, ցամաքացնէր նրանց ունեցած ջուրը։ Եղեգնաբոյսերը այնքան առատութեամբ աճել, բազմացել էին նրանց եզերքի վրայ, որ փոքր էր մնում, բոլորովին ճնշէին, բոլորովին խեղդէին այդ ձկները իրանց խտութեան մէջ։ Նրանք ծծում էին բոլոր կենսական հիւթը, նրանք արգելում էին մաքուր օդի անցուդարձը, եւ այդ պատճառով, այդ ողորմելի ձկները, անշարժութեան մէջ մնալով, ճահիճների ձեւ էին ստացել։

Չը նայելով, որ ամառուայ սաստիկ տօթերի ժամանակն էր, բայց այստեղ գարունը, կարծես, դեռ նոր էր սկսվում։ Կեռասի ահագին ծառերը, որ վայրենի դրութեան մէջ աճելով, ձգուել էին մինչեւ երկինքը, դեռ նոր էին հասցնում իրանց վարդագոյն պտուղները։ Ընկուզենիները, որոնք իրանց բարձր լայնատարած ճիւղաւորութեամբ լցրել

էին ձորերի խորքերը, — այդ հսկայ ընկուզենիները դեռ պտուղ չէին ցոյց տալիս: Վայրենի կակաչը, պուտը, ամանկոտրուկը, գարնան այդ առաջին աւետաբերները, դեռ նոր էին իրանց կարմիր գլխիկները բարձրացրել խոտերի ճոխ խտութեան միջից: Կարմիր կակաչների նման պտըտվում էին կարմիր հարսներ ու աղջիկներ: Նրանց „լէ-լէլի" ձայնը, միախառնուելով թռչունների երեկոյեան երգեցողութեան հետ, մի առանձին կենդանութիւն էին տալիս շրջակայքին: Նրանք զանազան բանջարներ էին քաղում, այն բանջարները, որ մեր կողմերում վաղուց արդէն քաղել ու չորացրել էին ձմեռուայ համար:

Մեր հանդէպ սարի կուրծքի վրայ՝ կպած էր մի գիւղ, որ իր գեղեցկադիր բարձրութիւնից նայում էր դէպի ծովը: Այդ գիւղը, կարծես, կտրուած լինէր Ռուստունեաց աշխարհից, ապրում էր իր լռիկ, մնջիկ առանձնութեան մէջ, հրճվում էր ծովի ալիքներով, շնչում էր իր լեռների թարմ, հովասուն օդը, եւ վայելում էր իր շրջակայքի բարիքները, որ այնքան շռայլութեամբ պարգեւել էր առատաձեռն բնութիւնը: Մենք դիմում էինք դէպի այդ գիւղը:

Արեւը մտնելու վրայ էր: Նրա պայծառ ճառագայթները մի առանձին փայլ էին ստանում, շողշողալով ծառերի լայն, հիւթալի տերեւների վրայ: Ինձ թւում էր, որ ամբողջ շրջակայքը ծփում էր, թաթաւում էր մի սքանչելի ոսկեզօծութեան մէջ: Ոսկեզօծ էին երեւում կարմիր հարսներն ու աղջիկները, որ պտըտվում էին մարգերի մէջ. ոսկեզօծ էին երեւում ձիերն ու կովերը, որ ներքեւում արածում էին արօտների մէջ. ոսկեզօծ էին երեւում այծերն ու ոչխարները, որ վերեւում թռչկոտում էին մի ժայռից դէպի միւսը. ոսկեզօծ էին երեւում շինականները, որ երկար գերանդիները ուսներին դրած, վերադառնում էին խոտուն-

ձից. ոսկեզօծ էր երեւում գիւղական փոքրիկ եկեղեցու գմբէթը, որ իշխում էր միւս շէնքերի վրայ. ոսկեզօծ էր երեւում եւ ծիրանի ծովը, որ ծաւալվում էր հեռու ու հեռու, եւ ապա միախառնվում էր նոյնպէս ոսկեզօծ երկնքի հետ։ Ես առաջին անգամն էի տեսնում, թէ որպիսի հրաշալի պատկեր է նկարում արեւի երեկոյեան վերջալոյսը, երբ նա իր արարչագործ վրձինի տակ ունի ընդարձակ ջուր, պարզ երկինք, կանաչազարդ դաշտավայր եւ գեղեցիկ լեռներ՝ ալէքաւոր, գեղագրական բարձրութիւններով։

Արեւը մտաւ եւ կախարդական պատկերը սկսեց փոքր առ փոքր անհետանալ մեր աչքերից։ Մի քանի պատառ ձիւնագոյն ամպեր միայն պահպանել էին իրանց վրայ սքանչելի ոսկեզօծութիւնը՝ այն եւս եղծուեցաւ, եւ մոխրագոյն մռայլը տիրեց ամեն տեղ։

Ես նայեցի Ասլանի երեսին. նրա դէմքը նոյնպէս մռայլուած էր։ Ի՞նչ էր մտածում նա, — ես չը գիտեմ։ Բայց ես մտածում էի, ի՞նչու այդ բոլորը, որ այդքան գեղեցիկ է, որ այդքան հիանալի է, ուր ամեն արարած այդքան ուրախ է, այդքան զուարթ է, ուր ամեն ինչ ժպտում է, ծիծաղում է, միայն մարդը — բոլորի տէրն ու իշխանը — չէ կարող վայելել մշտատեւ ուրախութիւն, չէ կարող կատարելապէս երջանիկ լինել։

Երբ հասանք գիւղը, Մուրադը խնդրեց ցոյց տալ ռէսի (տանուտէրի) տունը։ Մի քանի երեխաներ, մրցելով միմեանց հետ, թէ որը շուտով կը կատարէ այդ ծառայութիւնը, առաջ վազեցին։

Մենք գտանք ռէսին, Դաւիթ մարգարէ-թագաւորի նման, նստած էր իր տան կտուրի վրայ։ Նրա մօտ էր եւ շինական քահանան։ Մի խումբ այլ մարդիկ եւս շրջապատել էին նրանց. ալեւորները նստած էին, երիտասարդները յար-

էին ձորերի խորքերը, — այդ հսկայ ընկուզենիները դեռ պտուղ չէին ցոյց տալիս։ Վայրենի կակաչը, պուտը, ամանակոտրուկը, գարնան այդ առաջին աւետաբերները, դեռ նոր էին իրանց կարմիր գլխիկները բարձրացրել խոտերի ճոխ խտութեան միջից։ Կարմիր կակաչների նման պտտվում էին կարմիր հարսներ ու աղջիկներ։ Նրանց “լէ-լէի„ ձայնը, միախառնուելով թռչունների երեկոյեան երգեցողութեան հետ, մի առանձին կենդանութիւն էին տալիս շրջակայքին։ Նրանք զանազան բանջարներ էին քաղում, այն բանջարները, որ մեր կողմերում վաղուց արդէն քաղել ու չորացրել էին ձմեռուայ համար։

Մեր հանդէպ սարի կուրծքի վրայ՝ կպած էր մի գիւղ, որ իր գեղեցկադիր բարձրութիւնից նայում էր դէպի ծովը։ Այդ գիւղը, կարծես, կորուած լինէր Ռշտունեաց աշխարհից, ապրում էր իր լուիկ, մնջիկ առանձնութեան մէջ, հրճվում էր ծովի ալիքներով, շնչում էր իր լեռների թարմ, հովասուն օդը, եւ վայելում էր իր շրջակայքի բարիքները, որ այնքան շռայլութեամբ պարգեւել էր առատաձեռն բնութիւնը։ Մենք դիմում էինք դէպի այդ գիւղը։

Արեւը մտնելու վրայ էր։ Նրա պայծառ ճառագայթները մի առանձին փայլ էին ստանում, շողշողալով ծառերի լայն, հիւթալի տերեւների վրայ։ Ինձ թւում էր, որ ամբողջ շրջակայքը ծփում էր, թաթաւում էր մի սքանչելի ոսկեզօծութեան մէջ։ Ոսկեզօծ էին երեւում կարմիր հարսներն ու աղջիկները, որ պտտվում էին մարգերի մէջ. ոսկեզօծ էին երեւում ձիերն ու կովերը, որ ներքեւում արածում էին արօտների մէջ. ոսկեզօծ էին երեւում այծերն ու ոչխարները, որ վերեւում թռչկոտում էին մի ժայռից դէպի միւսը. ոսկեզօծ էին երեւում շինականները, որ երկար գերանդիները ուսներին դրած, վերադառնում էին խոտուն-

ձից. ոսկեզօծ էր երեւում գիւղական փոքրիկ եկեղեցու գմբէթը, որ իշխում էր միւս շէնքերի վրայ. ոսկեզօծ էր երեւում եւ ծիրանի ծովը, որ ծաւալւում էր հեռու ու հեռու, եւ ապա միախառնւում էր նոյնպէս ոսկեզօծ երկնքի հետ: Ես առաջին անգամն էի տեսնում, թէ ո՛րպիսի հրաշալի պատկեր է նկարում արեւի երեկոյեան վերջալոյսը, երբ նա իր արալշագործ վրձինի տակ ունի ընդարձակ ջուր, պարզ երկինք, կանաչազարդ դաշտավայր եւ գեղեցիկ լեռներ՝ ալիքաւոր, գեղագրական բարձրութիւններով:

Արեւը մտաւ եւ կախարդական պատկերը սկսեց փոքր առ փոքր անհետանալ մեր աչքերից: Մի քանի պատառ ձիւնագոյն ամպեր միայն պահպանել էին իրանց վրայ սքանչելի ոսկեզօծութիւնը՝ այն եւս եղծուեցաւ, եւ մոխրագոյն մռայլը տիրեց ամեն տեղ:

Ես նայեցի Ասլանի երեսին. Նրա դէմքը նոյնպէս մռայլուած էր: Ի՞նչ էր մտածում նա, — ես չը գիտեմ: Բայց ես մտածում էի, ի՞նչու այդ բոլորը, որ այդքան գեղեցիկ է, որ այդքան հիանալի է, ուր ամեն արարած այդքան ուրախ է, այդքան զուարթ է, ուր ամեն ինչ ժպտում է, ծիծաղում է, միայն մարդը — բոլորի տէրն ու իշխանը — չէ կարող վայելել մշտատեւ ուրախութիւն, չէ կարող կատարելապէս երջանիկ լինել:

Երբ հասանք գիւղը, Մուրադը խնդրեց ցոյց տալ ռէսի (տանուտէրի) տունը: Մի քանի երեխաներ, մրցելով միմեանց հետ, թէ որը շուտով կը կատարէ այդ ծառայութիւնը, առաջ վազեցին:

Մենք գտանք ռէսին, Դաւիթ մարգարէ-թագաւորի նման, նստած էր իր տան կտուրի վրայ: Նրա մօտ էր եւ շինական քահանան: Մի խումբ այլ մարդիկ եւս շրջապատել էին նրանց. ալեւորները նստած էին, երիտասարդները կայ-

գանքով կանգնած էին ոտքի վրայ: Խօսում էին չինական զանազան հարցերի մասին: Ինչպէս երեւում էր, այդ կտուրը ուէսի բացօթեայ դատարանն էր, որտեղ քահանայի եւ գիւղի ալեւորների խորհրդով վճռվում էին զանազան վէճեր: Դատը կատարվում էր հրապարակաւ: Մասնակցում էին եւ հասարակութեան ներկայացուցիչները: Երկու ծայրեր շօշափում էին միմեանց՝ — պարզ նահապետական դատավարութեան եւ կատարելագործուած ռամկապետական դատավարութեան ծայրերը:

Երբ մեզ տեսան, խօսակցութիւնը դադարեցրին: Ուէսը ոտքի ելաւ եւ, ողջունելով մեզ, խնդրեց նստել: Բայց երբ նկատեց, որ մենք անշարժ մնացինք, կարծես, մի բան մտաբերելով, դարձաւ դէպի իր մօտ եղողներից մէկը, ասելով.

— Ինչպէս երեւում է, այդ մարդիկը մեզ նման գետնի վրայ նստելու սովոր չեն, գնա ասա, որ մի շոր բերեն, ձգեն այստեղ:

Եւ իրաւ, նրանք մերկ կտուրի վրայ էին նստած, բայց այդ կտուրը, ուէսի ժրաջան հարսների շնորհիւ, այնքան մաքուր էր, որ փոշու մի հիւլէ անգամ անկարելի էր գտնել այնտեղ:

Շուտով մի խումբ կանայք մեզ մօտ վազեցին. մէկը շտապով սկսեց ջրով սրսկել կտուրը, միւսը աւլում էր, երրորդը տարածում էր ծանր օթոցները, իսկ չորրորդը, երեւի, նոր էր մտածում, թէ ինքը ի՞նչու համար եկաւ, եւ կանգնած, շփոթուած նայում էր իր շուրջը: Յետոյ նա էլ իր համար գործ գտաւ, լուռ մօտեցաւ Աղանին, ձեռքով հասկացրեց, որ թոյլ տայ կօշիկները հանել:

— Ներողութիւն մի կրէք, — հրաժարուեցաւ Աղանը, — իմ կօշիկները դժուարութեամբ են հանվում:

Պատասխանը, կարծես, վերաւորեց կնոջ ինքնասիրութիւնը, մի հեգնական ժպիտ երեւաց նրա կարմիր թշերի վրայ, եւ առանց Ալանի թոյլտուութեանը սպասելու, բռնեց նրա երկարավիզ կօշիկներից, եւ ուժեղ ձեռքով այնպէս դուրս քաշեց, փոքր էր մնում, որ ոտքն էլ հետը տանէ։

Այն գեղեցիկ օթոցները, որ տարածեցին, իրաւ, շատ մեղք կը լինէր՝ նրանց վրայ ճանապարհի փոշեպատ կօշիկներով նստել, բացի դրանից, այդ մի անքաղաքավարութիւն էր, որ տեղացիների աչքում շատ խորթ պիտի երեւնար։

Այնտեղ գտնուած երիտասարդները, որ դրացիներ էին եւ բոլորովին ուրիշ գործով էին եկած ռէսի մօտ, որպէս իրանց տան գործը համարելով, սկսեցին մեր ձիաների խուրջինները եւ թամբերը ցած բերել, եւ տարան հանգստացնելու նրանց։ Շուտով հաւաքուեցաւ մեր շուրջը մի հարցասէր բազմութիւն, ամեն սեռի եւ ամեն հասակի, որոնք հեռուից հետաքրքրութեամբ նայում էին մեզ վրայ, մատով ցոյց էին տալիս միմեանց եւ զանազան սրամիտ նկատողութիւններ էին անում իրանց բարբառով։

— Այդ մարդու քօլօզը սունկի նման չէ՞, Մկօ, — հարցնում էր մի տղայ, ցոյց տալով Ալանի եւրոպական լայնեզրեայ գլխարկը։

— Ուղիղ սունկի նման է, — պատասխանում էր Մկօն, որպէս իր չարաճճիկ ընկերների մէջ մի մեծ հեղինակութիւն։ — Բայց դու շալվարին նայիր, կ՚ասես, փայտի վրայ հագցրած կեղեւ լինի։

Կտուրը, որի վրայ նստած էինք մենք, իր բարձրութեամբ հազիւ որոշվում էր գետնի մակերեւոյթից, որովհետեւ տունը գետնափոր էր եւ մտել էր լեռան կողքի մէջ, որը զառիվայր դիրք ունէր։ Գիւղի բոլոր տները այդ դիրքով էին շինուած. մէկի կտուրը միւսի բակն էր կազմում, եւ

այսպէս աստիճանաբար իջնում էին ցած, մինչեւ ձորի խորքը: Եթէ ներքեւից մարդ նայելու լինէր դէպի լեռան զառիվերը, կը տեսնէր, որ տները, միմեանց վրայ շարուած լինելով, ներկայացնում են մի մեծ սանդուխք, որ նոյնպէս աստիճանաբար բարձրանում է մինչեւ սարի կատարը: Ինձ շատ անգամ էր պատահել տեսնել, որ լեռնային երկրներում համարեա բոլոր գիւղերի համար ընտրել էին այսպիսի անյարմար եւ անմատչելի տեղեր: Երեւի, մշտական երկիւղը ստիպել էր խոյս տալ հարթ դաշտերից եւ հովիտներից: Ի՞նչ հիանալի գիւղի տեղ կարող էր լինել այն ծովեզրեայ գեղեցիկ մարգագաշտը, որ երեւում էր մեր առջեւ: Երբ այդ մասին նկատեցին Ռէսին, նա պատասխանեց.

— Մեր ծովը գժութիւններ շատ ունի. նա սովորել է լափել, կլանել իր եզերքի մօտ գտնուած բնակութիւնները: — Յետոյ նա պատմեց հէնց իր հասակում պատահած անցքերը, որ ծովը բարձրանալով, որքան գիւղեր, անդաստաններ ծածկել էր ջրի տակ: — Իսկ հին ժամանակներում, — աւելացրեց նա, — ամբողջ քաղաքներ, բերդեր ու վանքեր են ջրասոյզ եղել:

Ռէսը ծեր մարդ չէր. նա քառասուն տարեկան հազիւ կը լինէր. Թէ՛ մօրուքի եւ թէ գլխի մազերի մէջ ոչ մի հատ ճերմակ չէր նշմարւում: Յաղթանդամ տղամարդ էր նա, որպէս սովորաբար լինում են այդ երկրի լեռնցիքը, բաւական համակրական եւ բարի դէմքով: Հագնուած էր ճոխ եւ փառաւոր կերպով, որից երեւում էր, որ նիւթապէս եւս շատ հարուստ էր նա: Գօտիի մէջ խրած ունէր մի խէնջար, փղոսկրեայ կոթով, որի վրայ քանդակած էին զանազան նկարներ՝ մի առիւծ, որ կռուում էր փղի հետ եւ մի կապիկ, որ երկիւղից փախել եւ ծառի վրայ էր բարձրացել, եւ այնտեղից երկչոտ կերպով նայում էր կռուի հանդէսի վրայ:

Մեծ եղաւ իմ զարմանքը, տեսնելով, որ Ռէսի մօտ նստած ալեւոր քահանան եւս իր գօտիի մէջ խէնջար ունէր խրած։ Քահանայ եւ զէ՛նք, — դա ինձ շատ տարօրինակ երեւաց։ Միւս բոլոր գիւղացոց մէջ եւս, որ շրջապատել էին մեզ, չէր կարելի գտնել մէկին, որ այդ զէնքը չունենայ։

Հէնց առաջին անգամից իմ աչքին զարկեց եւ այն, որ Ռէսը բնաւ սարկական ողջագուրանքով եւ անթիւ «բարով էք եկել»-ներով չը ձանձրացրեց մեզ, որպէս սովորութիւն է տեսնել արեւելքում։ Նա բաւական սառնութեամբ ընդունեց մեզ։ Մէկ ուրիշը այդ սառնութիւնը կարող էր վերաբերել կամ նրա հպարտութեանը եւ կամ նրա անքաղաքավարի կոպտութեանը։ Բայց ո՛չ այս եւ ո՛չ այն։ Նա պարզ մարդ էր, սովոր չէր սեթեւեթի, բացի դրանից, մեր անակնկալ յայտնուիլը, նրան կասկածանք պատճառեց, մանաւանդ, որ մենք մեր մասին ծանօթութիւն չը տուեցինք նրան։ Նա ինքն ստիպուած եղաւ Ալանի մասին հարցնել.

— Այդ պարոնը, երեւի, ֆրանկ է։

— Փրանկ է, — պատասխանեց Մուրադը։

— Հայերէն իմանո՞ւմ է։

— Չէ իմանում։

— Ապա ի՞նչ լեզուով է խօսում։

— Թուրքերէն գիտէ։

— Լաւ է, մենք էլ շատ ու քիչ իմանում ենք այդ լեզուն. լուռ չենք մնայ։

Յետոյ նա դարձաւ դէպի Ալանը, հարցնելով.

— Դուք, երեւի, ընկուզենու կոճղ կամ մազեր գնելու համար էք եկած մեր կողմերը։

Ալանը շփոթուած մնաց այդ խօսքերից, թէ ի՛նչը ստիպեց նրան այդ տեսակ հարց առաջարկել։ Վերջը հասկացուեցաւ, որ նրանք սովոր էին ֆրանկներ տեսնել միայն

այն ժամանակ, երբ գալիս են ընկուզենու կոճղ կամ կանանց մազեր գնելու։ Այստեղ Ֆրանկների՝ այսինքն Ֆրանսիացիների՝ անունով էին ընդունում ամեն մի եւրոպական հագուստ հագած բախտախնդիր մարդու, որ օտար երկրներից գալով, մուտք են գործում այսպիսի աշխարհից անջատուած եւ խուլ տեղերում, գիւղացիներին խաբելու համար։

— Ոչխարի եւ այծի ընտիր բուրդ է գտնվում մեր գիւղում, — աւելացրեց ռէսը։

— Ես վաճառական չեմ, — պատասխանեց Ասլանը. — ես բժիշկ եմ։

Բժշկի անունը մի ուրիշ տեղ կարող էր ընդհանուր ուրախութիւն պատճառել, բայց այստեղ ոչինչ ազդեցութիւն չունեցաւ։ Երեւում էր, որ իրանց մաքուր օդի եւ ջրի շնորհիւ բժշկի կարօտութիւն չունէին։

— Իմ ընկերը վաճառական է, — ասաց Ասլանը, ցոյց տալով Մուրադի վրայ։ — Նա ձեր ունեցած բաները կը գնէ։

— Այո՛ կոճղ եւ ոչխարի բուրդ կը գնեմ ես, — ասաց Մուրադը, — բայց կանանց մազեր ինձ պէտք չեն։

Ֆրանկները, բաղէշցի հայերն ու հրէաները սովորեցրել էին դրանց այդ անբարոյականութեանը՝ միօրինակ կերպով խուզել թէ իրանց ոչխարների բուրդը եւ թէ իրանց կանանց գլխի մազերը, եւ վաճառքի նիւթ դարձնել։

— Ի՞նչու մազեր չէք գնում, — հարցրեց այնտեղ նստողներից մէկը, — այստեղ շատ “աղուոր„ մազեր կան, ճիշտ այնպիսի մազեր, որպիսին սիրում են Ֆրանկները։

— Աղջի, մօտ եկ, — ձայն տուեց նա կանանց շարքում կանգնած մի օրիորդի, որոնք հեռուից լսում էին մեր խօսակցութիւնը։

Ամօթխածութիւնից աղջիկը տեղից չը շարժուեցաւ. Նրա մօտ եղող կանայքը սկսեցին ծիծաղելով առաջ հրել

նրան. վերջապէս, գլուխը քարշ գցած, ժպտալով, կարմրելով մօտեցաւ նա: Չէր կարելի առանց հիացմունքի նայել նրա ոսկեգոյն երկայն գիսակների վրայ, որոնք հասա հիւսելով իջնում էին մինչեւ կրունկները: Այս տեսակ խիտ եւ խարտեաշ մազեր ես տեսնում էի միայն այդ կողմերի լեռնցիների մէջ: Զարմանալի էր այդ մազերի բնական փայլը: Եթէ լուացուէին նրանք, եթէ սանտրուէին, եթէ նրանց վրայ խնամք տարուէր որպէս վայել էր, — այն ժամանակ այդ տեսակ մազերը կարող էին կնոջ գեղեցկութեան ամենաթանգագին զարդը լինել:

— Ո՞րքան արժեն այդ տեսակ մազերը, — հարցրեց Մուրադը:

— Երկու շուրուշ, միշտ այդ գնով ենք վաճառել, — պատասխանեց մազերի նմուշը մեզ ցոյց տուողը:

Երկու շուրո՜ւշ, գիտէ՞ք որքան է, — մօտաւորապէս տասն կոպէկ: Ասլանը վրդովուեցաւ:

— Ամօթ չէ՞, որ այդքան չնչին վճարների համար դուք պլանդակում էք ձեր կանանց գլուխները:

Յանդիմանութիւնը ազդեցութիւն չունեցաւ:

Նմուշը ցոյց տուող գիւղացին բաւական սառնասրտութեամբ պատասխանեց.

— Այստեղ մազերը շատ շուտով են աճում, պարոն, այդ աղջկայ մազերը երկու տարի չի լինի, որ կտրել են, այժմ նայեցէք, որքան աճել են:

Մազերի հարցը դեռ եւս երկար կարող էր զբաղեցնել մեզ, եթէ գիւղացիներից մէկը երեխայի նման ձեռքը չը տանէր դէպի Ասլանի ժամացոյցի շղթան, հարցնելով.

— Այդ ի՞նչ բան է:

Ասլանը դուրս բերեց ժամացոյցը եւ ցոյց տուեց նրան:

— Մասնատուփ է, — շտապեց իր կարծիքը յայտնել Քահանան, առանց մտածելու, որ այդ մարդը ոչ վարդապետ է եւ ոչ տէրտէր, որ իր հետ սուրբ հաղորդութեան մասնատուփ ման ածէ:

— Ոչ, ժամացոյց է, — նրա սխալը ուղղեց Ռէսը, աւելացնելով, որ մի այդպիսի ժամացոյց նա մի ժամանակ տեսել է Աղթամարի հոգեւոր տէրի մօտ:

Ռէսի վերջին խօսքը մի մեծ առհաւատչեայ էր Ալանի անձնաւորութեան նշանակութիւնը բարձրացնելու գիւղացիների աչքում, որովհետեւ այն իրը, որ կրում էր նա, իրանց երկրում ունէր միայն Աղթամարի կաթողիկոսը:

Ալանը բացարեց ժամացոյցը, սկսեց բացատրել նրանց, թէ ինչպէս նրանով իմանում են ժամերը: Ամենքը հաւաքուեցան նրա շուրջը եւ զարմացած նայում էին: Աւելի զարմացնում էր նրանց ժամացոյցի ձայնը: Վերջը մի յանդուգն երիտասարդ խլեց Ալանի ձեռքից, վազեց դէպի կանանց խումբը, որ նրանց էլ ցոյց տայ: Ես չը կարողացայ իմ ծիծաղը զսպել, տեսնելով, թէ նրանք ինչպէս խլխլում էին միմեանց ձեռքից, տանում էին դէպի իրանց ականջը եւ լսում էին ձայնը, տանում էին դէպի իրանց քիթը եւ հոտ էին քաշում: Բոլորովին հրաշք պէտք էր համարել, որ ժամացոյցը նրանց հետաքրքիր ձեռքերից ազատուելով, կրկին անվնաս իր տեղը հասաւ:

Գիւղի նախիրը սկսել էր վերադառնալ արօտից: Շրջակայքը մի առանձին կենդանութիւն ստացաւ բազմաթիւ անասունների բառաչմունքից. կովերը ծանրաբեռնուած ստինքներով, հազիւ կարողանում էին շարժուել. գեր ու պարարտ ոչխարները, ահագին դմակների ծանրութեան պատճառով, նոյնպէս կորցրել էին իրանց կայտառութիւնը: Ես լսել էի, բայց այժմ միայն աչքով տեսայ, որ այդ կող-

մերի ոչխարներից շատերի դմակները այնքան մեծ էին որ կապել էին փոքրիկ սայլակների վրայ, եւ այդ խեղճ անասունները, իբրեւ իրանց պարարտութեան մեղքը, անհնարին դժուարութեամբ քարշ էին տալիս իրանց ետեւից: Վազվըզում էին միայն թեթեւ այծերը: Ես առաջին անգամն էի տեսնում այդ տեսակ գեղեցիկ այծեր, երկայն, փափուկ եւ գանգուր մազերով: Այդ այծերի մազն է, որ տալիս է այն ընտիր, շալեղէն գործուածները, որ արդիւնաբերում է Ռշտունեաց աշխարհը: Մատակ ձիանները, իրանց սիրուն քուռակների հետ, կարծես, ծովից դուրս եկած "հրեղէն նժոյգներ" լինէին: Սիգալով, խրխնջալով, փոշի բարձրացընելով, այդ ուրախ մշտագուարճ անասունների երամակը, փոթորկի նման անցնում էր փողոցներից:

Ռէսը, ինչպէս ճանաչում էր իր գիւղի բոլոր բնակիչներին, այնպէս էլ ճանաչում էր համարեա բոլոր անասուններին: Առանց որեւիցէ նկատողութեան չէին անցնում նրա մօտից այդ անասունները: Ահա անցաւ Ներսօի մատակը.

— Ներսօի մատակի երկրորդ ծնունդն է, այդպէս չէ, — հարցնում էր նա իր մօտ նստողներից:

— Պէտք է երկրորդը լինի, — պատասխանում են նրան: Աստուած չար աչքից պահէ, հիմիկուայ քուռակը շատ լաւ ձի կը դառնայ,

— Ի հարկէ կը դառնայ, — նրանց կարծիքը հաստատում է ռէսը աւելի փաստական կերպով. — այդ քուռակի մայրը հինգ հարիւր տարուայ ազնուութեան վկայագիր ունի, իսկ հայրը Ռուստամի Խան-Մահմուդի նժոյգն էր. կռուի ժամանակ այնտեղից աւար բերեց Ներսօն:

Ազնիւ արիւն ունեցող նժոյգները, ազնուական, մարդկանց նման, տոհմային վկայականներ ունեն այդ կողմերում, բայց մեզ համար այնքան հետաքրքրական չէր Ներսօի մա-

տակի ցեղագրութիւնը, որքան Խան-Մահմուդ անունը, որ պատահմամբ յիշուեցաւ:

— Ձեր գիւղացիք էլ մասնակցում էին այն կռուո՞ւմ, — հարցրեց Ալանը:

— Ինչպէս չէ, — պատասխանեց ռէսը մի առանձին բաւականութեամբ. — բոլորը մասնակցում էին, մեծից մինչեւ փոքրը. մեր տէրտէրը իր մատները այն կռուի մէջ կտրեց: — Նա ցոյց տուեց մեզ մօտ նստած ալեւոր քահանայի վրայ:

Անցաւ Օհօի եղը: Խան-Մահմուդի կռուի պատմութիւնը ընդհատուեցաւ:

— Օհօի եղը ինչու այդպէս լղարել է, հիւա՞նդ է, ի՞նչ է: — հարցրեց ռէսը:

— Հիւանդ է, պատասխանեցին նրան:

— Խե՜ղճ մարդ, Աստուծոյ փորձանքից չէ ազատվում այդ մարդը, — ասաց ռէսը դառնալով դէպի մեզ: — Այս տարի նրա եզներից երկուսը բարձր ժայռից գլորուեցան եւ ոչ մէկը կենդանի չը մնաց. այդ մէկն էլ հիւանդ է, հիմա նրա արօրը բոլորովին անգործ մնացած կը լինի:

Այդ ցաւակցական խօսքերից յետոյ, ռէսը հրամայեց, որ առաւօտեան իր եզներից երկուսը տան Օհօին. առ ժամանակ բանեցնէ, մինչեւ նրա եզը առողջանայ, որպէս զի նրա արօրը անգործ չը մնայ:

Գիւղացու ոչխարների հօտերին եւ նրա անասունների նախիրին նայելով, կարելի է նրա տնտեսական ապահովութեան մասին գաղափար կազմել, կարելի է նրա հարստութեան չափը իմանալ: Մի ամբողջ ժամ անասունները գալիս էին ու գալիս, բայց դեռ վերջ չը կար: Ես աւելի համոզուեցայ, որ այդ գիւղացիք նիւթապէս ապահովուած մարդիկ են, երբ ռէսը ասաց.

— Այդ դեռ մեր անասունների մի մասն է միայն, իսկ մեծ մասը պահվում է հեռաւոր արօտատեղերում. Նրանց գիւղը կը բերեն ձմեռը միայն։

Անասուններից յետոյ խումբ-խումբ վերադառնում էին բանուորները դաշտային մշակութիւններից. վերադառնում էր հնձաւորը խոտունձից, երկար գերանդին ուսին դրած. վերադառնում էր հերկավարը, իր արօրը կամ գութանը առջեւը ձգած. վերադառնում էր սայլավարը, լծած եզները կամ գոմէշները քշելով։ Ամենքը ուրախ էին, ամենքի դէմքի վրայ նշմարվում էր անսահման գոհունակութիւն։ Ամենքը երգում էին, որպէս զինուորներ, որ վերադառնում են յաղթութեան դաշտից եւ մի նոր քաղաք են մտնում։ Բայց դրանք արեան հետ գործ չունէին, դրանք բնութեան եւ մայր երկրի հետ մաքառող զինուորներ էին։ Որքան մօտենում էին գիւղին, երգերի ձայնը այնքան անուշ էր հնչվում։ Ո՞վ է իմանում սրտերի գաղտնիքը, գուցէ երգողը մի պաշտելի ունէր, որ այդ րոպէում, աղբիւրի մօտ կանգնած, ջրի սափորը մի կողմը դրած, խորին զմայլմունքով լսում էր ծանօթ ձայնը։ Թո՛ղ այդ լսողը նրա կինը լինէր, նրա նշանածը լինէր, կամ նրա սիրուհին լինէր, այդ միեւնոյն է, բաւական է, որ երգողը գիտէր, որ մի սիրող սիրտ անհամբերութեամբ սպասում է նրա վերադարձին, որի կուրծքի վրայ նա կարող էր հանգչել օրուայ աշխատութիւններից յետոյ, — եւ այդ աւելի ոգեւորում էր նրան, աւելի ուժ եւ կեանք էր տալիս նրա ձայնին։

Ես առաջին անգամ տեսնում էի մի այդպիսի ուրախ հասարակութիւն։ Ինձ թւում էր, որ սպաննիչ հոգսը, վիշտը, տառապանքը, որ այդ կողմերում ամեն մի գիւղացու ճակատագիրն էր, — երբէք այդ գիւղին չէր մօտեցել։ Ինչո՞վ ձեռք բերեցին նրանք այդ ուրախութիւնը։ Ինչո՞վ

*հեռացրին իրանցից աւանդական լացը, կոծը ու արտասուքը։ Նա այդ քննութիւնների մէջ չէր մտնում. ես մխիթարվում էի միայն, որ ամէն տեղ միշտ թշուառութիւններ տեսնելուց յետոյ, վերջապէս տեսնում էի մարդիկ, որ աշխատում են, գործում են, եւ իրանց աշխատութեան արդիւնքը ամենայն բաւականութեամբ վայելում են։ Անգութ հարկահանը ծախել չէր տալիս նրա արօրի եզները, իսկ քուրդ ելուզակը չէր յափշտակում նրա անասունների հօտերը։*

*Ռէսը եւ նրա մօտ նստողները, որ մինչեւ այժմ նկատողութիւններ էին անում՝ անասունների վրայ, այժմ սկսեցին նկատողութիւններ անել դաշտից վերադարձող մշակների վրայ։*

*— Այդ Ցակօի տղան, ասում են գժութիւններ շատ է անում, նրա ականջները պէտք է փոքր ինչ ոլորել, — ասաց ռէսը, ցոյց տալով մի սրիկայադէմ պատանի, որը, իր գլխի քօլօզի վրայ փաթաթած գոյնզգոյն թաշկինակների մէջ զանազան ծաղիկներ խրած, մեր մօտից հպարտութեամբ անցնում էր։*

*— Մեզանից ո՞ր մէկը նրա հասակում գժութիւններ չէ արել, — ներողամտութեամբ պատասխանեց քահանան։ — Դեռ ջահիլ է, արիւնը նոր է եփ գալիս, կը մեծանայ, խելքը գլուխը կը գայ։*

*— Այդ Վանէսի տղան, ասում են, գործի չէ գնում. այս առաւօտ հայրը զոռով է դաշտը ուղարկել, — դարձեալ նկատեց ռէսը։*

*— Նա փոքր ինչ ծոյլ է, — վկայեցին ամէնքը։*

*— Նա գոնէ թող օրինակ առնէ Մաթոսի տղայից, որ տասն հոգու հաւասար է. մի օրուայ մէջ, որքան ասէք, հնձում է։ Նայեցէք, ամբողջ օրը աշխատել է հիմա մի մեծ շալակ խոտ է բերում հորթերի համար։*

— Թո՛ղ Աստուծոյ աչքը վրան լինի, շատ աշխատասէր տղայ է, — ձայն տուեցին ամէնքը։

Այսպէս, մէկի արժանաւորութիւնները գովելով, միւսի թերութիւնները պախարակելով, բարոյականութեան այդ վերահսկողները իրանց կարծիքը յայտնում էին իւրաքանչիւրի մասին։ Ի հարկէ, միւս օրը նրանք կը լսէին, լաւերը աւելի կը խրախուսուէին, իսկ վատերը կ'ուղղէին իրանց վարքը։ Ցարգանքը դէպի ծերը եւ նրա խրատները՝ — այդ հասարակութեան մէջ՝ սրբագործուած կանոններից մէկն էր։

Ուէսի տան դրան առջեւ մի ոչխար էին քերթում՝ մեզ համար ընթրիք պատրաստելու։ Բազմութիւնը հաւաքուած էր այնտեղ։ Անկարելի էր որոշել, թէ ո՛րն էր Ուէսի ընտանիքին պատկանում եւ ո՛րն դրացին։ Ամէնքը առանց խտրութեան զանազան ծառայութիւններ էին կատարում։

Ամբողջ գիւղում արդէն տարածուել էր, որ օտար մարդիկ են եկել։ Այդ նրանց համար մի մեծ նորութիւն էր, որովհետեւ օտար մարդկանց խիստ հազիւ անգամ էին տեսնում։ Այդ պատճառով մէկ-մէկ գալիս էին, հեռուից ուշադրութեամբ նայում էին մեզ վրայ եւ, իրանց հետաքրքրութիւնը գոհացնելով, դարձեալ գնում էին։ Ոմանք մօտենում էին եւ լուռ նստում էին մեզ մօտ։ Եւ այսպէս, մեզ շրջապատողների թիւը հետզհետէ աւելանում էր։ Ի՞նչ տպաւորութիւն էինք գործում մենք այդ կղզիացած, ամէն յարաբերութիւններից կտրուած գիւղացիների վրայ, — այդ դժուար էր որոշել, միայն նրանց առաջին հարցը լինում էր՝ "հայե՞ր էն„, եւ երբ դրական պատասխան էին ստանում, այն ժամանակ միայն սկսում էին աւելի մտերմաբար նայել մեզ վրայ։

Արեւը մտնելուց յետոյ՝ երեկոյեան զովը ցրտի փոխուեցաւ։ Այդ ցուրտը մեզ համար միայն զգալի էր, բայց գիւ-

ղացիք նրան այնքան սովորած էին, որ ամենքը դրսում էին ընթրիք անում, ամենքը դրսում էին պառկում, բաց օդի մէջ, եւ առաւօտեան ցօղը զովացնում էր նրան թեթեւ անկողինները:

Գեղեցիկ էր գիւղական երեկոն այդ ծովեզերեայ սարաւանդի վրայ: Խաւարի մէջ անգամ նա սքանչելի տեսարան էր ներկայացնում: Բոլոր խրճիթների ճրագները վառվում էին: Գիւղի զառիվեր դիրքի համեմատ, այդ ճրագալոյցը այնպիսի տպաւորութիւն էր գործում, կարծես թէ, նրանք օդի մէջ էին վառվում եւ, աստիճանաբար դէպի վեր բարձրանալով, միախառնվում էին աստղերի հետ: Երկնքի լուսատուները չէին որոշվում գիւղական խրճթի լուսատուներից:

Ցուրտը հետզհետէ աւելի զգալի էր դառնում: Մենք խնդրեցինք ռէսից, որ ընթրիքը ներսում տան եւ մեզ համար այնտեղ քնելու տեղ պատրաստեն: Երբ կտուրից ցած իջանք, երբ մտանք տունը, մեր առջեւ ներկայացաւ մի ստորերկրեայ ընդարձակ բնակարան, զանազան բաժանմունքներով եւ զանազան սենեակներով, որոնց դռները բացվում էին միմեանց մէջ: Դա մի գետնափոր աշխարհ էր, որի մռայլ խորշերում կարող էին բնակուել բազմաթիւ ընտանիքներ: Եւ ռէսի ընտանիքը փոքր չէր: Դրսից, երբ դեռ մենք կտուրի վրայ էինք գտնվում, ոչինչ չէր երեւում, — երեւում էին միայն գմբէթաձեւ փոքրիկ բարձրութիւններ, որոնց իւրաքանչիւրի գագաթի վրայ մի-մի երդիկ էր բացուած՝ թէ լոյս ընդունելու եւ թէ վառելու ժամանակ ներսից ծուխ դուրս տալու համար: Բայց երբ ներս մտանք, առաջին սենեակը, որ բացուեցաւ մեր առջեւ, իր մեծութեամբ կարելի էր այդ ստորերկրեայ բնակարանի դահլիճը համարել: Երկու կարգ փայտեայ հաստ սիւներ, վեցանկիւնի

տաշուածքով, զուգահեռաբար շարուած էին միմեանց մօտ, մինչեւ դահլիճի վերջը, որ կորչում էր մթութեան մէջ: Սիւների իւրաքանչիւրի գլխին հագցրել էին նոյնպէս փայտեայ մեծ խոյակներ, որոնք կրում էին իրանց վրայ առաստաղի ահագին գերանները: Խոյակները զարդարած էին զանազան քանդակներով, որոնց մէջ երեւում էր տեղային ատաղձագործի ճարտարութիւնը: Սիւները կանգնած էին քարէ պատուանդանների վրայ, որոնց հմուտ քարտաշը խիստ գեղեցիկ ձեւ էր տուել: Բոլոր սիւների կողքին ամրացրած էր մի-մի տախտակ, որ ձեռքի նմանութիւն ունէր, եւ նրանց վրայ ճրագներ էին դրուած: Ճրագները շինուած էին կաւից եւ աղաւնու նմանութիւն ունէին. այդ թռչունների կտուցներից դուրս ընկած պատրոյգները վառվում էին կտաւատի ձէթով: Սենեակի այն մասը, որտեղ մեզ համար նստելու տեղ էին պատրաստել, բոլորովին լուսաւորուած էր: Բացի ճրագներից, սիւների վրայ ամրացրած փայտեայ կախաններից քարշ էին ընկած զանազան զէնքեր եւ հրացանի պարագայք, — քարշ էին ընկած նաեւ փոքրիկ զամբիւղներ, որոնց մէջ տեսակ-տեսակ իւղէններ էին լցրած: Սիւների այդ բոլոր զարդարանքները լրացնում էին դեղին եւ ծիրանեգոյն „անթառամ ծաղիկները", որ մեծ փունջերով կապած էին նրանց վրայ: Այդ դահլիճից բացվում էին զանազան դռներ դէպի միւս սենեակները, որոնք նոյն ձեւով էին շինուած եւ ծառայում էին որպէս մթերանոց, որպէս ամբար, որպէս մառան, եւ որոնք լի էին ամեն տեսակ բարիքներով: Տան տիրոջ բոլոր հարստութիւնը ակներեւ էր: Միեւնոյն բնակարանից մի առանձին դուռն տանում էր դէպի խոշոր, եղջիւրաւոր անասունների ախոռատունը եւ դէպի ձիաների փարախը: Անասունները եւ իրանց տէրերը սերտ դրացութեան մէջ էին ապրում:

Գետնափոր խրճիթ ասելով, ես սովոր էի երեւակայել գետնափոր խորշեր, որոնք գազանների որջից այնքանով են միայն զանազանվում, որքանով զանազանվում է կիսավայրենի մարդը գազանից։ Բայց գետնափոր խրճիթը եւս ունի իր կատարելագործուած ձեւը, որի մէջ արհեստը եւ ճարտարութիւնը մեծ յառաջադիմութիւն են գործել։ Մեր մտած խրճիթը այդ տեսակներիցն էր։ Շինութեան ամբողջ կազմուածքի մէջ երեւում էր մեծութիւն, զօրութիւն եւ ահեղ ձեռքի ահեղ գործ։ Շինութեան բոլոր պատերը կառուցել էին քարերից, բայց այդ քարերը աւելի ժայռեր էին, քան թէ քարի մանր կտորներ։ Հսկայ կիկլոպները միայն կարող էին այդ ժայռերը միմեանց վրայ շարել եւ իրանց համար բնակարան կառուցանել։ Բայց կիկլոպները իրանց ամբարտակի ժայռերը չէին միացնում որեւիցէ շաղախով, իսկ այստեղ կրային շաղախը այնպէս կպել էր ժայռերը միմեանց հետ, որ ահագին պատերը ձեւացնում էին քարեղէն ամուր, միապաղաղ զանգուած։ Եւ այդ բոլորը կառուցել էր գետնի տակ, ուր արեւի ճառագայթները երբեք չէին թափանցում, ուր մշտական մթայլի մէջ ապրում էր մի մռայլ ժողովուրդ եւ երկնքի լոյսը տեսնում էր իր ստորերկրեայ վիրապի նեղ երդիկից միայն։

Մռա՛յլ էր, մռա՛յլ... եւ այդ մռայլ մթութիւնը խիստ ճնշող, սարսափեցնող տպաւորութիւն էր գործում։ Մռայլ գոյն էին ստացել ահագին պատերը, մռայլ գոյն էին ստացել առաստաղի հաստ գերանները, մռայլ գոյն էին ստացել փայտեայ մեծ սիւները. մռայլ գոյն էին ստացել եւ նրանց վրայ կապուած “անթառամ ծաղիկների„ խոշոր փունջերը։ Եւ այդ ներկը տուել էր բոլոր առարկաներին մշտական ծուխը, որ վեր էր բարձրանում մշտավառ կրակից։ — Դա տնային անհանգչելի օ ջ ա խ ն էր, այն սրբութիւնը, որի

անունով մինչեւ այսօր էլ երգվում է հայ գիւղացին։ Այդ օջախը կազմւած էր սենեակի կենտրոնում, որտեղ մխում էին մի քանի կտոր փայտեր, — մխում էին, երբեմն աղօտ բոցեր եւ երբեմն մեղմ կայծեր արձակելով։ Այդ օջախի շուրջը ձմեռնային գիշերներում հաւաքվում էր նահապետական գերդաստանը եւ տան ծերունին պատմում էր երեխաներին հայրերի գործը։ Այդ օջախը փոխարինում էր երկնքի արեգակին, այդ օջախը լոյս եւ ջերմութիւն էր սփռում մռայլ բնակարանին։ Այդ օջախը վառվում էր միշտ, նրա կրակը երբէք չէր հանգչում։ Այդ օջախը յիշեցնում էր ինձ Էտնայի մշտավառ կրակը, որտեղ կիկղոպները Արամազդի համար շանթեր էին դարբնում։ Բայց ես այստեղ շանթեր չէի տեսնում, — այդ կրակից միայն մեղմ կայծեր էին ցայտում... Թէեւ այդ հրաբուխի մէջ նոյնպէս կիկղոպներ էին բնակվում...

Ռէսի ընտանիքը մեծ էր, մեծ էր, որպէս նրա ընդարձակ բնակարանը։ Այստեղ ապրում էին մի քանի սերունդ միասին՝ մեծ պապը, նրա որդիները, նրա թոռները եւ նրա թոռնեայքը։ Տան սրահում քանից աւելի օրօրոցներ էին ճօճվում։ Հարսներով, աղջիկներով, երիտասարդներով ու պատանիներով լի էր տունը։ Երեխաները թիւ ու համար չունէին։ Ռէսը իր տասն եւ մէկ եղբայրների միջնակն էր։ Նոյն թուի կէսի չափ քոյրեր ունէր նա։ Նրա մայրը դեռ կենդանի էր, իսկ հայրը երկու տարի առաջ վախճանուել էր հարիւր եւ հինգ տարեկան հասակում։ Մեծ պապին ես չը տեսայ. նա գնացել էր մերձակայ գիւղը իր աղջկան տեսնելու։ Բոլոր եղբայրները ապրում էին անբաժան, միասին եւ նոյն հարկի տակ. կրտսերը խոնարհվում էր աւագին։ Իսկ բոլորի վրայ իշխում էր մեծ պապը — գերդաստանի հայրապետը։ Նայելով այդ ընտանիքին, ես մտաբերում էի մեր Հայկ նա-

հայկեան գերդաստանը, որ բաղկացած էր երեք հարիւր հոգուց։ Այստեղ թէեւ այն թիւը չը կար, բայց իր սպասաւորներով, աղախիններով եւ ընդոծիններով նրա երրորդ մասը անպատճառ կը լինէր։

Առանց հրաւիրելու, մեզ հետ ընթրիք ուտելու եկան այն բոլոր անձինքը, որ կտուրի վրայ ռէսի մօտ նստած էին։ Դա մի առանձին պատիւ էր՝ թէ՛ դէպի մեզ եւ թէ՛ դէպի ռէսը, որ նրա հիւրերին միայնակ չէին թողնում։ Սեղանը ճոխ էր եւ համադամ։ Իւղը առատութեամբ ծփում էր կերակուրների երեսին։ Եթէ կերակուրների բազմատեսակութիւնը եւ նրանց լաւ պատրաստութիւնը կարելի է կրթութեան եւ ճաշակի մի որոշ չափ համարել, այդ կէտից, զարմանալի էր տեսնել՝ այդ սարերկրեայ բնակարանում այն տեսակ կերակուրներ։ Ամենքը սպասում էին քահանային, որ սեղանը օրհնէ եւ ապա սկսէին ուտել։ Մեզ շրջապատող խոշոր երեւոյթների համեմատ, սեղանի վրայ եւս նշմարվում էր խոշորութիւն եւ մեծութիւն. — պղնձեայ խոշոր պնակների մէջ ածած էին կերակուրները, փայտեայ խոշոր քթաններով ուտում էին խոշոր ժայռերի սրտում բնակուող խոշոր մարդիկը։ Թէ՛ կերակուրները եւ թէ՛ հացը այնքան առատութեամբ դրուած էին սեղանի վրայ, որ, ինչպէս ասում են, ասեղ քցելու տեղ չէր մնացել։ Այդ նրա համար էր, որ հիւրերը չամաչէին, չը քաշուէին, որ ուտէին, որքան կամենում են, եւ դարձեալ մեծ մասը մնար սեղանի վրայ։ Այդ ամօթը ոչ այնքան շատակեր հիւրին, որքան տան տիրոջը կը վերաբերէր, եթէ նրա սեղանի մի փոքրիկ մասն անգամ բացուէր։ Սեղանը միշտ պէտք է ծածկուած մնար ուտելիքների տակ։ Ոտքի վրայ՝ մեզ պատուելու համար՝ ծառայում էին տան հարսները, աղջիկները եւ պատանիները։ Կատարեալ իրարանցում էր տիրում, երբ որ եւ

իցէ պատուէր էին տալիս այդ ընտանեկան սպասաւորներին. Նրանցից իւրաքանչիւրը շտապում էր, որ ինքը կատարէ հրամանը։ Կանայք թէեւ մեզ հետ չէին խօսում, բայց, ուրիշ տեղերի հայ կանանց նման, երեսները չէին ծածկում։ Աղջիկները եւ խօսում էին, ե՛ւ ծիծաղում էին։ Ռէսի ընտանիքից, բացի նրա աւագ եղբայրներից, ոչ ոք սեղանի վրայ նստած չէր։ Կրտսեր եղբայրները, ձեռքերը կուրծքի վրայ խաչաձեւ դրած, անշարժ կանգնած էին եւ հրամանի էին սպասում։ Կանանցից ոչ ոք սեղանակից չէր։ Այդ սովորութիւնը պահպանվում է ոչ միայն այն ժամանակ, երբ սեղանի վրայ օտար հիւրեր կան, այլ եւ իրանց ընտանեկան շրջանում կինը տղամարդի հետ միասին չէ ճաշում։ Նախ ուտում են տղամարդիկ եւ ապա կանայք։ Չը նայելով, որ հիւրերի թիւը այնքան շատ էր, որ դահլիճի մի ծայրից մինչեւ միւսը բռնել էր, բայց դարձեալ նոր եւ նոր հիւրեր էին գալիս, ողջունում էին եւ լուռ նստում։ Այդ ինքնակոչ հիւրերի համար նոր կերակուր էին բերում։ Մուշից բերել տուած գինին առատ էր. խմում էին մեծ գաւաթներով, եւ այնքան ախորժակով, որ ինձ յիշեցնում էին Հոմերոսի հերոսներին։ Խօսում էին մեծերը եւ հասակաւորները միայն, եւ աւելի միջոց էին տալիս, որ մենք խօսենք։ Ասլանը հարցրեց.

— Ի՞նչպէս են ձեր յարաբերութիւնները քրդերի հետ։

— Վատ չեն, — պատասխանեց ռէսը։ — Առաջ միմեանց հետ այնպէս էինք, ինչպէս շուն ու կատու, բայց հիմա այնպէս ենք, ինչպէս լաւ դրացիներ։ Մենք նրանց տունն ենք գնում, նրանք մեր տունն են գալիս, եւ մեր անասունները միասին միեւնոյն արօտատեղիներում են արածում։ Երբեմն մեր գիւղացիներից ոմանք “զօմա„ չեն գնում, իրանց ոչխարները յանձնում են նրանց, տանում են լեռ-

ների վրայ, ամբողջ ամառը պահում են և աշնան վերջերում բերում, ողջ ու առողջ յանձնում իրանց տիրոջը: Ոչինչ վարձ էլ չեն ընդունում, երբ տէրը առաջարկում է նրանց, ասում են՝ «Հարևանութիւն է, այսօր ես եմ քեզ պէտք գալիս, էգուց դու ինձ պէտք կը գաս»: Եւ այդպէս էլ լինում է, երբեմն ձմեռը երկարում է, նրանց անասունների ճարակը սպառվում է, մեր գիւղացիք բերում են նրանց անասունները, իրանց փարախներում պահում են, մինչև գարնան խոտը բուսնում է, յետոյ գալիս են, տանում են:

— Միշտ այդպէ՞ս են եղել ձեզ հետ քրդերը:

— Առաջ այդպէս չեն եղել. Առաջ մեր գիւղացին իր ունեցածի տէրը չէր: Ինչ լաւ բան, որ տեսնում էին նրա մօտ, կամ յայտնի կերպով յափշտակում էին, կամ գաղտնի կերպով գողանում էին: Ոչ միայն մեր անասունների, այլև մեր կանանց ու աղջիկների տէրը չէինք...

— Ի՞նչպէս եղաւ, որ այժմ այդպէս բարի դարձան քրդերը:

— Մենք ստիպեցինք նրանց բարի լինելու, — ժպտալով պատասխանեց քահանան: — Առաջ ինչ որ անում էին, ձայն չէինք հանում, համբերում էինք, կարծում էինք, որ այդպէս լաւ է, գուցէ մեր խոնարհութեամբ նրանց չարութիւնը խափանենք: Բայց որքան համբերեցինք, նրանք աւելի կատաղեցան: Սկսեցինք մենք էլ նոյն կերպով վարուել նրանց հետ: Նրանք մեր մի ոչխարն էին գողանում, մենք փոխարէնը տասն էինք գողանում: Նրանք մեր մարդու մի մատն էին կտրում, մենք մեր ձեռքն ընկած քրդի գլուխն էինք կտրում: Եւ ինչու՞ պէտք է մեր մեղքը ծածկեմ. շատ անգամ բոլորովին անմեղ քրդեր, երբ մեր լեռների մէջ պատահում էին, բռնում էինք, և հանգստացնելով, թաղում էինք քարերի տակ: Այդ որ տեսան, քրդերը աւելի

կատաղեցան։ Մի քանի անգամ խումբերով յարձակուեցան մեր գիւղի վրայ, բայց երբ փորձեցին, որ մենք հեշտ կուլ տալու պատառ չենք, այն ժամանակ իրանց չափը ճանաչեցին։ Հիմա երկիւղից մեր գիւղի մօտովն էլ չեն համարձակվում անցնել. շատերը բարեկամացել են մեզ հետ, շատերն էլ մեր բարեկամութիւնն են որոնում...

— Եւ դուք հաւատո՞ւմ էք նրանց։

— Հաւատալու պէտք չունենք. «սոխը որտեղ էլ անկես, իր համն ու հոտը չի կորցնի». այդպէս էլ քուրդը միշտ քուրդ կը մնայ։ Բայց երբ նա տեսնում է, որ եթէ ինձ մի վնաս հասցնելու լինի՝ անպատիժ չի մնայ, սկսում է իր վարմունքների մէջ զգոյշ լինել ինձ հետ։

— Տեղային կառավարութիւնը ի՞նչպէս էր նայում ձեր վարմունքների վրայ, երբ դուք սկսեցիք քրդերին քրդի ձեւով պատասխանել, այսինքն ուզում եմ ասել, երբ սկսեցիք նոյնը անել, ինչ որ նրանք ձեզ հետ անում էին։

— Կառավարութիւնը եթէ խելք ունենար՝ պէտք է խրախուսէր մեզ, որովհետեւ մենք նրա գործը հեշտացնում էինք, անկարգներին պատժելով եւ խաղաղութիւնը վերականգնելով։ Բայց նա սկզբում հալածեց մեզ, իր հին նախապաշարմունքով, թէ «գաւուրը» իրաւունք չի պիտի ունենայ՝ մահմեդականին այն անել, ինչ որ մահմեդականը նրան անում է։ Եւ եթէ նա այնքան անզօր չը լինէր, որպէս է մեր կողմերում, կարող էր վնասել մեզ։

Քահանայի պատասխանը աւելի պարզեց ռէսը, աւելացնելով.

— Գիտէ՞ք, պարոն բժշկապետ, մեր կառավարութիւնը փափուկ տեղերի փորփրողն է, երբ պինդ տեղը հասաւ, բրիչը մի կողմ կը դնէ։ Ինչո՞ւ մուդիրը, գայմագամը եւ դրանց նման այլ պաշտօնակալներ՝ քուրդ աւազակի, քուրդ

մարդասպանի ետեւից չեն ընկնում, որովհետեւ գիտեն, որ եթէ նրանց նեղացնելու լինեն, մի օր էլ իրանց տունը կողոպտուած կը տեսնեն, եւ իրանց գլուխն էլ իր տեղումը չի մնայ:

— Քրդից, իրաւ է, նրանք այդ երկիւղը կարող են ունենալ, բայց հայի՞ց...

— Հայից, ճշմարիտ է, չեն ունենայ, բայց ոչ ամեն հայից... պատասխանեց ռէսը վիրաւորուած եղանակով: — Ինչո՞վ ենք մենք պակաս քրդից: Այս րոպէում, եթէ ձայն տալու լինեմ, ամբողջ գիւղը ոտքի կը կանգնէ, ուր որ ասելու լինեմ, կը գնան, ինչ որ հրամայելու լինեմ, կը կատարեն:

— Բայց մի գիւղ, լաւ մտածեցէք, ի՞նչ բան է մի գիւղը...

Ասլանը, կարծես. աշխատում էր բարկացնել ռէսին, որ նա աւելի ասէր, ինչ որ չէր ցանկանայ ասել:

— Միայն մի գիւղ չէ, պարոն բժշկապետ, խօսեց նա դարձեալ զայրացած եղանակով, — մեր ամբողջ ծովեզերքի բնակիչները նոյն հոգին եւ նոյն սիրտն ունեն: Ի հարկէ, մենք այժմ այն չենք անում, ինչ որ առաջ անում էինք. մենք այժմ ի զուր տեղը ոչ ոքին վնաս չենք տալիս: Եթէ առաջ շատ անգամ բոլորովին անմեղ մարդկանց բռնում եւ մորթում էինք, այդ նրա համար էր, որ մեր թշնամիներին ցոյց տանք, թէ տեսէք, եթէ դուք չարութիւն կ'անէք. մենք էլ ընդունակ ենք նոյնն անելու, լաւն այն է, որ ո՛չ դուք անէք եւ ո՛չ մենք, այլ ապրենք միասին, որպէս բարի դրացիներ: Եւ այդպէս էլ եղաւ. մեր ցոյցերից յետոյ՝ քրդերը բարեկամացան մեզ հետ, որովհետեւ նրանք գիտեն յարգել քաջութիւնը: Այժմ շատ դէպքերում, երբ նրանք կռիւ ունեն միմեանց հետ, մեր օգնութեանն են դիմում:

— Իսկ եթէ ձե՞զ հարկաւոր լինի նրանց օգնութիւնը:

— Չե՛ն խնայի:

Ես մտաբերեցի Թօմախ-Արթինի առածը. “Թուրքին ծեծիր, հետը բարեկամացիր„:

Ասլանը հարցրեց.

— Ինձ շատ զարմացնում է այն, թէ ի՛նչ հրաշքով կատարուեցաւ ձեր կեանքում այդ մեծ փոփոխութիւնը, որ դուք ձեր վաղեմի ստրկութիւնից (որը այլ բառերով սովորել էիք հնազանդութիւն եւ համբերութիւն կոչել) յանկարծ դուրս եկաք, եւ սկսեցիք անձնապաշտպանութեան դիմել: Ո՞վ մտցրեց ձեր մէջ այդ միտքը եւ այդ հոգին: Ո՞վ սովորեցրեց ձեզ ընտրել զէնքը՝ որպէս գլխաւոր միջոց եւ գրաւական՝ թէ թշնամու եւ թէ բարեկամի հետ խաղաղութիւն պահպանելու:

— Մենք այդ բոլոր փոփոխութիւններով պարտական ենք մեր սիրելի վարժապետին, — պատասխանեց ռէսը: — Նա բացարեց թէ մեր աչքերը եւ թէ մեր կապուած, կաշկանդուած ձեռքերը: Նա մտցրեց մեր մէջ անձնապաշտպանութեան ոգին, սովորեցրեց բարեկամի հետ բարեկամ լինել թշնամու հետ թշնամի, եթէ չը հաճի բարեկամանալ: Նա մեզ հետ քաջութեամբ մասնակցում էր այն բոլոր գործերում, որ կատարուեցան վերջին տարիներում: Բայց ո՜րքան գործեր կատարուեցան այդ ժամանակներում... Ո՛րքան զոհեր տուեցինք մենք, մինչեւ կարողացանք փոքր ի շատէ ապահովել մեր դրութիւնը... Աղետալի՜, շատ աղետալի՜ էին այդ ժամանակները... մենք միշտ արիւնոտ ձեռքով էինք ուտում մեր հացը, եթէ մի րոպէ միջոց էինք գտնում ուտելու...

Վերջին խօսքերի ժամանակ ռէսի ձայնը դողդողաց, նրա այրական դէմքը ընդունեց խիստ տխուր արտայայտու-

թիւն։ Ալանը իր հարցերով զարթեցրեց նրա մէջ անցած ժամանակների մոռացուած յիշողութիւնները, որոնք, որքան ցաւալի էին, նոյնքան եւ ուրախացուցիչ էին...

Ընթրիքը բաւական երկար տեւեց. նրանք սպասում էին “սիրելի„ վարժապետին, որ գնացել էր մերձակայ լեռան հովիւների մօտ եւ պիտի վերադառնար երեկոյեան։ Երբ տեսան, որ ուշացաւ, քահանան օրհնեց սեղանը։ Վերջին օրհնութիւնը լի էր մի շարք բարեմաղթութիւններով։ Նա օրհնեց կերողներին, կերակրողներին, սեղանը պատրաստողներին, ոտքի վրայ ծառայողներին, նրանց կենդանիներին եւ ննջեցեալներին։ Նա օրհնեց եւ նրանց, որ ուտելու հաց չունեն, որ քաղցած են, եւ բարեմաղթում էր նրանց համար Նախախնամողի ողորմածութիւնը։ Նա օրհնեց բոլոր նեղեալներին եւ կարօտեալներին, եւ ամենի համար լիութիւն ու անդորրութիւն էր խնդրում։

Երբ մեր սեղանը հաւաքեցին, դրսում, սրահի մէջ, երկու առանձին սեղաններ պատրաստուեցան. մէկի շուրջը հաւաքուեցան կանայքը իրանց երեխաների հետ, իսկ միւսի շուրջը հաւաքուեցան ոտքի վրայ ծառայող տղամարդիկը։ Կանայքը նստած էին մութի կողմում, իսկ տղամարդիկ լոյսի կողմում. կանայքը լուռ էին, իսկ տղամարդիկ խօսում էին, ծիծաղում էին, հանաքներ էին անում, մի քանիսը մինչեւ անգամ սկսեցին երգել։ Ես առաջին անգամն էի լսում լեռնցի հայի երգը, որ իր սարերի մելամաղձոտ արձագանքի նման՝ կտրատւում էր, կտրատւում էր երկարաձիգ լէ-լէ-ներով, եւ ապա աստիճանաբար խլանում էր, եւ վերջին տխուր հնչիւնները հանգչում էին երգողի սրտի խորքում։

Մեզ մօտ եղած հիւրերը քաշուեցան սենեակի պատերի տակը, վառեցին երկար չիբուխները, սկսեցին ծխել։ Ճոխ ընթրիքից յետոյ հանգստութիւն էին վայելում։ Ծխա

օտարոտի էր նրանց նստելու ձեւը այդ միջոցին. նրանք աւելի պառկած էին, քան 'թէ նստած: Իւրաքանչիւրը ուսով պատին կռթնած, թեւքի մի արմունկով յատակին յենուած, ոտները կամ մեկնել էր, եւ կամ ծնկները վեր բարձրացնելով, ոտներով մի տեսակ կամուրջ էր կազմել: Միայն ռէսը եւ քահանան ծալապատիկ նստած էին մեզ մօտ: Միւսները կատարեալ ազատութիւն էին վայելում, եւ իրանց նստուածքին ինչ ձեւ որ ուզում էին, տալիս էին: Անկարելի էր այդ միջոցին մօտենալ նրանց չիբուխներին եւ կրակ վառել. մի այսպիսի յանդգնութեան համար պատրաստ կը լինէին արիւն թափել:

Մի քանի անգամ եւս յիշուեցաւ “սիրելի„ վարժապետի անունը, ամենքը զարմանում էին, թէ ինչու այդքան ուշացաւ նա, եւ ոմանք կասկածում էին՝ մի գուցէ որ եւ իցէ վտանգ պատահած լինէր նրան:

— Նրա հետ ինչ կարող է պատահել, — նկատեց հիւրերից մէկը, — նա այնպիսի մարդ է, որ ծովը կը մտնէ եւ ցամաք դուրս կը գայ:

Տեսնելով, որ այնքան անհանգիստ են վարժապետի մասին, Ասլանը հարցրեց, արդեօք գո՞հ են նրանից:

— Ինչպէ՞ս գոհ չը լինել, պարոն բժշկապետ, — պատասխանեց քահանան, — նա ոչ միայն մեր երեխաների վարժապետն է, այլ մեր ամենի վարժապետն է: Մենք շատ բան սովորեցանք նրանից, այո՛, շատ բան... ոչ այնքանը միայն, որ մի քանի րոպէ առաջ պատմեց ձեզ մեր յարգելի ռէսը:

Հայոց գիւղերում վարժապետը եւ շինական քահանան միշտ անհաշտ եւ հակառակ դիրքի մէջ են լինում միմեանց հետ, այժմ զարմանալի էր լսել քահանայից վարժապետի մասին գոհունակութիւն:

— Ի՞նչ սովորեցաք նրանից, — հարցրեց Ասլանը հետաքրքրութեամբ։

— Շատ բան սովորեցանք, — կրկնեց քահանան համոզիչ եղանակով. — օրինակ, այսօր, գիտէ՞ք ինչու համար է նա գնացել սարը, մեր հովիւների մօտ. — այնտեղ պանիր են մակարդում, գնացել է տեսնելու, արդեօք իր պատուէրների համեմատ են մակարդում, թէ ոչ։ Նա սովորեցրեց մեզ բոլորին նոր ձեւով պանիր շինել։ — Այդ պանիրը, որ հիմա կերանք, ի՞նչպէս էր։

— Շատ պատուական պանիր էր։

— Այդ նրա սովորեցրած ձեւովն է պատրաստուած։ Նա բժշկութիւն էլ է իմանում. երբ գիւղերում հիւանդներ են պատահում, նրան կանչում են, բոլորի մօտ գնում է, ոչ միայն հայերի, այլ մինչեւ անգամ քրդերի մօտ։ Երբ փող են առաջարկում, նա վիրաւորվում է։

— Բժի՞շկ է։

— Ո՛չ, այնպէս, գրքեր կարդալով, սովորել է, բայց մի լաւ բժշկից աւելի է իմանում։ Նա մեր երեխաների դասատուութեան համար էլ ոչինչ վարձ չէ ընդունում. ասում է՝ ինձ փող հարկաւոր չէ, ինձ մի կտոր հաց տուէք ուտեմ եւ մի տեղ տուէք պառկեմ, այդքանն էլ բաւական է։ Մի խօսքով, զարմանալի անշահասէր մարդ է։

— Ուրեմն գիւղացիք սիրում են նրան։

— Իրանց հոգու պէս։ Նա մեր երկրագործական մշակութիւնների մասին եւս շատ օգտաւէտ խորհուրդներ է տալիս. ինչ որ նրա խորհրդի համեմատ ենք անում, տեսնում ենք, որ աւելի լաւ է լինում, քան թէ այն ձեւով, որ մենք առաջ սովոր էինք մշակել։ Անասունների հիւանդութեան դարմանն էլ է իմանում. անասունների ցեղը ազնուացնելու եղանակն էլ է իմանում։ Տեսա՞ք մեր անա-

սուններըը, ոչ մի տեղ մեր շրջակայքում մեր գիւղի անասուններին նմանը չը կայ։ Անդադար նոր եւ նոր գրքեր է բերել տալիս, կարդում է, ինքը սովորում է, եւ մեզ էլ նոր բաներ է սովորեցնում։

— Ի՞նչ լեզուով են լինում այդ գրքերը․

— Չը գիտեմ, այդքանը միայն գիտեմ, որ հայերէն չեն։

Ուրախալի էր լսել այդ բոլորը քահանայի բերանից։ Որքան սխալ պէտք է համարել այն կարծիքը, որ կազմուել է մեր գիւղացիների մասին, թէ նրանք մոլեռանդ են, նախապաշարուած են ուսման դէմ, կամ մինչեւ անգամ թշնամի են ուսման եւ հալածում են ուսուցիչներին։ Ո՛վքեր են այդ հալածեալները, ո՛վքեր են գնում գիւղերը, ո՛վքեր են մտնում ժողովրդի մէջ։ — Ոչ մի օրինաւոր կերպով պատրաստուած մարդ, որ գիւղացուն պիտանի լինէր, եւ ոչ մի բարոյական մարդ, որ գիւղացու աչքում բարի օրինակ դառնար։ Քաղաքի ուսեալների մուրը թափվում է գիւղերի մէջ։ Քաղաքի անպիտանը՝ գիւղում իրան պիտանի է համարում եւ յանձն է առնում գիւղացու կրթութեան գործը։ Նա իր անբարոյական բարք ու վարքով զզուանք է յարուցանում ոչ միայն դէպի իր անձը, այլ եւ դէպի ուսումը, որ նա տալիս է։ Անձնաւորութեան մուրը քսվում է եւ գործի վրայ։ Գիւղացին սկսում է խիստ լոգիկապէս դատել․ "Եթէ ուսումը այդ է, եթէ ուսում առած մարդը այդպէս կը լինի, լաւ է, որդիս չը փչացնեմ"․․․ Ցոյց տուեցէ՛ք նրան բարի օրինակ, ցոյց տուեցէք ուսման շօշափելի օգուտները, եւ կը տեսնէք, նա կը սկսէ սիրել թէ՛ ուսումը եւ թէ՛ ուսում տուողին։ Ես ուրախ էի, որ այդպիսի մի անգնահատելի անձն մեր խօսակցութեան առարկան էր։

Ռէսը բոլորովին այլ կէտից սկսեց գնահատել վարժապետի արժանաւորութիւնները, ասելով․

— Նա որքան շատ ուսում ունի, որքան շատ բան գիտէ, մի և նոյն ժամանակ, շատ քաջ մարդ է։ Նա իմանում է լաւ հրացան արձակել, և մեր երեխաներին ևս սովորեցնում է նշան խփել։ Նա իմանում է ծովում լաւ լող տալ, և մեր երեխաներին ևս սովորեցնում է ջրի հետ այնպէս խաղալ, ինչպէս ցամաքում։ Ուրիշ ինչեր չէ սովորեցնում նա. վազել, լայն փոսերի վրայից թռչել, սարերում պատի նման հարթ ժայռերից վեր բարձրանալ, քարի կամ երկաթի ծանր կտորներ ձեռքի վրայ շարժել, գերանների կամ պարանների վրայ ճախարակի նման զանազան պտոյտներ գործել, թռիչքներ անել, և այլն։ Դրանք շատ հարկաւոր բաներ են, մանաւանդ մեր լեռների մէջ և մեր դրութեան մէջ։ Մենք հրեշտակների հետ չենք ապրում. մենք գազանների հետ ենք ապրում. պէտք է մարդ վազել գիտենայ, երբ պատահում է փախչել, և արագաշարժ ոտներ ունենայ, երբ կամենում է բռնել։

Միայն սպարտական կեանքով ապրող մի հասարակութեան ներկայացուցիչը կարող էր ռէսի նման գնահատել մարմնամարզութեան առողջարար, կենդանացուցիչ, և հոգին, միտքը ու մարմինը կազդուրիչ նշանակութիւնը, — կարող էր հասկանալ և նրա նշանակութիւնը կեանքի պատահարների դէմ մաքառելու մէջ։

Թէ ռէսի, թէ քահանայի հայեացքների մէջ, և թէ առհասարակ նրանց դատողութեան բոլոր ձևերի մէջ՝ խիստ ակներև կերպով երևում էր իրանց սիրած վարժապետի ազդեցութիւնը։ Այդ մարդիկը բոլորովին այլապէս էին վերաբերվում կեանքին և նրա պահանջներին, քան թէ՝ որքան պատահել էր ինձ լսել՝ հայ շինականի դատողութիւնը։

Զարմանալին այն էր, որ մեզ մօտ գտնուած միւս գիւղացիներն ևս բաժանում էին ռէսի հայեացքները։ Կեանքի

անհրաժեշտութիւնները, կարծես, ամենի համար պարզ էր։ Իւրաքանչիւրը ցանկանում էր իր զաւակին այնպէս պատրաստուած տեսնել, որ նա աշխարհի մարդ լինէր եւ նրա հարուածների տակ չընկճուէր, չը խորտակուէր։

— Սրահում լսելի եղաւ ուրախաձայն աղաղակ.

— Բարով, Արգար ախպար, բարով…

— Եկաւ վարժապետը, — ասաց ռէսը, նոյնպէս ուրախանալով։

Մեր ամենքի աչքերը դարձան դէպի դռները։ Ծիծաղելով ներս մտաւ մի բարձրահասակ, յաղթանդամ ուրախադէմ երիտասարդ, անփոյթ կերպով անցաւ սենեակի միջով, ձեռքի երկար նիզակը դրեց մի անկիւնում, եւ ապա մօտեցաւ մեզ։ Իր հագուստով չէր որոշվում նա միւս լեռնականներից. նոյնպէս կուրծքը կիսաբաց, բազուկները հոլանի, թաղիքեայ երկաթագամ տրեխները հագին, գլխի քօլօզը փաթաթած գոյնզգոյն թաշկինակներով, եւ նրանց տակից արձակ թողած երկայն մազերը ծածանվում էին մերկ պարանոցի վրայ։ Որքան աշխատել էր նա նմանուել այն հասարակութեանը, որի հետ գործ ունէր։

Նա նայեց մեզ վրայ եւ նրան տիրեց մի տեսակ շփոթութիւն . . . Ոչ սակաւ շփոթուեցանք եւ մենք . . . Բայց իսկոյն զսպելով իրան, ձեռքը մեկնեց նա Ասլանին, ասելով.

— Այս գիւղի վարժապետը՝ Արգար Ոստանիկ։

— Բժշկապետ Քարլ Ոխման, — ներկայացրեց իրան Ասլանը, յետոյ ծանօթացրեց մեզանից ամեն մէկին։

Նա նստեց քահանայի մօտ եւ, դառնալով դէպի ռէսը, ասաց.

— Լաւ հիւրեր էք ունեցել։ Ցաւում եմ, որ չը հասայ ընթրիքին։

— Շատ սպասեցինք ձեզ, Արգար ախպար, — պատասխանեց ռէսը, — ինչո՞ւ այդքան ուշացաք։

— Գիտէք, էլի՜... Երբ ես հովիւների մօտ եմ գնում, ամէն բան մոռանում եմ... Նրանք էլ ինձ համար մի գառն էին մորթել, — պատասխանեց նա, աշխատելով սառնասիրտ ձեւանալ, թէեւ նրա ձայնը զգալի կերպով կտրատվում էր սրտի յուզմունքից...

Նա դարձաւ դէպի Ասլանը.

— Ներեցէք, պարոն բժշկապետ, իմ անտեղի հարցասիրութեանը, — դուք ի՞նչ դէպքով անցաք մեր լեռների այդ խորքերը։ Մենք խիստ հազիւ անգամ ենք պատահում այստեղ եւրոպացիների։

Ասլանը պատասխանեց, որ զանազան ուսումնական նպատակներով ճանապարհորդութիւն է անում. Նրան հետաքրքրում է այդ կողմերի հնութիւնները, բացի դրանից, ցանկութիւն ունի ծանօթանալ այդ երկրի լեռնաբնակների կեանքի ու սովորութիւնների հետ, եւ շատ շնորհակալ կը լինէր, եթէ պարոն վարժապետը կարելոյն չափ կ՚օգնէր իրան։

— Մեծ ուրախութեամբ, — պատասխանեց վարժապետը, — ես բաւական ուսումնասիրել եմ թէ՛ այդ երկիրը եւ թէ՛ նրա բնակիչներին։ Ես պատրաստ եմ իմ նկատողութիւնների տետրակը ամբողջապէս ձեզ ընծայել, դուք կարող էք նրանից օգուտ քաղել։

— Շատ շնորհակալ կը լինեմ, — պատասխանեց Ասլանը, — ի՞նչ լեզուով է գրուած։

— Հայերէն։

— Այդ ոչինչ, ես թարգմանել կը տամ։ Բայց ինձ համար աւելի թանգագին կարող էին լինել ձեր բերանացի տեղեկութիւնները։

— Այդ մասին կը խօսենք, շատ կը խօսենք, ես, որքան կարող եմ, բաւականութիւն կը տամ ձեր հարցասիրութեանը։ Դուք դեռ երկար կը մնաք մեզ մօտ, պարոն բժըշկապետ, մեր գիւղացիների ձեռքում երբ մի օտար հիւր է ընկնում, շուտով բաց չեն թողնում։

— Շնորհակալ եմ։ Բայց շատ ցաւում եմ, որ երկար մնալ չեմ կարող․ ես առաւօտեան պէտք է ճանապարհ ընկնեմ։

— Այստեղից ո՞ւր պիտի գնաք։

— Աղթամարայ վանքը, այնտեղի քանդակները տեսնելու համար։

— Հիանալի քանդակներ են, արժէ տեսնել։

Վարժապետը խոստացաւ, որ հէնց այդ գիշեր կը տայ պարոն բժշկապետին նրա ցանկացած տեղեկութիւնները, քանի որ նա այդպէս շտապում է։

Գիւղացիները, ինչպէս երեւում էր, իրանց վարժապետի վերաբերութեամբ մի փոքրիկ փառասիրութիւն ունէին․ նրանք ուրախանում էին, որ իրանց վարժապետը այնքան հմտութիւններ ունի, որ եւրոպացին անգամ կարօտում է նրա տեղեկութիւններին։ Բայց նրանք մի այլ բան եւս սպասում էին վարժապետից, որ նա կը սկսէ եւրոպացու հետ մի ուսումնական վիճաբանութիւն, եւ իր գիտութեամբ բոլորովին կը շուարացնէ եւ կը կաշկանդէ նրան։ Այդ յաղթութիւնը ամբողջ գիւղին պատիւ կը բերէ։ Այդ դէպքում, գիւղացին նայում է իր վարժապետի կամ իր քահանայի վրայ, որպէս իր գիւղի քաջամարտիկ գոմէշի վրայ, երբ նա կռուի մէջ յաղթում է հարեւան գիւղի գոմէշին, ամբողջ գիւղը տօն է կատարում։ Բայց այդ վարժապետը խիստ համեստ էր․ նա վիճաբանութիւնների մէջ չը մտաւ, եւ չէր էլ ձգտում իրան ուսումնական ներկայացնելու։ Նրա խօսակցութիւնը այնքան պարզ էր, այնքան ռամկական էր, որ,

կարծես, երեխայութիւնից ծնուել, անուել էր այդ լեռնականների մէջ։ Բայց նոյն ռամկական պարզութեան մէջ՝ երեւում էր մտքի եւ դատողութեան ուժ։ Նա գիւղացիների փառասիրութեանը բաւականութիւն տուեց նրանով միայն, որ յետոյ սկսեց եւրոպացի բժշկապետի հետ նրա երկրի լեզուով խօսել։ Թէեւ նրանցից ոչ ոք չը հասկացաւ, թէ ինչ խօսեց, բայց ամէնքն էլ շատ ուրախացան, որ նա օտար լեզուներ եւս իմանում է։ Նրանք միշտ սովորութիւն ունէին՝ միւս գիւղացիների մօտ, իրանց վարժապետի մասին չափազանցութիւններ անելով, պարծենալ, թէ «մեր վարժապետը տասն լեզու է իմանում»։

Ո՞րտեղացի էր նա, ո՞րտեղից էր եկել, — ոչ ոք չը գիտէր։ Նրանք այդքանը միայն գիտէին, որ առաջին անգամ, երբ յայտնուեցաւ նա, եւրոպական հագուստ ունէր։ Յետոյ ամեն ինչ փոխեց, մինչեւ անգամ լեզուն եւս փոխեց, սկսեց նմանուիլ գիւղացիներին։

— Շա՞տ ժամանակ է, պարոն Ոստանիկ, որ այստեղ էք, — հարցրեց Ալանը։

— Մի քանի տարի կը լինի, — պատասխանեց նա։

— Եւ այդքան ժամանակ ձեր հայրենիքը չէ՞ք գնացել։

— Երբեմն, ամառնային արձակուրդների ժամանակ, գիւղացիները ինձ թոյլ են տալիս գնալ՝ ազգականներիս տեսնելու։ Տարուայ մէջ երեք ամիս բոլորովին ազատ եմ ես։ Մանաւանդ, որ ուսումը այստեղ գլխաւորապէս ձմեռն է լինում, որովհետեւ տարուայ միւս եղանակներում երեխաները օգնում են իրանց ծնողներին նրանց տնտեսական աշխատութիւնների մէջ։ Այդ ես թոյլ եմ տալիս գլխաւորապէս այն նպատակով, որ իմ աշակերտները գործնականապէս վարժուեն երկրագործական մշակութիւնների մէջ։

— Ձեր բացակայութեան ժամանակ ո՞ւմ էք յանձնում ձեր պաշտօնը։

— Ես մի օգնական եւս ունեմ, որը իմ հասցրած աշակերտներից է։

Գիշերից բաւական անցել էր։ Ժամանակ էր հիւրերին հեռանալ։ Գիւղացին զարթնում է արեւից առաջ, հանգըստանում է արեւի հետ։ Նա սովոր չէ անքնութեան մէջ վատնել գիշերային հանգստութիւնը։

Թէեւ ռէսի ճոխ եւ ընդարձակ տունը՝ թուով մեզանից մի քանի անգամ աւելի հիւրերի համար՝ թէ քնելու տեղ եւ թէ մաքուր անկողիններ ունէր, բայց, շինական սովորութեան համեմատ, մեզ հետ սեղանակից եղող գիւղացիները պէտք է մեզ իրանց մէջ բաժանէին, որպէս զի տան տիրոջ համար ծանրութիւն չը լինէր։ Բաւական երկար տեւեց վիճաբանութիւնը մեր ընտրութեան մասին. իւրաքանչիւրը ցանկանում էր իր տունը տանել մեզանից ամեն մէկին, թէեւ մեր թիւը այնքան փոքր էր, որ ամենքին բաւականութիւն չէր կարող տալ։ Մտածում էին վիճակ ձգել։ Այդ միջոցին վարժապետը մէջ մտաւ, ասելով.

— Բարեկամներ, մեր բախտից մեր հիւրերը այնքան փոքր են թուով, որ ամենքիս բաժին չի հասնի. պարոն բժըշկապետին ես կը վեր առնեմ, իսկ միւսներին թող տէր հայրը բաժանէ, ինչպէս որ կը կամենայ։

Մենք թուով չորս հոգի էինք՝ ես, Ասլանը, Մուրադը եւ Ջալլադը։ Ամենքը համաձայնուեցան, որ Ասլանին, այսինքն պարոն բժշկապետին, վարժապետը տանէ իր մօտ, որովհետեւ նրա լեզուն իմանում է, բացի դրանից, եւրոպական ձեւով կահաւորուած սենեակ ունի։ Ինձ վեր առեց տէր հայրը, Մուրադը մնաց ռէսի տանը, իսկ Ջալլադին տարաւ մի այլ գիւղացի, որը տեղային եկեղեցու երեսփոխանն էր։



ԻԵ.

## ԳԻԽՂԱԿԱՆ ՎԱՐԺԱՊԵՏԸ

*Երբ գիւղացին հարեւանի մօտ հիւր է կանչուած, եւ նրա տանեցիք գիտեն, որ այնտեղ օտար տեղից եկած հիւրեր կան, իրանք եւս պատրաստութիւն են տեսնում, մտածելով, կարելի է իրանց տղամարդը նրանցից մէկին բերէ իր հետ։ Երեւի, այդ էր պատճառը, որ երբ մտանք տէր Հօր խրճիթը, այնտեղ գտանք մի պատրաստի սեղան։ Նա հրաւիրեց նստել սեղանի մօտ։ Ռէսի ճոխ ընթրիքից յետոյ, այժմ ո՞վ ախորժակ ունէր ուտելու։ Բայց ուզես, չուզես, պէտք է մի քանի պատառ ուտես, եթէ ոչ, տան տիկնոջը սաստիկ վիրաւորած կը լինես։*

*Տէր Հօր խրճիթը թէեւ ռէսի տան մեծութիւնը ու վայելչութիւնը չունէր, բայց բաւական կոկիկ եւ սիրուն էր. ամեն տեղ երեւում էր կարգ, ամեն տեղ երեւում էր մաքրութիւն։ Բոլոր տանեցիք քնած էին, մի եւ նոյն յարկի տակ, ուր մտանք մենք։ Միայն երէցկինը եւ նրա հարսը սպասում էին մեզ։ Սիւնի վրայ դրած միակ ճրագը աղօտ լոյս էր սփռում փոքրիկ սենեակում, եւ մեր շուրջը լսւում էր քնած ընտանիքի խաղաղ շնչառութիւնը։*

*Տէր հայրը իր լեզուի բոլոր ճարտարութիւնը գործ էր դնում, որ զբաղեցնէ ինձ։ Բայց ոչ նրա համեստ սեղանը, ոչ նրա պարզ, սրտից բղխած, հայրական խօսակցութիւնը, եւ ոչ երէցկնոջ միամիտ գուրգուրանքը, — ոչինչ չէր գրաւում*

ինձ։ Ինձ չէր գրաւում եւ մի գեղեցիկ դէմք, որ քնի մէջ, մոռանալով գեղջկուհու ամաչկոտութիւնը, վերմակը կիսով չափ մի կողմ էր ձգել եւ երեւան էր հանել մի հրաշալի կուրծք։ Այո, ոչինչ չէր գրաւում ինձ։ Իմ բոլոր ուշքը, միտքը գրաւել էր երիտասարդ վարժապետը։ Նրա մասին էի մտածում, նրա այրական սիրելի պատկերն էր իմ աչքի առջեւ։

Երբ տէր Հայրը սկսեց նրա մասին խօսել, ես մեծ ուրախութեամբ լսում էի։

— Եկեղեցու բակումն է բնակվում, — ասաց նա, — այնտեղ դպրոցին կից, իրա համար երկու սենեակ է շինել տուած։ Այդ սենեակները մեր խրճիթների նման գետնափոր չեն, դուք, ի հարկէ, առաւօտեան կը տեսնէք, թէ որքան յարմարութիւններով են շինուած։ Նա միշտ խորհուրդ է տալիս, յորդորում է գիւղացիներին, որ դուրս գան գետնի տակից եւ այն ձեւով բնակարաններ շինեն։ Ասում է, որ գետնափոր խրճիթը շատ վնասակար է առողջութեան, այնտեղ չէ թափանցում ոչ արեւի լոյսը եւ ոչ օդի մաքրութիւնը։

— Գիւղացիք հետեւո՞ւմ են նրա խորհուրդներին, — հարցրի ես։

— Շատերը հետեւում են. ով որ նոր տուն է շինել տալիս, այնպէս է շինում, որպէս նա ցոյց է տալիս։ Նա մեզ բացատրում է, թէ տան ձեւը ոչ միայն մեծ նշանակութիւն ունի մարդու առողջութեան վերաբերութեամբ, այլ սաստիկ ազդում է նրա բնաւորութեան, մտքի եւ հոգեկան տրամադրութեան վրայ։ Եթէ հայ գիւղացին, ասում է նա, այդքան ծածկամիտ, նենգաւոր եւ միեւնոյն ժամանակ այդքան մռայլոտ է, — եթէ նա կորցրել է երգելու եւ ուրախ լինելու ընդունակութիւնը, — գլխաւոր պատճառներից մէկը այն է, որ ապրում է գետնի տակ, խուլ մթութեան մէջ։

— Ձեր գիւղացիք նոյնպէս գետնի տակ են ապրում, — նկատեցի ես, — բայց բաւական ուրախ են, բաւական պարզ սիրտ լուսաւոր եւ միտք ունեն։

— Այդ նկատողութիւնը ես էլ մի անգամ արեցի նրան։ Նա պատասխանեց. դրսի կեանքը՝ ազատ եւ արձակ օդի մէջ՝ մեղմացնում է գետնափորի ազդեցութիւնը։ Դուք, ասաց, տարուայ մեծ մասը անց էք կացնում դաշտերում, լեռների վրայ, եւ ձեր վրաններով՝ ձեր անասունների հետ՝ բնակվում էք ձեր արօտատեղիներում։ Ազատ բնութիւնը ներշնչում է ձեր մէջ ազատ սիրտ եւ ազատ հոգի։ Ձեր գետնափոր խրճիթները ձեզ համար ժամանակաւոր ձմեռանոցներ են միայն։

Անհամբերութիւնը ինձ այնքան տանջում էր, որ չը սպասելով մինչեւ առաւօտ, որ գնայի եւ անձամբ տեսնէի բոլորը, — ես ցանկանում էի վարժապետի սենեակների, նրա նիստ ու կացի, եւ առհասարակ նրա կենցաղավարութեան մասին՝ կանխապէս տեղեկութիւն ստանալ քահանայից։ — Ցանկանում էի խօսել, մինչեւ լոյս խօսել իմ սրտին շատ մօտ երիտասարդի մասին եւ բնաւ չը քնել։

— Լա՞ւ են սարքուած նրա սենեակները։

— Շատ լաւ են սարքուած. ամեն պատրաստութիւններ ունի նա. մահճակալ, անկողին, աթոռներ, գրասեղան եւ զանազան կարասիք։ Պատերը զարդարած են պատկերներով. պատուհանները լի են գրքերով։ Բայց մահճակալ ունի, նրա վրայ չի պառկում. մահիճ ունի, գործ չէ ածում։ Պառկում է մերկ յատակի վրայ, առանց անկողնի։ Զարմանալին այն է, որ շատ անգամ կողքերի տակին մանր խիճեր է ածում, որ աւելի ցաւեցնէ։ Երբ հարցնում ես, վարժապետ, ինչո՞ւ ես մարմինդ տանջում, նա քեզ պատասխանում է. «ես այդ տանջանքով մարմինս ամրացնում եմ.

գիցուք թէ, այնպէս պատահի, որ ստիպուած լինեմ մի քանի գիշեր սարերի մէջ մնալ. այնտեղ ով կը տայ ինձ մահիճ ու մահճակալ. պէտք է նախապէս սովորել առանց անկողնի, մերկ քարերի վրայ պառկելը:»

— Այս ինչու՞ համար է պատրաստել իր մահիճն ու մահճակալը, քանի որ գործ չէ ածում:

— Հիւրերի համար:

— Հիւրեր ունենու՞մ է:

— Երբեմն բոլորովին անծանօթ մարդիկ յայտնվում են նրա մօտ, մի օր, երկու օր մնում են եւ դարձեալ անյայտանում են: — Դուք մահճակալի վրայ ինչու՞ էք զարմանում, որդի, — խօսքը փոխեց տէր հայրը, — իր սենեակներում գեղեցիկ վառարաններ ունի, բայց երբէք կրակի երես չեն տեսնում: Դուք չը գիտէք, մեր կողմերում ձմեռը որքան սաստիկ է լինում, մարդու թուքը բերանի մէջ սառչում է: Բայց նա իր անվառ սենեակի լուսամուտները բաց թողած, այնպէս է քնում: Շատ անգամ մի քանի օրով քաղցած է մնում, ոչ ուտում է եւ ոչ խմում, միայն ծխում է: Բայց երբէք իր ուժերը չէ կորցնում: Իսկ երբ սկսում է ուտել, հինգ մարդու չափ ուտում է: Նա հում միս էլ է ուտում, եւ ոչխարի արիւնը այնպէս է խմում, ինչպէս ոչխարի կաթը: Սկզբում այդ բաները գիւղացիների աչքում խիստ օտարոտի էին թւում, բայց յետոյ ընտելացան: Միս, ասում է նա, ամեն տեղ կարող եմ գտնել, կամ մի թռչուն կ'որսամ, կամ մի վայրենի ոչխար կը գնդակահարեմ, բայց եփելու համար կրակ ամեն տեղ դժուար է գտնել, այդ պատճառով պէտք է սովորել՝ առանց եփելու եւս ուտել միսը:

— Բայց ի՞նչու նա օրերով քաղցած է մնում:

— Առաջ ես այնպէս էի կարծում, որ հոգու համար է անում. մեր հին ճգնաւորների նման ծոմ է պահում։ Մի անգամ հարցրի, նա բոլորովին այլ կերպ բացատրեց իր ծոմապահութեան պատճառը։ Տէր հայր, ասաց նա, կարող է պատահել, որ ես ստիպուած կը լինեմ մի որ եւ է լեռան խորքերում պատսպարուած լինել, որտեղ ոչ բնակութիւն կայ եւ ոչ հաց, — կարող է պատահել, որ հանգամանքների պատճառով ես ստիպուած կը լինեմ մի քանի օր այնտեղ քաղցած մնալ, չէ՞ որ այժմեանից պէտք է սովորեցնեմ ինձ համբերել քաղցածութեան։ Եւ այդպէս, նա միշտ երեւակայում է՝ մի անապատական լեռնային կեանք, հեռու մարդկային բնակութիւնից, ամայութեան մէջ, խուլ, մթին քարանձաւներում, եւ մի այդպիսի կեանքի համար վաղօրօք աշխատում է պատրաստուել։ Բայց ինչու՞ համար, — ոչ ոք չը գիտէ։

— Այդպիսի մի տարօրինակ մարդ է նա, — շարունակեց տէր հայրը. — եթէ մտնենք նրա բնակարանին, այնտեղ կը տեսնէք զանազան մեծութեամբ, զանազան ծանրութեամբ քարեր։ Համարեա ամեն օր որոշեալ ժամերում, նա այդ քարերը բարձրացնում է եւ ձեռքով զանազան շարժումներ է գործում։ “Ուժս փորձում եմ, — ասում է նա, — որ տեսնեմ, եթէ մի օր պէտք լինի այսպիսի քարեր միմեանց վրայ դարսել, արդեօք կարո՞ղ կը լինեմ„։ — “Քարերով տու՞ն պիտի շինէք„։ — “Ոչ, մի ուրիշ բան„... Եւ այսպէս, փոքրը ցած է դնում եւ աւելի մեծն է վեր առնում, եւ անդադար շարում է միմեանց վրայ։ Չափազանց հոգ է տանում թէ իր մարմինը ամրացնելու եւ թէ իր ուժի վրայ։ Մեր գիւղում հազիւ մի տղամարդ կը գտնուի, որ նրա չափ ուժեղ լինի։ Եթէ մէկը նրանից ուժեղ եւս լինի, բայց նա այնպիսի սատանայական ֆանդեր գիտէ, որ ձեռքը

ընկած մարդին կը կաշկանդէ եւ հաւի նման իր ոտների տակը կը դնէ: Այդպիսի դէպքեր շատ են պատահել: Նրանից օրինակ առնելով, մեր երեխաները եւս սկսել են հետեւել նրան: — «Առողջ եւ զօրաւոր մարմնի մէջ է բնակվում զօրեղ հոգին», — ասում է նա, — «պէտք է աշխատել զօրացնել մարմինը»:

Ես խորին ուշադրութեամբ լսում էի: Տէր հայրը շարունակեց.

— Ես երբէք չեմ տեսել մի այդպիսի անհանգիստ մարդ. ոչ մի րոպէ դադարում չունի: Երբ դասերը կը վերջացնէ, ոտքի վրայ մի բան կ'ուտէ եւ իսկոյն վազ կը տայ դէպի դաշտը: Այնտեղ հնձւորի հետ հունձ կ'անէ, որ ցոյց տայ, թէ ինչպէս պէտք է հնձել. այնտեղ հերկավարի հետ կը հերկէ, որ ցոյց տայ, թէ ինչպէս պէտք է հերկել, եւ շատ անգամ, բահը առած, բանջարանոցներում ածուներ կը փորէ: Բանջարների մշակութիւնը մեր գիւղում բոլորովին անծանօթ էր, նա օրինակ տուեց մեզ, իր դպրոցի մօտ մշակելով մի գեղեցիկ պարտէզ: Երբ նրան ասում եմ. վարժապետ, այդպէս չէ կարելի, մի փոքր հանգստացիր: Նա սովորաբար պատասխանում է. «Հանգստութիւնը մեզ համար չէ, մենք շատ յետ ենք մնացել, եւ այդ պատճառով, շատ բան ունենք սովորելու եւ անելու... Մեզ պէտք է շտապել»...

— Միայն ձե՞ր գիւղով զբաղուած է նա:

— Ոչ միայն մեր գիւղով, այլ մեր շրջակայքի բոլոր գիւղերը գնում է նա: Ձիուց աւելի արագ է ուղեգնացութեան ժամանակ, եւ երբէք ձի չէ նստում, այլ սովորութիւն ունի միշտ ոտքով շրջել: Ամեն գիւղում ճանաչում են նրան, ամեն տեղ յարգում են, եւ ամենքը աշխատում են նրա խորհուրդներից օգուտ քաղել: Մինչեւ անգամ

պաշտօնի արժանաւորութիւնները ունենալու։ Եւ մեզանից չը պահանջեցին այդ արժանաւորութիւնները։ Մեզանից պահանջեցին միայն վարձը, որով ամեն մի տգէտ քահանայ է դառնում։ Երբեմն նա ինձ գրքեր է տալիս, կարդում եմ. իմ աչքերը նոր են բացվում եւ ես նոր եմ հասկանում, թէ որքան անպատրաստ եմ եղել։ Ի՜նչեր չէր կարող անել քահանան, մանաւանդ շինական քահանան։ Այդ բոլոր գործերը, որ նա է կատարում, հէնց քահանայի գործ է։ Միթէ քահանան չէ՞ր կարող կրթել գիւղացի մանուկներին. միթէ քահանան չէ՞ր կարող ծանօթացնել գիւղացուն երկրագործական նոր ձեւերի հետ. միթէ քահանան չէ՞ր կարող այցելել հիւանդներին եւ նրանց ցաւերին դարման տանել։ Մի՞թէ առաքեալները նոյնպէս հիւանդների մօտ չէին գնում եւ բժշկութիւն չէին անում։ Ո՞րքան գործեր կան, որ կարող էր կատարել լաւ պատրաստուած քահանան։ Բայց մենք ոչինչ չը սովորեցինք եւ քահանայի ծանր պաշտօնը յանձն առինք։

Լսելի եղաւ մի խուլ շաչիւն, շառաչիւն։ Տէր հօր խօսակցութիւնը ընդհատուեցաւ։ Ես սոսկացի։

— Այդ շղթայի ձայնն է, — հանգստացրեց ինձ տէր հայրը, ժպտալով։

— Ի՞նչ շղթայ։

— Նայեցէք։

Ես նայեցի դէպի տէր հօր ցոյց տուած կողմը։ Այնտեղ պառկած էր նրա որդին, եւ մի տարօրինակ դատապարտեալի նման, նրա ոտքերից մէկը կապած էր բաւական հաստ շղթայի ծայրին, որի միւս ծայրը անց էր կացրած պատի միջով, ո՞ւր էր տարած, չէր երեւում։ Քնի մէջ նա շարժեց ոտը եւ շղթայի շաչիւնը աղմուկ բարձրացրեց։

— Այդ ի՞նչ բան է, — հարցրի զարմանալով։

ները որոշելու, որտեղ ներկայ կը լինի եւ տեղային գայմագամը։ Մենք դիմեցինք դէպի կղզին նոյն փառաւոր նաւակով, որ պատրաստուած էր կաթողիկոսին դուրս հանելու համար։

Ծովը հանդարտ էր։ Կղզին երեւում էր հեռուից, կարծես թէ, ներկուած լինէր բոսորային կարմրութեամբ։ Արիւն էր հոտում այդ կղզին, արիւն... Արիւնով էին ներկուած նրա ապառաժները, սկսեալ այն օրից, երբ խստասիրտ Տիրանի դահիճները կոտորում էին Ռշտունեաց Զօրա նահապետի ազգատոհմը, չը խնայելով թէ՛ կանանց, թէ՛ մանկանց... Արեան գոյն էին ստացել արեգակի ճառագայթները, որ շողշողում էին կարմրագոյն ժայռերի վրայ... Արիւնով էր ներկուած եւ հայրապետական աթոռը, որի վրայ բազմած էր եւ ներկայ կաթողիկոսը... Նրա նախորդը զոհ գնաց մի անյայտ եղեռնագործութեան...

Ես շատ բան էի լսել Ջօլամերիկի Մար-Շիմոնի մասին, յետոյ առիթ ունեցայ տեսնելու նրան։ Կորդուաց լեռների այդ պատրիարք-դիւցազը թողել էր իմ վրայ խորին տպաւորութիւն։ Ես առաջին անգամ տեսայ մի կրօնական անձնաւորութիւն, որ միացրել էր իր մէջ հոգեւոր հայրապետի եւ մարմնաւոր իշխանի կոչումը, — որ մի ձեռքում խաչ, առաջնորդում էր իր ժողովրդին դէպի երկնայինը, դէպի հոգեւորը, իսկ միւս ձեռքում սուր, պաշտպանում էր ժողովրդին, երբ որ եւ է վտանգ էր սպառնում նրան երկրային թշնամիներից։ Այդ բոլորը տեսել էի ես։ Իսկ երբ տեսայ Աղթամարայ կաթողիկոսին, իսկոյն իմ մտքում ծագեց մի այդպիսի համեմատութիւն՝ — ահա մի երկրորդ Մար-Շիմոն։

Մենք գտանք նրան ոտքի վրայ, շրջապատած մի խումբ աբեղաներով, ծովեզրում սպասում էր նաւակին։

— Յոյս ունեմ, որ չէք մեղադրի ինձ, պարոն բժշկապետ, — ասաց նա, երբ մենք ոտք դրեցինք ցամաքի վրայ եւ մօտեցանք աջը համբուրելու. — Ես երէկ անհամբեր սպասում էի ձեզ... վարժապետը ինձ այդպէս էր լուր տուել... Դուք երէկ պէտք է շնորհ բերէիք։

Խօսքը Կարօի մասին էր, երեւում էր, որ նա սկզբից յայտնել էր նորին վեհափառութեանը, որ նրա վանքում պէտք է այցելութիւն գործէ մի եւրոպացի ճանապարհորդ։

— Վարժապետը չէ սխալուել, մեղաւորը ես եմ, — պատասխանեց Ասլանը, նոյնպէս ներողութիւն խնդրելով։ — Իրաւ է, ես երէկ պէտք է գայի, բայց ինձանից շատ ժամանակ խլեցին Ռուսանի աւերակները, եւ ես ստիպուած եղայ գիշերել վարժապետի եղած գիւղում, ձերդ վեհափառութեանը այդպէս անհանգստութիւն պատճառելով։

Կաթողիկոսի դէմքի վրայ նշմարուեց մի տեսակ անվճռականութիւն։ Ասլանը այդ նկատելով, ասաց նրան.

— Ես ձեզ արգելք չեմ լինի, վեհափառ տէր, ինձ ասացին, որ գործով ուրիշ տեղ էք գնալու։

— Այո, այդ գործը երէկուայ համար նշանակուած էր, բայց ես յետաձգեցի ձեր պատճառով, պարոն բժշկապետ, որովհետեւ սպասում էի ձեզ ընդունելու։ Դա մի հին վէճ է, պէտք է մի կերպով վերջացնել։ Ես կը վերադառնամ երեկոյեան, եւ մինչեւ իմ վերադարձը իմ միաբանները ամեն պատրաստականութիւն ցոյց կը տան ձեզ՝ հետազօտելու թէ՛ իմ վանքը եւ թէ՛ իմ կղզին։

— Դուք շատ ողորմած էք, վեհափառ տէր, ցաւում եմ, որ այդպէս պատահեց, ես մինչեւ ձեր վերադարձը իմ հետազօտութիւնները կը վերջացնեմ։

Նա յաջողութիւն բարեմաղթելով, բաժանուեցաւ մեզանից, մտաւ նաւակի մէջ։ Երկու աբեղաներ սկսեցին թիավարել

Չը նայելով իր տարիքին, բոլորովին առոյգ եւ աշխոյժ մարդ էր երեւում կաթողիկոսը։ Նա այնպէս ցատկեց նաւակի մէջ, ինչպէս մի քսան ու հինգ ամեայ երիտասարդ։ Հէնց առաջին անգամից մեծ տպաւորութիւն գործեց իմ վրայ այդ բարձր հոգեւորականը իր պատկառելի, փառահեղ դէմքով։ Իր պարզ, շալեղէն հագուստով բնաւ չէր որոշվում նա միւս միաբաններից։ Անապատի հալող, մաշող, թմրեցընող ազդեցութիւնը չէր սպաննել նրա կենդանութիւնը, եւ գուցէ Աղթամարայ անապատը ազատ էր այդ ազդեցութիւնից։ Ես նոյնը նկատում էի եւ նրա միաբանների մէջ։ Դրանք, Կտուց անապատի աբեղաների նման, մշտական աղօթքից եւ ճգնութիւնից բթացած, ապուշ դարձած, դանդաղկոտ մարդիկ չէին. դրանց մէջ երեւում էին կեանքի եւ առողջութեան նշոյլներ։ Ռշտունեաց աշխարհը, երկրի բնութեան համեմատ, առաջ էր բերել մի ինքնուրոյն հոգեւորականութիւն։ Այստեղ քահանան կրքեր ունէր, գիտէր վրէժխնդիր լինել։ Երբ իր սիրած սուրբը չէր կատարում նրա խնդիրքը, նա դադարում էր նրա առջեւ խունկ ծխել եւ մոմ վառել։

Աղթամարայ միաբանները, Կտուց անապատի աբեղաների նման, աշխարհից անջատուած չէին. դրանք, իբրեւ միաբանութիւն մի կաթողիկոսի, աւելի կառավարչական անձանց նշանակութիւն ունէին, շատ անգամ դուրս էին գալիս կղզուց, շրջում էին վիճակներում, իրանց աթոռին պատկանեալ հոգեւոր պտուղը հաւաքելու։ Թէեւ Աղթամարայ կաթողիկոսութեան թեմը աւելի փոքր, աւելի սահմանափակ էր քան Վանայ առաջնորդութիւնը, բայց նա մեծ ուժ ունէր, որովհետեւ ժողովուրդը խիստ սերտ կերպով կապուած էր իր աթոռի հետ։ Երբ նրա կաթողիկոսին մի որ եւ է վտանգ էր սպառնում, իսկոյն շատախցին, սասունցին ձեռքը տանում էր դէպի իր խէնջարը...

Կաթողիկոսից բաժանուելուց յետոյ, Ալանը, մի քանի աբեղաներ հետը առած, սկսեց պտըտել կղզու մէջ, դիմեց դէպի հին բերդի աւերակները։ Մեր ընկեր Զալալը խնդրեց բաց անել վանքի տաճարի դուռը, մտաւ այնտեղ՝ ինչ-որ բաներ քննելու։ Իսկ ես շրջում էի տաճարի շուրջը եւ հիացած, եւ խորին տխրութեամբ նայում էի պատերի բարձրաքանդակ նկարների վրայ։

Ահա այնտեղ Աբրահամը զոհում է իր անդրանիկին. սիրելի որդու պարանոցի վրայ դրած է ուխտադիր հօր դանակը։ Եհովայի հրեշտակը, երկնքից իջնելով, բռնել է հօր ձեռքը եւ մատով ցոյց է տալիս խոյի վրայ։ Ամբողջ պատկերը շնչում է բիբլեական ջերմեռանդութեամբ, երբ նա փրկութիւնը ու քաւութիւնը արեան մէջ էր որոնում։ Բայց հրեշտակի մի թեւքը, Աբրահամի այն ձեռքը, որով բռնած ունէր դանակը եւ Իսահակի սիրուն գանգրահեր գլուխը ջարդուած էին։ Գեղեցիկ նկարը այլանդակուել էր…

Ահա այնտեղ Յովսէփի եղբայրները ծախում են նրան եգիպտացի վաճառականներին. լուռ եւ տխուր դէմքով կանգնած էր հօր սիրելին եւ եղբայրների ատելին մարդավաճառների խումբի մէջ։ Յովսէփի գեղեցիկ աչքերը փորած էին, եգիպտացի վաճառականին զրկել էին մի ոտից, եւ այնտեղ չոքած ուղտերի մէկի պարանոցը, միւսի ծնկները փշրել էին։ Հրաշալի պատկերի աղէտալի կոտորածն էր միայն մնացել։

Ահա այնտեղ կաշառուած Յուդան համբուրվում է Փրկչի հետ. մատնիչը գրկել է համաշխարհական Զոհին. քահանայապետի ծառաները, ջահերը բռնած, շրջապատել են Նրան. մեծ Վարդապետի թշուառ աշակերտները հեռուից երկչոտ դէմքերով նայում են։ Սիրոյ եւ եղբայրութեան քարոզչին դատի են կանչում։ Այդ պատկերի տխուր փշրանքներն էին միայն մնացել։

Ես միւս պատկերներին նայել չը կարողացայ, աչքերս լցուեցան արտասուքով։

— Ո՞վ է կատարել այդ բարբարոսութիւնները, — հարցրի իմ մօտ կանգնած աբեղայից, որ ցոյց էր տալիս ինձ նկարները։

— Եւ դուք հարցնո՞ւմ էք, պարոն, — պատասխանեց նա խորին վրդովմունքով, — մի՞թէ չը գիտէք, թէ ինչ տառապանքներ են անցել այդ տաճարի գլխով...

Մարդը, որքան էլ անզգայ լինէր, չէ կարող սառնասիրտ մնալ, երբ տեսնում է այսպիսի անգթութիւններ. արհեստի, ճարտարութեան գեղեցիկ արդիւնքը, Աստուծոյ տան սրբութիւնները զոհ են գնում կոպիտ վայրենութեան։ Թշնամին իր բարբարոսութիւնները կենդանի մարդկանց վրայ գործ դնելուց յետոյ, չէ խնայում եւ անմեղ քարերին... Տխո՛ւր է քո պատկերը, հայրենի աշխարհ, տխո՛ւր... կա՞յ արդեօք քո մէջ մի տեղ, մի փոքրիկ տեղ, որ կրած չը լինէր թշնամու դառն հարուածները...

Թախծալի զգացմունքներով մտայ ես տաճարը։ Ներսի խոնաւ սառնութիւնը փոքր ինչ զովացրեց իմ բորբոքուած գլուխը։ Այստեղ եւս անիրաւ ձեռքը նոյն բարբարոսութիւններն էր կատարել։ Դէպի որ կողմն եւ նայում էի, երեւում էր խորտակուած եւ աւերած։ Մանուէլ ճարտարապետի հրաշալի գործը աղաւաղած էր։ Լուսամուտների եզերքի գեղեցիկ հիւսուածքը, դռների կամարների սքանչելի դրուակները, սիւների, պատուհանների եւ խոյակների հիանալի քանդակները ըստ մեծի մասին ջարդել ու փշրել էին։

Իմ աչքերը որոնում էին Ջալալին։ Ես գտայ նրան մի մռայլ խորանում, ուր խրուած էր մագաղաթների եւ փոշիների մէջ։ Այդ ինձ շատ զարմացրեց։ Ես այդ լուռ ու մունջ երիտասարդին մինչեւ անգամ գրագէտ չէի համարում,

այժմ նա մագաղաթներ էր քրքրում։ Ես գտայ նրան ուրախ տրամադրութեան մէջ, նայում էր մի հին Այսմաւուրքի հաստ կազմի վրայ։

Մեր հին գրչագրերի կազմերը առհասարակ շինուած են լինում փայտից եւ պատած մաշկով։ Իսկ այդ Այսմաւուրքի կազմի մէջ, փայտի փոխարէն, դրել էին միմեանց կպցրած մագաղաթի թերթեր։ Այդ թերթերն էր զգուշութեամբ միմեանցից բոկում Ջալալը, անդադար կրկնելով․ «Դուք անհոգ կացէք, հայր սուրբ, ես ոչինչ չեմ փչացնի»։ Հայր սուրբը մոմը ձեռին կանգնած էր նրա մօտ եւ լուսաւորում էր նրա աշխատութիւնը։ Յետոյ դարձաւ նա դէպի հայր սուրբը այդ խօսքերով․

— Տեսնո՞ւմ էք, հայր սուրբ, այդ մագաղաթները տախտակի տեղ են բանացրել կազմի մէջ։

— Տեսնում եմ, — պատասխանեց աբեղան։

— Աւելի լաւ չէ՞ր լինի, որ չը փչացնէին այդ մագաղաթները։

— Երեւի, ուրիշ բանի պէտք չեն եղել։ Բայց դրանց վրայ տառեր են երեւում։ Այդ ի՞նչ տառեր են։ Ջհուդի տառերի նման են։

— Ջհուդի տառեր չեն, — պատասխանեց Ջալալը եւ շարունակեց իր գործը։

— Դուք ջհուդերէն իմանո՞ւմ էք։

— Իմանում եմ։

Հայր սուրբը զարմացաւ։ Ես նոյնպէս զարմացայ։

— Եւ կարդո՞ւմ էք։

— Կարդում եմ։ — Եթէ թոյլ կը տայիք, ես այդ Այսմաւուրքի կազմը կը փոխէի։

— Օրհնած, ի՞նչ հարկ կայ փոխելու, — ծիծաղելով պատասխանեց հայր սուրբը։ — Մի քանի հարիւր

տարի այդ կազմով «եօլա է գնացել», հիմա էլ թող «եօլա գնայ»:

Ջալալը իր միտքը աւելի պարզեց, ասելով, թէ շատ շնորհակալ կը լինէր, եթէ հայր սուրբը թոյլ կը տար նրան վերանել կազմի «անպէտք» մագաղաթները, այդ կը լինէր նրա համար մի թանգագին ընծայ վանքի կողմից, եւ եթէ հայր սուրբի իրաւունքից դուրս է այդ թոյլտուութիւնը, նա կը խնդրէ այդ մասին Նորին վեհափառութիւնից:

— Այդ ինչ բան է, որի համար հարկաւոր լինէր Նորին վեհափառութիւնից խնդրել, — ընդմիջեց միւս աբեղան, որ ինձ հետ մնաց խորանը:

— Այո... բայց գուցէ ես կասկածանքի պատճառներ կը տայի... Որպէս զի որ եւ է տարակուսանք չը պատահի, ես յետոյ կ'ասեմ ձեզ, թէ ինչ նշանակութիւն ունեն ինձ համար այդ մագաղաթները:

Նա այն աստիճան յափշտակուած էր իր գիւտով, որ բոլորովին մոռացել էր իր իսկական դերը: Նա վեր առեց աճապարեն Այսմաւուրքը իր գիրկը, եւ մենք դուրս եկանք խորանից: Վարդապետները մեզ տարան այն խուցը, որ յատկապէս պատրաստուած էր մեզ համար: Ասլանը դեռ չէր վերադարձել: Մեզ իսկոյն շրջապատեցին մի խումբ աբեղաներ, սկսեցին հարց ու փորձ անել բժշկապետի մասին, թէ որտեղացի է նա, ուր է գնում, քանի լեզու գիտէ եւ այլն: Այդ հարցերի պատասխանը, որ աւելի ինձ էր պատկանում տալ, տալիս էր մեր ընկեր Ջալալը: Ո՞րտեղից նա այնքան տեղեկութիւններ ունէր բժշկապետի մասին, — այդ ինձ շատ անհասկանալի էր:

Երեկոյեան կաթողիկոսը վերադարձաւ շատ ուշ. նա հրամայեց Ասլանին իր մօտ կանչել: Ես եւ Ջալալը մնացինք մեր խուցի մէջ միայնակ: Ասլանը երկար մնաց վեհափառի

մօտ, մինչեւ ճրագները վառեցին, մինչեւ գիշերից բաւական անցաւ: Ես պառկած էի մահճակալի վրայ, եւ այնօր տառապում տեսած բարբարոսութիւնների տխուր տպաւորութեան ներքոյ, մտածում էի՝ եթէ անշունչ քարերի հետ այսպէս են վարուել, ապա ո՛րքան աղէտներ, ո՛րքան տառապանքներ պէտք է կրած լինեն մեր նախնիքը հայրենիքի թշնամիներից... Զալլադը լուռ նստած էր ճրագի մօտ եւ թերթում էր իր գտած մագաղաթները: Նա այն աստիճան խորասուզուած էր իր գործի մէջ, որ, կարծես, իմ ներկայութիւնը չէր նկատում: Թերթերը դասաւորում էր, համեմատում էր միմեանց հետ եւ երբեմն երկար, աչքերը յառած, նայում էր մի եւ նոյն տողերի վրայ, որ ժամանակը եւ հնութիւնը եղծել էին:

— Ի՞նչ ազգի գրուածք են, — հարցրի նրանից:

— Տառերը յունարէն են, իսկ լեզուն հայերէն, — պատասխանեց նա, աչքերը չը հեռացնելով իր ձեռքի թերթից:

— Ի՞նչու են յունարէն տառերով գրել:

— Կար մի ժամանակ, որ մենք սեպհական տառեր չունէինք, գրում էին յունաց, ասորոց եւ պարսից տառերով, մինչեւ Մեսրոպը մեզ համար տառեր հնարեց:

— Ուրեմն այդ ձեռագրերը այնքան հի՞ն են, որ մեր տառերի գիւտից էլ առաջ են:

— Այո՛, եւ այդ պատճառով էլ թանգագին են:

— Ի՞նչ է գրած:

— Դեռ եւս դժուար է որոշել, թերթերը խառնել են միմեանց: Բայց, ինչպէս երեւում է, այդ թերթերը երկու զանազան գրքերից են առնուած, մի մասը՝ նոր կտակարանի թարգմանութիւն է, միւս մասը՝ մի պատմական գրուածք է:

— Դուք յունարէն կարդո՞ւմ էք:

— Կարդում եմ։

— Եւ լեզուն գիտէ՞ք։

— Գիտեմ։

— Դուք ասացիք, որ հրէից լեզուն նոյնպէս իմանում էք։

— Իմանում եմ։

— Ի՞նչ պէտք էին ձեզ այդ լեզուները։

— Իմ ընտրած առարկան չէր կարելի՝ առանց այդ լեզուների գրականութեան հետ լաւ ծանօթ լինելու՝ հիմնաւոր կերպով ուսումնասիրել։

Նրա դէմքը փայլում էր, ինչպէս փայլում է դէմքը մի աղքատի, երբ գանձ է գտնում։ Ես այժմ մի առանձին յարգանքով էի նայում նրա վրայ, որին առաջ մի մեծ բանի տեղ չէի դնում։ Նա հին լեզուներ գիտէր, նա հին, գործածութիւնից ընկած, տառերի վերծանութիւնն էր իմանում։ Նա սովորել էր եւ մի առարկայ, մի գիտութիւն, որի մասին ինձ ոչինչ չը յայտնեց։ — Դարձեալ մի գաղտնիք, դարձեալ մի հանելուկ, որ մնում էր ինձ լուծել...

Զարմանալի բան է, թէ ինչպէս մարդ մի նոր կերպարանք է ստանում մեր աչքում, երբ փոխում ենք մեր նախապաշարմունքը, մեր կարծիքները նրա մասին։ Առաջ, երբ ես համարում էի նրան մի հասարակ գործիչ, — թէեւ լաւ ձիաւոր եւ քաջ երիտասարդ, — նա բոլորովին այլ տպաւորութիւն էր գործում իմ վրայ։ Իսկ այժմ, երբ նայում էի նրա վրայ, որպէս մի ուսումնական անձի վրայ, ամեն ինչ նրա մէջ փոխուած էի տեսնում։ Նրա դէմքի արտայայտութիւնն անգամ փոփոխուել էր իմ աչքում։ Վաղեմի խստութիւնը մեղմացել էր, եւ ես նշմարում էի այնպիսի խորին, անբացատրելի գծեր, որպիսիները կարդում էր նա այն խորհրդաւոր մագաղաթների վրայ, որ բռնած էր իր ձեռքում։

Այժմ նրա ձայնն անգամ այլապէս էր հնչում, քան թէ առաջ, — մի անուշ, սրտի խորքը թափանցող ձայն, որ ջերմ համակրանք էր ազդում։ Այժմ նրա խելացի աչքերի խորութեան մէջ նկատում էի ես անսահման հեզութիւն. անսահման առաքինութիւն, ներշնչուած բարձր, աստուածային գաղափարներով։

Նա այնպէս երկիւղով եւ զգուշութեամբ էր շօշափում մագաղաթի ցեցակեր թերթերը, որ, կարծես թէ, դիպչում էր իր սրտի ամենանուրբ թելերին։ Մի փոքրիկ կտոր նրանցից պատառուելիս, նրա սրտից մի բան պատառվում էր եւ ամբողջ մարմնով դողում էր նա։ Ինձ թւում էր, որ միանգամից նա փափագում էր իմանալ, թէ ի՛նչեր էին թագնուած այն հին, մոռացուած թերթերի մէջ։

Ես ընդհատեցի նրա պարապմունքը, հարցնելով.

— Ասլանը շա՞տ ուշացաւ։

— Ի՞նչ զարմանալու բան կայ, — պատասխանեց նա ժպտալով. — բժիշկ եւ կաթողիկոս, ի հարկէ, միշտ նիւթ կը գտնեն խօսալու։ Ձեզ հետ դանակ ունի՞ք, — փոխեց նա խօսքը։

Ես տուեցի նրան իմ դանակը։ Նա աշխատում էր բաժանել երկու միմեանց կպցրած թերթեր։ “Այդպէս կարելի է փչացնել, պէտք է մի հեղանիւթով լուծել սոսինձը„, — խօսում էր ինքն իրան։ Դանակը մի կողմ դրեց, վերկացաւ իր խուրջինի մէջ մի բան որոնելու։

Թէ ի՛նչ ժամանակ վերադարձել էր Ասլանը կաթողիկոսի մօտից, կամ մինչեւ գիշերուայ ո՛ր ժամը Ջալալը զբաղուած էր իր մագաղաթներով, — ես տեսնել չը կարողացայ, որովհետեւ անգործութիւնից քունս տարաւ, եւ աչքերս բացարի այն ժամանակ միայն, երբ առաւօտեան արեգակի ճառագայթները ներս էին շողացել մեր խուցի նեղ լուսա-

մուտներից: Անապատում լինել եւ այնպէս հանգիստ քնել, — դա աներեւակայելի բան է: Գիշերը ո՜րքան տանջեցին մեզ կտուց անապատում: Բայց այստեղ ոչ ոք չը բաղխեց մեր դուռը, ոչ ոք չարթնացրեց մեզ, ժամ հրաւիրելով, թէեւ այստեղ եւս միաբանները սովորութիւն ունէին գիշերային ժամերգութիւններ կատարելու:

Ասլանը սովորականից աւելի ուրախ էր. ուրախ էր եւ Ջալլադը: Նրանք շտապեցրին ինձ շուտով հաւաքել մեր իրեղէնները, որ ճանապարհ ընկնէինք: Կղզու ափում սպասում էր մեզ վանքի նաւակը: Մենք նախ գնացինք կաթողիկոսի մօտ, նրա աջը համբուրեցինք եւ առինք նրա օրհնութիւնը: Բարի ծերունին արտասուքը աչքերում ճանապարհ դրեց մեզ, որպէս մի գթառատ հայր, որ ուղարկում է իր որդիներին դէպի հեռու աշխարհներ, մարգարիտներ որոնելու: Մի քանի աբեղաներ բերեցին մեզ մինչեւ կղզու ափը: Մեծ շնորհակալութեամբ բաժանուեցանք մենք այդ առաքինի կրօնաւորներից, որոնք այնքան անմոռանալի յիշատակներ թողեցին իմ մէջ... Մօտաւորապէս մէկ ժամից յետոյ նաւակը մեզ հանեց ցամաքը: Այստեղ, “դրսի տան„ մէջ, պահուած էին մեր ձիանները: Նստեցինք եւ շարունակեցինք մեր ճանապարհը...



## ԻԷ.

## ՎԱՆՔԵՐԻ ՇՈՒՐՋԸ

Երեկոյեան մենք անցնում էինք Կապուտ-Կող կոչուած լեռան կապտագոյն ձորերի միջով։ Այդ լեռան պատմական անունը, մեր հին գրիչներից հետզհետէ աղաւաղուելով, կոչուեցաւ Ընձաքիարս, որ Ընձակայ-քար բառի փոփոխութիւնն է։ Մինչեւ այսօր այդ լեռան կողքին կպած է Ընձակ անունով գիւղը, որ հայկազանց նահապետներից մէկի, Ընձակի, անունն է կրում։ Նոյն նահապետի անունով եւ լեռը կոչուեցաւ Ընձակայ-քար։ Քար բառը մեր հին լեզւում երբեմն սար կամ լեռ բառերի տեղ էր գործածւում։

Ցիշեալ լայնանիստ լեռան գագաթը մի կողմից նայում է դէպի Վանայ ծովը, միւս կողմից՝ դէպի Ռշտունեաց աշխարհը։ Այդ գագաթի վրայ բարձրացաւ Ս. Ցակոբ Մծբնայ հայրապետը, այն աղէտաւոր անցքից յետոյ, երբ խստասիրտ Մանաճիհրը նրա սարկաւագներին ածեց ծովի մէջ։ Վշտացած հայրապետը լեռան բարձրութիւնից նայեց նախ դէպի ծովը, որ կլանել էր նրա սարկաւագներին, եւ ապա դէպի Ռշտունեաց աշխարհը, որ այնքան անգութ գտնուեցաւ դէպի նրա սանիկները։ Նա անիծեց թէ ծովը եւ թէ աշխարհը... ծովը կատաղեց, գոռաց, փրփրեց, եւ իր ափերից խկոյն դուրս վազեց։ Շէն ու շինութիւն, արտ ու անդաստան, բոլորը կորան, ջրասոյզ եղան։ Երկինքը պղնձացաւ, անձրեւ չը տուեց, երկիրը ամլացաւ, էլ ջուր չը բղխեց։

ծառն ու ծաղիկը, խոտն ու բուսը, ճախն ու ճարակը, անխոնջ մշակի վարն ու վաստակը, — բոլորը երաշտից այրուեց, ցամաքեց։ Նրանից յետոյ սովը մէջ մտաւ եւ իր ետեւից ժանտախտը բերաւ։ Անգութ հնձաւորը հնձեց, տապալեց եւ դիակներով երկիրը ծածկեց։ Գայլն ու բորենին, անգղն ու արծուին, ազատ, աներկիւղ թափառում էին մի գիւղից միւս գիւղ, եւ լափում էին անթաղ դիակներ...

Արտամէջի անպատկառ աղջիկներին անիծելուց յետոյ, Ս. Յակոբ Հայրապետը՝ այդ երկրորդ սարսափելի անէծքն էր, որ կատարեց Ոշտունեաց աշխարհում։ Յետոյ նա անիծեց Փշաւանս գիւղը, ուր մինչեւ այսօր փուշից աւելի ոչինչ չէ բուսնում... Բայց ժողովուրդը, ներողամիտ ժողովուրդը, այդ անիծասէր հայրապետի յիշատակը յաւերժացնելու համար, նոյն Կապուտ-Կող լեռան կապտագոյն կողքի վրայ, նրա անունով հիմնեց մի վանք, որ մինչեւ այսօր պաշտւում է ամենայն ջերմեռանդութեամբ։ Մենք անցանք այդ վանքի մօտից, բայց նրա մէջը չը մտանք։

Սկսեալ Նոր-Գիւղ կոչուած աւանից, որը այժմեան Գաւաշ գաւառակի գայմագամանիստ գիւղաքաղաքն է, մինչեւ Դատվանի Նաւահանգիստը հասնելը, ծովի եզերքով սփռուած են զանազան ամայի եւ շէն վանքեր, որոնք իրանց ծովահայեաց, դիրքով սքանչելի տեսարաններ են ներկայացնում։ Ամենագեղեցիկ տեղերը լեռների բարձրաւանդակների վրայ՝ ընտրել են վանքերի համար։ Ես կը յիշեմ այդ վանքերի անունները միայն. Կարմրուկ սուրբ Աստուածածին, Գագիկ Թագաւորից շինուած, որը մի ժամանակ երեք հարիւր միաբան ունէր, իսկ այժմ համարեա ամայի է. Լուսապտուղ սուրբ Սահակ, Գանձակ գիւղի մօտ, որը ամեն աչացաւ ունեցողների բժշկողն է. Ս. Թօմայի վանք, որը գտնվում է Կապուտ-Կող լեռան

ծովահայեաց բարձրութեան վրայ եւ պահում է իր մէջ Թովմա առաքեալի աճեակ բազուկը. Ս. Գ է ո ր գ ա յ վ ա ն ք, Գոմս գիւղի մօտ, որի մէջ պահվում է. Ս. Գէորգայ գլուխը. Ս. Կ ա ր ա պ ե տ ի վանք. Սոփ գիւղի մօտ, եւ Ս. Հ ի ղ դ ի բ ո ւ զ դ ի վանքը. Թուխ գիւղի մօտ.

Ի՞նչ ազդեցութիւն ունեն այդ վանքերը իրանց շրջակայքի վրայ: —

Անցնում էինք մի հայաբնակ մեծ գիւղի մօտով: Գիւղից շատ չէինք հեռացել, մեր ուշադրութիւնը գրաւեց մի խառնաձայն աղմուկ, աղաղակ: Բլուրների միջից միմեանց ձայն էին տալիս, գոչում էին՝ "անցան... բռնեցէք,... եւ աղաղակները հեռզհետէ սաստկանում էին: Ձայները աւելի մանուկ հասակի ձայներ էին: Մենք կարծեցինք, թէ գայլ է մօտեցել բլուրների վրայ արածող ոչխարներին: Երբ մօտեցանք եւ տեսանք, թէ եւ գայլ չէր, բայց նրա նման մի բան էր.

Մի մարդ ձորի միջով փախչում էր, իսկ գիւղի փոքրիկ գառնարածները ամեն կողմից քարեր էին նետում նրա վրայ: Հալածականը ոչ մի տեղ չէր գտնում ապաստանելու, եւ փրկութեան բոլոր յոյսը դրել էր արագ ոտների վրայ: Կարծեցինք, թէ այդ մարդը գառն է գողացել եւ, գողութեան մէջ բռնուելով, փոքրիկ հովիւները հալածում են նրան: Ջալալը իր ձին առաջ քշեց, տեղեկանալու եղելութիւնը: Նրա ձայնից երեխաները հանդարտուեցան, փախստականը կանգ առեց: Կարծես, Աստուծուց նրան օգնութիւն հասաւ:

Դա մի փոքրիկ, կարճահասակ մարդ էր, կիսա-եւրոպական եւ կիսա-ասիական աղտոտ հագուստով, եւ ձեռքում բռնած ունէր իր հասակից աւելի երկար մի ցուպ, իսկ կողքից քարշ էր ընկած մի մեծ պայուսակ սեւ կաշուց: Թուխ դէմքը, նեղ, փայլուն աչքերը եւ ծնօտի վրայ կծիկ դարձած

սեւ, գանգրամազ մօրուքը՝ առաջին անգամից այն կարծիքն էին արտայայտում, որ դա կամ հրէայ մանրավաճառ պէտք է լինէր, կամ Թափառական բժիշկ եւ կամ մի բօշայ, որ պարապվում էր Փալջիութեամբ (կախարդութեամբ)։

Երբ մենք կանգնած նայում էինք այդ օտարոտի Թափառականի վրայ, փոքրիկ հովիւները նոյնպէս ցած իջան բլուրների բարձրութիւններից եւ, իրանց երկար ցուպերի վրայ յենուած՝ շրջապատեցին նրան։ Նրանք քարեր ունէին բռնած, բայց չէին խփում։ Թափառականը տակից մի առանձին ներողամտութեամբ նայում էր նրանց վրայ եւ խուլ մրմռում էր։ Չը գիտեմ, նահատակի սառնասրտութիւն էր այդ, թէ վշտացած մարդու ապշութիւն։ Նոր Ստեփաննոսը գտնվում էր իր քարկոծողների շրջանի մէջ։

— Այդ մարդը անհաւատ է, — ասաց երեխաներից մէկը։

— Պաս է ուտում, — աւելացրեց երկրորդը։

— Սատանայական գրքեր է ծախում, վրայ բերեց երրորդը։

— Մեր տէրտէրի ձեռքը չէ համբուրում, — նկատեց չորրորդը։

— Մեր ժամը չէ գնում, — պարզաբանեց հինգերորդը։

— Երեսին խաչ չէ հանում, — հաստատեց վեցերորդը։

Այսպէս, իւրաքանչիւրը կարդում էր դատապարտեալի յանցանքները։

— Լաւ, դուք ի՞նչ գործ ունէք, չարաճճիներ, — ծիծաղելով ընդհատեց Ալանը։

— Անհաւատ է, — կրկնեցին կրօնի փոքրիկ պաշտպանները միաձայն։

— Մի շաբաթ առաջ մեր գիւղում մի լաւ չնաթագ կերաւ, — ասաց նրանցից մէկը. — գիւղացիք այնքան ծեծեցին, որ ողջ տեղը ականջը մնաց. հիմա էլի եկել է, չէ ամաչում:

Փոքրիկ հովիւներից մէկը երկար ցուպի ծայրը մօտեցրեց նրա քթին եւ, սաստիկ շփելով, հարցրեց.

— Ի՞նչու ես լեզուդ պահել, դէ խօսիր տե՛ս ինչ ես ասում:

Նա ոչինչ չը պատասխանեց եւ նայեց դէպի երկինքը:

Հալածականին մեր պաշտպանութեան տակ առնելով, մենք մեծ դժուարութեամբ կարողացանք համոզել նրա հալածիչներին, որ այդ "անհաւատը" միւս անգամ նրանց գիւղին չի մօտենայ եւ "սատանայական" գրքեր չի ծախի: Նրանք ցրուեցան, ասելով.

— Եթէ կը գայ, կը տեսնես... եւ իւրաքանչիւրը ցոյց տուեց ձեռքի ցուպը:

Մենք հեռացանք, նրան մեզ հետ տանելով: Յետոյ երեւաց, որ այդ մարդը Սուրբ Գրքերի տարածող մի գրավաճառ էր:

Բոլորովին մութն էր, երբ հասանք մի այլ գիւղ: Նա ասաց մեզ, որ այնտեղ կարող ենք յարմար իջեւան գտնել, եւ ինքը առաջնորդեց մեզ դէպի մի տուն:

— Դա "եղբայր" Թաթոսի տունն է, — ասաց մեզ նախ քան դռների բացուիլը:

Շէմքի վրայ երեւաց տան տէրը:

— Եղբայր Թաթոս, քեզ համար հիւրեր եմ բերել, աւետեց նրան Սուրբ Գրքերի տարածողը:

— Իմ աչքերի վրայ տեղ ունեն, — պատասխանեց եղբայր Թաթոսը, մօտեցաւ եւ մեզ ձեռք տուեց:

Սրահում մեզ համար նստելու տեղ պատրաստեցին, իսկ ձիաները կապեցին սրահի առջեւ։ Մենք տեղաւորուեցանք թանձր թաղիքի վրայ։ Սուրբ գրքերի տարածողը իր գրքերով լի պայուսակը դրեց մի անկիւնում, նստեց մեզ մօտ եւ սկսեց իր պատառոտած տրեխները բաց անել։

Նրան կոչում էին «ջին»-Դաւիթ, որ նշանակում է՝ դեւ կամ սատանայ Դաւիթ։ Արդեօք իր դէպքի՞ համար, թէ մի այլ պատճառով էր ստացել այդ մականունը, — ինձ մնաց անյայտ։ Բայց այդքանը պարզ էր, որ նրա կերպարանքը բաւական համապատասխան էր իր ստացած կոչմանը։

Մեր հիւրընկալը, «եղբայր» Թաթոսը, մի երկար, նիհար, կորաքամակ մարդ էր, ալեխառն մօրուքով։ Նրա իրանի աղեղնաձեւ դիրքը, երեւի, առաջ էր եկել իր արհեստից, որ ստիպում էր նրան միշտ թեքուած մնալ։ Նա բուրդ գզող էր։ Նրա իրանը իր բուրդ գզելու աղեղի ձեւն էր ստացել։ Գիւղացի կնիկները բերում էին նրա մօտ իրանց ոչխարների բուրդը, նա գզում էր, յետոյ նրանք տանում էին, թել էին մանում շալեղէն գործուածների համար։ Իբրեւ վարձ, եղբայր Թաթոսը ստանում էր բուրդի մի մասը։ Վերջին ժամանակներում նրա եկամուտը պակասեց, որովհետեւ նրա մասին լուր տարածուեցաւ, թէ նա նոյնպէս «անհաւատ» է։ Գիւղացիք նրա մօտ այլ եւս շատ չէին յաճախում։

Եղբայր Թաթոսը ամեն ինչ մեզ համար կարգադրելուց յետոյ, եկաւ, նստեց մեզ մօտ։ Նա, կրկին անգամ բարեւելով, սկսեց սովորական հարցմունքները՝ թէ ո՞րտեղացի ենք, ո՞րտեղից ենք գալիս, ո՞ւր ենք գնում եւ այլն։ Նա խօսելու ժամանակ երկու աչքերն եւս խփում էր, ձայնը հազիւ էր լսվում, եւ երկու ձեռքերը ջերմեռանդութեամբ փակում էր։ Այդ սովորութիւնը մնացել էր նրա մէջ՝ իրանց ժողովարանում աղօթելու եղանակից։ Երբ իմացաւ,

*որ մենք Աղթամարայ վանքից ենք գալիս, նրա դէմքի արտայայտութիւնը ցաւակցական ձեւ ստացաւ։ Նա ոչինչ չը խօսեց, բայց նրա լուռ շրթունքները, կարծես, աղօթելիս լինէին՝ «Տէր, ողորմի՛ր այդ մոլորեալներին»...*

*Սուրբ Գրքերի տարածողը սկսեց պատմել Թաթոս եղբօրը ճանապարհին իր հետ պատահած անցքը։ Նա աւելի վշտացաւ եւ, խորին կերպով հոգւոց հանելով, ասաց.*

*— Տիրոջ խօսքը առանց հալածանքի չի տարածուի...*

*Արդէն յայտնի էր, որ մենք գտնվում էինք մի հայ բողոքական ընտանիքում։*

*Ջալլադը, որ խիստ հազիւ անգամ խօսակցութեան մէջ մտնելու սովորութիւն ունէր, դարձաւ դէպի հալածեալը, հարցնելով.*

*— Դուք միայն գրքե՞ր էք տարածում։*

*— Ոչ, յարմար տեղերում նաեւ քարոզում եմ Տիրոջ խօսքը, կամ ինքս կարդում եմ Աւետարանը, իսկ գիւղացիք լսում են, — պատասխանեց նա հեզութեամբ։*

*— Շա՞տ լսողներ ունէք։*

*— Այդ կողմերում չէ կարելի ասել՝ թէ շատ, քահանաները գրգռում են ժողովրդին մեր դէմ։ Դուք ձեր աչքով տեսաք, եթէ երեխաները այդպէս են վարվում, նրանց հայրերը ինչ կը լինեն։*

*— Բայց, որքան ինձ յայտնի է, դուք էլ ձեր կողմից ոչ սակաւ առիթներ էք տալիս ձեզ հետ այդպէս վարուելու։*

*— Ի՞նչ առիթներ։*

*— Լուսաւորչականներին հեթանոս էք կոչում, նրանց սրբութիւնները անարգում էք, մեծ պահոց օրերում բաւական չէ, որ դուք պաս էք ուտում, այլ կերած մածունի մի մասն էլ ձեր մօրուքների ու բեխերի վրայ էք քսում, եւ այնպէս դուրս էք գալիս Լուսաւորչականների մօտ, որ նրանց*

բարկացնէք։ Չէ՞ որ, ձեր տարածած Աւետարանը արգելում է այս տեսակ ցոյցեր, պատուիրում է չը վշտացնել եղբօրը։

— Նրանք մեր եղբայրները չեն։

— Եթէ դուք նրանց ձեր եղբայրներ չէք համարի, դրանով աւելի պատճառ կը տաք ձեզ հալածելու։ Եւ միթէ դուք եւ նրանք մի հօր որդի, մի ազգի զաւակներ չէք։

Մէջ մտաւ Թաթոս եղբայրը, դարձեալ աչքերը խփելով, եւ աջ ձեռքը դէպի Սուրբ Գրքերի տարածողը մեկնելով, որ թոյլ տայ իրան խօսելու։

— Մենք եղբայրներ կոչում ենք միայն աւետարանով մեզ հետ միացողներին, ինչ ազգից որ լինէին նրանք, իսկ հեթանոսները մեր եղբայրները չեն, թէեւ մէկ մօրից ծնուած լինէինք։

Ասլանը լուռ վերկացաւ, ցած իջաւ սրահից եւ դիմեց դէպի պարտէզի առջեւից հոսող առուակը։ Այնտեղ նստեց նա խոտերի վրայ։ Ես գնացի նրա մօտ։

— Խնդրեմ իմ վերարկուն այստեղ բեր, — ասաց նա վշտացած ձայնով։

Երբ վերարկուն տարայ, նա փաթաթուեցաւ, պառկեց խոտերի վրայ։

— Կամենում ես քնե՞լ, — հարցրի նրանից։

— Ես զզուում եմ այդ մարդիկներից, եթէ գիտենայի, որ բողոքականներ են, ես բնաւ նրանց շէմքի վրայ ոտք չէի դնի։ Չէ կարելի նրանց հանդիպել, առանց կրօնական վիճաբանութիւններ լսելու։

Նա գլուխը դրեց իր թեւքի վրայ եւ լռեց։

Ես հաւատացած էի, որ նա հանգստանալ չէր կարող, ես հաւատացած էի, որ նրան երկար պիտի տանջէր այն միտքը, որ եղբայրը զլանում է իր հարազատին եղբայր կոչել։

*Ես վերադարձայ սրահը. վիճաբանութիւնը դեռ շարունակվում էր. ես երբէք չէի տեսել Ջալալդին այնպէս տաքացած:*

*Մէկը մեզ մօտ հասիրի վրայ պառկած խռմփում էր: Վիճաբանութեան ձայնից զարթնեց, գլուխը վեր բարձրացրեց եւ քնաթաթախ նայեց մեզ վրայ:*

*— Պօղոս եղբայր, զարթնեցի՞ր, — կարեկցութեամբ հարցրեց նրանից Թաթոս եղբայրը:*

*Պօղոս եղբայրը, փոխանակ պատասխանելու, սկսեց յօրանջել, աչքերը ճմռել, որ լաւ տեսնէ, թէ մենք ինչ մարդիկ ենք: Նա նոյնպէս մեզ նման ճանապարհից էր եկած, եւ յոգնած պառկել էր: Մինչեւ նա կը վերկենար, կը լուացուէր, որ քունը փախցնէ, նրա բացակայութեան ժամանակ, Թաթոս եղբայրը ծանօթացրեց մեզ նրա անձնաւորութեան հետ, թէ նա Բաղէշից է եկած, այնտեղի եղբայրներից է, ձմեռը տեղային դպրոցներում վարժապետութիւն է անում, իսկ ամառը շրջում է գիւղերում, քարոզ է տալիս, մխիթարում է եղբայրներին Տիրոջ խօսքերով եւ այլն:*

*— Նա ընկլեզի լեզու էլ է խմանում, — աւելացրեց Սուրբ Գրքերի տարածողը:*

*— Ուրեմն միսիօնարների աշակերտ կը լինի, — նկատեց Ջալալդը:*

*— Նա նրանց մօտ է սովորել, եւ նրանցից այժմ լաւ ռոճիկ է ստանում:*

*— Ո՞րքան:*

*— Ամսական երկու ոսկի:*

*— Ա՞յդ է "լաւ ռոճիկը":*

*Պօղոս եղբայրը մի գնդաձեւ մարդ էր, մի աչքից կոյր, որ ծածկելու համար մոյգ-ծխագոյն ակնոցներ էր գործ*

ածում։ Նրա մարմնի բոլոր անդամները միատեսակ կոլորուած էին, կարծես թէ, ծայրեր չը կային։ Մեր հիւրընկալի կինը, աղջիկը մի առանձին հոգ տարան նրա լուացուելու եւ երեսը սրբելու մասին, որը վերջացնելուց յետոյ, եկաւ նստեց մեզ մօտ։

— Հրամանքնիդ ո՞րտեղացի էք, — եղաւ նրա առաջին խօսքը։

Մեր փոխարէն պատասխանեց մեր հիւրընկալը, ասելով, որ Աղթամարայ վանքիցն են գալիս։

— Ուրեմն ուխտաւորնե՞ր էք, — հարցրեց նա։

— Այո՛, ուխտաւորներ ենք, — պատասխանեց Ջալալը, հետազօտելով նրա դէմքի թթու արտայայտութիւնները։

Առանց մեր հարցնելու, նա ասաց, թէ ինքը Բաղէշի դպրոցների վարժապետն է, եւ տասն տարուց աւելի կը լինի, որ այնտեղ ուսուցչութեան պաշտօն է վարում, եւ ուրիշ շատ գործեր է կատարում։

— Ի՞նչ էք սովորեցնում, — հարցրեց Ջալալը։

— Ժամօթացնում ենք Սուրբ Գրքերի հետ, — պատասխանեց նա։

— Այդքա՞նը միայն։

— Մի փոքր եւս աշխարհագրութիւն եւ թուաբանութիւն ենք սովորեցնում։

— Շա՞տ է այնտեղի բողոքականների թիւը։

— Այնքան շատ չէ։ Իսկ գիւղերում Տիրոջ գործը աճելու վրայ է։

— Գիւղերում դպրոցներ չունե՞ք։

— Դեռեւս ոչ։ Այժմ մենք բաւականում ենք միայն կիրակնօրեայ կրթարաններով։

— Ո՞վքեր են ձեր գլխաւորները։

— Ամերիկացի միսիօնարներ։

— Շա՞տ են թուով։

— Մի քանի ընտանիքներ միայն։

— Իսկ նրանց հասցրած աշակերտների՞ թիւը։

— Այժմ բաւական կը լինին։

— Ի՞նչ գործով են զբաղուած։

— Տիրոջ խօսքը տարածելու գործով. կամ քարոզութիւններ են անում, կամ վարժապետութիւն են անում եւ կամ թարգմանութիւններով են զբաղուած։

— Դուք էլ, ի հարկէ, նրանց աշակերտներից էք։

— Եւ առաջին աշակերտներից։ Երբ միսիօնարները դեռ նոր էին եկած, իմ հայրը նրանց մօտ խոհարար էր, ինձ վերառին ու սովորեցրին։

Թաթոս եղբայրը մօտեցաւ իւղային ճրագին, նրա պատրոյգը ուղղեց. նրա կինը եւ աղջիկը, մեզանից հեռու նստած, ուշադրութեամբ լսում էին։ Սուրբ Գրքերի տարածողը մի առանձին հիացմունքով նայում էր միսիօնարների առաջին աշակերտի վրայ։ Նրա նեղ, փոքրիկ աչքերը, որ կապիկի աչքերի նման արագ թարթափում էին, կարծես, մեզ ասելիս լինէին՝ “դէ՛, եթէ քաջութիւն ունէք, խօսեցէք մեր վարպետի հետ, նա ձեր պատասխանը ըստ կարգին կը տայ„։

— Ասացէք, խնդրեմ, ձեր նպատակը միայն կրօն տարածե՞լն է, — հարցրեց Ջալալը։

— Միայն այդ է, — պատասխանեց միսիօնարների առաջին աշակերտը։

— Դուք երբէք չէ՞ք մտածում, որ ժողովուրդը, բացի Տիրոջ խօսքից, այլ պէտքերի եւս կարօտ է. օրինակ, ձեր կարեկցութիւնը չէ՞ գրաւում նրա թշուառութիւնը, աղքատութիւնը, իր նեղիչներից հարստահարուիլը եւ այլն։

Նա փոխանակ պատասխանելու, ձեռքը տարաւ դէպի իր ծոցը, հանեց այնտեղից մի փոքրիկ Աւետարան, որը մի մեծ օրացոյցի չափ հաղիւ կը լինէր եւ կարդաց Մատթէոսի Զ-րդ Գլ. 33-րդ համարը. «Խնդրեցէք նախ զարքայութիւն Աստուծոյ եւ զարդարութիւն նորա, եւ այդ ամենայն յաւելցի ձեզ: Մի այսուհետեւ հոգայցէք վասն վաղուին՝ զի վաղիւն վասն իւր հոգասցի»:

— Այդ ես գիտեմ... — ասաց Ջալալը, խնդրելով, որ գոցէ Աւետարանը: — Եթէ Աստուծոյ արքայութիւնը այնպէս գալու լինէր, ինչպէս ցանկանում էր մեր Փրկիչը, իրաւ է, մենք երբէք աղքատ ու թշուառ չէինք լինի, բայց այնպէս չեղաւ... Հարուստը մնաց հարուստ, աղքատը մնաց աղքատ...

Յետոյ խօսքը փոխելով հարցրեց նա.

— Ձեր միսիօնարները, երեւի, լաւ են ապրում, այնպէս չէ՞. կառքեր ունեն, ձիաներ ունեն, ծառաներ ունեն, եւ միշտ փառաւոր սեղան ունեն: Ի՞նչու նրանք չեն փորձում իրանց անձի վրայ Զ-րդ Գլ. 33-րդ համարի ասացուածը, որ իրանք եւս աղքատ կեանք վարեն, եւ իրանց օրինակով մխիթարեն ժողովրդի աղքատութիւնը:

— Բայց նրանք մեծ փողեր են ստանում, — պատասխանեց միսիօնարների առաջին աշակերտը, Աւետարանը ձեռքից ցած չը դնելով: — Նրանք մեզ նման չեն, նրանք այնպէս լաւ կեանքի սովորած են:

— Դուք կարծում էք՝ վատ է լաւ կեանքը...

— Սատանայի փորձութիւնը աւելի շուտով յաջողվում է լաւ կեանքի հետամուտ եղողների վերաբերութեամբ:

— Ի՞նչու ձեր միսիօնարների վերաբերութեամբ չէ յաջողվում:

— Ասացի, որ նրանք մեզ նման չեն:

Նա շուտ-շուտ ուղղում էր իր ակնոցները. ես սատրիկ տառում էի այդ գունաւոր ակնոցները, որոնք ծածկել էին նրա աչքերը, եւ ինձ այնպէս էր թւում, որ նա թանձր վարագոյրի ետեւից էր խօսում. ոչինչ չէր երեւում. անկարելի էր նրա աչքերի խորքից թափանցել նրա սրտի խորքը, որը, անտարակոյս, դատարկ պէտք է լինէր:

— Վերջապէս, այն ասացէք, — հարցրեց Ջալալը, — դուք ի՞նչ ազգային իդէալներ ունէք:

— Մենք ազգ չենք ճանաչում, մենք միայն Տիրոջ եկեղեցին ենք ճանաչում, — պատասխանեց նա:

— Դուք ուրեմն եւ հայրենիք չէք ճանաչում:

— Այո: Քրիստոնեայի հայրենիքը երկինքն է: Իսկ այդ երկիրը միայն մի ժամանակաւոր իջեւան է, այստեղից այնտեղ տեղափոխուելու համար:

— Չէ՞ որ այդ ժամանակաւոր իջեւանը նոյնպէս բարեկարգելու եւ մեր երջանկութեանը յարմար կացուցանելու շատ պէտքեր ունի:

— Այդ բոլորը Աստուծոյ ձեռքումն է, մեզանից ոչինչ կախուած չէ: Մենք ի՞նչ կարող ենք անել:

— Եթէ մենք աշխատենք, Աստուած եւս մեզ կ'օգնէ: Աստուած ծոյլերի համար չէ:

— Ամենից առաջ հոգու համար աշխատելու է: Ի՞նչ օգուտ, եթէ աշխարհայինը կը շահենք, իսկ հոգեւորը կը տուժենք:

Ես մտաբերեցի մեր տէր Թօդիկի խրատները: Ի՞նչ զանազանութիւն կար նրա ասածների եւ այդ ապուշի համոզմունքների մէջ: Տէր Թօդիկը նոյնպէս ամեն հոգս Աստուծոյ վրայ էր ձգում: Քարոզում էր կեանքի պէտքերի մասին հոգ չը տանել եւ միայն հոգու համար մտածել:

— Եթէ դուք լինէիք միսիօնարների երկրում, — ասաց Ջալալը, — եթէ տեսնէիք, մարդիկ այնտեղ ինչպէս են ապրում, ինչպէս են գործում, երբէք այդպէս չէիք խօսի: Բայց միսիօնարները այստեղ գալով, ձեր երկրային սարկութեան վրայ աւելացնում են եւ հոգեւոր սարկութիւնը. — ձեզ անջատում են աշխարհից, անջատում են համազգի եղբայրներից եւ դարձնում են Աւետարանի գերիներ, թէեւ Սուրբ Աւետարանը ազատութեան եւ եղբայրութեան կատարան է:

Նա ոչինչ չը պատասխանեց: Մեր հիւրընկալը հարցրեց.

— Դուք, պարոն, եղե՞լ էք միսիօնարների երկրում:

— Եղել եմ, — ասաց Ջալալը, եւ կրկին դարձաւ դէպի միսիօնարների առաջին աշակերտը.

— Ի՞նչպէս կարելի է այդ աստիճան միակողմանի, սահմանափակ եւ մոլեռանդ լինել: Դուք հերքում էք ազգը, հայրենիքը, հասարակական բարօրութիւնը, — դուք հերքում էք մարդու ինքնագործունէութիւնը, որի վրայ է հիմնուած նրա երջանկութիւնը, եւ միմիայն վերացական, հոգեւոր սնունդով էք մտածում կերակրել մարդիկներին: Այդ նրանից է, որ ձեզ, բացի Սուրբ Գրքերի պրօտեստիկայից, ուրիշ ոչինչ չեն սովորեցրել: Դուք չը գիտէք, որ միսիօնարի քարոզած բողոքականութիւնը բոլորովին այլ ոգի, այլ ուղղութիւն եւ այլ ձգտում ունի, քան թէ այն բողոքականութիւնը, որ արդէն ընդհանրացել եւ կազմակերպուել է մի բողոքական ժողովրդի մէջ, թէ Եւրոպայում լինէր նա, թէ՛ Ամերիկայում: Դուք չը գիտէք, որ միսիօնարին հարկաւոր են հաւատացեալներ միայն. նա կազմում է իր եկեղեցին, հոգ է տանում նրա հոգեւոր պէտքերի մասին, իսկ նրա աշխարհային պէտքերը զանց է առնում: Եւ ստիպուած է զանց առնել, որովհետեւ այդ վերջինը կը թուլացնէր առա-

ջինի ազդեցութիւնը: Նա պէտք է աշխատէ կտրատել ձեր բոլոր հին կապերը, որ կապում են ձեզ ձեր անցեալի, ձեր պատմութեան, մի խօսքով, ձեր ազգային կեանքի հետ, որպէս զի, առանձնացնելով ձեզ կարողանայ կենտրօնացնել իր նոր հիմնած եկեղեցում: Այդ պահանջում է միսիօնարի կոչումը, նրա պաշտօնը, որին նա արհեստի ձեւ է տուել: Բայց նոյն միսիօնարը իր հայրենիքում այդպէս չէ վարւում. Նա սիրում է իր ազգը, նրա պատմութիւնը, նրա բանաստեղծութիւնը եւ նրա մինչեւ անգամ հեթանոսական դարերի աւանդութիւնները ու առասպելները: Նա մասնակցում է եւ իր հայրենիքի հասարակական գործերի մէջ. մտածում է, թէ ինչու մէկը հարուստ է միւսը աղքատ է. աշխատում է, որ աղքատն էլ իր տանը ուտելու հաց ունենայ եւ գոհ լինի իր վիճակից: Բայց ինչ տուեց ձեզ այդ նոր կրօնը: — Նա սերմանեց ձեր մէջ երկպառակութիւն, ատելութիւն դէպի ձեր այլադաւան ազգայինները: Դուք նրանց "հեթանոսներ„ էք կոչում, նրանք ձեզ՝ "անհաւատներ„: Դուք աւելի բարւոք էք համարում թուրքին, քուրդին մօտենալ, քան թէ նրանց: Ա՞յդ է աւետարանական եղբայրութիւնը:

Ինչպէս երեւում էր, Ջալալի այդ երկար ճառից միսիօնարների առաջին աշակերտի գլուխը ոչինչ չը մտաւ: Նա դարձեալ բաց արեց իր օրացոյցի չափ ծոցի Աւետարանը եւ նրանում ինչ-որ կարդաց: Ջալալը զայրացաւ:

— Դուք վնասակար մոլեռանդներ էք, եւ աւելի ոչինչ, — ասաց նա փոքր ինչ զգացուած ձայնով: — Այդ Աստուածային գրքի թիւր ու սխալ մեկնութիւնները փչացրել են ձեզ: Եթէ դուք լինէիք փոքր ինչ զարգացած մարդ, ես ձեզ կ'ապացուցանէի, որ դուք այդ գրքից ոչինչ չէք հասկացել: Բայց տգէտների հետ խօսելը՝ շատ դժուարին է:

Ցաւալին այն է, որ ձեր նմանները քարոզիչներ եւ վարժապետներ են...

Նա վերկացաւ եւ գնաց Ասլանի մօտ։

— Այդ մարդը խելագար է, — ասաց միսիօնարների առաջին աշակերտը նրա գնալուց յետոյ։

— Լռէ՛, անպիտան, — գոչեցի ես, — եթէ ոչ, ողջ տեղդ այդ յիմար գլուխդ կը թողնեմ։

Նա լռեց, միւսները նոյնպէս ոչինչ չը խօսեցին։

Ես սկսեցի մի առանձին զզուանք զգալ դէպի այդ մարդիկը, որոնք աւելի խղճալու կարօտ էին, քան թէ կարելի էր նրանց վրայ բարկանալ։ Ողորմելի՜ սարդիկ, մի գերութիւնից ընկել էին միւս գերութեան մէջ, — թուրքի, քուրդի ստրկութիւնից դարձել էին միսիօնարի ստրուկ...

Ես գնացի Ասլանի մօտ, բայց Ջալլադին այնտեղ չը գտայ։ Նա գնացել էր, երեւի, թափառելու գիշերային մթութեան մէջ, իր բորբոքուած սիրտը զովացնելու համար։ Ասլանը քնած չէր։ Ես պատմեցի նրան Ջալլադի վէճաբանութիւնը բողոքականների հետ։ Նա խիստ սառնութեամբ պատասխանեց.

— Ի զուր է այդպէս դատապարտել նրանց. այդ ողորմելիները ի՞նչով են մեղաւոր. նրանք արդիւնք են մեր եկեղեցու անկարգութեան։ Եթէ մենք ունենայինք օրինաւոր հոգեւորականութիւն, ի հարկէ, նրանք չէին լինի։ Մեր ճանապարհորդութեան ժամանակ այնքան բազմաթիւ վանքեր տեսանք, այնքան բազմաթիւ վարդապետներ տեսանք։ Ի՞նչ են շինում այդ տխմարները, ի՞նչով են զբաղուած։ — Դու քո աչքով տեսար, դու այդ լաւ գիտես։ Յայտնի բան է, նրանց վանքերի շուրջը կը կազմուի մի այդպիսի փչացած հասարակութիւն, որ ոչ ճշմարիտ բողոքական է եւ ոչ աւանդապահ լուսաւորչական։

— Ես պէտք է ներողութիւն խնդրեմ, — պատասխանեց Ալանը. — Իմ ընկերը թէև փոքր ինչ դիւրագրգիռ մարդ է, բայց շատ բարի սիրտ ունի։

Ջալալին գտնել չը կարողացան։ Ընթրիքից յետոյ խնդրեցինք՝ մեզ համար քնելու տեղ պատրաստել նոյն առուակի մօտ, ծառերի ներքոյ, որովհետև սրահում օդը սաստիկ խեղդող էր, և մանաւանդ զանազան միջատներ գիշերը կարող էին անհանգիստ անել մեզ։ Ջալալը դեռ չէր վերադարձել, երբ ես և Ալանը պատրաստուեցանք քնելու։

— Ո՞ւր գնաց նա, — հարցրի ես։

— Երևի, կը գայ, — պատասխանեց Ալանը։

— Բայց ո՜րքան լաւ խօսում էր նա, ո՜րքան հմուտ է սուրբ գրքերի գիտութեան մէջ։ Ես երբէք չէի կարծում, որ Ջալալը այդ աստիճան զարգացած մարդ լինէր։

Ալանը ծիծաղելով ասաց.

— Նա ինքը բողոքական է։

— Բողոքակա՞ն է, ի՞նչ էք խօսում։

— Եւ բողոքականի քահանայ է։

Ես շուարած մնացի։

Ես իսկոյն գնացի նրան որոնելու։ Պարտէզի մի հեռաւոր անկիւնում գտայ նրան, ծունր դրած գետնի վրայ, լուռ աղօթում էր։ Ո՞ւմ համար էր այնպէս յափշտակուած աղօթում նա։ — Երևի, իր մոլորեալ “եղբայրների„ համար...



ԻԸ.

## ԵՐԵԽԵԼԻ ՔԻԹԸ

Վերջապէս, հասանք Բաղէշ, որ այլ անունով կոչւում է Բիթլիս։ Իջեւանելու համար ընտրեցինք քաղաքի պանդոկներից (խան) մէկը։ Երբ կանչեցինք օդաբաշուն, որ մեզ մի սենեակ ցոյց տայ, յայտնուեցաւ մի պլանդակ մարդ, բանալիների փունջը գօտիից քարշ ընկած։ Ցետ ծալած բազուկները մինչեւ արմունկները դրօշմուած էին Երուսաղէմի նշաններով։ Այդ արդէն ապացոյց էր, որ նա մահտեսի էր եւ մենք մի բարեպաշտ ուխտաւորի հետ գործ ունէինք։ Եւ այդ էր պատճառը, որ նրան կոչում էին Հաջի Իսաղ։ Մինը միւսի ետեւից շտապով բաց արեց սենեակների դռները եւ առաջարկեց ամենայարմարը ընտրել։ Իսկ սենեակների արժանաւորութիւնները ցոյց տալու համար, նա միառմի յիշեցնում էր մեզ, թէ որ տարում եւ որ ժամանակ ինչ նշանաւոր մարդիկ են բնակուել նրանց մէջ։ Իբրեւ ապացոյց, նա ցոյց տուեց մեզ եւ մի քանի արձանագրութիւններ, որ ածուխով գրած էին պատերի վրայ, թէեւ այդ արձանագրութիւնները լաւ վկայութիւն չէին տալիս Հաջիի բարոյականութեան մասին։ Մի պատի վրայ գրած էր. "Եթէ Հաջի Իսաղին շուկան ուղարկես մի բան գնելու, դու էլ հետը գնա„։ Մի այլ տեղ. "Հաջի Իսաղի սատածներից եթէ հազարից մէկը ճշմարիտ լինի, ջորին կը ծնի„։ Եւ այսպէս, համարեա բոլոր արձանագրութիւնների մէջ Հաջիի անունը մեծ

դեր էր խաղում։ Ի հարկէ, եթէ հաջին գրագէտ լինէր, նրանցից եւ ոչ մէկը չէր թողնի, բայց, երեւի, նրան ասել էին, որ լաւ բան են գրել։

Մենք շատ խստապահանջ չեղանք, ընտրեցինք սենեակներից մէկը եւ մտանք քարէ տուփի մէջ։ Իրաւ որ, քարէ տուփ։ Ամբողջ պանդոկը շինուած էր կոփածոյ քարերից։ Սենեակները նոյնպէս թէ դրսից, թէ ներսից, տաշած քարերից էին շինուած։ Լոյս ընդունում էին միայն բաց թողած դռնից, եւ այդ պատճառով վանքերի նեղ խուցերի նմանութիւն ունէին։ Պանդոկը երկու յարկանի էր. վերին յարկում բնակվում էին ճանապարհորդներ, իսկ ներքին յարկում, քառանկիւնի բակի շուրջը, շարքով զետեղուած էին զանազան վաճառքների կրպակներ։

Ոչ մի կարասիք չը կար մեր ընտրած սենեակում. մերկ պատերը, մերկ յատակը, տիրող մռայլը ծանր տպաւորութիւն էին գործում։ Ասիական այլ ճանապարհորդների համար, որոնք ամեն պատրաստութիւններ իրանց հետ ման են ածում, գուցէ այդպիսի իջեւաններ յարմար կը լինէին, բայց մենք մի կապերտի կամ գորգի կտոր անգամ չունէինք մեզ հետ, որ ձգէինք յատակի վրայ եւ նստէինք։

Մեր բախտից հաջի Իսաղը խուլ յայտնուեցաւ, բայց մի զարմանալի խուլ՝ եթէ վատ բան ասէիր, նա չէր լսի, իսկ եթէ լաւ բան ասէիր, իսկոյն կը լսէր։ Օրինակ, եթէ նրան հայհոյանք տայիր, չէր լսի, իսկ եթէ ասէիր. «Հաջի, համեցէք, մի ֆինջան ղահուէ անուշ արէք», — իսկոյն վազ կը տար։

— Հաջի, մի շոր ձգիր այստեղ, որ վրան նստենք, — եղաւ մեր առաջին պահանջը։

Նա չը լսեց։ Ես բռնեցի նրա ձեռքից եւ, յատակը ցոյց տալով, բարձր ձայնով ասացի.

— Ջո՛ւր, ջո՛ւր բեր։

Նա մրմնջալով հեռացաւ, բայց շուրի փոխարէն մի աւել բերեց եւ սկսեց յատակը աւելել։ Այդ աւելն հարկաւոր էր, մենք այդ մասին չէինք մտածել, որովհետեւ հաջիի նշանաւոր յաճախորդներից՝ ով որ եկել էր, ով որ գնացել էր, իր հետքերը թողել էր յատակի վրայ։ Այստեղ ընկած էին ձմերուկի բորբոսած կեղեւներ, խաղողի չանչեր, մսի ոսկորներ, չոր հացի կտորներ, կիսավառ մոմի պատառներ, որ աշտանակի փոխարէն կպցրած էին աղիւսի վրայ, — եւ եթէ աւելացնենք նրանց հետ հաջիի կեղտոտ ֆէսը, որ կռանալու եւ աւելելու միջոցին ընկաւ յատակի վրայ, — կարելի էր այդ սենեակը կատարեալ աղբանոց համարել։

Երբ հաջին վերջացրեց իր աշխատանքը, մենք յայտնեցինք նրան մեր երկրորդ պահանջը, ասելով, որ լուացուելու ջուր բերէ։ Նա դարձեալ չը լսեց։ Ինձ մնում էր՝ երկրորդ անգամ բռնել նրա ձեռքից եւ աղաղակել. — «Ջո՛ւր, ջո՛ւր»։ Նա իբր ոչինչ չը հասկացաւ։ Հարկաւոր էր նշաններով հասկացնել, թէ ինչու համար էր ջուրը։ Ես ձեռքս տարայ դէպի երեսս եւ լուացուելու ձեւեր ցոյց տուի։ Նա էլ ձեռքը տարաւ դէպի պանդոկի բակը եւ ցոյց տուեց ջրի աւազանը, որի մէջ պղնձէ ծորակից ցած էր վազում ջուրը։

Դժուար էր որոշել, մե՞նք աւելի ծիծաղելի էինք երեւում հաջիի աչքում, թէ նա՞ մեզ։ Կարծեմ, մենք աւելի ծիծաղելի էինք երեւում։ Երեւի, նա մտածում էր, այդ ինչ տեսակ ճանապարհորդներ են, որ ոչ ջրի աման ունեն եւ ոչ մի կապերտի կտոր։

Իս համբերութիւնս կորցրի. նրա դանդաղկոտութիւնը աւելի վրդովեցրեց ինձ. բռնեցի երկար ականջներից եւ, սաստիկ թափ տալով, գոչեցի.

— Գնա՛ ջուր եւ մի օթոց բե՛ր, լսո՞ւմ ես։

Հաջին զգաստացաւ եւ շտապով դէպի ցած վազեց։ Բայց իմ վարմունքը դիւր չեկաւ Ալանին։

— Ի՞նչ պէտք է արած, — պատասխանեցի ես, — այդ մարդիկը խնդրելու չեն սովորած, նրանց պէտք է հրամայել եւ մտրակով հրամայել...

— Մենք բողոքում ենք մտրակի դէմ, եւ նոյնը մե՞նք պէտք է գործ դնենք, — ասաց նա։

Ես ոչինչ չը պատասխանեցի։

Քանի րոպէից յետոյ վերադարձաւ հաջին, բերելով իր հետ թէ՛ ջուր եւ թէ՛ մի օթոց։

— Օրհնած, — ասաց նա կիսածիծաղ եւ կիսավշտացած կերպով, — դէ՛ ասա ջուր եմ ուզում, էլ ուր ես չարչարում ինձ։ — Կարծես, նոր էր հասկանում, որ ես ջուր էի ուզում։

— Էլ ուրիշ ի՞նչ էք հրամայում, — դարձաւ նա դէպի Ալանը. — շուկայից գնելու ոչինչ չունէ՞ք։

— Դեռ եւս ոչ, երբ հարկաւոր կը լինի մի բան պատուիրել, կը կանչենք ձեզ, — ասաց Ալանը։

Հաջիի դէմքի վրայ երեւաց դժգոհութեան նման մի բան։ Նա այն բարի սովորութիւնն ունէր, որ պատրաստ էր իր սենեակները բոլորովին ձրի տալ իր յաճախորդներին, միայն թէ ամեն ինչ նրա ձեռքով գնէին։ Բայց, միեւնոյն ժամանակ, նա ունէր մի այլ սովորութիւն, որ ամենահասարակ ուտեստներ, որոնցմով լի էր բազարը, երբ պահանջէիր նրանից, նա միշտ դժուարութիւններ կը յարուցանէր։ Օրինակ, նրան ասում ես. — «Հաջի, կարո՞ղ ես մի փոքր հաց ու պանիր գնել բազարից»։ — Նա ուղղակի չի պատասխանի, թէ կարող եմ, այլ կ'ասէ քեզ. — «Տեսնեմ, կարող եմ գտնել»։ Նրա այդ անվճռականութիւնը այն

նպատակն ունէր, որ ցոյց տայ, թէ մի անկարելի գործ է կատարում եւ յաճախորդին մեծ ծառայութիւն է անում։

Հաջին մի ցամաք մարդ էր, նիհար ծնօտները խնամքով ածիլած, եւ կոշտ մազառի նման ընչացքների ծայրերը կտրած, որոնք մի չար սովորութիւն ունէին միշտ բերանը մտնելու։ Նրա դէմքի վրայ նշանաւոր էր երեւելի քիթը, որ կրում էր իր վրայ երկու բարձրութիւններ, որոնք, երկու գագաթների նման, միախառնուելով վերին շրթունքի հետ, կազմում էին մի երկար լեռնաշղթայ։ Սխալ չէր լինի, եթէ ասէի, որ նրա երեսը բաղկացած էր ամբողջապէս քթից։ Հաջիի կազմուածքի մէջ նշանաւոր էին եւ ոտքերը։ Թէեւ բոլոր տաճկաստանցիք՝ ծալապատիկ նստելուց՝ ծուռ ոտքեր ունեն, բայց Հաջիի ոտքերը այդ մասնում մի առանձին բացառութիւն էին կազմում։ Նրանք, դէպի կողքերի կողմը անկանոն կերպով դուրս ընկնելով, եւ հետզհետէ թեքուելով, ձեւացնում էին երկու աղեղնաձեւ կիսաբոլորակներ, որոնց ծայրերը, ներքեւից եւ վերեւից միանալով, մէջտեղում թողնում էին մի ձուաձեւ տարածութիւն։ Այդ էր պատճառը, որ նա կրիայի նման էր շարժվում։ Թէ ի՞նչ գոյն եւ ի՞նչ ձեւ էր ունեցել նրա հագուստը առաջ, — այդ դժուար էր որոշել, որովհետեւ կեղտը, սկսեալ հին ժամանակներից, այնպիսի թանձր խաւ էր դրել նրա հագուստի վրայ, որ բոլոր գոյները ծածկուել եւ անհետացել էին նրա շերտերի տակ, իսկ յաճախակի կարկատանները տարիների ընթացքում աղաւաղել էին նրա հագուստի իսկական ձեւը։ Հաջին մեզ համար աւելի հետաքրքիր դարձաւ այն ժամանակ, երբ իմացանք, որ այդ փնթի մարդը այն մեծ, քարաշէն պանդոկի տէրն է եւ քաղաքի հարուստ հայերից մէկը։ Մեր սենեակը կարգի դնելուց յետոյ, նա մօտեցաւ Ասլանին, հարցրեց.

— Էնֆիա ունե՞ս։

Ալանը զարմացած նայեց նրա երեսին։

Յետոյ մեզ ասացին, որ նա սովորութիւն ունի իր պանդոկի բոլոր այցելուներին այդ հարցը առաջարկել։ Երբ մէկի մօտ յայտնվում է էնֆիա (քթախոտի) եւ նրան «թաւաղայ է անում», նա նախ լի բռնով լցնում է իր պնչածակները, յետոյ սկսում է գովել նրա արժանաւորութիւնները այնքան, մինչեւ «թաւաղայ անողը» ամաչելուց ստիպուած է լինում իր ունեցածի մի մասը, «բարեկամական յիշատակի համար», ընծայել նրան։ Եւ այսպէս, հաջին միշտ ձրի էր ստանում այդ մեծ կարիքը, եթէ ոչ, իր ահագին քիթը գրգռելու համար բաւական ծախքերի կարօտ պիտի լինէր։

— Մենք մի բան չորոշեցինք ձեզ հետ, հաջի, — ասաց նրան Ալանը, — որքա՞ն է սենեակի վարձը։

— Օրեկան քսան ղուրուշ, իսկ ձիաների համար՝ իւրաքանչիւրին մի-մի ղուրուշ, — պատասխանեց նա, աւելացնելով, որ մեր «խաթրի» համար է այդքան փոքր վեր-առնում, որովհետեւ «պատուական» մարդիկ ենք եւ այլն։

— Շատ չէ՞։

— Դուք, պարոն, պէտք է գիտենաք, որ «մենք» սուտ խօսելու սովորութիւն չունենք, — ասաց նա մի անբացատրելի ժպիտ ձեւացնելով դէմքի վրայ։

Այդ կողմերում այդքան վարձ պահանջել կացարանի համար, աներեւակայելի բան էր, այնու ամենայնիւ, Ալանը ընդունեց, ասելով.

— Լաւ, գնա։

Նրա հեռանալուց յետոյ Ջալալը նկատեց.

— Այդ մարդը անպատճառ հայ-բողոքական պէտք է լինի։ Պատրաստ եմ գրաւ բռնել։

թէ՛ հարաւսոի, թէ՛ աղքատի, շինուած են, մաքուր, հարթ տաշուած, թխագոյն քարից։ Երեք գետեր, զանազան կողմերից գալով եւ քաղաքի մօտակայքում միանալով, անցնում են ձորի անդնդային խորութեան միջով եւ իրանց ահեղ ձայնով թնդեցնում են տիրող լռութիւնը։ Սկսեալ ձորի յատակից, սկսեալ գետի աջ եւ ձախ ափերից, շրջակայ լեռները սանդխաձեւ թումբերով (տերրասներով) աստիճանաբար վեր են բարձրանում։ Այդ թումբերի վրայ շինուած են տներ, այդ թումբերի վրայ տնկած են եւ տները շրջապատող պարտէզները։ Երբ ցածից դէպի վեր ես նայում, քեզ թուում է, թէ տեսնում ես Շամիրամի օդային պալատները իր կախաղանաւոր պարտէզներով։

Լեռների կուրծքի վրայ, սկսեալ ամենաբարձր կէտերից, վազում են բազմաթիւ աղբիւրները, յստակ, ինչպէս բիւրեղ։ Նրանց վտակները անցնում են բարձրադիր պարտէզների միջով, անցնում են տների կտուրների վրայով եւ, առաջինից դէպի երկրորդը թափուելով, կազմում են հիանալի ջրվէժներ։ Մի տան կտուրը միւս տան համար բակի տեղ է ծառայում, եւ այսպէս, լեռների կուրծքին կպած տները աստիճանաբար վեր են բարձրանում եւ հասնում են մինչեւ ամենաբարձր գագաթները։ Իսկ վտակները վերեւից հոսելով, ջրվէժների տեսարաններ են ներկայացնում։ Ամեն կողմից ջուր է վազում, թէ՛ աղքատին եւ թէ՛ հարուստին բարիք է պարգեւում։ Ջուրը անցնում է Ս. Սարգիս եկեղեցու աւագ խորանից եւ թափվում է նրա գաւիթը։

Գնում ես փողոցներով, յատակը քար, պատերը քար. մտնում ես գալիս պարտէզների մէջ, ցանկապատը քար, դռները քար, — եւ այդ քարեղէն աշխարհը, արհեստի ու բնութեան հրաշալիքների հետ միացած, սքանչացնում է քեզ։ Դէպի որ կողմ եւ նայում ես, երեւում են ահաւորութիւն,

վսեմութիւն, գեղեցիկ տեսարաններ։ Նայում ես դէպի ձորի անդնդային խորութիւնը։ Մի տուն միւս տան վրայ, մի պարտէզ միւս պարտէզի վրայ, աստիճանաբար իջնում են մինչեւ գետի ափերը, որ հոսում է ձորի խորութեան միջով։ Իսկ այնտեղ, գետեզերքի բոլոր երկայնութեամբ, տարածվում են քաղաքացիների այգիները եւ լցնում են ձորը հիանալի կանաչազարդութեամբ։

Նայելով այդ բոլորի վրայ, քո սիրտը բաբախում է մի վսեմ հպարտութեամբ, երբ տեսնում ես, թէ ինչպէս հայ մարդը գիտէ մաքառել վայրենի բնութեան հետ, գիտէ լեռների ապառաժոտ անձկութեան մէջ իր համար մի դրախտ ստեղծել։

Աւելի հետաքրքիր էր շուկան։ Հրապարակը գտնվում էր կտուրների վրայ, իսկ կտուրների տակում՝ ծածկուած բազարը իր կրպակներով ու խանութներով։ Չը սովորած մարդու աչքում կարող էր այդ շատ օտարոտի երեւալ, եթէ չը մտածէր, որ խնայող բաղեշցին, իր տեղի սղութեան պատճառով, աշխատել է նրա ամեն մի թիզից օգուտ քաղել։ Ես ման էի գալիս կտուրների վրայ, այլ խօսքով, հրապարակում։ Անցնելու տեղ չը կար. մարդ, անասուն եւ թռչուն խառնուած էին միմեանց։ Այնտեղ գիւղացի կանայքը, խումբերով նստած, ձու, հաւ, սեր ու կարագ էին ծախում. այնտեղ կապած էին գիւղացիների աւանակները, որոնց վրայ բարձած, զանազան ուտեստներ էին բերել ծախելու. այնտեղ շարքով շոքած էր ուղտերի քարաւանը, որ գիւղերից ցորեան էր բերել. նրանց մօտ կիտած էր ցորեանի շեղջը։ Այնտեղ ջուլհակը իր գործած կտաւն էր ծախում, իսկ ներկարարը իր ներկած կարմիր չիթը. այնտեղ չիթսազը իր պատրաստած չիթերը փոխում էր քուրդի հետ եւ նրանից իւղ, պանիր ու բուրդ էր առնում. այնտեղ թափառական

չինգանան պար էր ածում իր կապիկը եւ փարաներ էր հաւաքում, իսկ քահանան մտնում էր այս եւ այն ուտեստը ծախողին, մի պատառ վեր էր առնում, իր բերանն էր դնում, "համը տեսնելու" համար, եւ մի կտոր իր թաշկինակի մէջ էր դնում, տուն տանելու, "նմուշի" համար։ — Այդ բոլորը կատարվում էր կտուրների վրայ, այդ օդային հրապարակում։

Ես ցած իջայ կտուրներից, մտայ նրանց տակ, ծածկուած չարշին։ Դա մի ամբողջ լաբիւրինթոս էր, որ տարածվում էր դէպի զանազան կողմեր։ Չարշիների աջ եւ ձախ կողմում, մինը միւսի մօտ, շարքով ձգվում էին զանազան վաճառքներով լի կրպակներ, խանութներ, որոնք շինուած էին քարից եւ փոքրիկ մատուռների նմանութիւն ունէին։ Ծալապատիկ նստած էին վաճառականները մինդարների վրայ եւ գնողներին, հաճոյական ձայներով ու խօսքերով, դէպի իրանց խանութն էին հրաւիրում։ Առեւտուրը իր ջերմ կենդանութեան մէջ էր։ Բաղէշը իր շրջակայ գաւառների վաճառականական կենտրոնն է։ Նա յարաբերութիւն ունի Վանի, Կարինի, Բալուի, Բուլանխի, Տարօնի, Սղերդի, Ամիթի, մինչեւ անգամ Մուսուլի եւ Բաղդադի հետ։ Բամբակը ստանում է Պարսկաստանից, եւ իր մէջ արդիւնագործելով, — չիթեր, կտաւներ, շիլաներ պատրաստելով, լիացնում է իր շրջակայ գաւառները։ Եւրոպական ապրանքներ նա ստանում է Կ. Պօլսից։ Վաճառականութիւնը գլխաւորապէս հայերի ձեռքումն է եւ նրանց նիւթական վիճակը կարելի է բարւօք դրութեան մէջ համարել։ Բայց իմ ուշադրութիւնը գրաւեցին մի քանի այլ երեւոյթներ։ Մի տեղ փոքրիկ աշակերտը, չոքած իր "ուստայի" առջեւ եւ գոց ժամագիրքը ձեռքում բռնած. իր "համարն" էր տալիս։ "Ուստան" երկաթեայ արշինը ձեռքում, մի կող-

մից չափում էր կտաւը եւ խօսում էր քրդի հետ, միւս կողմից, նոյն երկաթեայ արշինով խփում էր փոքրիկ ուսանողի գլխին, որ իր սխալը ուղղէ։ Մի այլ տեղ, խանութպանը դրել էր իր առջեւ Նիւ-Եօրկում տպած աշխարհաբառ Աստուածաշունչը, մի կողմից սակարկութիւններ էր անում իր գնողների հետ, միւս կողմից վիճում էր մի քանի անձանց հետ, թէ պահեցողութիւնը չի կարող քաւել մարդու մեղքերը։ Ես մօտեցայ այդ վերջիններին։ Չը գիտեմ, որտեղից յայտնուեցաւ այնտեղ եւ հաջի Իսաղը։ Լսելով, թէ վէճը ինչումն է, նա ասաց.

— Պահեցողութիւնը պէտք է հոգեւոր լինի. դու հեռու պահիր քեզ սուտ խօսալուց, սուտ երդուելուց, գողանալուց, զրպարտելուց, ագահութիւնից, ժլատութիւնից եւ այլ մեղքերից, այն ժամանակ Տիրոջ թողութիւնը կը վայելես, եթէ ոչ, թէ միս կերար, թէ լոբիա կերար, բոլորը մի եւ նոյն է։

Եւ այդ ասում էր ո՞վ, — հաջի Իսա՛ղը...

Ես հեռացայ։

Ծածկուած չարշինները լոյս ընդունում էին առաստաղից։ Բայց լոյսը այնքան նուազ էր, որ մարդ մարդու հազիւ կարողանում էր տեսնել։ Խանութպանները եթէ կամենային, կարող էին աւելի լոյս տալ իրանց կրպակներին։ Բայց այդ շահաւէտ չէր լինի նրանց համար, որովհետեւ խաւարի ու մթութեան մէջ աւելի հեշտ էր խաբել, աւելի հեշտ էր վատ ապրանքը լաւի տեղ վաճառել։

Իմ գլխում ծագեց մի համեմատութիւն։ Միթէ Աւետարանի լոյսն ու ճշմարտութիւնը քարոզող միսիօնարները նոյնպիսի վաճառականներ չէին։ Միթէ նրանք եւս իրանց դպրոցները խաւարի մէջ չէին պահում, ինչպէս բաղէշցի վաճառականը իր կրպակը։ Միթէ նրանք եւս իրանց

առեւտուրը մթութեան մէջ չէին կատարում, որ աւելի հեշտ լինի խաբել: Մի՞թէ, եթէ ցանկանային նրանք, չէին կարող աւելի լոյս տալ իրանց դպրոցներին, այն աստուածային կենսատու լոյսը, որի տարածման համար առաքուած էին:

Ամեն տեղ ես լսում էի նոյն վիճաբանութիւնները, կարծես, ամբողջ քաղաքը վարակուած լինէր այդ ախտով: Խարդախ վաճառականութեան հետ՝ կատարվում էր եւ կրօնական խարդախ պրօպագանդա: Իսկ հայ քահանան վերեւում, կտուրների վրայ, զանազան ուտեստների "նմուշներ" էր հաւաքում իր թաշկինակի մէջ…

Ես զզուանքով դուրս եկայ շարշիներից:

Բաղէշը գտնվում է չորս վանքերի հոգեւոր պաշտպանութեան ներքոյ: Նրանցից մէկը քաղաքի միջումն է, իսկ երեքը նրա շրջակայքում: Ամրոդու վանքը գտնվում է Նոյնանուն թաղի մէջ: Նրանից կէս ժամ հեռաւորութեան վրայ կանգնած է Գոմաց Ս. Աստուածածնի վանքը, յետոյ Աւելու Ս. Աստուածածնի վանքը եւ Խնդրակատար Ս. Աստուածածնի վանքը: Թադէոս առաքեալը ուխտել էր Հայաստանում հազար վանքեր հիմնել Ս. Աստուածածնի անունով. յիշեալ երեքը միայն Բաղէշի մօտակայքում հիմնեց:

Բացի չորս վանքերից, չորս հոյակապ եկեղեցիներ քաղաքի մէջ հոգեւոր սնունդ են մատակարարում բնակիչներին: Կարմրակ կոչուած եկեղեցին՝ պահում է իր մէջ Յիսուս Քրիստոսի արեան շիթը. նա այն աստիճան պաշտելի է, որ նրա անունով երդվում են մինչեւ անգամ մահմեդականները: Այդքան հոգեւոր հիմնարկութիւններից յետոյ, Հաջի Իսաղը դարձեալ փողոցներում կրօնափոխութիւն է քարոզում: Ի՞նչ է դրա պատճառը…

Փողոցներում շրջում էին հայ կանայք։ Ամենքը, թէ պառաւ եւ թէ մանկահասակ, իրանց գեղեցիկ եւ նուրբ կերպասներից կարուած զգեստների վրայ, հագած ունէին մի տգեղ, մինչեւ ոտները իջած, չիլա շապիկ։ Այդ արտաքին ծածկոցը նրա համար էր, որ նրանց նազելութիւնը չը գրաւէ մուսուլմանի վավաշոտ հայեացքը։ Տղամարդիկ նոյնպէս վատ էին հագնուած։ Այստեղ, ինչպէս միեւնոյնը Վանում եւս նկատեցի, հարուստները սովորութիւն ունէին իրանց հարստութիւնը ծածկել աղքատութեան կեղեւի տակ։ Աւելի թշուառ գտայ ես երեխաներին. ոչ մէկի ոտներին ոտնամաններ չը տեսայ, թէեւ ոտնամանների աւելի պէտք ունէին այդ ապառաժոտ, քարեղէն քաղաքում։

Ահա անցաւ մի ամբողջ ասպախումբ։ Ամերիկացի կանայք, ձիաների վրայ կողմնակի նստած, քարշ էին տալիս գետնից իրանց երկար զգեստները։ Նրանց տղամարդների գլխարկների վրայ քամուց ծածանվում էին շղարշեայ սպիտակ փաթոթի բաց թողած ծայրերը։ Ասպախումբը անցաւ, որպէս մի սրընթաց մրրիկ։ Մի քանի ձիաւորներ, տեղային հագուստով, առջեւից արշաւելով, յետ էին մղում բազարի խառնուած բազմութիւնը, որ առանց ստիպմունքի եւս երկիւղածութեամբ յետ էր քաշվում եւ ճանապարհ էր բաց անում։ Սկզբում ես կարծեցի, թէ այդ ասպախումբը եւրոպական մի որ եւ է պետութեան հիւպատոս պէտք է լինի իր ընտանիքով եւ իր բազմաթիւ համհարզներով, որպէս սովորութիւն ունեն նրանք արեւելքում իրանց, որքան կարելի է, շքեղ եւ մեծափառ ցոյց տալ։

— Ո՞վքեր են դրանք, — հարցրի մի հայից, որ խորին կերպով գլուխ տուեց նրանց անցնելու միջոցին եւ, դեռ անշարժ կանգնած, հիացմունքով նայում էր նրանց ետեւից։

— Մեր "սահարներն" են, — պատասխանեց նա մի առանձին պարծենկոտութեամբ։

Ես իսկոյն հասկացայ, թէ ովքեր էին։ Պարսկաստանում եւս "սահար" անունով էին կոչում միսիօնարներին, որ նշանակում է տէր, պարոն։ Ահա, ոտնաշրջիկ առաքեալների յաջորդները, որոնք բացի մի ցուպից եւ մի մախաղից աւելի ոչինչ չէին կրում իրանց հետ։

— Որ տեղից են գալիս, — հարցրի իմ խօսակցից, որ դեռ շարունակում էր նայել նրանց ետեւից։

— Ամարանոցից, — ասաց նա, դառնալով դէպի ինձ։ — Էգուց կիրակի է, քարոզ պէտք է տան։

— Յետոյ դարձեալ կը գնա՞ն ամարանոց։

— Ի հարկէ։ Այդ տօթերում քաղաքի մէջ "սահարները" չեն կարող մնալ։

— Իսկ դուք կարո՞ղ էք մնալ։

— Մենք սովորել ենք։ Նրանք խօ մեզ նման չեն։ — Դուք կը գա՞ք քարոզ լսելու, խօսքը փոխեց նա. — ասում են լաւ քարոզ կը լինի։ Շ... "սահարը" պէտք է խօսի դաւափոխութեան վրայ, եւ պէտք է ապացուցանէ, որ հեթանոս հայերը ի զուր են հաւատում, որ գինին ու հացը Յիսուս Քրիստոսի մարմինն ու արիւնն են դառնում։

Ես ոչինչ չը պատասխանեցի ու հեռացայ։ Նա մինչեւ անգամ վիրաւորուեցաւ իմ անտարբերութիւնից, թէ ինչու ես չը կանգնեցի բազարի մէջտեղում եւ ամբողջ ժամերով չը վիճեցի նրա հետ դաւափոխութեան վրայ։

Ես գնեցի ինչ որ պէտք էր ինձ, եւ վերադարձայ պանդոկը։

Ասլանը եւ Ջալլադը ամբողջ օրը չերեւացին։ Երեկոյեան, մեր սենեակում միայնակ նստած, սպասում էի նրանց։ Մի կողմում վառվում էր աղիւսի վրայ կպցրած

ճրագուի մոմը եւ տարածում էր մռայլ լուսաւորութիւն։ Պանդոկում բոլոր վաճառականների կրպակները կղպուած էին, եւ ամեն գործողութիւն դադարած էր։ Տիրում էր խորին, թախծալի լռութիւն։ Մի քանի ճանապարհորդներ, մեր կից սենեակների դռների առջեւ նստած, ընթրիք էին անում։ Ոմանք դռների առջեւ քնած էին։ Ներսում օդը հեղձուցիչ էր։ Ես նայում էի վառվող մոմի վրայ։ Անթիւ միջատներ, փոքրիկ, նախշուն թիթեռներ, սուլելով, սաւառնելով, պտըտում էին մոմի շուրջը։ Լոյսը հրապուրում էր նրանց։ Լոյսը ուրախացնում էր նրանց։ Լոյսի հետ խաղ էին անում, եւ լոյսի մօտ ընկնում էին... Լուսաւորութեան խեղճ զոհեր...

Ասլանը եւ Ջալալը վերադարձան խիստ ուշ։ Մեծ եղաւ իմ ապշութիւնը, երբ տեսայ Ջալալին՝ ոտքից ցգլուխ կերպարանափոխուած։ Նա այժմ եւրոպական հագուստ էր հագած։ Ո՛րքան պատկառելի էր երեւում նա այդ հագուստի մէջ, ո՛րքան պատշաճաւոր էր նրան այդ հագուստը։ Երեւում էր, որ նա մանկութիւնից սնուել, մեծացել էր այդ հագուստով։

Նա ժպտալով ողջունեց ինձ եւ հարցրեց.

— Չե՞ս զարմանում։

— Զարմանում եմ, — պատասխանեցի ես, վերկացայ իմ նստած տեղից, բռնեցի նրա ձեռքը։

Ասլանը գլխարկը մի կողմ ձգեց եւ լուռ նստեց օթոցի վրայ։ Իսկ Ջալալը սկսեց շտապով հաւաքել իր իրեղէնները։ Սենեակի դռանը սպասում էր մի ծառայ։ Նա ներս մտաւ, վեր առեց նրա խուրջինը եւ հեռացաւ։

— Դու գնո՞ւմ ես, — անհանգիստ կերպով հարցրի նրանից։

— Ոչ, ես չեմ գնում, — քաղցրութեամբ պատասխանեց նա եւ, մօտենալով, ձեռքը դրեց իմ ուսի վրայ։ — Ես այդ քաղաքում պէտք է մնամ։ Եւ այդ պատճառով, հարկաւոր եղաւ իմ իրեղէնները տեղափոխել իմ նոր վարձած կացարանը։

— Այսուամենայնիւ, մենք պէտք է բաժանուենք միմեանցից։

— Այո՛, պէտք է բաժանուենք...

Նրա ձայնը դողաց։

Վերջին օրերում ես այն աստիճան սկսել էի սիրել եւ յարգել այդ ազնիւ երիտասարդին, որ, կարծես, մի բան կտրուեցաւ իմ սրտից, երբ լսեցի, որ բաժանուելու ենք միմեանցից, եւ, գուցէ, այլ եւս չէինք տեսնի միմեանց։ Ես սկսեցի աղաչել նրան.

— Գոնէ այս գիշեր մնացէք մեզ մօտ։

— Մեծ ուրախութեամբ կը մնայի, եթէ կարելի լինէր...

Յետոյ խօսքը փոխեց.

— Բայց դուք էլ երկար չէք մնալու այստեղ։

Ասլանը, որ լուռ դիտում էր մեր սրտերի զեղմունքը, աւելի տխրացրեց ինձ, ասելով.

— Մի քանի ժամից յետոյ մենք պէտք է թողնենք այդ քաղաքը։

— Գիշերո՞վ։

— Այո՛, գիշերով։

Ի՞նչ էր պատահել, ի՞նչ հարկ կար այդպէս շտապելու։ Նրանք ինձ ոչինչ չասացին։ Միայն նկատում էի, որ Ասլանը նոյնպէս մի առանձին թախծութեան մէջ էր գտնվում։ Երեւի, սիրելի ընկերից բաժանուիլը նրան եւս տանջում էր։

Հասաւ բաժանման ծանր րոպէն։ Ջալալը մօտեցաւ նախ Ասլանին, գրկեց նրան։ Ոչինչ չը խօսեցին, ոչինչ չասա-

ցին միմեանց։ Երկար, լուռ գրկախառնութեան մէջ էին գտնւում նրանք։ Մէկի գլուխը դրած էր միւսի ուսի վրայ։ Մէկի ձեռքերը փաթաթուած էին միւսի պարանոցին։ Չէին խօսում, բայց լռութեան մէջ շատ բան էին ասում միմեանց։

Ախ, որքան վսեմ, որքան բարձր բան է ճշմարիտ բարեկամութիւնը։ Որքան հոգու եւ զգացմունքների սրբութիւն կայ նրա մէջ։ Այդ բոլորը տեսնելով, իմ սիրտը նոյնպէս լցւում էր մի սրբազան ջերմութեամբ, իմ զգացմունքները նոյնպէս ազնուանում էին։

Նա թողեց Ասլանին եւ մօտեցաւ ինձ։ Կարօից բաժանուելու ժամանակ ես լաց չեղայ, բայց երբ նրա դողդոջուն ձեռքերը փաթաթուեցան իմ պարանոցին, ես չը կարողացայ զսպել իմ արտասուքը։ Նա նոյնպէս յուզուած էր, նրա հեզ, հրեշտակային աչքերը նոյնպէս ծփում էին։

— Մի մոռիր Փարհատ, — ասաց նա ինձ. — դու մի լաւ եւ բարի առաջնորդ ունես, որ կը կանգնեցնէ քեզ ուղիղ ճանապարհի վրայ...

Համարեա նոյն խօսքերը ասաց ինձ Կարօն, երբ վերջին անգամ բաժանուեցայ նրանից։ Ի՞նչ էին նշանակում այդ խօսքերը։

Ես եւ Ասլանը դուրս եկանք սենեակից՝ նրան ճանապարհ դնելու։ Մինչեւ սանդուղքները գնացինք նրա հետ։ Այստեղ նա կանգնեցրեց մեզ, կրկին եւ կրկին անգամ սեղմելով մեր ձեռքը, ցած իջաւ սանդուղքներից։ Ներքեւից մի անգամ եւս յետ նայեց, գլխով մնաք բարեաւ ասաց եւ դուրս եկաւ պանդոկից։ Մենք երկար անշարժ կանգնած էինք սանդուղքների գլխին, եւ մեր աչքերը յառած էին դէպի այն դուռը, որտեղից դուրս եկաւ ազնիւ երիտասարդը եւ անյայտացաւ փողոցի մթութեան մէջ։

Վերադառնալով մեր սենեակը, թէ ես եւ թէ Ասլանը, սիրելի բարեկամից անջատուելու ծանր տպաւորութեան ներքոյ, տխուր էինք, ոչինչ չէինք գտնում խօսելու: Ասլանը, յոգնածի նման, ընկողմանեցաւ օթոցի վրայ, իսկ ես նստեցի մոմի հանդէպ: Երեւում էր, որ ամբողջ օրը թափառել էր նա: Նրա աչքերը շուտով խփուեցան, սկսեց նիրհել: Ես նայում էի մոմի վրայ: Լուսաւորութեան զոհերը այժմ շատացել էին, եւ ճրագի շուրջը ծածկուած էր լուսոյ այդ անձնանուէր սիրահարների դիակներով...

Երբեմն իմ աչքերը յածում էին սենեակի շուրջը: Կարծես, որոնում էին Ջալալի հետքերը: Նրա զէնքերը մնացել էին իրանց տեղում: Չը լինի՞ թէ մոռացել էր նա: Կամ նրան այլեւս պէտք չէին այդ մահուան եւ կենաց գործիքները: Նա վերառեց իր փոքրիկ խուրջինը միայն, որի մէջ, որպէս սրբութիւն, պահուած էին այն մագաղաթները, որ նա գտաւ Աղթամարայ վանքում:

Պանդոկի բակից երբեմն լսելի էր լինում նրա նժոյգի խուլ խրխինջը: Խեղճ անասուն, նա էլ տխուր էր, երեւի, նա էլ զգում էր, որ իր սիրելի տէրը այլ եւս չի նստի նրա վրայ:

Ասլանը բաց արեց աչքերը, ասաց.

— Եթէ մի մարդ հարցնելու լինի ինձ, շուտով զարթեցրու:

— Դու քնո՞ւմ ես:

— Ոչ, այնպէս նիրհում եմ:

Պանդոկում ամեն ինչ լուռ էր. ճրագները հանգցրել էին, եւ ամեն ոք հանգստանում էր խորին քնի մէջ: Միայն երբեմն լսելի էր լինում գիշերապահ հսկաների ձայնը, որ ման էին գալիս պանդոկի կտուրի վրայ, եւ նրանց ձայնին պատասխանում էին միւս պանդոկների կտուրներից:

*Ալանը կրկին բացարեց աչքերը։ Այժմ ես թոյլ չըտուի, որ նա դարձեալ խփէ աչքերը եւ փոքր ինչ հանգըստանայ։ Իմ անհամբերութիւնը այնքան անզուսպ էր, որ ցանկանում էի տեղեկանալ, թէ ինչու Ջալալը այդպէս յանկարծ բաժանուեցաւ մեզանից, կամ ի՞նչ գործով պէտք է զբաղուէր նա, այդ քաղաքում մնալով։*

*— Դու արդէն գիտես, որ նա քահանայ է եւ բողոքական քահանայ, — իմ հարցին պատասխանեց Ալանը, գլուխը բարձրացնելով. — իսկ այդ քաղաքում բողոքական հասարակութիւն կայ։*

*— Այդ ես գիտեմ։ Բայց նա նրանց չէ համակրում, եւ որքան նկատեցի ես, մինչեւ անգամ զզուում է նրանցից։*

*— Հէնց դրա համար էլ նա վճռել է գործել նրանց մէջ, որ ուղղուին, որ մոլորութեան մէջ չըմնան։*

*— Ի՞նչպէս մոլորութեան մէջ չը մնան։*

*— Որ հասկանան, կրօնը եւ խղճի ազատութիւնը այլ բան է, իսկ ազգութիւնը այլ բան է։ Որ իրանց հայ ճանաչեն, եւ իրանց լուսաւորչական ու կաթոլիկ եղբայրներին սիրեն։*

*— Լաւ չէ՞ր լինի, որ նրանք ամենեւին բաժանուած չը լինէին մեզանից։*

*— Լաւ կը լինէր։ Բայց քանի որ զանազան տխուր հանգամանքների պատճառով բաժանուել են, քանի որ իրողութիւնը արդէն կատարուած է, պէտք է հաշտուել փաստի հետ։ Այժմ ի՞նչ է մնում մեզ անել. հալածե՞լ նրանց, — այդ ոչինչ օգուտ հետեւանքի չի հասցնի։ Մեզ մնում է՝ աշխատել, կրկին կապել նրանց մեզ հետ, եթէ ոչ կրօնքով, գոնէ ազգային կապերով, որ աւելի ամուր է եւ հաստատուն։*

*— Այդ կարելի՞ է։*

— Ինչո՞ւ չէ կարելի։

Ես լսեցի նրա քունը և հանգստութիւնը։ Մեր խօսակցութեան առարկան այնքան մօտ էր նրա սրտին, որ նա պառկած տեղից բարձրացաւ և նստեց։ Մոմի լոյսը ուղիղ ընկած էր նրա գունաթափ երեսի վրայ։ Այդ դէմքի իւրաքանչիւր փոփոխութիւնը այնքան ծանօթ էր ինձ, որ երբ ես նկատում էի նրա վրայ այժմեան թախծալի գալկութիւնը, արդէն գիտէի, որ նա հոգեկան սաստիկ տանջանքի մէջ էր գտնվում։ Ի՞նչ էր պատահել այնօր նրա հետ։

— Կարելի է, — կրկնեց նա։ — Հայերը, սկսեալ ամենահին ժամանակներից, մի զարմանալի ընդունակութիւն ունեն, եթէ ոչ նոր կրօնքներ ստեղծելու, բայց գոնէ օտարներից ընդունած կրօնքներին ազգային գոյն ու ձև տալու։ Հայերը, ընդունելով օտար կրօնքը, նրա վրայ դնում են իրանց ազգային դրօշմը, — նրան յարմարացնում են իրանց պատմութեան, աւանդութիւնների, սովորութիւնների և ցեղական յատկութիւնների հետ։ Այդ ազգային մի մեծ ձիրք է, որից զուրկ են շատ ազգեր։ Գերի բերելով յունաց աստուածներին, մեր նախնիքը հայացրին նրանց, մինչև անգամ նրանց անունները փոխեցին։ Հրաւիրելով պարսից աստուածներին, նոյնպէս վարուեցան նրանց հետ։ Քրիստոնէական եկեղեցին, որ առաքեալների ձեռքով հիմնուեցաւ Հայաստանում, բայց Լուսաւորչի ձեռքով բոլորովին կերպարանափոխուեցաւ։ Հայերը չը միացան ոչ Հռոմի և ոչ Բիւզանդիայի եկեղեցիների հետ։ Վերջին ժամանակներում մտաւ հայերի մի մասի մէջ կաթոլիկութիւնը և բողոքականութիւնը։ Առաջինը, կաթոլիկութիւնը, նոյնպէս ազգային կերպարանք ստացաւ և դարձաւ իսկապէս հայ-կաթոլիկութիւն։ Հայերը պահպանեցին իրանց եկեղեցական վաղեմի ծէսերը, արարողութիւնները, պաշտամունքը և, որ ամենա-

գլխաւորն է, — լեզուն։ Իսկ բողոքականութիւնը դեռ հայերի մէջ ազգային գոյն չէ ստացել։ Այն, որ Ջալալը նկարագրեց, միսիոնարի բողոքականութիւն է։

— Ի՞նչ պէտք է անել Ջալալի կարծիքով։

— Նրա կարծիքով, պէտք է աշխատել հեռացնելու միսիոնարների թէ՛ ազդեցութիւնը եւ թէ՛ ներգործութիւնը, եւ կազմել ինքնուրոյն հայ-բողոքական եկեղեցի։ Եւ այդ կը լինի նրա գործունէութեան բուն նպատակը։

— Կը յաջողուի՞ նրան։

— Ես հաւատացած եմ, որ կը յաջողուի։ Նա չափազանց եռանդոտ եւ հաստատ կամքի տէր մարդ է։

Սենեակի դուռը կամաց բացուեցաւ, պանդոկի սպասաւորներից մէկը գլուխը ներս բերեց, ասելով.

— Մի մարդ հարցնում է ձեզ։

Ասլանը հրամայեց, որ ներս թողնեն։ Քանի րոպէից յետոյ ներս մտաւ մի անծանօթ երիտասարդ, նուրբ կազմուածքով, եւ բաւական մաքուր հագնուած եւրոպական հագուստով։ Նա քաղաքավարութեամբ գլուխ տուեց, մօտեցաւ Ասլանին, սեղմեց նրա ձեռքը եւ տուեց մի փոքրիկ նամակ։ Ասլանը շտապով բաց արեց նամակը, կարդաց եւ, վերջացնելուց յետոյ, ասաց երիտասարդին։

— Մենք իսկոյն պատրաստ կը լինենք, յարգելի Արփիար, դուք եւս պատրաստուեցէք, որ շուտով ճանապարհ ընկնենք։ Ահա ձեզ զէնքեր, իսկ պանդոկի բակում կապած է ձեզ համար մի գեղեցիկ ձի։

Երիտասարդը ուրախ դէմքով մօտեցաւ, վեր առեց Ջալալի զէնքերը եւ թեթեւ քայլերով դուրս գնաց՝ իր ձին պատրաստել տալու համար։

— Ո՞վ է այդ գեղեցիկ երիտասարդը, — հարցրի Ասլանից, նրա բացակայութեան միջոցին։

— Ցեսոյ կ՚ասեմ... պատասխանեց նա: — Դա Թօխմախ-Արթինի քարաւանի հետ է եկել:

— Միթէ Թօխմախ-Արթինի քարաւանը այստեղ է:

— Ոչ, մի քանի օր առաջ անցել է այստեղից: Իսկ այդ երիտասարդին թողել էր այստեղ, որ ուղեկցէ մեզ հետ մինչեւ Մուշ:

— Որքան գեղեցիկ երիտասարդ է, — կրկնեցի ես, — եւ այդ հասակում ճանապարհորդութիւններ է անում:

Ասլանը ուշադրութիւն չը դարձրեց իմ ոգեւորութեան վրայ, որ պատճառեց իմ մէջ քնքոյշ երիտասարդը, որի ամբողջ կազմուածքը, կարծես, սպիտակ մոմից շինուած լինէր: Նա խնդրեց, որ կանչեմ պանդոկի սպասաւորներից մէկին, հաշիւը տանան:

Սպասաւորի փոխարէն յայտնուեցաւ ինքը հաջի-Իսաղը: Նա, երեւի, քնած էր. այնքան շտապեց, որ մոռացաւ իր հագուստը հագնել, եւ այնպէս շապիկով ու տակի տաշորով վազեց մեզ մօտ: Տեսնելով նրան, Ասլանը պատուիրեց ինձ, որ, որքան եւ պահանջելու լինի, վճարեմ եւ ձայնը կտրեմ, իսկ ինքը դուրս եկաւ սենեակից: Նա չը կամեցաւ նայել այդ գարշելի մարդու վրայ, որի մէջ՝ բարքի մաքրութեան հետ՝ պակասում էր եւ ամենահասարակ քաղաքավարութիւնը:

Ես վճարեցի նրան սենեակի վարձը, ձիաների կացարանի վարձը, մի խօսքով, ինչ որ սկզբից խօսացել էինք նրա հետ, եւ յետոյ հարցրի.

— Էլ ուրիշ ոչինչ չը կա՞յ:

— Ինչպէս չը կայ, պատուելի պարոն, — պատասխանեց նա ժպտալով, եւ այդ միջոցին նրա ահագին քթի ծակերը աւելի լայնացան: — Ինչպէս չը կայ, — կրկնեց նա եւ տուեց ինձ մի պատառ կեղտոտ թղթի կտոր, աւելացնելով, թէ բոլորը մի ըստ միոջէ գրել է տուել այդ թղթի վրայ:

*Ես այժմ նրա համար “պատուելի պարոն„ էի դարձել։ Նա մի ամբողջ հաշիւ էր չինել, որի ճշտութիւնը եւ անճըշտութիւնը քննելու համար ոչ ժամանակ կար եւ ոչ հաճութիւն։ Բայց ինձ բարկացրեց մի բան։*

*— Այդ ջրի ամանը ինչու էք գրել այստեղ, — հարցրի նրանից։*

*— Ի՞նչու չը գրել, պատուելի պարոն, — պատասխանեց նա զարմացած կերպով։*

*Նրա համար, որ այդ ամանով դուք մեզ ջուր տուեցիք, մենք ջուրը գործ ածեցինք, եթէ ջուրը մի առանձին արժէք ունի, կը տանք, բայց ամանը այստեղ պէտք է թողնենք ու գնանք։*

*— Ի՞նչու էք թողնում, պատուելի պարոն, կարող էք ամանն էլ ձեզ հետ տանել, չէ՞ որ ձեզ համար է գնուած։*

*Անպիտանը հաւատի էր, որ մենք այն մեծ խեցեղէն կուժը մեզ հետ չէինք տանի, այդ պատճառով, այսպիսի առաջարկութիւն էր անում, որ մեզ դժուարութեան մէջ գնէ։*

*— Դուք ձեր բոլոր այցելուների հետ այդպէ՞ս էք վարվում, — հարցրի նրանից։*

*— Դուք գիտէք, պատուելի պարոն, որ մենք սուտ խօսելու սովորութիւն չունենք, — կրկնեց նա հայ-բողոքականի սովորական պարծենկոտութեամբ։*

*Ես վճարեցի բոլորը, ինչ որ նրա թղթի վրայ գրած էր։ Բայց այդ միջոցին իմ մէջ խաղաց իմ մանկական չարութիւններից մէկը։*

*— Ուրեմն այդ կուժը այժմ մեզ է պատկանում։ Այնպէս չէ՞։*

*— Ի հարկէ, ձեզ է պատկանում, սիրելի եղբայր... ասաց նա, բայց յետոյ ուշի գալով, որ հային “եղբայր„ ասելը մեղք է, իսկոյն ուղղեց իր սխալը.*

— Ի հարկէ, ձեզ է պատկանում, պատուելի պարոն։ Կարող էք ձեզ հետ տանել։

— Ես նրան կը թողնեմ այստեղ։

Ծղոտի դէմքը փայլեց։ Բայց ես կուժը զարկեցի սենեակի քարէ յատակի վրայ, փշրուեցաւ։ Հաջին ամբողջ մարմնով սոսկաց։ Կարծես, կուժը նրա գլխին կոտրեցին։ Նա երեւակայել անգամ չէր կարող, որ իր առաջարկութիւնն այդպիսի հետեւանք կ'ունենար։ Երկար, սառածի նման, նայում էր խեցիների կտորների վրայ, որոնք, կարծես, իւր սրտի կտորները լինէին։ Այդ միջոցին ներս մտաւ Ասլանը եւ, հասկանալով եղելութիւնը, յանդիմանեց ինձ.

— Այդ ի՞նչ երեխայութիւն է։

Հաջիի լեզուն բացուեցաւ։ Նա իրան պաշտպան գտաւ։

— Այդ ասացէք, պարոն բժշկապետ, ի հարկէ, երեխայութիւն է, ապա ինչ է, — արմրթաց նա խորին դժգոհութեամբ։

Ասլանը նայեց նրա ներկայացրած հաշուի վրայ եւ, ձեռքը մեկնելով դէպի նա, ասաց.

— Այդ կուժին դուք հինգ ղուրուշ գին էք նշանակել, ստացէք, եւ մի նորը գնեցէք։

Նա մեծ շնորհակալութեամբ ընդունեց։

— Տիրոջ օրհնութիւնը ձեզ հետ լինի, — ասաց նա խղճալի ձայնով։ Ախար ես էլ գերդաստանի տէր եմ, իմ օգուտը այդպիսի բաներից է...

Ներքեւում ձիաները պատրաստ էին։ Հաջի-Իսաղը, իր ստացած լիաձեռն բաւականութեան համար, այժմ աւելի քաղաքավարի դարձաւ. նա ինքը վեր առեց մօմը եւ, մեր առջեւից տանելով, առաջնորդեց մինչեւ պանդոկի բակը։ Ծիծաղելի էր նայել այդ կիսամերկ ծերունու վրայ, որը,

*միեւնոյն ժամանակ, թէ պանդոկի հարուստ տէրն էր եւ թէ նրա ստոր սպասաւորը։*

*Երբ վերջին Մնայք-բարեւն ասացինք, Ասլանը հարցրեց.*

*— Ես մոռացայ ձեզանից հարցնել. դուք հա՞յ էք։*

*— Ոչ, պարոն բժշկապետ, ես բողոքական եմ։*



ԻԹ.

## ՏԱՐՕՆ

Ամբողջ գիշերը ճանապարհ գնալով, առաւօտեան լոյսի հետ բացուեցաւ մեր առջեւ Մուշի գեղեցիկ դաշտը, — պատմական Տարօնը։ Իմ սիրտը թնդաց ուրախութիւնից։ Որքան բաներ էր պատմել այդ դաշտի մասին Ասլանը, որքան ջերմ զգացմունքներով կապուած էր նա իմ հոգու հետ։ Մեր առջեւը դրած էր մի հարթ, լայնածաւալ հովիտ, շրջապատած բարձր լեռներով։ Սկսեալ ամենահին ժամանակներից, այդ հովիտը եղել է հանդիսարան ամենամեծ անցքերի, որ կատարուել է հայկական կեանքում։

Տարօ՛ն, ինչպէս քաղցր հնչում ես դու իմ ականջին, որքան սիրելի է ինձ քո անունը։ Դու Հայաստանի հարաւային սահմանների վահանն էիր. քո վրայ զարկուելով, փշրվում էին Ասորեստանի զօրութիւնները. քո վրայ զարկուելով, խորտակվում էր Արաբացու կատաղութիւնը, եւ քո դաշտերը ողողվում էին թէ՛ քո զաւակների եւ թէ՛ քո թշնամու արիւնով։

Ես աչքերս դարձրի դէպի իմ ուղեկից Արփիարը։ Ոգելից երիտասարդը խորին յափշտակութեամբ, ինձ նման, նայում էր Մուշի գեղեցիկ դաշտի վրայ, կարծես թէ, սիրահարուած լինէր։ Նրա խոշոր, խաժ աչքերը ձգտում էին միանգամից ամփոփել, միանգամից տեսութեան առնել լայնածաւալ տարածութիւնը։ Նա դեռ երիտասարդ էր,

*թամր երիտասարդ։ Գուցէ դպրոցի նստարանից դեռ նոր էր բաժանուել։ Գլխի մոյգ-շիկագոյն մազերը հիանալի գանգուրներով դուրս էին նայում մոխրագոյն գլխարկի տակից, որ ծածկում էր նրա սիրուն գլուխը։ Նա աւելի կանացի դէմք ունէր, բայց գունաթափ, թախծալի դէմք։ Գուցէ հայրենի աշխարհի տպաւորութիւնները խլեցին նրա երեսի գոյնը։ Լուռ էր նա, չէր խօսում։ Ինձ թւում էր, թէ նրան տիրում էր մի տեսակ ապշութիւն, մի տեսակ ինքնամոռացութիւն։ Եթէ իր երկար կօշիկների խթաններով երբեմն մեքենաբար չը խթէր իր ձիու կողքը, նրա ձին կը կանգնէր, որովհետեւ սանձը թուլացել էր նրա ձեռքում, իսկ մտրակը ընկել էր ձեռքից։ Խեղճ տղայ, ինչեր էին անցնում նրա սրտից, ինչ բանի վրայ էր մտածում նա։ Ասլանը խոստացաւ ասել ինձ, թէ ով էր նա, եւ այդ հետաքրքրութիւնը տանջում էր ինձ։*

*Մենք անցանք Հացիկ գիւղը, որ այժմ կոչվում է Խաս-Գիւղ։ Նա դարձաւ դէպի ինձ այդ խօսքերով.*

*— Մեր պատմաբաններից մէկը, Փաւստոսը, այդ գիւղի չորրորդ դարու բնակիչներին "կարճագատք" ածականը տուեց, որ նշանակում է կարիճների զաւակներ։ Մեր այժմեան լեզուում կարճագատը չարաճճի բառի իմաստն ունի։ Հին դարերում Հացիկի բնակիչները յայտնի էին իրանց անբարոյական բարք ու վարքով, մանաւանդ կանայքը։ Մեր Յուսիկ կաթողիկոսի որդի Պապը մի հարճ ունէր, որը այդ գիւղիցն էր։ Այն օրից անցել է տասն եւ վեց դար, բայց Հացիկի բնակիչները դեռ իրանց վարք ու բարքը չեն փոխել։ Այսու ամենայնիւ, Հացիկը անմոռանալի կը մնայ ամեն մի հայի համար, որովհետեւ նա Մեսրոպի ծննդավայրն է։*

*Երբ գիւղից դուրս եկանք, հեռուից նկատեցինք, որ մեր առջեւով գնում էին երկու ձիաւորներ։ Ինչպէս երեւում*

էր, նրանք այդ գիւղում էին իջեւանել, որովհետեւ մի քանի գիւղացիներ նրանց ճանապարհ էին դնում։ Տեսնում էինք, թէ ինչպէս գիւղացիները մօտեցան երկու ձիաւորներից մէկին, նրա աջը համբուրեցին եւ, օրհնութիւնը առնելով, վերադարձան դէպի իրանց տները։ Արդէն յայտնի էր, որ նա պէտք է հոգեւորական լինէր։

Երկար մենք եւ նրանք, միեւնոյն հեռաւորութեան վրայ, գնում էինք միեւնոյն ճանապարհով։ Յետոյ նկատեցինք, որ նրանք սկսեցին իրանց ձիաները կամաց քշել, որ մենք հասնենք։

Մեր ենթադրութիւնը ուղիղ դուրս եկաւ. երկու ձիաւորներից մէկը հոգեւորական էր, բայց եւրոպացի հոգեւորական։ Իսկ միւսը, ինչպէս երեւում էր, կամ նրա ծառան պէտք է լինէր, կամ առաջնորդը։ Ես առաջին անգամ տեսնում էի մի եւրոպացի կրօնաւոր։ Նա քառասուն տարեկան հազիւ կը լինէր, բայց սեւ մօրուքը արդէն սկսել էր ճերմակել։ Դէմքը ինձ շատ դիւր եկաւ, մի ուրախ, մշտածիծաղ դէմք, որ կարծես, ասում լինէր. "Ես վաղուց ձեզ հետ բարեկամ եմ"։ Գլխին դրած ունէր լայնեզրեայ փափուկ գլխարկ սեւ գոյնով, եւ հագել էր կրօնաւորի երկար զգեստ, կուրծքից մինչեւ ոտները կոճկած, նոյնպէս սեւ գոյնով։

Երբ նայեց դէպի մեզ, նրա երեսի վրայ նշմարուեցաւ մի տեսակ շփոթութիւն, որ շուտով անցաւ։ Նրան տեսնելով, Ասլանի գոյնը նոյնպէս փոխուեցաւ։ Ի՞նչ էր նշանակում այդ։ Հեռաւոր Ասիայում, Մուշի դաշտի մէջ, երկու եւրոպացիներ հանդիպում են միմեանց, մինը կրօնաւոր, միւսը բժիշկ, եւ երկուսն էլ, փոխանակ ուրախութեամբ միմեանց գրկելու, շփոթվում են, սոսկում են, ինչպէս մի մարդ, որ անակնկալ կերպով օձի կամ կարիճի է հանդի-

պում։ Թէ ի՞նչ անցաւ Ալանի սրտից, — այդ ես կարող էի հասկանալ, բայց կրօնաւորի այլայլուելու պատճառը ինձ մնաց անբացատրելի։ Չինչ թէ նրա համար ծանր էր, որ մի եւրոպացի մարդ տեսնում էր նրան այդպիսի խուլ տեղերում։ Անշուշտ նա Ալանին եւրոպացու տեղ կ'ընդունէր, եւ ուրիշ կարծիք տանել չէր կարող։

— Դուք, պարոն, երեւի, Մո՞ւշ էք գնում, — հարցրեց նա կոտրատած թուրքերէն լեզուով։

— Այո, — պատասխանեց Ալանը։

— Ուրեմն մենք բաւական տեղ ուղեկից կը լինենք. ես էլ այդ գիւղն եմ գնում։ — Նա ցոյց տուեց մի հեռաւոր գիւղ։

Ալանը սկսեց ֆրանսերէն խօսել նրա հետ։ Ես չէի հասկանում, թէ ինչ էին խօսում, միայն նկատում էի, որ կրօնաւորը սաստիկ զուարթացաւ, ուրախ էր, անդադար ժպտում էր եւ աւելի ծիծաղում էր, քան թէ խօսում էր։ Նա իսկոյն սկսեց մտերմանալ մեզ հետ. իր ծառային կանգնեցրեց, նրա խուրջինից հանել տուեց մի շիշ կոնեակ, նախ ինքը խմեց, յետոյ մի-մի ֆինջան առաջարկեց մեզ։ Նրա ծառան, երեւի, գիտէր իր հայր սուրբի սովորութիւնը, հանեց խուրջինից եւ մի-մի վարունգ տուեց մեզ, ասելով.

— Դա զովացնում է։

Այդ միջոցին մեր ընկեր Արփիարը ոչինչ չէր խօսում. նա միայն ուշադրութեամբ նայում էր կրօնաւորի վրայ։ Երեւում էր, որ նա հասկանում էր կրօնաւորի լեզուն, որովհետեւ ես տեսնում էի նրա սառն դէմքի վրայ մի տեսակ ցնցումներ, որ խորին զզուանք էինք արտայայտում։ Զարմանում էի, որ մի այդպիսի հրեշտակը բարկանալ գիտէր։ Ես կրկին սկսեցի նայել դէպի Մուշի գեղեցիկ դաշտը։ Մի թիզ անմշակ տեղ չէր երեւում։ Դէպի ամեն կողմ

հասունացած հունձքը ոսկեայ ալիքներով ծածանւում էր, ծաւալւում էր եւ խորին բերկրանք էր պատճառում։ Նայում էի դէպի աջ. երեւում էին՝ Գրգուռ, Նեմրութ (Ներրովթ) լեռները, երեւում էին Նեմրութի ուղտերի քարացած շարքերը, որ տեղացիների լեզուով կոչւում էին «Ըղտու քարեր»։ Այդ բոլորը յիշեցնում էին ինձ այն վաղեմի հերոսական արկածները, որ կատարուել էին Բաբելացոց աստուծոյ՝ — Բէլի եւ մեր նախահօր՝ — Հայկ-դիւցազնի մէջ։ Նայում էի դէպի ձախ. երեւում էր Տաւրոսի շղթան՝ Խութայ բարձր լեռներով, որոնց միւս կողմում՝ շատախցիք գազանների հետ են պատերազմում։ Իսկ մեր առջեւում Մեղրի գետի շամբուտների մէջ թագնուած էին Օձ քաղաքի առասպելապատում աւերակները։ Դէպի ո՛ր կողմ եւ նայում էի, երեւում էին հայրենեաց անմոռանալի յիշատակները։ Բոլորը իմ սրտին շատ մօտ էին, բոլորը լցնում էին իմ սիրտը մի սրբազան հպարտութեամբ, երբ մտաբերում էի փառաւոր անցեալը, — եւ, մի եւ նոյն ժամանակ, բոլորը լցնում էին իմ սիրտը մի թախծալի տխրութեամբ, երբ տեսնում էի թշուառ ներկան...

Խօսակցութիւնը հասարակաց լինելու համար, կրօնաւորը այժմ խօսում էր թուրքերէն։ Նա Ասլանին՝ երկրի եւ նրա պատմութեան հետ անծանօթ մի եւրոպացու տեղ դնելով, պատմում էր նրան զանազան անցքեր Տարօնի մասին, ի հարկէ, կրօնական կողմից միայն, այն եւս ծուռ ու սխալ կերպով։

— Այդ երկիրը, — ասում էր նա, — լի է այն բոլոր յիշատակարաններով, որտեղ կատարուել են մեր Ս. Լուսաւորիչ հօր հրաշագործութիւնները։ Երբ գնաց նա Կեսարիա եւ Ղեւոնդէս հայրապետից հայոց քահանայապետ ձեռնադրուեցաւ, վերադարձին Ղեւոնդէսը ընծայեց նրան

սրբոց շատ մասունքներ, որ տանէ Հայաստան եւ, կուռները քանդելով, նրանց տեղը քրիստոնէական տաճարներ հիմնէ։ Այդ մասունքներից թւում էին Ս. Յովհաննէս Կարապետի եւ Ս. Աթանագինէս հայրապետի նշխարները։ Մի զոյգ սպիտակ ջորիներ տանում էին այն կառքը, որի մէջ դրած էին սրբոց մասունքները։ Երբ եկան Տարօն, անցան Եփրատ (Արածանի) գետը եւ մօտեցան Քարքէ լեռան բարձրութիւններին, այդ միջոցին Աստուծոյ հրամանով ջորիները կանգ առին, այլ եւս առաջ չը գնացին։ Ս. Լուսաւորիչը հասկացաւ, որ այնտեղ պէտք էր հիմնել տաճարները։ Բայց այդ լեռան գլխին շատ կուռներ կային, որոնց մէջ դեւեր էին բնակվում։ Ս. Լուսաւորիչը խաչակնքեց, կուռները կործանուեցան եւ դեւերը հալածուեցան։ Այնտեղ հիմնեց Ս. Լուսաւորիչը Ս. Կարապետի վանքը եւ ամփոփեց նրա մէջ իր բերած սուրբ մասունքների մի մասը։ Այն դեւերից մէկը մնաց միայն, որ մինչեւ այսօր ծառայում է վանքի մէջ։

— Ի՞նչ է շինում, — ընդհատեց Ասլանը նրա պատմութիւնը։

— Վանքի թոնիրների մոխիրը առնում է եւ ստորերկրեայ աներեւոյթ ճանապարհով տանում է, ածում է Եփրատ գետի մէջ։ Նրան կոչում են «Կաղ դեւ», որովհետեւ կուռները կործանուելու միջոցին քարերից մէկն ընկաւ, ոտքը կոտրեց։ Լուսաւորիչը ներեց նրան, որովհետեւ զղջաց, մեղայ եկաւ։

— Ս. Լուսաւորիչը ի՞նչ ազգից է եղել։

— Կաթոլիկ է եղել, այո, ուղղափառ եւ բարեպաշտ կաթոլիկ։ Նա, քահանայապետ ձեռնադրուելուց յետոյ, հայոց Տրդատ թագաւորի հետ գնաց Հռոմ՝ ի տեսութիւն Կոստանդիանոս կայսեր եւ Սեղբեստրոս պապի։ Հռոմում արքայավայել ընդունելութիւն գտաւ։ Այնտեղ կնքեց պապի

հետ "դաշանց թուղթը", խոստացաւ յաւիտեան հաւատարիմ մնալ Հռոմի սուրբ աթոռին։ Վերադարձին կայսրը շնորհեց թագաւորական պարգեւներ Տրդատին, իսկ պապը շնորհեց հայրապետական պարգեւներ Ս. Լուսաւորչին, որոնց թւումն էր Պետրոս եւ Պօղոս առաքեալների նշխարների մի մասը եւ Անդրէաս առաքեալի ահեակ ձեռքը։ Այդ սրբութիւնները ամփոփեց Լուսաւորիչը Առաքելոց վանքում, որը ինքը հիմնեց։

Նա ցոյց տուեց, թէ որ կողմումն է Առաքելոց վանքը, եւ աւելացրեց.

— Այդ գաւառի բոլոր վանքերը Ս. Լուսաւորչի հիմնածներն են, կամենում եմ ասել՝ կաթոլիկաց վանքեր են։

— Ուրեմն դուք յարգո՞ւմ էք Ս. Լուսաւորչին։

— Ինչպէս չը յարգել մի այնպիսի պաշտելի անձնաւորութիւն, որ մի ամբողջ աշխարհ հեթանոսութիւնից ի քրիստոնէութիւն ածեց։ Մենք մեր այստեղի բոլոր եկեղեցիներում գրած ունենք Ս. Լուսաւորչի պատկերը եւ դիտաւորութիւն ունենք Մուշի մէջ նրա անունով մի առանձին եկեղեցի կառուցանել։ Ս. Լուսաւորիչը, իսկապէս մեզ է պատկանում եւ ոչ թէ հայերին, որոնք յետոյ խոտորուեցան նրա ուղղած ճանապարհից...

Այդ բոլոր պատմութեան ժամանակ կրօնաւորի մեղմ դէմքը փայլում էր։ Նրա հեզ աչքերը վառվում էին, եւ նրա փափուկ ձայնը աւելի եւ աւելի կենդանանում էր. Ասլանը ոչինչ չը պատասխանեց։ Երեւի, նրան ծանր էր շարունակել այդ սրտաբեկ խօսակցութիւնը...

Թէեւ մինչեւ կէսօր դեռ մի քանի ժամ կար, բայց արեգակը սկսել էր արդէն այրել։ Կրօնաւորը բացարեց իւր սեւ հովանին, բռնեց գլխի վրայ եւ, չը գիտեմ ինչու, նա էլ ընկղմուեցաւ մի տեսակ լռիկ թախծութեան մէջ։

Ճանապարհի մօտ արտերը հնձում էին: “Հօնածը„ — հնձւորների առաջնորդը — առաջ ընկած, մի երգ երգելով, իւր մանգաղով բաց էր անում “հօնը„: Հնձւորների ամբողջ խումբը, ձայնակցելով նրա երգին, հետեւում էին նրան: Փայլուն մանգաղների հնչիւնը, միախառնուելով տխուր երգի հետ, կազմում էին խիստ տրտում, մելամաղձոտ ներդաշնակութիւն: Ինչու՞ շինականի երգը այսպէս տխուր էր այստեղ: Ո՞վ էր խլել նրա ուրախութիւնը: Ո՞վ էր կտրել նրա սիրտը, որից լսվում էին այն ցաւալի հնչիւնները...

Երբ մօտեցանք, “հօնածը„ իր մանգաղի ծայրը ցցեց մի կապած խուրձի մէջ եւ, վեր բարձրացնելով, բերեց եւ հասկերն 'ի վեր դրեց մեր առջեւ, ճանապարհի վրայ: Իսկ ինքը, արեւից այրուած դէմքը դէպի մեզ դարձնելով, լուռ կանգնեց իւր նուէրի մօտ: Կրօնաւորը հանեց քսակից մի արծաթի դրամ, ընծայեց նրան: “Հօնածը„ շնորհակալութեամբ ընդունեց եւ այնքան կանգնեց, մինչեւ մենք անցանք:

— Եթէ դուք գիտենայիք, պարոն բժշկապետ, — դարձաւ նա դէպի Ալանը, — թէ ո՛րքան բարի է այդ ժողովուրդը, ո՛րքան առաքինութիւններ, ո՛րքան նահապետական գեղեցիկ սովորութիւններ կան նրա մէջ: Ես կատարելապէս սիրահարուած եմ այդ ժողովուրդի վրայ:

Յետոյ սկսեց մեզ բացատրել, թէ ինչ նշանակութիւն ունէր հնձւորի այն խուրձը մեր առջեւ դնելը: Ասաց, դա մի սրբազան նուէր էր, որ մատուցանում էր իր մշակութեան բերքից:

— Օրինակ, այդ գիւղը, — առաջ տարաւ նա, — որ մի քանի ժամ առաջ անցանք, ես կատարելապէս հիացած եմ այդ գիւղացոց բարք ու վարքով: Ամեն անգամ, որ պատահում է այնտեղ գնալ, հաւաքվում են իմ շուրջը, եւ

հոգեւորապէս մխիթարում եմ նրանց, եւ նրանք ուրախութիւնից չը գիտեն՝ թէ ինչ անեն. իմ ձեռքերն են համբուրում, եւ մինչեւ անգամ իմ հագուստի դրօշակներն են համբուրում: Տեսնում էք, պարոն բժշկապետ, ո՛րքան պարզութիւն, ո՛րքան անմեղութիւն ...

Խօսքը Հացիկի "կարճագաւնների" մասին էր:

Ասլանը հարցրեց.

— Շա՞տ հետեւողներ ունէք այնտեղ:

— Այժմ մի քանի ընտանիք միայն: Բայց մեծ յոյս ունեմ, որ շուտով իմ հետեւողների թիւը կ'աւելանայ:

— Իսկ միւս գիւղերո՞ւմ:

— Երեք գիւղ — Նորաշէն, Օղունք, Առինչ — ամբողջապէս կաթոլիկ են: Իսկ միւս գիւղերում դեռ նոր է մուտք գործում կաթոլիկութիւնը: Մենք շատ ժամանակ չէ, որ այդ կողմերը եկած ենք, պարոն բժշկապետ: Մեզանից առաջ գործում էին այստեղ բոլորովին այլ ուխտի կրօնաւորներ:

Մօտենալով Մեղրի գետի եզերքին, տեսարանը փոխուեցաւ: Ոսկեգոյն արտերի փոխարէն սկսուեցան կանաչազարդ մարգագետիններ, որ գետի ընթացքով տարածվում էին հեռու, եւ հեռու, մինչեւ այդ գետը խառնվում էր Եփրատի հետ: Տեղ-տեղ երեւում էին խիտ, ճոխ կերպով աճած, շամբուտներ: Այդ շամբուտների մէջ Տարօնի հին տէրերը, Սլկունի նախարարների իշխանազն որդիները, մի ժամանակ վարազներ էին որսում: Այդ որսորդ նախարարութիւնը Արշակունեաց առաջին թագաւոր Վաղարշակից կարգուեցաւ որպէս պետ թագաւորական որսերի: Տրդատի օրերում Սլկունիները ապստամբուեցան Արշակունիների դէմ, եւ Ճենացի Մամգունի դաւաճանութեամբ բնաջինջ եղան: Տրդատը Տարօնը պարգեւեց Մամգունին, որը Մամիկոնեան մեծ նախարարութեան սկիզբը դրեց: — Այդ բոլորը երազի

նման անցնում էր իմ աչքի առջեւից։ Կարծես, հէնց այդ րոպէում էր իմ ականջներին իշխանազն երիտասարդների որսորդական փողի ձայնը, կարծես, հէնց այդ րոպէում տեսնում էի, թէ ինչպէս նրանք, նիզակները ձեռքում, սրարշաւ ձիաներով, սլանում էին Մեղրի գետի խիտ շամբուտների մէջ։ Բայց երբ աչքերս դարձնում էի, իմ առջեւում, համբնթաց ձիու վրայ նստած, լուռ գնում էր կաթողիկ կրօնաւորը...

Այդ կանաչազարդ տարածութեան վրայ, որ հասնում էր մինչեւ Եփրատի ափերը, արածում էին շրջակայ գիւղերի անասունները։ Գիւղերը մօտ առ մօտ երեւում էին հեռուից։

Մի տեղ, ճանապարհից ոչ այնքան հեռու, մի խումբ երեխաներ նստած, ինչ-որ խաղ էին խաղում։ Այդ փոքրիկ հովիւների շուրջը արածում էին նրանց գառները։ Երեւում էր, որ նրանցից իւրաքանչիւրը իրանց տան գառները բերել էր, եւ այնպէս կազմուել էր մի ամբողջ հօտ։ Շները, գլուխները առջեւի թաթերի վրայ դրած, պառկել էին նրանց մօտ եւ ուշադրութեամբ նայում էին՝ ոչ այնքան գառներին, որքան նրանց խաղին։ Երբ փոքրիկ հովիւները հեռուից տեսան մեզ, նրանցից մէկը, աւելի ճարպիկը, շտապեց եւ, գրկելով գառներից մէկին, վազեց դէպի մեզ։ Եւ ինչպէս հնձւորը իւր հասկերի խուրձը նուիրեց մեզ, նա էլ իր գառը պահեց մեր առջեւ, ճանապարհի վրայ, եւ ծիծաղկոտ դէմքը ուղղեց դէպի մեզ։ Կրօնաւորը սրտի յուզմունքից զգացուեցաւ, թաշկինակը տարաւ դէպի աչքերը։

— Մօտեցիր, մանկիկս, — ասաց նա, տալով երեխային մի արծաթի դրամ եւ լի բուռնով այլ մետաղներ, որ հանեց գրպանից։ — Այդ փողը քեզ, — աւելացրեց նա, — իսկ այդ միւսները բաժանիր քո ընկերներին։

Մանուկը համբուրեց կրօնաւորի աջը եւ ուրախ-ուրախ վազեց դէպի ընկերները: Նրա ստացածը ուրիշ ոչինչ չէր, եթէ ոչ, պղնձէ փոքրիկ խաչեր Ս. Աստուածածնի պատկերներով:

Ես յետ նայեցի, փոքրիկ հովիւների մէջ արդէն սկսուել էր կռիւը խաչերի բաժանման մասին:

Ի՜նչ մեծ զանազանութիւն այդ փոքրիկ հովիւների եւ այն փոքրիկ հովիւների մէջ, որ քարկոծում էին Սուրբ Գրքերի տարածողին: Դրանք խաչեր բաժանողի աջն էին համբուրում, իսկ նրանք Սուրբ Գրքեր բաժանողի վրայ քար էին ձգում:

Կրօնաւորը դարձեալ սկսեց Ալլանի հետ Ֆրանսերէն խօսել: Երբ նրանք փոքր ինչ հեռացան, ես հարցրի կրօնաւորի ծառայից:

— Ո՞վ է այդ մարդը:

— Մեր «Գերապայծառն» է, — պատասխանեց նա մի առանձին հպարտութեամբ:

Ես իսկոյն հասկացայ, որ այդ կողմերում նոր յայտնուած եզուիտ կրօնաւորներից մէկը պէտք է լինի, որոնց մասին շատ բաներ էի լսել: Բայց ինչու պարծենկոտ ծառան իր տիրոջը «Գերապայծառ» տիտղոսը տուեց, որը հայկաթոլիկները տալիս են իրանց եպիսկոպոսին միայն:

— Իսկ դու. հա՞յ ես, — հարցրի նրանից:

— Աստուած մի արասցէ, — պատասխանեց նա, երեսը խաչակնքելով. — ես «փրանգ» ես:

— Փրանգի լեզուն իմանո՞ւմ ես:

— Փրանգը ո՞րն է, լեզուն ո՞րն է, — կոպիտ կերպով հարցրեց նա. — ես փրանգի հաւատից եմ:

Նա չը գիտէր, որ փրանգները (Ֆրանսիացիք) առանձին ազգ են. առանձին լեզու ունեն, կամ կարծում էր, որ

ֆրանգը կրօնի անուն է: Արփիարը ուշադրութեամբ լսում էր մեր խօսակցութիւնը:

— Ո՞րտեղացի ես:

— Այն գիւղից, որ հիմա դուրս եկանք: — Նա ցոյց տուեց «կարծազանների» գիւղը, որի մասին այնքան համակրութեամբ էր խօսում «Գերապայծառը»:

— Քո հայրն ու մայրը նոյնպէս ֆրանգնե՞ր էին:

— Ոչ, նրանք «հերձուածողներ» էին:

— Հայեր չէ՞ին:

Նա վրդովուեցաւ:

— Ա՛յ մարդ, — ասաց ինձ, երեսը շուռ տալով, — դու ոչինչ չես հասկանում. հերձուածողն էլ հայ է, հայն էլ հերձուածող է, ուրիշ ի՞նչ զանազանութիւն կայ այդ խօսքերի մէջ:

— Շատ զանազանութիւն կայ, — պատասխանեցի ես, եւ զանազանութիւն կամենում էի ցոյց տալ ձեռքիս մտրակով, բայց Արփիարը աչքով արեց, եւ ես զսպեցի իմ բարկութիւնը:

Նա իմ բարկութիւնը նկատելով, վշտացած կերպով հեռացաւ մեզանից:

Արփիարը նկատեց.

— Այդ անպիտանները իրանց կաթոլիկ էլ չեն կոչում: Ուրիշ տեղերում, եթէ հայ-կաթոլիկները ուրանում են իրանց հայութիւնը, գոնէ իրանց «ֆրանգ» չեն կոչում: — Ահա դրա մէջն է եզուիտների գլխաւոր վնասը — լատինացնել եւ ազգայնութիւնը, ազգային զգացմունք ոչնչացնել...

Երբ փոքր ինչ առաջ գնացինք, կրօնաւորը իր ձին պահեց եւ, ձեռք տալով Ասլանին, բաժանուեցաւ մեզանից, ասելով.

— Շատ ցաւում եմ, որ իմ ուղեկցութիւնը այդպէս կարճատեւ եղաւ ձեզ հետ, պարոն բժշկապետ, ես այդ գիւղը պէտք է գնամ մի հիւանդի այցելութեան։

— Այդ աւելի կարեւոր է, — պատասխանեց Ասլանը ժպտալով։ — Մնաք բարեաւ, տէր հայր։

Մենք շարունակեցինք մեր ճանապարհը դէպի Մուշ։ Ասլանը, տխուր մտածութիւնների մէջ, առաջ էր քշում իր ձին։ Ես եւ Արփիարը դեռ շարունակում էինք խօսել կրօնաւորի եւ հայ-կաթոլիկների մասին։

— Զարմանալի կոպիտ մարդիկ են այդ հայ-կաթոլիկները, — ասացի ես, չը մոռանալով կրօնաւորի ծառայի իմ վրայ թողած անախորժ տպաւորութիւնը։

— Նրանք հայերի հետ միայն այդպէս են, պատասխանեց Արփիարը, իր ձիու ընթացքը հաւասարացնելով իմին, որպէս զի ես լաւ լսեմ նրա խօսքերը։ — Բայց երբ պատահում է նրանց մի օտարազգիի հետ խօսել, այդ դէպքում ստրուկի պէս խոնարհ են դառնում։ Ատելութիւնը դէպի իրանց ազգայինները այն աստիճան զարգացրել են նրանց մէջ, որ մի հայի պատահելիս, այլ եւս իրանց պահել չեն կարողանում, մոռանում են քաղաքավարութիւնը։ Ամեն օտարազգի աղանդաւորներին նրանք կը ներեն, բայց հայի երեսին անամօթութեամբ կը նետեն “հերձուածող, չարափառ, հերետիկոս„ եւ այլ անուններ։ Այդ կաթոլիկ կղերի դաստիարակութեան արդիւնքն է։

— Ատելութիւն սերմանել եղբայրների մէջ։

— Այո, ատելութիւն սերմանել։ Բայց մի այլ պատճառ եւս պէտք է ի նկատի առնել։ Այդ մարդիկը հէնց սկզբանէ անկիրթ են եղել եւ ոչինչ բարոյական մաքրութիւն չեն ունեցել։ Վեր առէք իւրաքանչիւր նոր կրօնափոխ եղած հայ-կաթոլիկին առանձին, քննեցէք նրա անցեալը, քննեցէք

նրա վարած կեանքը, անպատճառ կը գտնէք նրա մէջ մի հին կեղտ։ Այդպիսի մարդիկ միայն մտնում են եզուիտներին եւ այդպիսի մարդկանց մտնում են իրանք եզուիտները։ Ամեն մի յայտնի սրիկան նրանցից պաշտպանութիւն է գտնում։ Ինչու։ — Որովհետեւ նրանց միջոցով աւելի հեշտ է խաղաղ ժողովրդի մէջ երկպառակութիւն ձգել, միմեանց հետ կռուացնել, որդին իր ծնողաց դէմ ապստամբացնել եւ այլն։ Իսկ երկպառակութիւնից նրանք միշտ օգուտ են քաղում։ Այդ մարդը, որ ձեզ հետ վիճում էր, մի քանի անգամ սնանկացած, իր պարտատէրերի ձեռքից փախած, գինեվաճառ է։ Հիմա եզուիտի մօտ ծառայ է դարձել. նրա եւ խոհարարն է եւ գործակիցը։ Դուք կը տեսնէք նրան, խոհանոցի ղենջակը առջեւը կապած, փողոցում կանգնած, անցնողների հետ քաւարանի կամ պապի Յիսուս Քրիստոսի յաջորդ լինելու մասին կը վիճէ, թէեւ ինքը բոլորովին ագէտ եւ գռեհիկ մարդ է։

— Միեւնոյնը ես նկատեցի Բաղէշում, այդպէս էին վարվում եւ հայ-բողոքականները։

— Բոլորը միեւնոյն տեսակից են։ Այդ օտարազգի քարոզիչները հաւաքում են հասարակութեան մրուրը, հասարակութեան կեղտը։ Նրանք թէ, մաքրելու նպատակով լինէր... Նրանք փոխում են իրանց հետեւողների անունը միայն, իսկ կեղտը մնում է... Մի՞թէ լոկ անունը կարող է փոխել մարդու բարոյական կազմակերպութիւնը։ Մէկը երէկ հայ-լուսաւորչական էր, այսօր նրան կոչում են հայ-բողոքական, կամ հայ-կաթոլիկ, — դարձեալ նոյն մարդն է...

Այդ խօսակցութեան միջոցին երիտասարդի շրթունքները դողում էին, նրա ձայնը փոփոխվում էր, երեւում էր, որ նա զգացել էր այդ բոլորը, երեւում էր, որ նրա մտածութեան մշտական առարկան էին դարձել հայ հասարակութեան այդ անբուժելի վէրքերը։ Բայց զարմանալին այն էր,

որ ես այդ անծանօթ երիտասարդի եւ Ջալալի դատողութիւնների մէջ գտնում էի շատ նմանութիւններ, կարծես, երկուսն էլ միեւնոյն նպատակին էին ձգտում, երկուսն էլ միեւնոյն վնասակար երեւոյթների դէմ էին բողոքում: Ջալլալը, որպէս վերջը յայտնուեցաւ, բողոքական քահանայ էր: Բայց ո՞վ էր այդ երիտասարդը, որ Բաղէշում անսպասելի կերպով միացաւ մեզ հետ: Ալլահը այդ մասին դեռ ոչինչ չէր ասել ինձ: Երբ նա խօսում էր, ես կարդում էի նրա աչքերը: Նա այն հասակում այնքան շատ բաներ գիտէր, այնքան շատ բաներ ուսումնասիրել էր: Իսկ ես... Ես դեռ ոչինչ չը գիտէի...

Ճանապարհը զարմանալի կերպով տրամադրում է մարդուն խօսել, մանաւանդ երկար, ձանձրալի ճանապարհը: Իսկ մեր խօսակցութեան առարկան այնքան առատ էր նիւթերով, որ եթէ տարիներով խօսէինք, դարձեալ չէր սպառուի: Աշխարհի սկզբից մարդիկ խօսում են, վիճում են կրօնի վրայ, եւ պիտի շարունակեն խօսել, մինչեւ աշխարհի վերջը:

Մենք կրկին վերադարձանք դէպի օտարազգի քարոզիչները:

— Նրանք, — նկատեցի ես, — այնպէս չեն, որպէս իրանց հետեւողները, այլ բաւական բարի, քաղաքավարի եւ բարեկիրթ մարդիկ են:

— Այդ այդպէս երեւում է միայն, — պատասխանեց նա ժպտալով. — բայց երբ շատ կը մօտենաք նրանց, կը տեսնէք, թէ ինչ հրէշներ են: Տեսա՞ք այդ կրօնաւորին, ո՜րքան հեզ էր, ո՜րքան քաղցր էր խօսում, կարծես, բերանից մեղր էր հոսում: Բայց միեւնոյն անձը իր հետեւողների սըրտում թոյն կը կաթեցնէ, եւ այնքան անզգալի կերպով, որ նա չի զգայ, թէ վարակվում է:

— Այսուամենայնիւ, մեծ զանազանութիւն կայ դրանց եւ բողոքական միսիոնարների մէջ:

— Այն զանազանութիւնը միայն կայ, որ բողոքական միսիօնարները մեծամիտ են, իրանց միշտ բարձր են պահում ժողովրդի մակերևոյթից և՝ Աւետարանի առաքելութեան մէջ անգամ՝ պահպանում են անգլիական կոպիտ հպարտութիւնը։ Այդ է պատճառը, որ խիստ նուազ յաջողութիւն են գտնում։ Բայց այդպէս չեն եզուիտները. դրանք ամեն ծակ ու ծուկ կը մտնեն, ամեն վիճակի հետ կը յարմարուեն, և այդ պատճառով աւելի վտանգաւոր են։ Բողոքական միսիօնարը իր գործի մէջ ազնւութիւն է սիրում և աւելի ուրիշների ձեռքով է գործ կատարում։ Բայց եզուիտը ինքը իր գործի և՛ տէրն է և՛ մշակը։

— Դուք կարծում էք այստեղ կարո՞ղ են նրանք վնասակար լինել։

— Եթէ նրանք կարողանում են վնասակար լինել աւելի քաղաքակիրթ հասարակութիւնների մէջ, որոնք ճանաչում են նրանց, որոնք գիտեն պաշտպանուել նրանց դէմ, — իսկ այստեղ, մի այդպիսի խեղճ, միամիտ, անպաշտպան ժողովրդի մէջ, ինչու չեն կարող վնասակար լինել։ Բոլոր այն հրոսակները, որ դարերի ընթացքում արշաւանք են գործել Տարօնում, իրանց բարբարոսութեամբ այնքան վնասներ չեն տուել, որքան կարող է տալ այդ հեզ, խոնարհ կրօնաւորը, որ մի հասարակ ձիու վրայ նստած, միայնակ, քրիստոնէական առաքինութեամբ ահա՛ այժմ այցելութեան է գնում այն գիւղը, մի հիւանդի մօտ...

Զբաղուած լինելով խօսակցութեամբ, մենք բաւական յետ էինք մնացել։ Ասլանը շատ առաջ էր գնացել։ Ես խնդրեցի իմ խօսակցին, որ փոքր ինչ շտապեցնէ իր ձին։ Բայց նա, երևի, չը լսեց իմ խնդիրքը, թէև քանիցս կրկնեցի։ Նրա բոցավառ աչքերը թափառում էին Տարօնի ընդարձակ դաշտավայրի վրայ, կարծես, մի բան որոնում էին

*այնտեղ։ Նրա դէմքը սաստիկ գունատուած էր եւ շրթունքները պինդ սեղմուած էին միմեանց վրայ։ Նա մինչեւ անգամ մոռացաւ իմ ներկայութիւնը, եւ սկսեց ինքն իրան խօսել։*

*«Տարօն, սիրելի աշխարհ, որքան ազգեր եկել, անցել են քո վրայով, որքանին հիւրասիրել ես դու եւ քո ամրութիւնների մէջ պատսպարան ես շնորհել։ Քո մէջ ապաստան գտան սարոց Սենեքերիմ թագաւորի երկու որդիքը — Ադրամելէք եւ Սանասար — հայրասպան որդիքը բերեցին իրանց հետ եւ իրանց աստուածներին, եւ իրանց ծառաներին։ Բայց դու օտար հիւրերին սիրեցիր, բայց օտար աստուածներին համբերել չը կարողացար։ Հայութեան դրօշմը դրեցիր քո հիւրերի վրայ եւ նրանցից սկսուեցաւ Արծրունեաց հզօր նախարարութիւնը։ Քո մէջ ապաստան գտաւ Ճենացի իշխանազն Մամգունը։ Իր թագաւորի սրտմտութիւնից փախստական լինելով, դիմեց քո պաշտպանութեանը։ Նա էլ բերեց իր հետ իր կրօնը, իր պաշտամունքը, իր սովորութիւնները։ Բայց դու նրան եւս հայացրիր, եւ նրանից սկսուեցաւ Մամիկոնեան մեծ նախարարութիւնը։ Քո մէջ ապաստան գտան հնդկացի իշխանազն եղբայրները — Դեմետր եւ Գիսանէ։ Նրանք եւս, իրանց թագաւորի բարկութիւնից ազատուելու համար, դիմեցին քո մեծահոգութեանը, իրանց հետ բերելով եւ մի ստուար գաղթականութիւն։ Դու նրանց բնակութեան տեղ շնորհեցիր, հիմնեցին Վիշապ քաղաքը եւ Քարքէ լեռան բարձրութիւնների վրայ կանգնեցրին իրանց տաճարները։ Այդ տաճարներից, Լուսաւորչի հետ պատերազմելու ժամանակ, դուրս եկան 6946 մարդիկ, որոնց մեծ մասը քուրմեր էին։ Բայց դու բոլորին հայացրիր, եւ սեւամորթ հնդիկը կլանուեցաւ քո բնիկ ժողովրդի մէջ։ Այդպէս, դարերի ընթացքում, ոտք կոխեցին քո նուիրական հողի վրայ մեծ մարդիկ, մեծ ուժերով։*

*Բայց ամէնքը լուծուեցան, ամէնքը միախառնուեցան քո հարազատ զաւակների հետ։ Այժմ, սիրելի՜ Տարօն, քո դաշտերի վրայ թափառում է մի մարդ, սեւ հագուստով եւ սեւ սրտով։ Նա նոյնպէս փախստական է եղել իր երկրից, նա նոյնպէս արտաքսուել է իր երկրից, եւ քո գրկում հիւրասիրութիւն է որոնում։ Նրա հայրենիքը չը կարողացաւ մարսել նրան, եւ իր միջից դուրս վիժեց։ Նա դիմեց անծանօթ երկիր, որ անծանօթ ժողովրդի մէջ ծածկուիլ կարողանայ։ Նա չէ բերել իր հետ զէնք, չէ բերել եւ մեծ ուժեր։ Նրա գլխաւոր զէնքը, իր գրպանում լցրած, փոքրիկ պղնձէ խաչերն են եւ իր խորամանկութիւնը։ — Ես այդ մարդից սարսափում եմ, սիրելի Տարօն...*



## Լ.

## ՀԱՅ-ԿԱԹՈԼԻԿԸ

*Դեռ արեւը չէր մտել, դեռ բաւական լոյս կար, երբ մտեցանք Տաւրոսի ստորոտներին, որ առանձին անունով կոչվում է Սիմ լեառ։ Հեռուից, համանուն դաշտավայրի հարաւային կողմում, երեւում էր Մուշ քաղաքը։ Նա կանգնած էր բաւական բարձր, լայնանիստ բլուրի վրայ եւ թախծալի կերպով նայում էր դէպի իր առջեւը տարածուած ընդարձակ դաշտավայրը։ Նրա թախծութեանը փոքր ի շատէ ուրախ կերպարանք էին տալիս խաղողի այգիները, որոնք, տների հետ միախառնուած, բլուրի բարձրութիւնից իջնում էին մինչեւ ստորոտը։ Դէպի ամեն կողմ տիրում էր երեկոյեան լռութիւնը, — գործադուլի եւ հանգստի լռութիւնը։ Լսվում էր միայն աղմկալի գետակի ձայնը, որ, քաղաքի առջեւից ոլորուելով, փրփրալով գնում էր ու խառնվում Մեղրի գետին։ Լսվում էր եւ ջրաղացների խուլ դղրդիւնը, որոնք երկար շարքով բանում էին այդ գետակի վրայ։*

*Գեղեցիկ էր տեսարանը։ Գեղասէր Տաւրոսը, մտենալով Մուշի դաշտավայրին, կարծես, վախեցել էր չը խանգարել նրա չքնաղութիւնը եւ, զգուշութեամբ դէպի յետ քաշուելով, գոգաւորուել էր, թողնելով այն լայնանիստ բլուրը միայն, քաղաքի շինուածքի համար։ Այդ բլուրի դէպի*

վերը նայելիս, երեւում էր քաղաքը իր մզկիթներով ու եկեղեցիներով։ Բոլորովին գագաթի վրայ կանգնած էր հին, կիսաւեր ամրոցը։ Բլուրի ստորոտից, հարթ տարածութեան վրայ, անմիջապէս սկսւում էին ծխախոտի մշակութեան ընդարձակ արտորայքը, որոնք քաղաքացիների գլխաւոր հարստութիւնն էին կազմում։

Չը գիտեմ ինչու, ես տխուր էի այդ քաղաքին մօտենալու ժամանակ։ Արդեօք նրա համար, որ Տարօնի մարդաշատ, մեծահարուստ քաղաքներից մնացել էր այդ մէկը միայն, եւ այն եւս աւելի մի մեծ աւանի տպաւորութիւն էր գործում, քան թէ քաղաքի։ Չը կար Կառ-Կառ կոչուած ամրաշէն քաղաքը, իր անառիկ Ողական բերդով։ Չը կար Չիւնակերտ քաղաքը, որ Վախթանգ զօրավարը նորոգելով, իր կնոջ անունով կոչեց Գորպէս։ Չը կար Օձ քաղաքը, որի ահարկու բերդը շինեց Աշոտ մսակերի որդի Դաւիթ Բագրատունին։ Չը կար Վիշապ քաղաքը, որ Վաղարշակի օրերում հիմնեցին հնդկացի գաղթականները, որը այլ անունով կոչվում էր Տիրակատար քաղաք։ Չը կար եւ Մծուրք քաղաքը, որ հիմնեց Սանատրուկ արքան։ — Բոլո՛րը կորաւ, բոլո՛րը անհետացաւ, մնաց որբացած Մուշը միայն, որ այժմ մռայլ դէմքով նայում էր բարձրադիր բլուրի գագաթից, եւ իմ մէջ զարթեցնում էր տխուր յիշողութիւններ։ Բնութեան վսեմութիւնը, տեսարանների գեղեցկութիւնը, մասամբ փարատում էին այդ յիշողութիւնները։

Երբ սկսեցինք բարձրանալ բլուրի զառիվերը, երբ բաւական մօտեցանք քաղաքին, Արփիարը մեզ խորհուրդ տուեց չիջեւանել պանդոկներում, այլ ընտրել մի այլ յարմար կայարան։ Բաղէշում Հաջի-Իսաղի պանդոկում լաւ խրատուած լինելով, մենք յօժարութեամբ ընդունեցինք Արփիարի առաջարկութիւնը։

— Բայց ուրիշ ի՞նչ յարմար կացարան կարող էինք գտնել, — հարցրեց Ալանը։

— Քաղաքի եկեղեցիները աւելորդ սենեակներ ունեն պանդուխտների համար, կարելի է նրանցից մէկը ընտրել, — պատասխանեց Արփիարը։

— Դուք կարծում էք, որ դրանք պանդոկներից լա՞ւ կը լինեն։

— Եթէ լաւ չը լինեն, վատ էլ չեն լինի։ Միայն այն զանազանութիւնը կայ, որ եկեղեցիների բակերում առանձնացած կը լինենք, իսկ պանդոկներում կը գտնենք մի խառնիճաղանճ բազմութիւն, որոնց մէջ շատ հաճելի չէր լինի մեզ երեւնալ։

Ճանապարհը ոլոր-մոլոր պտոյտներով բարձրանում էր դէպի վեր։ Դաշտերից վերադառնում էին մշակները, բահերը ուսի վրայ դրած, այգիներից վերադառնում էին այգեպանները բարձած աւանակներով։ Փոշին մարդ էր խեղդում։ Աւելի անտանելի էին աւանակները։ Երբեմն այդ կամակոր անասուններից մէկը կամ խրտնում էր, եւ յամառելով կանգ էր առնում, ճանապարհն էր կտրում. կամ կողքէ-կողք շեղուելով, իր վրայ բարձած խաղողի կթոցը զարկում էր մեր ոտներին։

Վերջապէս, մտանք քաղաքի նեղ փողոցների մէջ։ Անցնելու տեղ չը կար։ Մարդ եւ անասուն խառնուել էին միմեանց։ Մենք, կարծես թէ, սանդուղքներից էինք բարձրանում, որովհետեւ փողոցները բլուրի զառիվեր դիրքն ունէին։ Հայոց թաղերը բաժանուած էին մահմեդականների թաղերից։ Այդ արդէն նշան էր, որ այդ տարբեր ազգերը հաշտ դրացիներ չեն եղել։ Մենք դիմում էինք դէպի հայոց թաղը։

Երեկոյեան ժամերգութիւնը դեռ նոր էր աւարտուած, դեռ նոր ժամաւորները դուրս էին գալիս, երբ մտանք հայոց

եկեղեցիներից մէկի բակը։ Մեզ տեսնելով, ժամաւորները կանգ առին եւ խմբուեցան մեր շուրջը։ Բաւական ժամանակ տեւեց, մինչեւ եկեղեցու երեսփոխանը յայտնուեցաւ։ Դա մի կարճահասակ մարդ էր, որի ընդարձակ, ալեխառն մօրուքը ծածկում էր ամբողջ կուրծքը, յետոյ, երկու կողմից տարածուելով, հասնում էր ուսերին, եւ ապա բարձրանում էր դէպի ականջները, եւ վերջը անհետանում էր մի կեղտոտ, լեղագոյն Փէսի տակ։ Նրա մօրուքը հնդկահաւի բացուած պոչի տպաւորութիւն էր գործում, որի միջնավայրում երեւում էր մի փոքրիկ, ողորմելի երես, նեղ, անհանգիստ աչքերով։

Մեր հարցին, թէ կա՞ն արդեօք սենեակներ գիշերելու համար, նա պատասխանեց՝ "տեսնեմ"... եւ անյայտացաւ ժամաւորների մէջ։ Կարծես թէ, ինքը չը գիտէր, եւ նոր պէտք է տեղեկանար, արդեօք սենեակներ կային, թէ ոչ։

Երկար սպասելուց յետոյ, վերջապէս տեսանք, որ մօրուքը բակի միւս ծայրում խօսում էր տէրտէրի հետ, որը այդ գաղտնի խորհրդակցութիւնից յետոյ, բարեհաճեց մօտենալ մեզ։ Եթէ ճշմարիտ է ժողովրդական կարծիքը, թէ ձրի հացը մարդուն գիրցնում է, պարարտացնում է, — այդ կէտից նայելով, պէտք էր ընդունել, որ տէր հօր վրայ շատ բարերար ազդեցութիւն էր գործել։ Նրա երկու ձեռքերի ծայրերը հազիւ հասնում էին միմեանց, եւ ահագին փորի վրայ դարձնում էին "տէր-ողորմեայի" սեւ հատիկները, որոնց մէջ տէր հայրը, երեւի, վայելչութեան համար, կարմիրներ եւս խառնել էր։ Հակառակ իր երեսփոխանին, նա կրում էր խիստ թեթեւ մօրուք, եւ ծնօտների բաց մնացած կաշին պարարտութիւնից փայլում էր մոյգ-աղիւսի գոյնով։ Արիւնով լի աչքերը, կարծես, ուզում էին

դուրս թռչել իրանց բոյներից։ Նա մօտենում էր մեզ դան-դաղ քայլերով, եւ միեւնոյն ժամանակ ծանր շունչ էր առնում։ Մեր զարմանքը մեծ եղաւ, երբ այդ ահագին մարմնի միջից լսուեցաւ մի երեխայի հազիւ լսելի ձայն.

— Բարեողջոյն ձեր հրամանոցը... առակն անխոտելի է... կ'ասեն՝ հազարից մէկ անգամ զատիկ կը լինի... եւ այն օրն էլ ձիւն կը գայ... Մեր եկեղեցին, շատ տարի է, որ հիւր չէ ունեցել... այսօր հիւր եկաւ, սենեակ չը կայ... Այրի՜ մեր ժողովուրդը... փառք Աստուծոյ, ի՞նչ էր պակաս... սենեակներ կային... բայց անցեալ տարի մեր մեղքից շատ անձրեւներ եկան... կտուրները փլան... դեռ այնպէս մնում են ու կը մնան...

Պէտք էր շատ երկար սպասել, մինչեւ տէր հայրը, շունչ առնելով, փսփսալով, երբեմն դէպի մեզ եւ երբեմն դէպի իր ժամուորները նայելով, կը վերջացնէր իր երկար բացատրութիւնները։ Բայց նրա խօսքը ընդհատեց մի մարդ, որ մօտեցաւ մեզ եւ առաջարկեց իր հիւրասիրութիւնը, ասելով.

— Ուստատիս տունը շատ հեռու չէ եկեղեցուց, եթէ կը բարեհաճէիք, ինձ մեծ պատիւ արած կը լինէիք, եթէ այդ գիշերը իմ ծածքի տակ կ'անցկացնէիք։

Մենք յօժարութեամբ ընդունեցինք։ Նա ընկաւ մեր առջեւը, սկսեց տանել դէպի իր տունը։

Մեր ետեւից բարձրացաւ խառնաձայն աղմուկ. լսվում էին այդպիսի յանդիմանական խօսքեր. “ինչո՞ւ խաբեցիր... ինչո՞ւ սուտ խօսեցիր... ինչո՞ւ մեզ ամաչացրիր այդ օտարականների մօտ... սենեակներում զարի ես լցրել, եւ ասում ես, թէ փլած են„...

Երեւում էր, որ տէր-տէրին գրգռում էին։

Նա մեր հիւրընկալին նկատեց.

— Ձեր տէր-տէրը ժամասացութիւնն էլ այդպէս ձգձգում է, ինչպէս սենեակների բացատրութիւնը:

— Շատ բաներ կուլ է տալիս, — պատասխանեց նա ժպտալով, — եթէ ամեն խօսք կարդալու լինէր, մենք բոլորովին կորած էինք:

Մենք մտանք մի բաւական կոկիկ տուն, փոքրիկ պարտէզով: Մաքուր, արեւելեան ճաշակով կահաւորած, մի սենեակ էր, ուր ներս տարաւ մեզ մեր հիւրընկալը, եւ խնդրեց նստել, ասելով.

— Այնպէս համարեցէք, որ ձեր տանն էք, ես իսկոյն կը պատուիրեմ, որ մեզ ուտելու մի բան տան:

Այստեղ, ինչպէս այդ կողմերի բոլոր քաղաքներում, սովորութիւն ունէին կէսօրին՝ ճաշի ժամանակ՝ նախաճաշիկ ուտել, իսկ երեկոյեան՝ ընթրիքի ժամանակ՝ ճաշ ուտել: Որովհետեւ մարդիկ, ամբողջ օրը բազարում զբաղուած լինելով, վերադառնում էին տուն երեկոյեան միայն, ուր սպասում էր նրանց պատրաստի սեղանը:

Ընթրիքից յետոյ մեզ սուրճ տուեցին: Յայտնուեցաւ, որ մեր հիւրընկալը քաղաքի ունեւոր կալուածատէրերից մէկն էր, եւ ծխախոտի ընդարձակ մշակութիւն ունէր:

Արփիարը, մի կողմ քաշուած, պառկել էր մինդարի վրայ եւ լուռ ծխում էր: Փափուկ երիտասարդը յոգնած էր երեւում: Մի ամբողջ օր ու գիշեր շարունակ ճանապարհ էր եկել, դա հեշտ չէր նրա համար: Ասլանը ինչ որ նամակ էր որոնում իր թղթապահի մէջ: Իսկ ես դեռ չէի մոռացել մօրուքին, չէի մոռացել եւ հաստափոր տէր-տէրին, այդ պատճառով հարցրի մեր հիւրընկալից, թէ այն ի՞նչ աղմուկ էր, որ մեր հեռանալուց յետոյ բարձրացաւ եկեղեցու բակում:

— Արժէ՞ միթէ դրա վրայ խօսել, — պատասխանեց նա, ուսերը արհամարհական կերպով շարժելով. — մեր տէր-տէրները խօ գիտէք ի՛նչ են...

Մեր հիւրընկալը երեւաց եւ բաւական ծանր, լըջահայեաց մարդ։ Ալանը խօսում էր նրա հետ քաղաքի մասին, հարցնում էր, թէ որքան բնակիչ ունի, որքանը մահմեդական է, որքանը հայեր են, քանի եկեղեցի ունեն, քանի դպրոց ունեն։ — Նա բոլոր հարցերին բաւական ճիշտ տեղեկութիւններ էր տալիս։

— Մահմեդականների հետ ձեր յարաբերութիւնները ի՞նչպէս են։

— Ի՛նչպէս պէտք է լինի, — պատասխանեց նա տխուր ձայնով. — կողոպտում են, չենք բողոքում, հայհոյում են, ձայն չենք հանում, թքում են մեր երեսին, համբերում ենք, եւ այդպէս կառավարվում ենք միմեանց հետ։ Եւ ասում են, թէ հայն ու տաճիկը լաւ են «եօլայ գնում»...

Այդ միջոցին Արփիարը գլուխը վեր բարձրացրեց իր պառկած տեղից եւ, դառնալով դէպի տան տէրը, ասաց.

— Ձեր յայտնած թուանշանները ինձ համար շատ հետաքրքիր են. մօտաւորապէս քանի՞ տուն են հաշւում այդ քաղաքում։

— Մօտաւորապէս 2500 տուն, որոնցից հազար տունը հայեր են, մնացածը քուրդ եւ տաճիկ։

— Որքան գիւղ կայ Մուշի ամբողջ դաշտում։

— Հայարնակ գիւղերը 100 կարելի է հաշւել, իսկ մի 8 կամ 10 գիւղ քրդաբնակ են։

— Հայաբնակ գիւղերի իւրաքանչիւրը միջին թուով քանի՞ տուն կ՚ունենայ։

— Իւրաքանչիւրը միջին թուով կ՚ունենայ 70 տուն։

— Ուրեմն 100 գիւղը 7000 տուն: — Իսկ իւրաքան-չիւր տունը ո՞րքան հոգի կարելի է հաշուել:

— Իւրաքանչիւր տունը 10 հոգի կարելի է հաշուել:

— Դա շատ չէ՞ լինի:

— Ոչ, շատ չի լինի, որովհետեւ մեր գիւղերում այն-պիսի ընտանիքներ կան, որ 20, 30 կամ աւելի անդամներից են բաղկացած:

— Այսուամենայնիւ 10 հոգի մեծ թիւ է: Ընդու-նենք այդպէս, եւ կը ստանանք հետեւեալ թուանշանները: Ամբողջ Մուշի դաշտի մէջ 100 հայաբնակ գիւղ, 7000 տուն եւ 70.000 բնակիչ: Եւ եթէ դրա վրայ աւելացնենք քաղաքի 1000 տան բնակիչները, ընդամենը կը լինի 80.000 բնակիչ:

— Բայց դուք այն հարցրէք, — նկատեց մեր հիւրըն-կալը, — թէ այդքան բնակիչներից ո՞րքանն է իր հայրենի հողի վրայ բնակւում: Կարելի է ասել, որ կէս մասը պան-դխտութեան մէջ է ապրում:

— Պանդխտութեան մէջ ի՞նչ են շինում:

— Համալութիւն են անում:

— Անբախտ Տարօն, — բացականչեց վշտացած երի-տասարդը տխուր ձայնով. — քո գիւղացին առաջ գնում էր օտար երկրում կ ա յ ս ր էր դառնում, իսկ հիմա գնում է համալ է դառնում...

Մեր հիւրընկալի բարի աչքերը զարմանքից լայնացան: Զարմացայ եւ ես:

— Ինչո՞ւ էք զարմանում, — դարձաւ նա դէպի մեզ, — յունաց երեւելի Վասիլ կայսրը, որ Կ. Պոլսում գահ-նստաւ 867 թուին, Տարօնի Թիլ աւանից էր: Նրա թոռ Կոստանդին Պերփիւռուժէն կայսրը նոյնպէս նշանաւոր եղաւ, որպէս իր պապը, եւ գրեց նրա պատմութիւնը, որ լի է

բազմաթիւ մեծագործութիւններով։ Հայաստանը շատ կայսրներ ու մեծ զօրապետներ է տուել, թէ՛ Հռօմին եւ թէ՛ Բիւզանդիային, ուր նրա որդիները այժմ գնում են, համալութիւն են անում։

Ճրագի լոյսը լուսաւորում էր նրա գունաթափ դէմքը, որի վրայ յայտնուեցաւ մի թեթեւ կարմրութիւն։ Նա հանեց ծոցի գրպանից մի փոքրիկ գրքոյկ, ինչպէս բողոքականի քարոզիչը ամեն դէպքում դուրս է բերում ծոցի Աւետարանը։ Նրա ձեռքերը զգալի կերպով դողում էին։ Երեւում էր, որ մեր հիւրընկալի հաղորդած թուանշանները աւելի գրգռեցին նրա տխուր զգացմունքները։ Մենք ամենքս նայում էինք նրա երեսին։ Նա թերթում էր փոքրիկ գրքոյկը եւ մատիտով մի պատառ թղթի վրայ նշանակում էր իր դիտողութիւնները։ Երբ վերջացրեց, գլուխը վեր բարձրացրեց, ասելով.

— Ի՜նչ մեծ տարբերութիւն... այդ սարսափելի՜ է։

Ասլանը անվախ հիացմունքով նայում էր նրա վրայ, ինչպէս մի մեծ եղբայր, որ ուրախանում է կրտսերի առաջադիմութեամբ։

Երիտասարդը դարձաւ դէպի մեր հիւրընկալը.

— Մեր հին պատմաբաններից մէկը. Զենոբ Գլակը, թողել է մեզ մի քանի հետաքրքիր թուանշաններ, որոնցից կարելի է եզրակացնել, թէ որքան մեծ բազմամարդութիւն է ունեցել Տարօնը առաջ եւ որքան փոքրացել է նրա բնակիչների թիւը այժմ։ Պէտք է գիտենաք, որ Զենոբ Գլակը Լուսաւորչի ժամանակակից էր եւ նրա նշանաւոր եպիսկոպոսներից մէկը, որին Լուսաւորիչը Տարօնի Ս. Կարապետ վանքի առաջին վանահայր կարգեց։ Եւ որովհետեւ Զենոբ Գլակը գործակից եղաւ Լուսաւորչին այդ վանքի կառուցանելու ժամանակ, այդ պատճառով վանքը կոչուեցաւ եւ Գլակայ վանք։

Այդ վանքը այսօր էլ կայ եւ ոչ միայն Տարօնի, այլ ամբողջ Հայաստանի ամենանշանաւոր վանքերից մէկն է։ Էջմիածնից յետոյ՝ նրան կարելի է դնել։ Գուցէ ձեզ յայտնի է, որ Ս. Կարապետի վանքը առաջ մի կռատուն էր, հնդկացի գաղթականներից ամենահին ժամանակներում հիմնուած։ Լուսաւորիչը այդ կռատունը քանդեց եւ նրա տեղում Ս. Կարապետի վանքը հիմնեց։ — Այդ բոլորը ասում եմ ձեզ, որ այդ վանքի մասին փոքր ինչ պատմական գաղափար ունենաք, բայց բանը դրանում չէ։ Ս. Կարապետի վանքը, դեռ կռատուն եղած ժամանակ, ունէր իր շրջակայքում տասն եւ երկու գիւղեր, իբրեւ վանական սեպհականութիւն։ Երբ կռատունը քրիստոնէական տաճարի փոխուեցաւ, Լուսաւորիչը նոյն գիւղերը դարձեալ թողեց, որպէս նոյն վանքի ժառանգութիւն։ Դժբախտաբար Զենոբը իր գրքի մէջ յիշեալ տասներկու գիւղերից միայն եօթնի անուններն է յիշում, բայց այդքանը եւս շատ բան է ապացուցանում այն ժամանակի վիճակագրութեան համար։ Ես կը կարդամ ձեզ նրանց անունները, թէ իւրաքանչիւրը քանի երդ, այսինքն ծուխ ունէր, եւ ո՛րքան զօրք կարող էր դուրս բերել պատերազմի ժամանակ։

Նա սկսեց փոքրիկ թղթի պատառի վրայ կարդալ եօթն գիւղերի անունները, որ դուրս էր բերել Զենոբի գրքից։

1. Կ ո ւ ա ռ ս ունէր 3012 երդ կամ ծուխ, 1500 հեծեալ, 2200 հետեւակ զօրք։ 2. Մ ե ղ դ ի՝ 2080 երդ, 800 հեծեալ, 1030 հետեւակ։ 3. Խ ո ր տ ո ւ մ՝ 900 երդ, 400 հետեւակ։ 4. Խ ո ր ն ի՝ — մեր Մովսէս Խորենացու ծննդավայրը — 1906 երդ, 700 հեծեալ, 1008 հետեւակ։ 5. Կ ե ղ ք՝ 1600 երդ, 800 հեծեալ, 600 հետեւակ։ 6. Պ ա ր ե խ՝ 1680 երդ, 1030 հեծեալ, 600 հետեւակ։ 7.

Բ ա ղ ո ւ մ՝ 3200 երդ, 1040 հեծեալ, 8040 աղեղնաւոր, 600 տէգաւոր, 280 պարսաւոր։

— Ուրեմն 7 գիւղը ունեցել է 14.378 երդ կամ ծուխ։ Եթէ իւրաքանչիւր ծուխը հաշուելու լինենք 10 հոգի, ինչպէս հաշուեցինք Մուշի գիւղօրայքի այժմեան ծուխերը, կը ստանանք 143.780 հոգի։ Կը նշանակէ՝ հին Տարօնի միայն եօթն գիւղը ունեցել է 63.780 բնակիչ աւելի, քան թէ ունի այժմեան ամբողջ Տարօնը իր բոլոր գիւղերով եւ Մուշ քաղաքով։ — Դա սարսափելի տարբերութիւն է, — կրկնեց նա, — դա մինչեւ անգամ անհաւատալի է թւում։ Բայց ես բոլորովին հաւատում եմ Զենոբի թուանշաններին. նա չափազանց ճշմարտասէր մարդ էր։ Բայց որքան ուրիշ շատ գիւղեր, աւաններ եւ քաղաքներ կային այն ժամանակ Տարօնում...

Նա լռեց, թախծալի մռայլը կրկին պատեց նրա պայծառ դէմքը։

— Յիշեալ եօթն քրմական աւանագիւղերը ունէին 20.708 հետեւակ եւ հեծելազօր զինուորներ։ Բաւական մեծ ուժ է մի մեհեանի համար։ Մի կռուի մէջ միայն քուրմերը դուրս բերեցին Լուսաւորչի դէմ 6946 զինուած մարդիկ։ Եւ այդ էր պատճառը, որ առանց արիւնհեղութեան չը կատարուեցաւ կրօնական մեծ յեղափոխութիւնը Տարօնում։

Մեր հիւրընկալը խորին ուշադրութեամբ լսում էր ոգելից երիտասարդի խօսքերը։ Ինձ համար եւս շատ հետաքրքիր էին նրա հաղորդած նոր տեղեկութիւնները Տարօնի մասին, թէեւ շատ բան առաջուց ինձ պատմել էր նոյնպէս եւ Ասլանը։

Ասլանը այդ միջոցին գտաւ այն նամակը, որ որոնում էր եւ, դառնալով դէպի մեր հիւրընկալը, հարցրեց.

*— Դուք ճանաչո՞ւմ էք այդ մարդուն, — նա կարդաց նամակի հացէն։*

*Մեր հիւրընկալի լուրջ դէմքի վրայ խաղաց մի թեթեւ ժպիտ եւ, նամակը նրա ձեռքից առնելով, ասաց․*

*— Այդ մարդը ես եմ։ Անշուշտ Վանում յանձնած կը լինեն ձեզ այդ նամակը։*

*— Այո՛, մուսուլցի թումաջեի վաճառական խօջա Թորոսի նամակն է։*

*Մեր հիւրընկալը նամակը մօտեցրեց ճրագին, կարդաց եւ, վերջացնելուց յետոյ, ասաց․*

*— Այդ նամակը, ինչպէս երեւում է, ուշացրել էք։ Բայց ես դրանից առաջ մի այլ նամակ եւս ստացել եմ խօջա Թորոսից, համարեա մի եւ նոյն այդ բովանդակութեամբ։*

*— Ուրեմն դուք ճանաչեցի՞ք մեզ եկեղեցու բակում։*

*— Ճանաչեցի։ Ես ձեզ սպասում էի։*

*— Ուրեմն պատրաստե՞լ էք, ինչ որ գրել են ձեզ։*

*— Ամէն ինչ պատրաստ է։*

*— Շատ շնորհակալ եմ, — ասաց Ասլանը, ձեռքը մեկնելով նրան։ — Ես առաւօտեան պէտք է գնամ Աստղաբերդը տեսնելու։ Այնտեղից կը գնամ Առաքելոց վանքը։ Յետոյ կը վերադառնամ ձեզ մօտ եւ այստեղից ճանապարհ կ'ընկնեմ...*

*— Մինչեւ ձեր վերադարձը ամէն ինչ պատրաստ կը գտնէք ճանապարհի համար, — կրկնեց մեր հիւրընկալը։*



## ԼԱ.

## ԱՍՏՂԱԲԵՐԴ

Միւս օրը, վաղ առաւօտեան, ես եւ Ասլանը, մեր հիւրընկալի ծառաներից մէկին մեզ հետ առնելով, ճանապարհ ընկանք դէպի Աստղաբերդ։ Արփիարը ինչ-որ գործերի համար մնաց նրա տանը։

Չը գիտեմ ինչո՞ւ, ես միշտ ուրախութիւն էի զգում, երբ Ասլանը տանում էր ինձ մի հին ամրոց կամ բերդ ցոյց տալու։ Նրանց աւերակները միշտ իմ վրայ ազդու տպաւորութիւն էին թողնում։ Արդեօք նրա՞ համար, որ նրանց մէջ ես տեսնում էի անցեալ փառքի եւ զօրութեան խորտակուած յիշատակները, թէ նրա՞ համար, որ նրանց մէջ երեւում էր ժողովրդի իշխանների կեանքը, սովորութիւնները եւ նրանց յարաբերութիւնները՝ թէ՛ իւրայնոց եւ թէ՛ օտարների հետ։

Այդ բերդի անունն անգամ ինձ համար հրապուրիչ էր. Աստղաբե՛րդ, գեղեցիկ անուն է։ Ասլանը ասում էր, Աստղ-կայ-բերդ անուան փոփոխութիւնը պէտք է լինի։

Ճանապարհը ոլորվում էր հարթ դաշտավայրի միջով։ Ես եւ Ասլանը նստած էինք ձիաների վրայ, իսկ մեր առջեւից ոտքով գնում էր մեր առաջնորդը։

Ես այժմ միայն առիթ ունեցայ Ասլանի հետ խօսել Արփիարի մասին։ Այդ երիտասարդը ինձ խելքից հանել էր։ Բայց դեռ չը գիտէի՝ ո՛վ էր նա, ո՛րտեղից յայտնուեցաւ, ի՞նչ նպատակով էր եկել Մուշ եւ այլն։ Ասլանը ինձ շատ բան

չասաց նրա մասին, բայց որքան էլ ասաց, այն էլ բաւական էր իմ հարցասիրութիւնը գոհացնելու համար։ Ես տեղեկացայ, որ նա բնիկ տրապիզոնցի էր, սովորել էր Վենետիկի Մխիթարեանների վանքում, ուսումնասիրել էր պատմութիւն, գլխաւորապէս հայոց պատմութիւն եւ հայոց լեզու, գիտէր եւ մի քանի հին ու նոր լեզուներ։ Բայց ինչ որ աւելի զարմացրեց ինձ, — նա կրօնով հայ-կաթոլիկ էր, եւ այնպէս դառնացած կերպով խօսում էր հայ-կաթոլիկների մասին։

“Ահա մի երկրորդ Ջալալ, — մտածում էի ես, — նա կրօնով հայ-բողոքական, բողոքում էր հայ-բողոքականների հակազգային հակումների դէմ, իսկ դա կրօնով հայ-կաթոլիկ, բողոքում էր հայ-կաթոլիկների հակազգային հակումներու դէմ։ Բայց Ջալալը քահանայ էր, չը լինի՞ թէ, դա եւս մի նորընծայ աբեղայ լինէր„։

— Ո՛չ, — ասաց Ասլանը, — սկզբում թէեւ ուխտած է եղել կրօնաւորական կարգը մտնել, բայց յետոյ թողել է։

— Նա կը մնա՞յ այստեղ։

— Կը մնայ։

— Ի՞նչ պիտի շինէ։

— Պիտի գործէ այստեղի հայ-կաթոլիկների մէջ։

— Նա Վենետիկի վանքի կողմի՞ց է ուղարկուած։

— Ո՛չ, — նա ազատ մարդ է, կը գործէ իր սեպհական միջոցներով։ Նա հօրից բաւական ժառանգութիւն է ստացել։

— Եզուիտները չե՞ն հալածի նրան։

— Կը հալածեն։ Բայց եթէ հալածանքից մարդիկ վախենալու լինէին, պէտք է ոչինչ չը շինէին։ Իսկ նա բաւական քաջութիւն ունի իր գործի համար։

Քաղաքից մօտաւորապէս երկու ժամ ճանապարհի տեւողութեամբ գնում էինք դէպի արեւելք, անցնելով

մշակուած դաշտերի եւ գեղեցիկ, կանաչազարդ հովիտների միջով։ Հեռուից երեւաց Աստղաբերդը։ Նա կանգնած էր Տաւրոսի Թեւքերից մէկի վրայ եւ, կարծես, զայրացած դէմքով նայում էր դէպի իր առջեւը գլուած խորին ձորերը ու լայնածաւալ հովիտները։ Իմ սիրտը սկսեց դողալ։ Մենք մտենում էինք հայոց դիցուհու ամրոցին։ Այստեղ էր հիւրասիրում Տարօնի աստուածուհին մեր անպարտելի հսկաներից մէկին — Վահագնին։ Այստեղ, գեղեցիկ աստուածուհու գրկի մէջ, հանգիստ էր առնում հսկան՝ իր ահռելի կռիւներից յետոյ վիշապների հետ։ Սէրը, գգուանքը, հեշտութիւնը ամոքում էին վաստակած քաջի խոնջութիւնը։

Երբ հասանք լեռան ստորոտին, մեր առաջնորդը ներքեւում պահեց ձիանները, իսկ ես եւ Ասլանը սկսեցինք վեր բարձրանալ։ Ամրոցի վիթխարի աշտարակներից մի քանիսը, բարձր պարիսպների մեծ մասը, դեռ կանգուն էին մնացել։ Ներսի շինութիւնները փլատակների մի տխուր տեսարան էին ներկայացնում։ Երեւում էին զանազան վիմափոր սենեակներ, քարանձաւներ, որոնք կիսով չափ կամ բոլորովին հողով լցուած էին։ Պարզ երեւում էր, որ ոչ Թէ ժամանակը պարբերաբար մաշել, տրորել էր այդ գեղեցիկ ամրոցը, այլ նա միանգամից մի սոսկալի կործանման զոհ էր դարձել։ Տեղ-տեղ հողի եւ քարակոյտի տակից դուրս էին նայում այրուած, ածուխ դարձած գերանների ծայրերը։ Անշուշտ էր, որ մի ժամանակ կրակը այստեղ սարսափելի գործ էր կատարել։

Ասլանը նստեց մի քարի վրայ, ուր մամուռը սփռել էր իր Թաւիշեայ կանաչագոյն գորգը։ Նա հրաւիրեց ինձ նստել իր մօտ։ Վաղորդեան արեգակը լուսաւորում էր նրա մտախոհ դէմքը։ Ես երբէք չէի տեսել նրան այնպէս ընկղմուած մտածութիւնների մէջ։ Մի քանի րոպէ լուռ նայում էր նա փշոտ դժնիկի վրայ, որ բուսել էր մի սիւնի խորտակուած

պատուանդանի ճեղքից եւ իր մանր տերեւներով ծածկում էր նրա հրաշալի քանդակները։ Յետոյ դարձաւ դէպի ինձ այդ խօսքերով.

— Ես բերեցի քեզ, Փարհատ, այստեղ ոչ թէ ամրոցը ցոյց տալու համար, այլ բոլորովին այլ նպատակով։ Մենք ամրոցներ, բերդեր, աւերակներ շատ տեսանք մեր ճանապարհորդութեան ժամանակ։ Այնքանն էլ բաւական էր քեզ՝ քո հայրենիքի մասին գաղափար տալու։ Բայց ես քեզ բերեցի այստեղ, որ հէնց կատարուած տեղի վրայ պատմեմ քեզ այն, ինչ որ մինչեւ այսօր ծածուկ է պահուել քեզանից, ինչ որ գուցէ շատ անգամ զբաղեցրել է քո հայցասիրութիւնը։ Այդ պէտք է գիտենաս դու, որովհետեւ մենք շուտով բաժանուելու ենք միմեանցից...

Վերջին խօսքը նետի պէս ծակեց իմ սիրտը։ Ես ամբողջ մարմնով սոսկացի։ Բաժանուել այն մարդից, որին այնքան սիրել էի, որին այնքան յարգում էի, որը այնքան մեծ ազդեցութիւն էր գործել թէ իմ բնաւորութեան եւ թէ իմ զարգացման վրայ, — այդ անտանելի էր։ Նա ժամանակ չը տուեց ինձ մի բան ասելու եւ շարունակեց.

— Ես թողնում եմ այդ բերդի հին պատմական աւանդութիւնները, թողնում եմ եւ դրա վրայ պատմուած ժողովրդական զրոյցները, այդ քանը միայն կ՚ասեմ, որ այդ բերդը պատկանում էր Տարօնի Հայ իշխաններին, յետոյ կործանուեցաւ Մահմէդի քեռորդի Աբդուռահիմից, երբ նա արշաւեց դէպի Հայաստան։ Այնուհետեւ ի՞նչ վիճակների է ենթարկուել, — ինձ յայտնի չէ, միայն վերջին ժամանակներում նորոգեց այդ բերդը եւ բնակվում էր դրա մէջ քո եւ մեր ամենի բարերարը — որսորդ Ավօն։

Լսելով Որսորդի անունը, ինձ զսպել չը կարողացայ։ Ես նստած էի այն աղնիւ, առաքինի մարդու աւերակների վրայ։

— Այդ նրա՞ ամրոցն է, բացականչեցի ես, — այստե՞ղ կատարուեցաւ այն սարսափելի կոտորածը, որով բնաջնջ եղաւ նրա տունը, այստե՞ղ հայերի դաւաճանութեամբ ընկաւ նա թշնամու սրերի տակ, — այդ բոլորը տեսնում եմ, տեսնում եմ եւ հրդեհի հեղքերը… բոլո՛րը տեսնում եմ…

— Այո՛, այստեղ… կրկնեց Ասլանը նոյնպէս զգացուած ձայնով: — Բայց Որսորդի բնակութեան տեղերը նոյնքան փոփոխական են եղել, որքան փոփոխուել է նրա անողորմ բախտը: Մի ժամանակ բնակվում էր նա Սասունի լեռների մէջ, մի ժամանակ Մոկաց երկրում, իսկ վերջը — այստեղ: Ամեն տեղ շուտ յաջողվում էր նրան, բայց եւ ամեն տեղ աղէտալի արկածներ պակաս չէին լինում նրանից: Կարծես, այդ մարդը ծնուած էր իր ամբողջ կեանքում ծանր պատահարների հետ պատերազմելու համար… Դու գիտես, Փարհադ, թէ ի՛նչ անցեալ է ունեցել նա, դու գիտես, թէ ո՞վ է նա, եւ ինչպիսի տխուր հանգամանքներից ստիպուած, ընկաւ նա Պարսկաստան: Կրկնել քեզ այդ ամենը աւելորդ է: Դու գիտես եւ այն, թէ Պարսկաստանում ինչպիսի աղքատ կեանք էր վարում Աստղաբերդի տէրն ու իշխանը, պահելով իրան բոլորովին անյայտութեան մէջ, մի հասարակ որսորդի անուան տակ: Բայց մի բան չը գիտես դու, եւ այդ է, որ այժմ ես պէտք է պատմեմ քեզ:

Ես բոլոր ուշադրութիւնս լարեցի, նա շարունակեց:

— Դու, ի հարկէ, յիշում ես, Փարհադ, որ ես, Կարօն եւ Սագօն՝ երեքս միասին թողեցինք տէր Թօդիկի դպրոցը եւ անյայտացանք: Անցան տարիներ, մեր հայրենիքում ոչ ոք տեղեկութիւն չունէր մեր մասին: Ամենքը մեզ կորած էին համարում: Բայց թէ ո՞րտեղ էինք այդ ժամանակ, ի՛նչ էինք շինում, — այդ դու չը գիտես, — ահա այդ է, որ պէտք է պատմեմ քեզ, որովհետեւ դրա հետ կապ ունի այդ

ամրոցի տիրոջ, Որսորդի, առաքինութեան մի այլ կողմը, որ քեզ յայտնի չէ։

Նա մի քանի րոպէ լուռ կացաւ իր յիշողութիւնները ամփոփելու համար։

— Այո... հէնց նոյն օրերում, երբ մենք թողեցինք տէր Թօդիկի դպրոցը, Սալմաստով անցաւ մի ամերիկացի ճանապարհորդ, մի ծերունի գիտնական, որ զանազան ուսումնական նպատակներով ուղեւորութիւններ էր անում Պարսկաստանում։ Հիւանդութեան պատճառով նա մի քանի շաբաթ մնաց Սալմաստում։ Մի դիպուածով նա ծանօթացաւ Որսորդի հետ։ Որսորդը լսելով, որ ծերունի ճանապարհորդը հետաքրքրվում է նաեւ հնութիւններով, ցոյց տուեց նրան մի թուր, որ Բաղդադի հին խալիֆաներից մէկի անունն էր կրում իր վրայ։ Ամերիկացին բաւական նշանաւոր գումար առաջարկեց այդ հազուագիւտ զէնքը գնելու համար։ Որսորդը մերժեց նրա արծաթը, յայտնելով, թէ ինքը մեծ հաճութեամբ կ'ընծայէ նրան այդ զէնքը, եթէ նա կ'ընդունէ կատարել իր մի խնդիրքը։ Այդ խնդիրքը կայանում էր նրանում, որ ամերիկացին յանձն առնէր ինձ, Կարօին եւ Սագօին տանել իր հայրենիքը, եւ այնտեղ տալ մի որ եւ է դպրոցում ուսում առնելու։ Ճանապարհի ծախքը եւ բոլոր ծախքերը՝ մինչեւ մեր ուսման աւարտելը՝ իր վրայ էր առնում Որսորդը։

— Փող նա որտեղից ունէր, — ընդհատեցի ես Ասլանի պատմութիւնը։

— Ունէր։ Այդ բերդի կործանման միջոցին նրա գանձը մնաց ծածկուած իր տեղում, թշնամու ձեռքը չընկաւ։ Տարիներից յետոյ, երբ նրա մասին ամեն ինչ մոռացուեցաւ, երբ նրան ամենքը սպանուած էին համարում, նա ուղարկեց Մըհէին այնտեղ եւ, իր գանձը դուրս բերելով, փոխադրեց

Պարսկաստան։ — Այդ թող մնա՛; նա փող ունէր… ծերունի ամերիկացին սիրով ընդունեց Որսորդի առաջարկութիւնը, որովհետեւ նրա համար խաւար, եւրոպական լուսաւորութիւնից զուրկ Ասիայից երեխաներ տանել եւ ուսում տալ, — այդ մի շատ մեծ բաւականութիւն էր։ Ես դեռ չեմ մոռացել այն խօսքերը, որ նա մեզ ընդունելու միջոցին ասաց Որսորդին. “Ես այդ սիրուն պատանիներին կը տանեմ ինձ հետ, եւ դրանք աւելի մեծ հետաքրքրութիւն կը պատճառեն իմ հայրենակիցներին, քան թէ Ասիայից տարած իմ բոլոր հազուագիւտ իրեղէնները։„ Որսորդը համբուրեց մեզ, օրհնեց եւ ճանապարհ դրեց։

Իմ սիրտը դողում էր բարի նախանձից. ի՞նչու ինձ էլ չուղարկեց նրանց հետ, ինչո՞ւ ես էլ չը գնացի լոյսի եւ արհեստի աշխարհը, ի՞նչու ինձ թողեց բթանալու տէր Թօդիկի դպրոցում։ Ասլանը շարունակեց.

— Այդ պարոնին, որ տարաւ մեզ, կոչում էին մստր-Փիշեր. նա ազգով անգլիացի էր եւ Նիւ-Եօրկի մի գիտնական ընկերութեան անդամ։ Ամիսներ անցան, մինչեւ մենք անցանք Պարսկաստանը, Աւղանիստանը, Հնդկաստանը եւ այնտեղից ծովային ճանապարհով հասանք Ամերիկա։ Աւելորդ է ասել, թէ որպիսի հայրական խնամք էր տանում մեզ վրայ բարեսիրտ ծերունին այդ երկար, տաժանական ճանապարհորդութեան միջոցին, — այդքանը միայն կ՚ասեմ, երբ հասանք Նիւ-Եօրկ, մենք ամենքս շատ առողջ էինք։ Իրաւ, մեծ հետաքրքրութիւն շարժեցինք մենք այդ ամերիկական բազմամարդ քաղաքում մեր հագուստներով, մեր տիպերով, մեր սովորութիւններով։ Գիտնական ճանապարհորդը իր հաւաքած իրեղէնների թւում դրեց եւ — մեզ։ Նա կազմել էր մի շարք դասախօսութիւններ իր ճանապարհորդութիւնների մասին, եւ նրա առաջին դասախօսութեան

տուարկան ներկայացնում էինք — մենք։ Դահլիճը լցուած էր ունկնդիրների բազմութեամբ, եւ դասախօսի ամբիոնի մի կողմում նստած էինք ես եւ Կարօն, իսկ միւս կողմում՝ Սագօն եւ մի հնդկացի հայ տղայ, որ նա վեր էր առել Ջաւա կղզուց։ Մեզ վրայ նայում էին, որպէս մի անյայտ երկրից բերուած վայրենիների վրայ։ Պերճախօս ճանապարհորդը խօսում էր, եւ ձեռքով ցոյց էր տալիս մեզ վրայ։ Նախ ընդհանուր գծերով նկարագրեց Ասիայի մտաւոր խաւարը, անկրթութիւնը եւ ժողովրդի թշուառութիւնը ուսման պակասութեան պատճառով։ Յետոյ, մանրամասնելով իր նկատողութիւնները, խօսեց հայոց ազգի վրայ, թէ ինչ պատմական անցեալ է ունեցել նա, ինչ նշանակութիւն է ունեցել Հռոմի եւ Բիւզանդիայի կայսրների ժամանակ, ինչ դեր է խաղացել խաչակրաց արշաւանքների ժամանակ, որքան պատերազմել է մահմեդականների դէմ եւ ինչ հասարակական դէտք ունի ներկայումս։ Իր դատողութիւնները յառաջ տանելով, գլխաւոր դասախօսը այն եզրակացութեան հասաւ, թէ հայերը ընդունակ են լինելու մի յաջողակ միջնորդ՝ լուսաւոր աշխարհների կրթութիւնը Ասիայում տարածելու։ «Մենք մտեցանք Ասիային մեր միսիոնարներով ու Աւետարանով, — ասաց նա, — եւ դրանով աւելի զայրացրինք նրանց, որովհետեւ կրօնական աւանդապահութիւնը, դարերի ընթացքում, խիստ խորին արմատներ է ձգել նրանց մէջ։ Մենք դիպանք նրանց հոգու եւ զգացմունքների ամենափափուկ լարերին, եւ դրանով զզուանք յարուցինք նրանց մէջ՝ թէ դէպի մեզ, եւ թէ դէպի այն լոյսը, որ տարածել էինք ուզում։ Մենք մեր միսիոնարների ձեռքով կատարեցինք մի վատ ծառայութիւն. ուրիշի տան մէջ երկպառակութիւն ձգեցինք։ Փորձենք՝ ձեռք մեկնել Ասիային ճշմարիտ գիտութեան եւ լուսաւորութեան առա-

քեալներով, այն ժամանակ, ես հաւատացած եմ, որ նրանք կը սիրեն մեզ։ Թող տանք կրօնի գործը իրանց։ Աստուած, կրօնքների հեղինակը, գիտէ իր համար նոր կրօնքներ ստեղծել, եթէ այդ պէտք է նրան»։ — Նա վերջացրեց իր դաստիարակութիւնը այդ խօսքերով. — «Աստուած տուեց մեզ գիտութեան նախապիտելիքները եւ ինքը ծերացաւ անշարժութեան մէջ։ Մենք նրա յառաջադէմ աշակերտներն ենք։ Նրախոստագիտութիւնը պահանջում է, որ մենք տոկոսներով վերադարձնենք մեր ծերունի վարժապետին մեր ստացածը, որպէս զի նա դարձեալ մանկանայ, նոր աշխուժով եւ նոր կեանքով։ Եւ ես այդ նպատակով բերեցի խորին Ասիայից այդ մանուկներին, որ այժմ զարդարում են իմ ամբիոնի շուրջը»... Խուլ ծափահարութիւն թնդացրեց ընդարձակ դահլիճը։ Այդ միջոցին հանդիսականներից չորս հոգի մօտեցան դասախօսին, սեղմեցին նրա ձեռքը, առաջարկելով, թէ իրանցից իւրաքանչիւրը կը ցանկանար մեզանից մէկին որդեգրել եւ իր հաշուով ուսում տալ։ Ինձ վեր առեց մի այրի կին. Կարօին վեր առեց մի կալուածատէր. Սագօին վեր առեց մի գործարանատէր, իսկ Ռափայէլին — այդպէս էր հնդկացի պատանիի անունը — վեր առեց մի արհեստաւոր։

— Մենք բաժանուեցանք, բայց կիրակի եւ տօն օրերում տեսնւում էինք միմեանց հետ։ Իմ բարերարուհին յայտնուեցաւ մի շատ բարեպաշտ եւ առաքինի կին։ Նա ամուսնից բաւական մեծ ժառանգութիւն էր ստացել, եւ այդ ժառանգութիւնը պէտք է մնար նրա երկու աղջիկներին, որոնցից մէկը տասն եւ վեց տարեկան էր, իսկ միւսը տասն եւ ութ տարեկան։ Նրա աղջիկները մօր քնքուշ սիրտն էին կրում։ Բարեպաշտ կինը ամեն հնար գործ էր դնում, որ ես հայրենիքի կարօտութիւն չզգամ, որ միշտ ուրախ լինեմ։

*Նրա գութը աւելի եղաւ դէպի ինձ, երբ իմացաւ, որ ես մի որբ տղայ եմ, երեխայութիւնից զրկուած եմ եղել իմ ծնողներից։ Մի օր ամբողջ քաղաքը որոնել էր նա, եւ վերջապէս գտել էր մի զմիւռնացի հայ ընտանիք։ Այդ ընտանիքի հետ ծանօթացաւ նա, խնդրում էր միշտ իր տունը յաճախել, միայն ինձ հաճեցնելու համար, որպէս զի ես հայեր տեսնեմ եւ ինձ միայնակ չզգամ։ Համարեա ամէն կիրակի Կարօն, Սագօն, Ռափայէլը եւ այդ հայ ընտանիքը բոլորում էին նրա սեղանի շուրջը, եւ նա ուրախութիւնից չը գիտէր, թէ որպէս գոհացնէր իր հիւրերին։ Նա խնդրում էր մեզ հայերէն խօսել եւ ինքը մեծ բաւականութեամբ լսում էր, ասելով, թէ մեր լեզուի մէջ գտնում է շատ ախորժելի հնչիւններ։ Նա սիրում էր լսել եւ հայոց երգեր, եւ շատ անգամ մեզ երգել էր տալիս հայ պանդուխտի երգը.*

*“Կռունկ, ո̊ւստի կու գաս,*
*“Ձայնիկդ ի հոգիս,*
*“Կռունկ, մեր աշխարհէն*
*“Խաբրիկ մը չունի՞ս„....*

*— Այդ երգի անգլիերէն թարգմանութիւնը գիտէր տիկինը։ Նրա մեծ աղջիկը շուտով յօրինեց երաժշտական խաղեր այդ երգի եղանակով, նա ածում էր դաշնամուրի վրայ, եւ մենք խումբով երգում էինք։ Բարեսիրտ կինը նայում էր մեզ վրայ եւ թաշկինակը սեղմում էր աչքերին։*

*Այդ միջոցին Ալանը նոյնպէս զգացուեցաւ եւ նրա ձայնը սկսեց դողալ։*

*— Սկզբում, — շարունակեց նա, — մենք սովորում էինք զանազան տարրական դպրոցներում, որոնց մէջ մեզ տեղաւորեց ինքը մառեր-Փիշերը։ Նա միշտ իր հոգաբարձութեան տակ էր պահում, եւ չէր դադարում ամէն կերպով*

հսկել մեզ վրայ։ Նրա տունը մեզ համար հայրական տուն էր, ուր գտնում էինք ամենայն սիրով։ Մի անգամ ես հիւանդ էի, բարեսիրտ ծերունին ամբողջ գիշերներ ոտքի մատների վրայ ման էր գալիս իմ մահճակալի շուրջը, ուղղում էր իմ անկողինը եւ փոխում էր իմ սպիտակեղէնները։ Երբ բաւական սովորեցինք, մեզանից իւրաքանչիւրը ընտրեց մի մասնագիտական առարկայ։ Ես ընտրեցի բժշկութիւն եւ շարունակեցի մինչեւ վերջը։ Ռաֆայէլը սիրում էր արհեստներ, մեքենայագործութիւն, ճարտարութիւն, նա ընտրեց այդ մասը։ Բայց Կարօն եւ Սագօն անդադար մի առարկայից դէպի միւսն էին անցնում, մէկը ընտրում էին, մի քանի ամիս սովորում էին, յետոյ ձանձրանալով թողնում էին եւ մի այլն էին սկսում։ Դրանց փոփոխամտութիւնը ոչ սակաւ հոգսեր պատճառեց թէ մստեր-Փիշերին եւ թէ իրանց բարերարներին, որոնց ծախքով սովորում էին։ Մեր շրջանում սովորական էր դարձել ասել՝ թէ «Կարօն իր մասնագիտութիւնը այնպէս շուտ է փոխում, որպէս իր շապիկը»։ Սագօն իր փոփոխամտութեան մէջ աւելի չափաւոր էր։ Իսկ Կարօն այն ծայրայեղութեան հասաւ, որ մի անգամ թողեց մատեմատիքան եւ մտաւ զինուորական դպրոց։ Յետոյ այնտեղից եւս դուրս գալով, մի ագարակում, ուր գործնական կերպով գիւղատնտեսութիւն էին սովորեցնում, սկսեց երկրագործութեամբ պարապուել։ Երբ նրան հարցնում էին, թէ ինչո՞ւ ես այդպէս անում, նա սովորաբար պատասխանում էր. «ախուր այդ բոլորն էլ մեր երկրին պէտք են»... Եւ այդպէս, Կարօն շատ բան սովորեց, բայց ամեն առարկայ թերի կերպով սովորեց։ Նրա անյագ եռանդը միշտ ձգտում էր միանգամից կլանել բոլոր ուսմունքները։ Բայց Սագօն վերջը մտաւ մի վաճառականական դպրոց եւ այնտեղ աւարտեց։

— Ջալալի հետ մենք ծանօթացանք շատ ուշ. Նա սովորում էր մի հոգեւոր դպրոցում եւ ուղարկուած էր այնտեղ Զէյթունի բողոքական միսիոնարների ձեռքով: Նա բնիկ Զէյթունցի էր: Սկզբում նա խոյս էր տալիս մեզանից, յետոյ այնքան ընտելացաւ, որ սկսեց շուտ-շուտ յաճախել մեզ մօտ: Նա իր դպրոցի յառաջադէմ աշակերտներից մէկն էր, եւ դեռ չաւարտած, նրան ուղարկում էին Նիւ-Եօրկի շրջակայ գիւղերը, փորձնական քարոզներ կարդալու: Կարօն չէր սիրում նրան, իսկ մենք ամենքս յարգում էինք: "Ի՞նչ էլ որ լինի, տէր-տէրի հոտ է գալիս դրանից," — միշտ այդ էր կրկնում Կարօն եւ հեռանում էր նրանից: Մատեր-Փիշերը խորհուրդ էր տալիս նրան՝ թողնել աստուածաբանութիւնը եւ մի այլ առարկայ ընտրել, բայց նա չէր ընդունում:

— Եւ շատ լաւ էր անում, — ընդհատեցի ես Ալանի պատմութիւնը, — հիմա նրա աստուածաբանութիւնը մեզ պէտք է գալիս, թէեւ միսիոնարների օգտին չէ ծառայում:

— Բայց նա յետոյ փոխուեցաւ, — պատասխանեց Ալանը, — երբ վերադարձաւ իր հայրենիքը եւ տեսաւ միսիոնարների անպիտանութիւնները: Սկզբում նա նոյն հոգւով կրթուած, մի մոլեռանդ միսիոնար էր: — Այդ թողնենք, անցնենք դէպի մեր պատմութիւնը:

— Մի անգամ արտասուքը աչքերում մտաւ ինձ մօտ Կարօի բարեկամի քոյրը: Դա մի պառաւ աղջիկ էր, որ ուխտել էր ամուսնական մխիթարութիւնը փոխարինել բարեգործական մխիթարութեամբ, եւ մի որբանոցի հոգաբարձուհի էր դարձել: — "Նա չը կայ," — բացականչեց գունաթափ օրիորդը եւ թուլացած կերպով ընկաւ իմ բազկաթոռի մէջ. — "երեք օր է, որ տուն չի վերադարձել, ոչ մի նամակ չի թողել եւ անյայտացել է,"... Օրիորդը

սկսեց դառն կերպով հեկեկալ։ Ինձ անհնար եղաւ մխիթարել նրան, մինչեւ ներս մտան իմ տան տիկինը եւ նրա աղջիկները։ — "Նրա բոլոր ծանօթների մօտ գնացի,, — կրկնում էր խեղճ օրիորդը արտասուալի ձայնով. — "ոչ ոք նրա մասին ոչինչ չը գիտէ... ես նրան ճանաչում եմ... նա մի արկածախնդիր տղայ է... անպատճառ նրա հետ մի բան պատահած կը լինի,,... Ես օրիորդին թողեցի իմ սենեակում եւ իսկոյն վազեցի մասեր-Փիշերի մօտ։ Սկզբում մտածում էի, թէ ո՞վ է իմանում, Կարօն է, տեսնես, ինչ քամի է փչել քթին, թողել է մեզ, եւ մի որ եւ է ծակուծուկ մտել է։ Բայց յետոյ անցքը ինձ շատ ծանր երեւաց։ Կարօն այնքան անխոհեմ չէր, որ առանց իմացում տալու, հեռանար քաղաքից։ Մասեր-Փիշերը զարմանքով լսեց, երբ բոլորը պատմեցի նրան։ Յետոյ աջ ձեռքը թափ տուեց, զարկեց սեղանին, ասելով. — "Մի բան կայ... գրաւ կը բռնեմ, եթէ այնպէս չը լինի,,... — Ի՞նչ բան, ասացէք խնդրեմ, ես նրա մասին շատ անհանգիստ եմ,,։ Ծերունին այդքանը միայն ասաց, թէ վերջին ժամանակներում նկատում էր, որ նա մտնում էր զանազան շրջաններ, — ի՞նչ շրջաններ, — այդ մասին նա ոչինչ չը խօսեց, միայն աւելացրեց. — "Թէեւ ցաւալի է, բայց նրա ձգտումները ազնիւ են,,... Այդ մթին խօսքերով ծերունին աւելի սաստկացրեց իմ անհանգստութիւնը, ես թողեցի նրան եւ վազեցի Սագօի մօտ։ Նա շուարած մնաց, երբ լսեց այդ անցքը։ Նա նոյնպէս ոչինչ չը գիտէր, միայն այդքանը ասաց, թէ վերջին ժամանակներում խիստ սակաւ էր տեսնում Կարօին, եւ միշտ ինչ-որ մտատանջութեան մէջ էր գտնում։ Ես սկսեցի զանազան տարակուսանքների մէջ ընկնել։ Անցաւ մի ամիս, երկու ամիս եւ մի ամբողջ տարի, նրանից ոչինչ լուր չունէինք։ Մենք ամենքս նրան կորած էինք համարում։ Համ-

գիտէ էր միայն մատեր-Փիշերը։ Ցանկարծ նրանից մի նամակ եմ ստանում։ Ի՞նչ էք կարծում, որտեղից, — Հարաւային Ամերիկայից։ Նա անթիւ ներողութիւններ էր խնդրում, որ առանց մեզ յայտնելու, հեռացաւ մեզանից։ Այդ նամակը խիստ ուրախալի տպաւորութիւն գործեց իմ վրայ։ Բանից դուրս եկաւ, որ նա գնացել էր այնտեղ տեղային ազարակները ուսումնասիրելու եւ տեղային բնուորների դրութիւնը հետազօտելու։ Ո՞րքան ուրախ էր նա իր նամակի մէջ. գրում էր, թէ մի հարուստ կալուածատիրոջ դաստակերտում կառավարչի պաշտօն էր ստացել, իր ձեռքի տակ աշխատում էին մի քանի հարիւր բնուորներ։ Երբ այդ մասին յայտնեցի մատեր-Փիշերին, նա իր սովորական բարի ժպիտը երեսին ասաց. — ‹Կարօն ուզում էր ամէն բան սովորել, ամէն բան փորձել, ասելով, թէ իմ հայրենիքին պէտք են„։

— Չը գիտեմ, Սագօն նամակ ստացե՞լ էր Կարօից, թէ ոչ, բայց ես նրան ոչինչ չասացի իմ ստացած նամակի մասին։ Միայն նկատում էի, որ նա էլ, ինչպէս ասում են, իր խելքումը չէր։ Անդադար ճանապարհորդութիւններ էր անում, շատ անգամ շաբաթներով բացակայ էր գտնվում Նիւ-Եօրկից։ — “Այդ որտեղ ես թափառում„, — միանգամ հարցրի նրանից։ — “Ես Ամերիկայի գաղթականների կեանքն եմ ուսումնասիրում„, — պատասխանեց նա։ — “Այդ մասին հարիւրաւոր գրքեր կան, կարող ես կարդալ„ — նկատեցի ես։ — Գրքի մէջ գրածի եւ աչքով տեսածի մէջ մեծ զանազանութիւն կայ„ — ասաց նա։ — “Վերջապէս ի՞նչ նպատակ կայ գլանում„, — հարցի ես, փոքր ինչ վիրաւորուելով նրա ծածկամտութիւնից։ Նա բաւական սառն կերպով պատասխանեց. “Մի՞թէ չը գիտես, որ հայերը սիրում են գաղթականութիւն, մի՞թէ չը գիտես, որ գաղթականութիւնը մեր ազգի կեանքում մի պատմական

երեւոյթ է, որ կրկնուել է ամեն դարերում եւ շարունակվում է մինչեւ այսօր։ Ուրեմն, մեզ պէտք չէ՞ ուսումնասիրել գաղթականութեան պայմանները, նրա հետեւանքները, մի խօսքով, նրա բոլոր լաւ եւ վատ կողմերը։ Եւ ո՞րտեղ կարող ենք աւելի հիմնաւոր կերպով ուսումնասիրել, եթէ ոչ այստեղ, որ գաղթականների մի ընդարձակ աշխարհ է„։

— Ես Կարօի նամակի պատասխանը գրեցի, յայտնելով գլխաւորապէս այն միտքը, թէ նա մեր երկու բարեկամների — Որսորդ Ավօի եւ մատեր-Փիշերի — յոյսերը արդարացրած չի լինի, եթէ չի վերադառնայ իր հայրենիքը, եւ իր ստացած ուսումը իր հայրենակիցների օգտին չի ծառայեցնի եւ այլն։ Ինչպէս երեւում է, իմ նամակը ազդել էր նրա վրայ։ Ամիս չանցաւ, նա կրկին յայտնուեցաւ Նիւ-Եօրկում եւ իր բարեկամներին մեծ ուրախութիւն պատճառեց։ Բայց նա այլ եւս առաջուայ Կարօն չէր։ Յաճախ տեսնում էի նրան լուռ, մտախոհ եւ վրդովուած տրամադրութեան մէջ։ Ի՞նչ էր պատահել նրա հետ։ Այդ մասին ոչինչ չէր ասում։ Ինձ թւում էր, որ նա մինչեւ անգամ աշխատում էր խոյս տալ ինձանից, եւ աւելի տեսակցում էր Ռափայէլի ու Սագօի հետ։ Մի անգամ երեքն էլ եկան ինձ մօտ։ Իսկոյն հասկացայ, որ մի բան կայ։ Մի քանի րոպէ լուռ մնացին, յետոյ Կարօն ասաց. — "Մենք գնում ենք„։ — Ո՞ւր, — հարցրի ես զարմանալով։ — "Բաւական է որքան մնացինք այստեղ, գնում ենք մեր հայրենիքը„։ Ես մտածեցի, որ դրանք որքան կարող էին սովորել, սովորեցին, եւ եթէ աւելի եւս մնալու լինէին, գուցէ մի ուրիշ հոսանքի մէջ կ'ընկնէին, այդ պատճառով ես էլ բարւոք համարեցի, որ գնան։ — "Մատեր-Փիշերը իմանո՞ւմ է„ — հարցրի ես։ — "Իմանում է„, — պատասխանեց Կարօն. — "իսկ դու մեզ հետ չե՞ս գալու„։ Ես բացատրեցի, որ ինձ անկարելի է նրանց

հետ ուղեկից լինել, որովհետեւ դեռ մի տարի մնում է, մինչեւ մասնագիտութիւնս կը վերջացնէի։ — “Ո՞ր ճանապարհով էք գնում,,, — հարցրի ես։ — “Այն ճանապարհով, որ բերեց մեզ այստեղ,, — պատասխանեց Կարօն խորհրդաւոր ձայնով։ — “Ուրեմն Հնդկաստանո՞վ, Աւղանիստանո՞վ,,, — կրկնեցի իմ հարցը։ — “Այո՛,, — ասաց Կարօն։

— Այդ խօսակցութիւնից մի շաբաթ յետոյ, Նիւ Եօրկի հիւրանոցներից մէկում ճաշ էր պատրաստուած։ Սեղանի շուրջը բոլորել էին այն ընտանիքները, որ որդեգրել էին մեզ եւ որոնց բարերարութեամբ մենք ուսում ստացանք։ Նրանց թւումն էր եւ մստեր-Փիշերը։ Անկարելի էր նկարագրել ազնիւ ծերունու ուրախութիւնը։ Նա այնօր պէտք է ճանապարհ դնէր իր սրտին շատ մօտ գաղափարի արդիւնքը դէպի հեռաւոր Ասիա։ Սեղանի մի կողմում շարքով նստած էին ճանապարհորդները՝ Կարօն, Սաքօն եւ Ռափայէլը։ Ես, իբրեւ մնացող, նստած էի մստեր-Փիշերի մօտ։ Կարօի բարերարի քոյրը շաքարից եւ զանազան քաղցրաւենիքից շինել էր տուել մի բիբլէական նշանաբան, որ գրած էր սեղանի վրայ։ Մենք ամենքս ուտում էինք, խմում էինք, նայում էինք այդ շաքարեղէն լեռան վրայ։ Կենացները, բարեմաղթութիւնները չափ ու սահման չունէին։ Այստեղ վերջին անգամ մեզ երգել տուեցին հայ պանդուխտի երգը։ Ճաշը վերջացաւ մստեր-Փիշերի ճառով, որի մէջ բացատրեց նա գիտութեան բարձր նշանակութիւնը, եւ դառնալով դէպի ճանապարհորդները, խօսեց նրանց, թէ որքան մեծ պարտականութիւններ ունեն նրանք կատարելու, թէ դէպի գիտութիւնը եւ թէ՛ դէպի այն ժողովուրդը, որի մէջ գնում են նրանք եւ որը կարօտ է գիտութեան։ Կարօն իր ընկերների կողմից պատասխանեց նրա ճառին, եւ հան-

գլխաւոր կերպով ուխտեց, որ թէ ինքը եւ թէ իր ընկերները միշտ հաւատարիմ կը մնան գիտութեան եւ կ՚արդարացնեն իրանց բարերարների ցանկութիւնները: Ճաշից յետոյ մենք ամենքս կառքերով գնացինք մինչեւ երկաթուղու կայարանը, եւ այնտեղ, համբուրուելով, բաժանուեցանք միմեանցից: Վագոնները շարժուեցան, նրանք դեռ նայում էին լուսամուտներից, ճօճում էին իրանց գլխարկները, իսկ ամերիկացի աղջիկները, երկար կանգնած, իրանց թաշկինակներով ողջոյններ էին ուղարկում նրանց ետեւից:

— Պէտք է ասած, որ մեր երիտասարդները լաւ անուն թողեցին: Նրանք սիրուած էին բոլոր ընտանիքների մէջ, ուր ծանօթութիւններ ունէին. երկար չէին մոռանում նրանց, յիշում էին նրանց խօսքերը, յիշում էին հայ պանդուխտի երգը եւ միշտ հարցնում էին ինձանից, արդեօք նամակ չունե՞մ նրանցից: Բայց անցան ամիսներ, անցաւ աւելի քան մի տարի, ես ոչինչ լուր չունէի: Ես արդէն վերջացրել էի ուսումս, պատրաստւում էի հայրենիք վերադառնալ, երբ Բաթաւիայից ստացայ մի նամակ, որը աւելի մի փոքրիկ գըրքոյկ կարելի էր կոչել, քան թէ նամակ: Գրում էր Ռափայէլը: Անկարելի է նկարագրել, թէ որքան ուրախութեամբ կարդացի ես այդ նամակը, որի մէջ իմ ընկերների ամբողջ ապագան փչացած էի տեսնում: Բայց նախ քան նամակի բովանդակութեան մասին խօսելը, ես, իբրեւ միջանկեալ, պէտք է յիշեցնեմ քեզ մի փոքրիկ մանրավէպ, որով աւելի հասկանալի կը լինի քեզ նամակի բովանդակութիւնը: Դու, ի հարկէ, չես մոռացել, որ իմ պատմութեան սկզբում ասացի, թէ սատեր-ֆիշերի հետ Ամերիկա գնալու ժամանակ Պարսկաստանից անցանք Աւղանիստան, այնտեղից Հնդկաստան, յետոյ Ամերիկա: Լաւ լսիր: Աւղանիստանից անցնելու միջոցին, Քաբուլի մօտակայքում, անապատի մէջ, մեզ պա-

տահեց տեսնել հայ-բօշաների մի բանակ, որ բաղկացած էր մի քանի հարիւր ընտանիքներից։ Նրանք բնակվում էին եղէգնեայ շարժական տաղաւարների մէջ, որ չուելու ժամանակ ման էին ածում իրանց գրաստների վրայ։ Այդ թափառականները այնքան հետաքրքրեցին մեզ, մանաւանդ մստեր-Ֆիշերին, որ մնացինք նրանց բանակում մի ամբողջ շաբաթ։ Չափազանց հիւրասէր, ուրախ, անհոգ եւ պարզ մարդիկ էին։ Մի հալածանքի պատճառով նրանք գաղթել էին Սպահանի կողմերից եւ անցել էին դէպի Աւղանիստանի անապատները։ Խօսում էին պարզ հայերէն, պահպանել էին Լուսաւորչական կրօնը, ման էին ածում իրանց հետ շարժական եկեղեցի եւ քահանաներ։ Թէ ինչ պատմական հանգամանքներից ստիպուած, կամ ո՞ր ժամանակներից սկսել էին նրանք թափառական կեանք վարել, — այդ դժուար էր ստուգել, միայն այդքանը պարզ էր, որ նրանք դարերի ընթացքում այնքան էին փոխուել, որ բոլորովին սեպհականել էին իրանց բօշաների սովորութիւնները։ Կարօն համարեա սիրահարուեցաւ նրանց վրայ. մենք դժուարութեամբ կարողացանք բաժանել նրան այդ թափառականներից։ — Ահա այդ հայ-բօշաներն էին գլխաւորապէս Ռաֆայէլի Նաձակի առարկան։

Նա անհամբերութեամբ լսում էի. Ալլանը նայեց իր ժամացոյցին եւ շարունակեց.

— Կարօն իր ընկերների հետ՝ երբ հասնում են Հնդկաստան, մոռանում են այն ուխտը, որ հանդիսաւոր կերպով յայտնեցին՝ Նիւ-Եօրկից մեկնելու միջոցին, վերջին ճաշի ժամանակ, իրանց բարեկամների շրջանում, — այո, մոռանում են եւ հրապուրվում են բոլորովին այլ մտքերով։ Նրանք նախ մտնում են Ջաւա կղզու Բաթաւիա քաղաքը, որտեղ բնակվում էր Ռաֆայէլի մայրը եւ նրա ազգական-

ները։ Այդ քաղաքում կային նշանաւոր հայ վաճառականներ եւ հարուստ հայ կալուածատէրներ, որոնք իրանց սեփհական դաստակերտներում շաքարի եւ լեղակի գործարաններ ունէին։ Դրանք Շահ-Աբասի Սպահան տարած գաղթականներից էին, որոնք ԺԸ-րդ դարու սկզբում թողեցին Սպահանը եւ գաղթեցին Ջաւա կղզու վրայ։ Բացի Բաթաւիայից, որ կղզու մայրաքաղաքն է, Ջաւայի միւս փոքրիկ քաղաքներում եւս, ինչպէս են՝ Սուրբայիա, Չիրբօն, Թըգալ, Բանիւմաս, Ջըպարա, Սըմարանգ եւ այլն, կային նոյնպէս հայ գաղթականներ, որ ապրում էին Հոլանդացոց իշխանութեան ներքոյ եւ պարապւում էին հողային արդիւնագործութեամբ։ Անջատուած լինելով Հայաստանից, այդ հեռաւոր կղզու վրայ, դեռ նրանց մէջ վառ էր պահուած սէրը՝ թէ դէպի իրանց ազգը եւ թէ դէպի իրանց հայրենիքը։ Եթէ հեռուից այլ կերպով չէին կարողանում օգնել իրանց ազգին, բայց փող չէին խնայում։ Կարօն ծանօթանում է կղզու հարուստներից մի քանիսի հետ։ Այստեղից երկքը միասին անցնում են Հնդկաստանի միւս քաղաքները, եւ ամեն տեղ, ուր հայ գաղթականներ էին բնակվում։ Լինում են Կալկաթայում, Սինկափուրում, Դաքայում, Չինչըրայում, Մադրասում, Բասրայում, Սուրաթում, Բօմբայում, եւ ուրիշ շատ տեղերում։ Տարածուելով Հնդկաստանի ընդարձակ թերակղզու վրայ, հայ գաղթականները իրանց ձեռքն էին առել երկրի վաճառականութիւնը ու հարստութիւնը։ Փողի հարստութեան հետ, նրանք պահպանել էին եւ ազգային զգացմունքների հարստութիւնը, որի ապացոյցը կարող են լինել այն նշանաւոր բարեգործութիւնները, որ զանազան ժամանակներում կատարել են Հնդկաստանի հայերը։ Գուալիէրում մեր երիտասարդները ծանօթանում են հայազգի զօրապետ Կօռնէլ Յակոբի հետ, որ մեծ դեր էր խաղում։ — Կարօն

դեռ Ամերիկայում եղած ժամանակ, երբ խօսվում էր Հնդկաստանի հայերի մասին, նա միշտ այն միտքն էր յայտնում, թէ Հնդկաստանի հայերին, չը նայելով նրանց հարըստութեանը, պէտք է կորած համարել։ Նա ասում էր, թէ հայ գաղթականները, փոքրիկ խումբերով, ցրուած լինելով Թերակղզու զանազան տեղերում, միմեանցից հեռու, միմեանցից անջատուած, առանց որ և է կապի, այսպէս կարող էին մի ժամանակ կլանուել, անհետանալ ուրիշ աւելի զօրեղ տարրերի մէջ։ Եւ որպէս զի այդ վտանգի առաջն առնուի, անհրաժեշտ է, նրանց բոլորին ի մի խմբել և կազմել մի ազատ, անկախ գաղթաշէնք։ “Ի՞նչու, — ասում էր նա, — եւրոպացի մի սափրիչ մի խումբ սրիկաներով կը գայ Հընդկաստան, մի տեղ կը գրաւէ և իր համար ազատ գաղթաշէնք կը հիմնէ, իսկ հայերը իրանց հարուստ խելքով ու հարուստ քսակով մի այդպիսի բան չե՞ն կարող անել”։ — Այդ Կարօի մտածութեան վաղեմի ցնորքն էր։ Եւ այդ նպատակով նա իր ընկերների հետ թափառում էր Հնդկաստանի Թերակղզու վրայ, և անցաւ մինչև Բիրմանիայի պետութիւնը։ Բայց այդ նպատակին հասնելու համար, հարկաւոր էր, որ մի այսպիսի գաղթաշէնքի հիմքը իրանք դնէին, որտեղ, իբրև կենտրոն, հետզհետէ հաւաքուէին զանազան տեղերում սփռուած միւս գաղթականները։ Իսկ մի ազատ գաղթաշէնք հիմնելու համար, նախ հարկաւոր էր մի երկիր գրաւել, և այդ գուցէ առանց արեան չէր կարող յաջողուիլ։ Բայց Կարօն և նրա ընկերները կարողացել էին մի բան յաջողացնել։ Պէտք է ասած, որ այդ ժամանակներում անգլիացոց իշխանութիւնը դեռ շատ չէր տարածուած Հընդկաստանի Թերակղզու վրայ, դեռ կային զանազան մանր հնդկական իշխանութիւններ, կային և բոլորովին ամայի, անտէր և անբնակ երկրներ։ Այդ անբնակ երկրներից մի ա-

մենայարմարը ընտրում են նրանք, պայման են կապում մի հարեւան հնդիկ ռաջայի հետ, եւ խոստանում են միմեանց փոխադարձ օգնականութիւն։ Արդէն երկիր կայ, իսկ այդ երկիրը լցնելու համար պէտք էր ունենալ բնակիչներ։ Կարօն մտաբերում է Աւղանիստանում տեսած հայ-քօշաններին։ Այդ հալածական, տոկուն, ամեն կլիմայի դիմացող մոլաշրջիկների մէջ գտնում է նա մի ամենայարմար հասարակութիւն՝ մի ազատ գաղթաշէնք հիմնելու համար, ընտելացնելով նրանց հաստատարնակութեան եւ աշխատասէր կեանքի։ Այդ նպատակով թողնում են նրանք Հնդկաստանը եւ գնում են Աւղանիստան։ Հայ-քօշաններին գտնում են միեւնոյն անապատներում, ուր առաջ տեսել էին։ Նրանց առաջին ջանքը լինում է՝ համոզել քօշաններին, որ յանձն առնէին մի այնպիսի հեռաւոր գաղթականութիւն, յետոյ սկսում են նախապատրաստել ու վարժեցնել նրանց անձնապաշտպանութեան, որ եթէ հարկ լինէր զէնքի դիմել, բոլորովին անզօր չը գտնուէին։ Այդ պատճառով նրանք բաւական ժամանակ մնում են քօշանների մէջ։ Երեւում էր, որ Կարօին յաջողուել էր Հնդկաստանի հայերից նպաստներ ընդունել, եթէ ոչ, մի այնքան բազմութիւն շարժել իր տեղից՝ առանց ծախքերի չէր կարող լինել։ Ամեն ինչ խոստանում էր յաջողութիւն, միայն քօշանները դեռ եւս տատանվում էին գաղթել մի հեռաւոր աշխարհ, որ բոլորովին անծանօթ էր նրանց։ Այդ էր պատճառը, որ Կարօն ստիպուած էր կրկին վերադառնալ Հնդկաստան, տանելով իր հետ քօշանների մի քանի գլխաւորներին, որ նրանք աչքով տեսնէին իրանց համար պատրաստուած "աւետեաց երկիրը" եւ հաւատային, որ այնտեղ աւելի լաւ կ'անցնէր նրանց կեանքը։ — Այստեղ դու պէտք է լսես մի սիրավէպ, Փարհադ, այդ հարկաւոր է քեզ գիտենալ։ Ինչպէս ասացի, Կարօն իր ընկերների հետ բաւական

ժամանակ մնում են բօշաների մէջ։ Մի այդպիսի ուրախ, մշտազուարթ եւ ջերմ կրքերով լի հասարակութեան մէջ, շատ բնական է, որ մեր երիտասարդների տնտեսական մեծ գաղափարները չէին կարող անցնել առանց սիրահարական մանր արկածների։ Մի սեւաչեայ աղջիկ գրաւում է Կարօի զգայուն սիրտը։ Կարօն խոստանում է նրան իր սէրը եւ իր ձեռքը, խոստանում է փութով վերադարձ, եւ բօշաների ներկայացուցիչների հետ ճանապարհ է ընկնում։ Ռաֆայէլը եւ Սաքօն մնում են բօշաների բանակի մէջ։ Բայց մինչեւ Կարօի վերադառնալը, պատահում է մի մեծ դժբախտութիւն։ Սկսվում է աւազակների եւ պարսից պատերազմը։ Պարսիկները յաղթում են, անցնում են աւազակների երկիրը, կոտորում են, մի եւ նոյն ասպատակութեան ժամանակ, հանդիպելով բօշաների բանակին, թալանում են նրանց, գերի տանելով բազմաթիւ կանայք եւ աղջիկներ, որոնց թւում գտնվում է եւ Կարօի նշանածը։ Եւ երբ որ Կարօն, ուրախ, լի մեծամեծ յոյսերով վերադառնում է Հնդկաստանից, գտնում է բօշաների բանակը ցրիւ եկած, եւ անապատում նրանց հետքն անգամ չէ տեսնում։ Կարող ես երեւակայել Կարօի դրութիւնը։ Մի աւազակի, որ անապատում ուղտեր էր արածացնում, պատմում է նրան ցաւալի եղելութիւնը։ Կարօի նման մի ամուր բնաւորութիւն միայն կարող էր դիմանալ մի այդպիսի ծանր հարուածի։ Նա մի անգամից ունենում է երկու մեծ կորուստ, որ այնքան մօտ էին նրա սրտին, որ այնքան գրաւել էին նրա մտածութիւնները.— մէկը՝ անկախ, ազատ գաղթականութիւնը Հնդկաստանում, միւսը՝ իր սիրած աղջիկը... Երկար որոնումներից յետոյ, Քարուլի հայոց եկեղեցու բակում գտնում է Ռաֆայէլին եւ Սաքօին, հիւանդութեան մահճի մէջ դրուած։ Նրանց վէրքերը դեռ չէին բժշկուել, որ ստացել էին պարսից սարվազների յարձակման

ժամանակ։ Նրանցից տեղեկանում է Կարօն աղէտալի անցքի մանրամասնութիւնները։ Նրանք պատմում են, թէ յարձակումը տեղի ունեցաւ գիշերով, իրանք խառնուած լինելով կռուի մէջ, չը կարողացան նկատել, թէ ով յափշտակեց, կամ ո՞ր կողմը տարան նրա նշանածին։ Բայց երբ առաւօտեան լոյսը բացուեցաւ, նրանք գտան իրանց վիրաւոր ընկած, որոնց, թշնամին սպանուած համարելով, թողել, հեռացել էր։ Իսկ բօշաների մասին դեռ չը գիտէին, թէ ի՞նչ եղան, կամ ո՞ւր գնացին։ Կարօն մնում է վիրաւորների մօտ, մինչեւ առողջանում են։ Ցեցոյ Սագօին իր հետ առնելով, գնում է Պարսկաստան, իսկ Ռափայէլը վերադառնում է Ջաւա կղզին։ — Ահա այդ էր Ռափայէլի նամակի բովանդակութիւնը, որ ես ստացայ Բաթաւիայից, այդ էր, որ ստիպեց ինձ շտապել եւ շուտով իմ հայրենիքը վերադառնալ։ Ես աւարտել էի իմ ուսումը, Ջալալը նոյնպէս աւարտել էր։ Երկուս միասին թողեցինք սիրելի Ամերիկան, տանելով մեզ հետ շատ եւ շատ անմոռանալի յիշատակներ...

Սալմանը իր պատմութիւնը հասցրեց մինչեւ այստեղ, իսկ նրա շարունակութիւնը ես արդէն գիտէի... Այո, ես գիտէի, ես դեռ չէի մոռացել այն խօսքերը, որ մի օր անզգուշութեամբ թափեց իր լեզուից պառաւ Սուսանը, երբ առաջին անգամ հանդիպեցի նրան արաբական մենաստանի մօտ։ “Երբ Դինբուլի խանը կողոպտեց, կոտորեց մեր ցեղը, Սուսանը կապեց իր քամակին Կարօի երեխան եւ մենակ անցաւ Հերաթի անապատներից„... Արդեօք Հիւբբին Կարօի երեխան չէ՞ր, որին պառաւ բօշան մեծ էր անում իր հետ։ Արդեօք Դինբուլիների ամրոցում փակուած կինը Կարօի կորցրած նշանածը չէ՞ր, որ Սուսանի միջոցով աղաչում էր Կարօին ազատել իրան գերութիւնից։ Արդեօք այդ պառաւ բօշան, Սուսանը, Կարօի նշանածի մայրը չէ՞ր, որ կախարդի

անունով մնում էր Դինքուլիների ամրոցը, իբր թէ կանանց համար գուշակութիւններ անելու եւ, այդ առիթից օգուտ քաղելով, տեսնում էր իր աղջկան: Ես դեռ չէի մոռացել այն խօսքերը, որ մի անգամ, աւերակ մատուռի մօտ, այն նուիրական ծառերի տակ, Հիւրբին միամտաբար ասաց ինձ. «Հիւրբին Սուսանի թոռն է. Հիւրբին անբախտ աղջիկ է. նրա մայրը կորած է. Հիւրբին պտրում է իր մօրը»... Այդ բոլորը ինձ համար պարզ էր: Բայց մի բան դեռ մթութեան մէջ էր մնում, թէ ինչ եղաւ հնդկացի Ռափայէլը, որի մասին այնքան համակրութեամբ էր խօսում Ասլանը: Ես Ասլանի կամ Կարօի բոլոր ընկերներին ճանաչում էի, բայց այդ երիտասարդին դեռ չէի տեսել: Ես ստիպուած եղայ հարցնել.

— Իսկ Ռափայէ՞լը, ինչ եղաւ Ռափայէլը, նա մնա՞ց Հնդկաստանում, թէ եկաւ Պարսկաստան:

— Եկաւ, — պատասխանեց Ասլանը:

— Ի՞նչպէս է, որ ես չեմ տեսել նրան:

— Դու նրան տեսնել չէիր կարող. նա զոհ եղաւ մի անտեղի կասկածանքի...

— Սպանեցի՞ն նրան. ո՞վ սպանեց:

— Այդ մի հարցրու, — ասաց Ասլանը տխուր ձայնով եւ երեսը շուռ տուեց:

«Նա զոհ եղաւ մի անտեղի կասկածանքի...»: Համարեա միեւնոյն խօսքերը, որ մի անգամ ասաց ինձ Մարօն, երբ արտասուքը աչքերում զգուշացնում էր ինձ՝ չը բարկացնել Կարօին, եւ օրինակ էր բերում, թէ ինչպէս նա մի «կասկածանքի» համար սպանեց իր ամենալաւ ընկերներից մէկին, մի հնդկացի երիտասարդի: — Այդ եւս պարզուեցաւ: Բայց ես դարձեալ հարցրի Ասլանից, թէ ինչ կասկածանքի համար սպանուեցաւ նա:

-- Ինչ որ հարկաւոր էր քեզ գիտենալ, ես բոլորը պատմեցի քեզ, Փարհադ, — ասաց նա ծանր կերպով. — պատմեցի, գլխաւորապէս այն նպատակով, որ դու հասկանաս, որ եթէ մեր բարեկամները իրանց գործունէութեան մէջ որ եւ է սխալ են գործել, — այդ առաջ է եկել նրանից մէջ՝ եռանդի չափազանցութիւնից եւ գիտութեան պակասութիւնից։ Թէ չէ, իբրեւ լաւ մարդիկ, նրանց նմանները խիստ սակաւ են գտնվում։ Նրանց անձնանուիրութիւնը, բաղձանքները եւ բոլոր ձգտումները անկեղծ են եղել։ Իսկ իրանց ձգտումներին հասնելու չափ՝ գիտութիւն չեն ունեցել։ Լսիր, Փարհադ, առանց հիմնաւոր գիտութեան մարդ չէ կարող օգուտ բերել ոչ իր ազգին, ոչ իր հայրենիքին եւ ոչ մարդկութեանը։ Ես բերեցի քեզ այստեղ, որ այդ բոլորը պատմեմ քեզ, որովհետեւ մենք շուտով բաժանուելու ենք միմեանցից։

Դարձեալ իմ սիրտը խոցուեցաւ, դարձեալ իմ աչքերը լցուեցան արտասուքով։ Ամեն անգամ, երբ լսում էի այդ խօսքը, թէ բաժանուելու ենք միմեանցից, կարծես, բոլոր աշխարհը մթնում էր ինձ համար։

— Գիտութիւնը գլխաւոր ուժն է, Փարհադ, որ անօրինում է մարդկային բարին, նրա երջանկութիւնը, նրա խաղաղութիւնը։ Բայց դու ոչինչ գիտութիւն չունես, Փարհադ, քո մէջ պակաս է ամենահասարակ զարգացումն անգամ։ Քո մէջ կայ միայն լաւ սիրտ, կան եւ լաւ հակումներ։ Եթէ դու զարգանաս, կարող ես օգտաւէտ մարդ լինել։ Այսօր տանելու եմ քեզ մի վանք, այնտեղ կենում է մի մարդ, մի ճշմարիտ գիտնական մարդ, քեզ յանձնելու եմ այդ մարդուն։ Դու կը մնաս նրա մօտ, նա այնքան բարի է, որ սիրով կը յօժարուի պարապել քեզ հետ։ Նրա մօտ եթէ դու մեծ գիտութիւն եւս սովորելու չը լինես, բայց

զարգանալ կարող ես։ Դու այժմ ունես այնքան պաշար, թէեւ հում եւ անմշակ պաշար, որ կարող է շատ նպաստել քո զարգացմանը։ Դու անցար մեր հայրենիքի եթէ ոչ բոլոր, գոնէ նրա նշանաւոր մասը։ Դու քո աչքով տեսար եւ տեղի վրայ ծանօթացար մեր ժողովրդի դրութեան հետ, նրա անցեալի եւ ներկայի հետ։ Հայրենագիտութիւնը գլխաւոր ուսմունքն է այն անձանց համար, որոնք նուիրվում են ծառայելու հայրենիքին։ Ով որ հայրենիքը չի տեսել, չի ճանաչել, եւ կամենում է նրա համար մի ծառայութիւն անել, նման է այն գերձակին, որ մարդուն չը տեսած, նրա չափը չառած, նրա համար հագուստ է ձեւում։ Եթէ դերձակը լաւ արհեստաւոր եւս լինի, բայց հագուստը կամ նեղ կը դուրս գայ՝ կամ լայն, կամ կարճ կը դուրս գայ՝ կամ երկար։ Մի խօսքով, այլանդակ բան կը լինի։ Մի այդպիսի սխալի մէջ չընկնելու համար, ես ցոյց տուի քեզ մեր հայրենիքը. շատ երեւոյթների պատճառները բացատրեցի քեզ, շատ տեղերի եւ շատ ցեղերի հետ ծանօթացար դու։ Ես ձգեցի քո մէջ ապագայ յառաջադիմութեան սերմերը միայն։ Իսկ գիտութեան լոյսը կը ծլեցնէ, կ'աճեցնէ եւ պտղաբեր կը կացուցանէ նրանց։ — Այդքանը բաւական է, այժմ գնանք։

Մենք սկսեցինք ցած իջնել Աստղաբերդից։

— Ո՞ւր պիտի գնաս, — հարցրի նրանից։

— Հնդկաստան, — պատասխանեց նա։

— Ե՞րբ կը վերադառնաս։

— Այդ ես էլ չը գիտեմ։

— Գոնէ ասա՛ ինձ, թէ ինչի՞ համար ես գնում։

— Այժմ հարկաւոր չէ քեզ գիտենալ... Դու միայն կարող ես համոզուած լինել, որ վատ բանի համար չեմ գնում։



## ԼԲ.

## "ՀԱՄԲԸ„

Աստղաբերդից ցած իջնելով, շարունակեցինք մեր ուղին դէպի Առաքելոց վանքը, որ մօտաւորապէս երեք ժամի ճանապարհով հեռու է Մուշ քաղաքից, ընկնում է նրա արեւելահարաւային կողմը, Տաւրոսի գեղեցիկ լեռնահովիտներից մէկի մէջ, բարձր դիրքի վրայ։ Ճանապարհին անցանք Մոգունք գիւղը, որի մերձակայ մօրուտների մէջ մի ժամանակ ձգեցին հինգ հարիւր մոգերի գլուխներ, այդ պատճառով եւ կոչուեցաւ Մոգունք կամ "Մոգաց գերեզման„։

Երեկոյեան կիսամռայլի միջից վանքի թանձր, ամրոցաձեւ շրջապարիսպը խիստ ճնշող տպաւորութիւն էր գործում։ Ես պէտք է մնայի փակուած այդ պարիսպների մէջ։ Այդ միտքը աւելի ճնշող էր, աւելի ծանր էր...

Նայում էի դէպի տասն եւ վեց դարերի պատկառելի սրբավայրը, նայում էի դէպի սքանչելի բարձրաւանդակը, որի վրայ կանգնած էր նա, նայում էի դէպի շրջապատող լեռները, որ գրկել էին նրան, նայում էի դէպի կանաչազարդ հովիտը, որ սփռուած էր նրա առջեւ, — նայում էի եւ մտածում էի, թէ հայկական գեղարուեստը, ճարտարութիւնը զարգացաւ վանքերի շինութեան մէջ, իսկ հայկական գեղասէր ճաշակը զարգացաւ տեղերի եւ տեսարանների ընտրութեան մէջ, որ վայելուչ էին նրանց կառուցման համար։

Երբեմն մի ամենահասարակ հակադիպութիւն փարատում է մեր սրտից ամենածանր տարակուսանքներ: Ասլանը յայտնեց, որ ինձ պէտք է թողնէ այդ վանքում, իսկ ես լռեցի, չը յայտնեցի նրան իմ դժկամակութիւնը: Բայց երբ, դեռ վանքը չը հասած, ճանապարհին պատմեց ինձ դեռ չը մոռացուած աւանդութիւնը, թէ այդ վանքում աշխատել են հայկական դպրութեան Ոսկեդարի ականաւոր մարդիկը, թէ այդ վանքի խլութեան մէջ են կատարուել նրանց մտաւոր վաստակները, թէ այդ վանքում են դրուած եւ նրանց պաշտելի շիրիմները, — այդ բոլորը լսելով, իմ մտատանջութիւնը ամոքուեցաւ, իմ կասկածները փարատուեցան, եւ ես խոնարհուեցայ անցեալ ժամանակների սրբազան յիշողութիւնների առջեւ՝ — աշխատել եւ սովորել այն յարկի տակ, որտեղ աշխատել են մեր բազմավաստակ հայրերը, ոգեւորուել նրանց անմոռանալի շիրիմներով, եւ սրտով եւ հոգւով նուիրուել ուսման ճգնութեանը:

Առաջինը, որ հեռուից գրաւեց իմ ուշադրութիւնը, դա էր վանքի շրջապարսպի արեւելեան կողմում սիւների մի շարք, որ բարձր կոթողների նման կանգնած էին միմեանց մօտ: Ասլանը ինձ տարաւ նրանց մօտ: Դրանք թուով տասն գեղաքանդակ խաչքարերն էին, որ դրուած էին քարէ պատուանդանների վրայ: Աւանդութիւնը “Թարգմանչաց գերեզմանք„ է կոչում այդ լուռ յիշատակարանները: Նրանցից մէկի վրայ ես կարդացի հայոց անպարտելի փիլիսոփայի՝ Դաւիթ անյաղթի անունը: Այդ խաչաքարերի խմբի առջեւ, փոքր ինչ հեռու, դրուած էին երկու անշուք գերեզմաններ. մացառների միջից հազիւ երեւում էին նրանք: Քարացած մամուռը դրել էր այդ տապանների վրայ իր գորշ-կանաչագոյն խաւերը. ոչ գիր եւ ոչ թուական չեն երեւում. նրանց թուականը, նրանց տապանագիրը դրոշ-

միջով։ Կշտից քարշ ընկած մկրատը տարաւ դէպի մի խոշոր սպիտակ վարդ, կտրեց եւ խրեց կուրծքի վրայ։ Ցետոյ քաղեց երկրորդը, երրորդը... զանազան գոյներով, եւ ճաշի սեղանի համար մի գեղեցիկ փունջ պատրաստեց։

— Մայրիկ, — ձայն տուեց հեռուից փոքրիկ Աշխէնը։

Մայրը մօտեցաւ։

— Տես, այդ մէկը ես կապեցի։ Նա ցոյց տուեց իր կապած պատուաստի ճիւղը։ — Տասն եւ վեց տարուց յետոյ կարմիր խնձոր կը տայ։

Մայրը գրկեց աղջկան եւ համբուրեց, յետոյ դարձաւ դէպի ամուսինը, հարցնելով.

— Այլ եւս ո՞վքեր կը լինին ճաշին։

— Մերոնք, պատասխանեց այրը, մերթ նայելով կնոջ վրայ եւ մերթ նրա փնջած ծաղիկների վրայ, կարծես կամենալով ստուգել, թէ դրանցից որն աւելի անուշահոտ է։

— Դու ասեցիր, որ ուրիշ հիւրեր եւս կը լինին։

— Ուրիշ հիւրեր չեն լինի. միայն մեր վարժապետը եւ մէկ էլ մեր հարեւան քուրդ Աղասի-բէկը։

— Աղասի-բէկը հազիւ թէ կարող կը լինի գալ, — նկատեց կինը. — Նրա որդին սաստիկ հիւանդ է, այդէն մի շաբաթ կը լինի, որ դպրոց չէ գնացել։

— Վտանգը անցած պէտք է համարել, — պատասխանեց այրը. — երէկ բժիշկը ինձ ասաց, թէ այժմ առողջանալու վրայ է։

Կինը ուրախացաւ։

Աշխէնը խնդրեց մօրից, որ փունջը իրան տայ։ Ինքը տուն տանէ։ Մայրը կատարեց նրա ցանկութիւնը։

— Օ՜, որքան շատ գոյներ կան այստեղ, — տասն եւ վեց գոյն, — զարմանալով բացականչեց նա եւ վազեց դէպի տուն։

Մայրը նոյնպէս հեռացաւ։ Կարօն նայում էր նրանց ետեւից եւ կոշտացած ձեռքով սրբում էր ուրախութեան արտասուքը։ Դրանք այն ամուսիններից էին, որոնց վրայով տարիները անցնում են, մարդը ծերանում է, իսկ սէրը մանկանում է։

Կէսօրից առաջ քարաշէն տան դուռը մօտեցաւ մի ճանապարհորդական կառք։ Ցած իջաւ մի ծիծաղադէմ երիտասարդ, թեթեւ մօրուքով, եւ ցած բերեց մի մանկահասակ կնոջ, նրանցից յետոյ վեր եկաւ աղախինը, որ գրկած ունէր մի կլորիկ երեխայ։ «Հիւբբի՛»... «Արփիա՛ր»... անունները հնչեցին ուրախաձայն աղաղակներով, եւ դռներից դուրս թափուեցան ընդունելու թանգագին հիւրերին։

Մէկը Կարօի փեսան էր, միւսը նրա դուստրը։

Մի քանի ժամից յետոյ խաղաղ գերդաստանը բոլորեց ճաշի սեղանի շուրջը։ Նա գո՛հ էր, որովհետեւ ապրուստի ամէն յարմարութիւններ ունէր։ Նա երջանի՛կ էր, որովհետեւ վայելում էր ընտանեկան քաղցր, անսպառ բերկրութիւնը։



## Լե.

Եթէ մի մարդ անցնելու լինի Աղբակ գաւառի սուրբ Բարթուղիմէոս առաքելոյ վանքից դէպի Բաշ-Կալէ տանող ճանապարհով, վանքից ոչ այնքան հեռու, իսկոյն կը նկատէ, որ ամեն առաւօտ մի ծերունի, ձիւնի պէս ճերմակ մազերով, հեծած նոյնպէս ճերմակ ձիու վրայ, մի շրջան է կատարում լեռնահովիտների միջով եւ ապա, երբ միջօրէի տօթը սկսում է այրել, վերադառնում է դէպի մերձակայ գիւղը։ Սպիտակ ձին նոյնպէս ծեր է, որպէս նրա տէրը։ Առջեւի աջ ոտքից կաղում է նա։ Տարիներ, շատ տարիներ առաջ այդ ոտքից նա գնդակ ստացաւ մի կռուի մէջ։ Բայց այդ չէ արգելում նրան դեռ եւս ծառայել իր տիրոջը։ Այդ հաւատարիմ զինուորական ձին ապրել եւ գործել է իր տիրոջ հետ։ Մի ժամանակ միասին զանազան արշաւանքներ էին կատարում։ Անցան կռիւները, տիրեց հանգստի եւ խաղաղութեան ժամանակը։ Այսօր միասին շրջում են մշակութեան, հունձքի, պտղաբերութեան դաշտերի վրայ։ Խելացի ձին այնքան ընտելացած է իր տիրոջ սովորութիւններին, որ գիտէ թէ ամեն առաւօտ դէպի որ կողմերը պէտք է տանել նրան եւ ո՛ր տեղերում պէտք է ման ածել։ Դանդաղ քայլերով անցնում է նա արտերի մարգերի միջով, այնքան զգոյշ կերպով, որ մի հասկ անգամ կոխ չէ տալիս։ Եթէ մի տեղ ջրանցքը պատռուել էր եւ ջուրը վազում էր դէպի հասունացած հունձքը, որ ջրելու կարօտ չէր, եթէ մի տեղ

գիւղացու անասունը մտել էր հարեւանի արտը եւ ոտնակոխ էր արել, եթէ մի տեղ վէճեր էին յայտնուել, մի խօսքով, եթէ մի տեղ որ եւ է անկարգութիւն էր նկատում նա, իսկոյն կանգ էր առնում։ Ծերունու հետախոյզ աչքերը տեսնում էին այդ բոլորը. ոչ մի թերութիւն չէր վրիպում նրա բազմափորձ տեսութիւնից։ Երբ վերադառնում էր գիւղը, կանչում էր գիւղացուն եւ նրան նկատողութիւն էր անում։ Նրա ամենօրեայ զբօսանքը՝ նրա ամենօրեայ մեծ բաւականութեան զուարճութիւնն էր։ Նա տեսնում էր իր աշխատութեան պտուղները եւ ուրախանում էր։

Այդ ծերունին որսորդ Աւօն էր։

Նա գնեց մի քրդուհի այրի կնոջից այդ անբնակ, ամայի լեռնահովիտը իր շրջակայ հողերով, եւ այնտեղ հիմնեց մի գիւղ։ Նրա տունը առաջին բնակարանը եղաւ, որի շուրջը հետզհետէ շինուեցան այլ տներ։ Մի քանի տարուայ ընթացքում կազմուեցաւ մի մեծ գաղթաշէնք։

Որսորդը իր գիւղի բոլոր հողերը դարձրեց համայնական սեպհականութիւն, իսկ ինքը դարձաւ նոյն համայնքի հասարակ անդամներից մէկը։ Թէեւ գիւղական համայնքին պարտաւորեցրեց նա, որ որոշեալ ժամանակի ընթացքում՝ փոքր առ փոքր վճարեն հողերի գինը, բայց այդ վճարը այնքան թեթեւ էր, որ նրանց համար բոլորովին անզգալի եղաւ։ Որսորդը այդ գումարը իրան չը սեպհականացրեց, այլ նրանով հիմնեց մի դպրոց, եւ մշտապէս ապահովացրեց դպրոցի յարատեւութիւնը։ Նրա վարմունքը այն աստիճան գրաւեց գիւղացիների յարգանքը, որ ամենքը մեծ երախտագիտութեամբ վերաբերվում էին դէպի նա, որպէս իրանց բարերարին, որպէս իրանց հօրը։ Այն դպրոցում սովորում էին եւ մերձակայ գիւղերի երեխաները։ Այդ էր պատճառը, որ նոյն յարգանքը վայելում էր նա ամբողջ վիճակի մէջ, եւ

դրա համար աղքակեցիք ընտրեցին նրան իրանց գաւառի ներկայացուցիչ, որ "միր" տիտղոսն էր կրում։ Ծերութեան հասակում Որսորդը թողեց այդ պաշտօնը եւ նրա փոխարէն կատարում էր նրա փեսան — Փարհատը։

Որսորդը վերջը որդեգրեց Փարհատին եւ ամուսնացրեց իր դստեր՝ Մարօի հետ։ Փարհատի մանկութեան ընկերուհին այժմ նրա կինն էր։

Այսօր Որսորդի տան դռան հանդէպ, հրապարակի վրայ, կանգնեցրած է նրա ձիաների երամակը։ Ձիաների ամէն մէկի ետեւից ձախ ազդրի վրայ դրած է Որսորդի դրօշմը՝ հայոց Ո տառը։ Նժոյգները խրխնջում են, դոփը են հատանում, փոշի են բարձրացնում, եւ ձիապանները հազիւ կարողանում են զսպել նրանց։ Փարհատը սակարկութիւն է անում պարսկաստանցի վաճառականների հետ, որ եկել են նրանից ձիաներ գնելու։ Նրա կինը, գեղեցիկ Մարօն, երեխան գրկում, կանգնած է լուսամուտի մօտ, այնտեղից նայում է ամուսնու վրայ։ Ծերունի Որսորդը, նստած տան դռան մօտ, նոյնպէս հիացած նայում է, թէ ինչպէս Փարհատը խօսում է վաճառականների հետ, ինչպէս բացատրում է նժոյգների իւրաքանչիւրի արժանաւորութիւնը։ Վիթխարի Մըհէն, Որսորդի տան հին հաւատարիմը, այժմ ալեւորած մազերով, տակաւին չէ կորցրել իր վաղեմի հերքուլէսեան ոյժը։ Նա բարկացած է անհանգիստ նժոյգների վրայ։ "Ի՞նչ սատանայ մտաւ ձեր պինչը"... ասում է նա ձիաներին եւ պարանը ձգում է մի տրմուղ քուռակի պարանոցը, որ շատ է զայրացնում նրան։ Մըհէն այժմ Որսորդի ձիապանների գլխաւորն էր, այդ պաշտօնը բաւական հպարտացնում էր նրան։ Փարհատը վերջացրեց սակարկութիւնը, եւ ոսկիների քսակը ձեռին, ուրախ եւ գոհ տուն մտաւ։

— Քանի՞ հատ գնեցին, — հարցրեց Որսորդը,

— Հինգ հատ, — պատասխանեց Փարհատը։

— Այդքան խօսակցութիւն հի՞նգ ձիու համար։

— Նրանք մեր ձիաները շատ թանգ են գնում։

— Լաւ բանը լաւ գին կ՚ունենայ, — նկատեց Որսորդը։ — Թող գնան ամբողջ գաւառը ման գան, եթէ մեր ձիաների հատը գտնելու լինին, ես ձրի կը տամ։

Ներս մտաւ Մըհէն։

— Առ Մըհէ, — ասաց նրան Փարհատը, մեկնելով երկու հատ ոսկի։ — Ես խոստացել եմ, որ ամեն անգամ, երբ ձի է վաճառվում, քեզ մի պարգեւ տամ։

— Սատանան տանէ քո ոսկիները, — պատասխանեց նա հրաժարուելով. — Թէ ուզում ես պարգեւ տալ, ինձ մի կտոր կաշի տուր, որ տրեխներս կարկատեմ։ — Նա ցոյց տուեց իր պատառոտած տրեխները։

Փարհատը ժպտաց, իսկ որսորդը ծիծաղեց։

Մըհէն մինչեւ մահ մնաց պարզամիտ, անշահասէր եւ բարի։ Նա այն կիսախելագարներից էր, որ իրանց գժութիւններով արտայայտում են մի տեսակ իմաստութիւն։

Մարօն մօտեցաւ, առեց ոսկիների քսակը։ Նա ամուսնի եւ գանձապահն էր եւ տնտեսը։ Ոչ ոք չէր կարող մտածել, որ մի այնպիսի կրակոտ, անսանձ, կամակոր աղջկանից, որպիսին Մարօն էր իր մանկութեան հասակում, կարող էր այժմեան խելացի լըջամիտ տանտիկինը դառնալ։ Նա գրաւել էր իր ամուսնու թէ սէրը, թէ՛ յարգանքը։ Մարօի մանկութիւնն անցաւ առանց կրթութեան, որովհետեւ մօրից որբ մնալով, մնաց միայն հօր խնամակալութեան ներքոյ։ Իսկ հայրը այնքան զբաղուած էր ուրիշ գործերով, որ աղջկայ վրայ մտածելու ժամանակ չունէր։ Իսկ յետոյ, երբ Որսորդը փոքր ինչ թեթեւացաւ իր գործերից, եւ երբ Մարօն ար-

դէն հասուն օրիորդ էր, այդ ժամանակ միայն սկսեց հոգ տանել նրա կրթութեան վրայ։ «Փարհատը սովորում է, որ քեզ արժանաւոր այր դառնայ, դու էլ պէտք է սովորես, որ նրան արժանաւոր կին դառնաս», ասում էր նա իր դստերը։ Մարօն ոչ այնքան տնային վարժապետների շնորհիւ, որքան իր ջանքերով եւ ինքնակրթութեամբ, այնքան զարգացաւ, որ կարդում էր հայոց լրագիրներ, կարդում էր նոր լոյս տեսած գրքեր, եւ շատ հարցերի մասին այնքան ճիշտ, ինքնուրոյն դատողութիւններ էր յայտնում, որ շատերին զարմացնում էր։ Ոչինչ բանի նա այնքան անհամբերութեամբ չէր սպասում, որքան թղթատարին, որ նոր լրագիրներ եւ գրքեր ստանայ։ Նա արդէն երկու զաւակների մայր էր, մի աղջիկ, որ գրկումն էր եւ մի տղայ, որ սկսել էր ման գալ։

Փարհատի մայրը շատ վաղ վախճանուեցաւ, նա իր որդու բաղդաւորութիւնը չը տեսաւ։ Նրա քոյրերը՝ Մարիամը եւ Մագթաղը՝ մօր մահից յետոյ մնացին բոլորովին որբ եւ անտէր։ Որսորդը առեց նրանց իր հոգաբարձութեան ներքոյ, պահեց, մեծացրեց եւ մարդու տուեց։

Որսորդի միւս որդեգիրը, Հասօն, բնակվում էր Կ... գիւղում, Դուշմանայ լեռների մէջ, ուր առաջին անգամ բնակութիւն հիմնեց Որսորդը, երբ Սալմաստից տեղափոխուեցաւ Աղբակ։ Հասօն այժմ այնքան մեծ ընտանիք ունէր, որքան մեծ թուով չորքոտանիք։ — Ինչպէս սովորութիւն ունէր Մըհէն ծաղրել նրան։ Ամեն տարի մեծ քանակութեամբ ոչխար, իւղ, պանիր եւ բուրդ էր վաճառում։

Եւ այսպէս, Աղբակը, վիշապների արիւնոտ երկիրը, ուր այդ գազանները տարիներով լափում էին, կլանում էին, եւ երբէք չէին յագենում, այժմ դարձել էր խաղաղ, բաղդաւոր մի երկիր, ուր շինականի թէ կայքը, թէ կեանքը

բոլորովին ապահովվում էր։ Վիշապները վաղուց ոչնչացած էին։ Նրանց փոխարէն մնացել էին մարդը — օձերը — վերջին ժամանակի քուրդերը։ Քաղաքակրթութեան լոյսի առաջ չը դիմացան նրանք։ Քաղաքավարութիւնը իր անողոք պայմաններով լուծեց, մաշեց նրանց, որովհետեւ իր հետ առաջ գնալ չը կարողացան։ Նրանց կեանքը զարգացել եւ կազմակերպուել էր խաւարի եւ անկարգութեան մէջ։ Նրանց ապրուստը հայթհայթուել էր կոպիտ ուժի եւ բռնաբարութեան մէջ։ Կարգը, արդարութիւնը զրկեցին նրանց թէ՛ ապրուստից եւ թէ՛ կեանքից։ Ուրիշի վաստակով ապրող հասարակութիւնը մեռաւ, երբ նրան ստիպեցին իր հաշուով ապրել։ Նոյնպէս այն գազանները, որոնց բարբարոսութիւնները ոչ մի զօրութեամբ հնար չէր լինում զսպել, ընկճուեցան տրորուեցան քաղաքակրթութեան երկաթեայ պայմանների ներքոյ։ Սրի եւ արեան մրցութեան մէջ նրանք դիմացան, բայց կուլտուրական մրցութիւնը սպաննեց նրանց։ Նրանց մեծ մասը թողեց այդ երկիրը եւ գաղթեց որոնելու այնպիսի տեղեր, ուր հնարաւոր կը լինէր անկարգ-անիշխանութեան մէջ դարձեալ անձնատուր լինել անզուսպ կամայականութեան։ Մնացածներից աւելի ազնիւ եւ ընդունակ ցեղերը սկսեցին ընտելանալ քաղաքակրթութեան հետ, իսկ վայրենիները դարձան բանուորներ այն հարեւանների, որոնք կուլտուրայով աւելի զօրեղ եւ բարձր էին իրանցից։ Որսորդի բոլոր հովիւները, ախոռատան ծառաները, անդաստանների մշակները քուրդեր էին։



# ԼԶ.

Վան քաղաքի միեւնոյն առեւտրական պանդոկի մէջ, միեւնոյն կրպակում, ուր մի ժամանակ Թումաջի վաճառականութիւն էր անում մուսուլցի խօջա Թորոսը, այժմ ընդարձակ գրասեղանի ետեւում նստած էր մի պարոն։ Այդ կրպակը նոյնքան կերպարանափոխուել էր, որքան պարոնը, որ նստած էր այնտեղ։ Հին, ասիական կրպակը, մի եւրոպական առեւտրական տան կատարեալ ձեւն էր ստացել. Հաշուապահը, գանձապահը, գրագիրները, գործակատարները, իւրաքանչիւրը իր որոշ տեղն ու պաշտօնն ունէր։ Վաճառքների տեսակները, քանակութիւնը, որակութիւնն անգամ փոխուել էր։ Փոխուել էր եւ պարոնը, որ նստած էր ընդարձակ գրասեղանի ետեւում։ Երիտասարդական հասակում, նա այնքան խոշոր մարդ չէր, իսկ ծերութիւնը աւելի փոքրացրել էր նրան։ Մեծ ընդարձակ գրասեղանի ետեւից հազիւ երեւում էր նրա կուրծքի վերին մասը, փոքրիկ գլխի հետ, որ պատած էր երկար, սպիտակ մազերով։ Այդ պատկառելի ալիքների միջից դուրս էր նայում մի մտայոյզ դէմք, նեղ, անհանգիստ աչքերով, որ արտայայտում էին մի գործունեայ մարդու անվաստակելի եռանդը։ Նա գործերի մէջ չէր խառնվում. գործը, լարուած մեքենայի նման, իր կարգով շրջան էր առնում. միայն երբեմն դիմում էին նրան այս եւ այն հարցերով։ Նա այդ առեւտրական տան տէրն էր եւ նրա կառավարիչը։

Նրա մօտ նստած էր մի այլ պարոն, ոտքից ցգլուխ սեւ հագուստի մէջ, եւ ձեռքում պտըտացնում էր նոյնպէս սեւ, լայնեզրեայ գլխարկը, որ երբեմն դնում էր գաւազանի գլխին, փոքր ինչ հանգստանալու համար։ Այդ պարոնը նոյնպէս մօտեցել էր ծերութեան. մօրուքի եւ գլխի մազերի մէջ սեւ գոյները հազիւ էին նշմարվում։ Նրա խաղաղ դէմքը, երեխայի դէմքի նման, ամեն րոպէ ժպտում էր, երբ փոքր ի շատէ ուրախացուցիչ բան էր լսում։ Ինչպէս երեւում էր, նա վաճառականի հին ծանօթն էր, եւ, Բաղէշից նոր եկած լինելով այդ քաղաքը, եկել էր նրան այցելութիւն անելու։

— Ներեցէք, բարեկամ, — առաջ տարաւ վաճառականը, տեղից վերկենալով եւ կրկին խրուելով մեծ բազկաթոռի մէջ, — ահա իմ հագուստը ոտքից ցգլուխ պատրաստուած է տեղային գործուածներից, ասացէք խնդրեմ՝ ինչո՞վ է վատ։ Իրաւ է, եւրոպական գործուածների նրբութիւնը չունին, բայց դրա փոխարէն, աւելի դիմացկուն են եւ էժան։ Եթէ մեզանից իւրաքանչիւրը փոքր ինչ զսպէր իրան պճնասիրութիւնից եւ բաւականանար տեղային գործուածներով, այլ եւս մեր փողը Եւրոպան չէր տանի, մեր փողը մեր երկրում կը մնար։

— Մի՞թէ այնքան չէ ծախվում, — հարցրեց Բաղէշցի նորեկը։

Այժմ պէտք է ասած, բաւական սպառվում է, — պատասխանեց վաճառականը, ձեռքը դէպի ճակատը տանելով, կարծես նոյն րոպէում կամենում էր հաշուել, արդեօք չէր սխալվում իր պատասխանի մէջ։ — Բայց գիտէ՞ք, բարեկամ, թէ որքա՛ն աշխատութիւն էր պէտք, որքա՛ն զոհողութիւն էր պէտք, մինչեւ ես կարողացայ մեր հասարակութեանը ընտելացնել մեր արդիւնաբերութեան գործածութեան հետ։

*Բաղէշցու դէմքի վրայ փայլեց մի սրտագին ուրախութիւն։*

*— Դուք այն ասեցէք, — հարցրեց նա, — արտահանութիւն դէպի օտար երկիրներ լինու՞մ է։*

*— Ինչպէս չէ։ Մեր գործուածները այժմ տանում են Պարսկաստան, Միջին Ասիայի զանազան կողմերը, այլ եւ Անդրկովկասի զանազան քաղաքները։ Ահա, ես հասկանում եմ այսպիսի վաճառականութիւնը։ Մինչեւ այսօր, մենք իսկապէս վաճառականներ չէինք, թէեւ մեզ վաճառական ազգ էին կոչում։ Մենք միայն միջնորդներ էինք, մէկից առնում էինք, միւսի վրայ ծախում էինք, մենք ողորմելի գալաներ էինք։ Իսկ այժմ բանն ուրիշ է։*

*Նա հրամայեց, բերեցին մի քանի տեսակ բրդեղէն գործուածներ, դրեցին գրասեղանի վրայ։*

*— Նայեցէք այդ չուխաներին, — դարձաւ նա դէպի իր խօսակիցը. — գնա անցեալ տարի, Փարիզի աշխարհահանդիսում, ասիական գործուածների կարգում, առաջին մրցանակը ստացաւ։*

*Բաղէշցին սկսեց մեծ հրճուանքով նայել։*

*— Հիանալի՜ գործուածներ են, բացականչեց նա, շատ հիանալի։ Ես այժմ ուղիղն ասեմ ձեզ, ամաչում եմ, որ ձեզ հետ նստած եմ այդ հագուստով։ Նա ձեռքը տարաւ դէպի իր սեւ, անգլիականնուրբ մահուդից կարուած հագուստը եւ հարցրեց. — Մի՞թէ այդ բոլորը ձեր գործարանից է։*

*— Բոլորը, — պատասխանեց վաճառականը մի առանձին բաւականութեամբ։ — Ախար ո՞վ ունի այդ գեղեցիկ բուրդը, որ մեր ոչխարներն ու այծերն են տալիս։ Մենք մինչեւ այժմ դժբաղդ էինք, որ չը գիտէինք օգտուել մեր երկրի արդիւնքներից։ Եւրոպացին մեր բուրդն ու բամբակը տանում էր, պատրաստում էր եւ գործուածները տանե-*

պատռիկ գնով մեզ վրայ վաճառում էր։ Իսկ մենք ծնուած էինք աղքատ, միայն օտարի քսակն էինք լցնում։

— Այո՛, այդպէս էր... կրկնեց տխուր ձայնով Բաղէշցին, ապա հարցրեց.— Ի՞նչ պայմաններով են աշխատում ձեր գործարանի բանուորները։

— Արդիւնքից մի որոշ մասն են ստանում, — պատասխանեց վաճառականը։ Երկար փորձերից յետոյ, ես այն համոզմունքին հասայ, որ նրանց պէտք է ընկերացնել։ Այդ աւելի զօրացրեց նրանց եռանդը, աւելի պինդ կապեց գործի հետ։ Նրանք ունեն խնայողական դրամարկղ, որից օգնում են իրանց ընկերներին, երբ մէկը հիւանդանում է, կամ վնասուելով աշխատել չէ կարողանում։ Ես ինքս իմ խանութի համար պէտք եղած ապրանքները գնում եմ գործարանից, որպէս օտար մարդ։

— Այդ շատ մարդասիրական է, — նկատեց Բաղէշցին և նրա ջերմեռանդ աչքերը, կարծես, ասում լինէին. «օրհնեալ լինիս»...

Նրանց խօսակցութիւնը ընդհատեց մի ծիծաղադէմ ծերունի, փոքր ինչ կռացած մէջքով, ներկերի մէջ գունաւորած ձեռքերով, որ ներս մտաւ և, մօտենալով վաճառականին, մեծարութեամբ ձեռք տուեց, յետոյ զարմացած նայեց Բաղէշցու վրայ։

— Երեւի փողի համար էք եկել, — հարցրեց նրանից վաճառականը։

— Ապա ինչի՞ համար պէտք է գայի, հէր օրհնած, պատասխանեց նա և մօտեցաւ գանձապահին։

— Այդ ծերունու դէմքը ինձ ծանօթ երեւաց, — ասաց Բաղէշցին նրա հեռանալուց յետոյ։

— Պէտք է որ ծանօթ լինի... պատասխանեց վաճառականը խորհրդաւոր ձայնով։ — Դա վարպետ Փանոսն է.

առաջ Ներկարարի մի հասարակ գործարան ունէր, իսկ այժմ այնքան կատարելագործել է, որ իմ գործուածները բոլորը այնտեղ են ներկվում։

Ցաճախորդները հանգստութիւն չէին տալիս, մէկը դուրս էր գալիս, մի քանիսը մտնում էին։ Գործողութիւնները իրանց կենդանի շարժման մէջն էին։ Ներս մտաւ մի բարձրահասակ, հսկայատիպ պարոն, ալէխառն մօրուքով եւ յատակի տախտակամածը թնդաց նրա ամուր ոտքերի տակ։ Նա, առանց ոչ ոքին ողջունելու, կանգնեց սենեակի կենտրոնումը, աջ ձեռքը մեկնելով դէպի գլխաւոր գործակատարը, իսկ թուխ երեսը դարձնելով դէպի կրպակատէրը, գոչեց որոտալից ձայնով.

— Ասեցէք այդ պարոնին, եթէ միւսանգամ հակերը իր ժամանակին չը հասցնի, ես բոլորը ծովը կը նետեմ։

Նա առանց պատասխանի սպասելու, իսկոյն դուրս գնաց։

— Ճանաչեցի՞ք դրան։ — ասաց վաճառականը, դիմելով դէպի Բաղէշցին։

— Ճանաչեցի... պատասխանեց նա։ — «Բէրդէն-Օղլին» է... Աւանց գիւղի նաւաստին... Այդ մարդը մինչեւ վերջը մնաց անտաշ... Բայց շատ օրինաւոր մարդ է, գիտէք. այժմ շոգենաւի ընկերութեան գլխաւոր նաւապետն է։

— Գիտեմ։ Ես նրա շոգենաւով եկայ Բաղէշից։

Վաճառականը խօսքը փոխեց հարցնելով.

— Ինձ այն ասացէք, ինչ կայ ձեր մօտ, այնտեղ Բաղէշում։

— Հետաքրքիր ոչինչ չը կայ, միայն խեղճ Հաջի-Իսաքը վախճանուեցաւ։

— Մի՞թէ, նա պէտք է բաւական հարստութիւն թողած լինի։

— Ո՛չ այնքան, որքան կարծվում էր։ Վերջին ժամանակ նա շատ ծախսեց զանազան նպատակների համար... Իսկ ինչ որ մնացել էր, նրա մի մասը կտակել է, որ այն գումարով մի դպրոց հիմնուի, որի մէջ սովորեն հայ երեխաներ, առանց կրօնի խտրութեան։

Վաճառականի դէմքի վրայ երեւաց զարմացման նման մի բան.

— Ես այդ երբէք չէի սպասում Հաջի-Իսաղից, — ասաց նա։

— Սպասելի էր... պատասխանեց Բաղէշցին։ — Նա բոլորովին փոխուել էր... վերջին աղէտաւոր կոտորածների ու երկպառակութիւնների ժամանակ՝ նա էր գլխաւոր բողոքողներից մինը, որ Ամերիկայի միսիօնարներին արտաքսեցին Բաղէշից։ Խեղճ ծերունին միշտ ասում էր. «Դոքա, բաւական չէր, որ մեզ հեռացրին մեր Լուսաւորիչ պապից, այլեւ մեզ մեր նախապապի՝ Հայկի հետ էլ խորթացրին... մեզ մեր հարազատ եղբայրների հետ թշնամացրին...

Պատի ժամացոյցը զարկեց երկուսը։

Խանութատէրը վեր կացաւ եւ հրաւիրելով իր խօսակցին, ասաց.

— Յոյս ունիմ, որ դուք այնքան բարի կը լինիք, որ ճաշը այսօր մեզ մօտ անուշ կ'անէք։

— Մեծ ուրախութեամբ, — պատասխանեց նա, նոյնպէս կանգնելով։ Ես ձեր կնոջը եւ երեխաներին վաղուց չեմ տեսել, կը ցանկանայի նրանց տեսնել։

Նրանք դուրս եկան խանութից։

Անցան բաւական ուղիղ, մաքուր փողոցներով։ Աջ եւ ձախ բարձրանում էին երկյարկանի, երեքյարկանի քարաշէն տներ։ Այլ եւս ոչ վաղեմի նեղ, կեղտոտ փողոցները կային, եւ ոչ հում աղիւսից կամ կաւից շինուած, կիսաւեր խրճիթ-

ները։ Ամեն ինչ գեղեցիկ էր, ամեն ինչ մաքուր էր։ Մաքրուել էր եւ օդը։ Փողոցներում մարդիկ ցնցոտիներով չէին թափառում եւ, անցորդի օձիքը բռնելով, նրանից ողորմութիւն չէին պահանջում։ Կանայք չադրաների մէջ փաթաթուած, երեսները ծածկած վախենալով չէին ման գալիս, փողոցային անամօթ սրիկաների յարձակմանը չենթարկուելու համար։ “Գաւուր„ բառը այլեւս չէր լսվում։ Մահմեդականները քրիստոնեաներին հանդիպելիս մի քանի քայլ հեռուից ողջունում էին։ Փաշայի պալատի մէջ նստած էր մի քրիստոնեայ նահանգապետ։ Օրուայ այն ժամն էր, երբ դպրոցում արձակում են աշակերտներին։ Տղայ եւ աղջիկ դրքերի պայուսակները մէջքներին կապած, կամ թեւքերի տակն առած, լցրել էին փողոցները։ Անցնելու տեղ չը կար։ Դրանց փոխարէն, այդ փողոցներում, մի ժամանակ վխտում էին հարբած ենիչերիները, մերկ սրերը ձեռքերին, կամ խլրտում էին գազանաբարոյ “ասքարը„ յափշտակելով ամեն պատահած բան։ Քաղաքացիք, նրանց տեսնելով, օր-ցերեկով մտնում էին իրանց տները եւ դռները պինդ փակում էին։ Այժմ ոչ այդ բարբարոսները կային եւ ոչ վաղեմի երկիւղը կար։

Նրանք կանգնեցին մի բաւական կոկիկ տան հանդէպ։ Դռները բացուեցան, մտան մի հովասուն, ծառազարդ բակ։ Ծառերի ներքոյ նստած էր մի հասակաւոր պարեշուք կին եւ ինչ-որ հիւսում ձեռքում։ Տեսնելով եկուորներին, դրեց իր ձեռագործը փոքրիկ, բոլորակ սեղանի վրայ, վերկացաւ եւ դիմաւորեց նրանց։

— Ա՜խ, պարոն Միսաքեան, — բացականչեց կինը, առաջ վազելով, — ես ամենեւին չէի սպասում... Ի՞նչպէս էք... այդ ի՞նչ բաղդով... այդ ո՞ր քամին բերեց ձեզ... եւ շփոթեցրեց հիւրին բազմաթիւ հարցերով։

Պ. Միսաքեանը երկու ձեռքով բռնեց տիկնոջ աջը եւ բարեկամաբար սեղմեց։

Այդ ոտքից գլուխ սեւ հագուստով պատած պառաւելի անձը Բաղէշի հայ-բողոքականների երէց Ջալալըն էր, որին այժմ իր տոհմանունով պ. Միսաքեան էին կոչում։ Իսկ նրա հիւրընկալը մեր վաղեմի ծանօթ Սագօն էր, որին այժմ կոչում էին Սարգիս Սեպուհեան։ Փոխուած դրութեան հետ, փոխուել էին նրա առաջուայ թէ կեղծ եւ թէ կրճատած անունները։ Իսկ նրա տիկինը Տէր Թօդիկի դուստր Սօնան էր։ Նա ամուսնացաւ իր հին վարժապետի աղջկայ հետ։ Երկու բաղդաւոր ամուսինները ունէին մի քանի զաւակներ, որոնց մեծը սովորում էր Գերմանիայում։

Տէր Թօդիկը վաղուց չը կար այդ աշխարհում. Նա մեռաւ "ախտալքը" ծոցում...



## ԼԷ.

Սալմաստ գաւառի Սաւրա գիւղի հայոց թաղում խիստ աչքի էր զարկում մի մաշուած տուն, որը ոչ այնքան հնութիւնից, որքան անխնամութիւնից կորցրել էր իր վաղեմի շքեղութիւնը։ Գիշեր եւ ցերեկ այդ խուլ, գերեզմանի պէս անմռունչ տան դռները փակ էին։ Այնպէս էր թւում, որ ոչ ոք այնտեղ չէր բնակւում։ Միայն երբեմն ճռնչելով շարժւում էին ժանգոտած ծղխնները, դռները բացւում էին, դուրս էր գալիս մի թախծալի դէմքով կին, նստում էր դռան մօտի թումբի վրայ եւ ամբողջ ժամերով լուռ նայում էր փողոցի միջով անցնող գետակին, կարծես, նրա տխուր մրմունջների մէջ կամենում էր թաղել իր սրտի դառն կսկիծները։ Նա իր հասակից աւելի վաղ էր ծերացել, որպէս այն մաշուած տունը, որտեղից դուրս էր գալիս նա։ Նրա տխրամած դէմքի թուխ գծերի մէջ, նրա սեւ աչքերի մթութեան մէջ նշմարւում էին անմխիթար հոգու խորին վշտերը, որ թագուցած էին նրա խորտակուած, վիրաւորուած կուրծքի մէջ։ Նրա սգաւոր հայեացքը այնպիսի տպաւորութիւն էր գործում, որ այդ խղճալի կինը իր կեանքում երբէք երջանկութեան քաղցրութիւնը չէր ճաշակել. բաղդը երբեմն ժպտել էր նրան, միայն հրապուրելու համար, որ մի նոր, աւելի դառն դժբաղդութեան մէջ ձգէ։ Ոչ ոք նրան չէր մօտենում, ոչ ոքի հետ չէր խօսում նա։ Այնպէս լուռ նստում էր թումբի վրայ, լսում էր գետակի մրմունջը,

լսում էր ծառերի վրայ խօսող թռչունների ձայնը, եւ խորին կերպով հոգւոց էր հանում։ Նրան մօտենում էին փողոցի երեխաները միայն։ Երբ նա յայտնվում էր թումբի վրայ “Նէնէ՜ն, Նէնէն„, ձայն էին տալիս երեխաները եւ, ամէն կողմից վազելով, շրջապատում էին նրան։ Նէնէն գրկում էր նրանց, խօսում էր նրանց հետ եւ բաժանում էր սեւ փողեր, որ տանեն իրանց համար ուտելու բան գնեն։ Երեխաները համբուրում էին նրա ոսկրացած ձեռքերը համբուրում էին նրա նիհար ցամաքած երեսը եւ ուրախութեան աղաղակներով հեռանում էին։ Այդ դժբախտ կինը վշտացած, շատ վշտացած էր հասակաւոր մարդիկներից եւ իր մխիթարութիւնը գտնում էր միայն անմեղ երեխաների մէջ...

Ո՞վ էր այդ Նէնէն։ —

Նա մի ամբողջ պատմութիւն ունի, որ “Խաչագողի Յիշատակարանի„ մէջ մեր ընթերցողներին յայտնի է։ Նա Մուրադի կինն էր։ Այդ տունը Մուրադի տունն էր։

Մուրադը գործեց եւ լաւ գործեց, բայց իր բոլոր ընկերների մէջ նա միայն դժբաղդ գտնուեցաւ։ Զաւակներ չունեցաւ նա։ Ազգականները նրա հարստութիւնը ժառանգելու համար՝ չը սպասեցին նրա մահուանը, այլ շտապեցին վաղօրոք թունաւորել նրան։ Նա մեռաւ, անմխիթար սուգի մէջ թողնելով Նէնէին, որը չէր դադարում ողբալ սիրելի ամուսնի անմոռանալի յիշատակը։

Այդ թշուառ այրին բոլորովին միայնակ, բոլորովին անջատուած հասարակութիւնից, ապրում էր իր տանը թախծութեան մէջ։ Նա զզուած էր կեանքից, զզուած էր եւ մարդիկներից։ Նրան կենակցում էր մի զառամեալ ծերունի միայն, որի աչքերը այլ եւս չէին տեսնում։ Նրա կմախքն էր մնացել եւ մի ողորմելի ձայն, որ երբեմն հառաչում էր.

«ա՜խ, ե՞րբ պէտք է մեռնեմ»… Ամեն անգամ կարելի էր տեսնել նրան, կծկուած բակի մի անկիւնում, մի կտոր փալասի վրայ, անդադար տրտնջում էր «քաղցած եմ»… Նէնէն ամբողջ օրը կերակրում էր նրան, բայց կշտացնելու հնար չէր լինում։

Ծերունին քաւոր Պետրոսն էր։

Երկար թափառումներից յետոյ, վերադառնալով իր հայրենիքը, այդ երեւելի խաչագողը գտաւ իր ամբողջ ընտանիքը ոչնչացած։ Նէնէն առեց նրան իր խնամակալութեան ներքոյ, հոգ էր տանում նրա ծերութեանը։ Այդ թշուառի ուղեղն անգամ իր բնական դրութեան մէջ չէր մնացել։ Նա որ մի ժամանակ երկրների սարսափն էր ու հրէշը, նա որ մի ժամանակ փափուկ մոմի նման դարձնում էր իր ձեռքում մարդկանց սրտերը, այսօր մի անմիտ երեխայի նման, շատ անգամ ասում էր իր բարերարուհիին. — «Նէնէ, ե՞րբ ինձ համար կարմիր կօշիկներ պիտի առնես»։ Խորին ծերութիւնից նա երեխայացել էր։ Եւ իրաւ, նրա թափած ատամները մի քանի տարի առաջ նորից սկսեցին բուսնել, եւ նրա թափած մօրուքի տեղը յայտնուեցաւ փետուրի նման փափուկ հազիւ նշմարելի մազեր։

Այդ յաւիտենական ծերունին յիշեցնում էր Սաւրայի, — այդ խաչագողների որջի — յաւիտենական մեղքը, որը եւ ծերանում է եւ մանկանում է . . .



## ԼԸ.

Այստեղ . . . այստեղ թաղեցին, ասում էր մի երիտասարդ վշտահար դէմքով, ցոյց տալով մի հողադամբարան, որ հազիւ որոշվում էր գետնի մակերեւոյթից։ — Ռաշիդը ճանաչում է այդ տեղը . . . Նա այնքան մոռացկոտ չէ . . . աւելացրեց նա տխուր ձայնով։ — Եթէ մի օր ջրհեղեղ գայ, բոլոր լեռները ողողէ եւ մի փոքր բարձրութիւն անգամ չըմնայ երկրի վրայ, Ռաշիդը դարձեալ կը գտնէ այդ գամբարանը . . .

Այդ խօսքերը դարձրած էին դէպի մի պարոն, որ կանգնած տխուր դէմքով նայում էր ցոյց տուած տեղի վրայ։ Նրա թեւքը մտել էր մի նիհար, բարձրահասակ տիկին, որ իր ուսերով վեր էր պարոնից։ Նա իր ձեռքում բռնած կանացի ամպհովանիով հովանաւորում էր թէ իրան եւ թէ պարոնին։ Նրանց մօտ կանգնած էին մի քանի մանուկներ, զանազան հասակների, եւ բոլորի ուշադրութիւնը դարձրած էր ցոյց տուած տեղի վրայ։ Նրանց հագուստից երեւում էր, որ այդ մարդիկը ճանապարհորդներ էին, որ հէնց նոր էին իջել կառքից, որ մի քանի քայլ հեռու, դեռ կանգնած էր ճանապարհի վրայ։

Այդ այցելութիւնը կատարվում էր մեր ընթերցողներին ծանօթ Առաքելոց վանքի արտաքին պարսպի մօտ, այնտեղ, ուր մի անգամ ցոյց տուինք Դաւիթ Անյաղթ, Խորենացու, Ղազար Փարպեցու մոռացուած շիրիմները։

Այդ շիրիմների թւում աւելացել էր մի այլ մոռացուած գերեզման . . .

Այդ առանց տապանաքարի, առանց որ եւ է յիշատակարանի, լուռ եւ համր գերեզմանի մէջ հանգչում էր մեր ծանօթ "Համրը,,:

Պարոնը վերջին անգամ նայեց գերեզմանի վրայ, կամենում էր տիկնոջ հետ հեռանալ դէպ ի վանքը բայց մանուկներից մէկը կանգնեցրեց նրան, հարցնելով.

— Հայրիկ, ա՞յդ է քո բարեկամի գերեզմանը, որի մասին ճանապարհին միշտ խօսում էիր մեզ հետ:

Այդ է . . . պատասխանեց հայրը տխուր ձայնով:

Ա՜խ, ինչո՞ւ են այդպէս թաղել . . . հարցրեց մանուկը արտասուալի ձայնով: — Ո՞վ գիտէ, նա երեխաներ չունէ . . .

— Չունէ . . . ասաց հայրը:

Նրանք խօսում էին Անգլիերէն:

Մանուկը դարձաւ դէպի իր քոյրը եւ եղբայրները:

— Անուշ, Խորէն, Տիգրան, հայրիկի բարեկամը երեխաներ չունէ, գնանք ծաղիկներ հաւաքենք նրա գերեզմանի համար:

Մանկահասակ խումբը վազեց դէպի շրջակայ վայրերը: Բարձրահասակ տիկինը, մայրական ջերմ գորովը աչքերում, նայում էր նրանց ետեւից:

Ամառային այդ ժամանակի տապերը ծաղիկներ չէին թողել, խոտերն անգամ չորացել էին: Միայն այրուած քարքարուտների մէջ վառվռում էր դեղին գոյնով եւ ծիրանեգոյն "անթառամը,,, իսկ ժայռերի ծերպերից աճել էր հոտաւէտ օշինդրը, սպիտակ թաւիշի նման փափուկ տերեւներով: Տեղ-տեղ բուրում էր վայրենի կոտէմը իր սուր, կծու հոտով: Մանուկները վրայ ընկան քաղելու: Մի քանի

*րոպէից յետոյ, երեք եղբայրները եւ մէկ քոյրը, չորս կողմից բռնած բերեցին մի մեծ, ծանր պսակ, որ հիւսուած էր անթառամ ծաղիկներից եւ զանազան վայրենի բոյսերից, եւ դրեցին հայրիկի բարեկամի գերեզմանի վրայ եւ փոքրիկ ձեռիկները կուրծքի վրայ փակած, նրանց ջերմեռանդ երեսիկները խփած աչքերով դարձան դէպի երկինքը... Այդ վսեմ, հանդիսաւոր րոպէն այնքան սրտաշարժ, այնքան սուրբ էր, որպէս երեխայի մաքուր զգացմունքը։ Հայրը եւ մայրը թաշկինակները տարան դէպի իրանց աչքերը։ Իր արտասուքը չկարողացաւ զսպել եւ երիտասարդ Ռաշիդը, նա նոյնպէս սկսեց լալ։ Այդ սովորութիւնը ունէին մանուկները, երբ Նիւ-Եօրկում ամեն շաբաթ այցելում էին իրանց մեծ քրոջ գերեզմանին, զարդարում էին ծաղիկներով եւ աղօթում էին այնտեղ։*

*Պարոնը դարձաւ դէպի գերեզմանը ցոյց տուող երիտասարդը, խնդրեց, որ իրան առաջնորդէ տանելու հանգուցեալի խուցը։*

*Հռչակաւոր վանքը բոլորովին ամայի էր։ Մի ալեւոր աբեղայ միայն կանգնած էր բակում, կուտ էր ձգում հաւերին, որ այդ միջոցին խմբուած էին նրա շուրջը։*

*Տեսնելով նորեկներին մօտեցաւ նա։*

*— Այդ Փրանկները ինչո՞ւ են եկել, մի կողմ տանելով, հարցրեց երիտասարդից։*

*— Փրանկներ չեն, — պատասխանեց երիտասարդը. — այդ պարոնը հայ է, ես նրան ճանաչում եմ... Դա այն մարդն է, որի համար մեռնելու ժամանակ լուսահոգին ասաց, թէ երբ գալու լինի, իմ իրեղէնները նրան յանձնեցէք։*

*— Ո՞րտեղից են գալիս։*

*— Ամերիկայից։ Նրա տիկինը ամերիկացի է։*

Պարոնը նայում էր դէպի իր շուրջը։ Շատ տարիներ առաջ տեսած փառաւոր վանքը, այժմ նրա վրայ տխուր տպաւորութիւն էր գործում։

— Ինչու այդպէս թշուառ դրութեան մէջ է այդ վանքը — հարցրեց նա աբեղային։

Մի ժամանակ այդ վանքի սեղանատանը հարիւրաւոր միաբաններ ճաշի էին նստում։ Հիմա ո՞վ է մնացել։ — Նա, այդ հաւերը, մէկ էլ այդ մարդը։ — Նա ցոյց տուեց երիտասարդին։ — Վանքի բոլոր հողերը խլեցին, մեզ թողեցին առանց կտոր հացի։ Նստած, օրերով, ամիսներով նայում ենք դէպի դուռը, գուցէ մի մոլորուած ուխտաւոր ներս կը մտնէ։ Այն էլ չըկայ։ Ուխտ էլ չեն գալիս։ Հաւատն ու ջերմեռանդութիւնը պակասել է։ Եթէ հազարից մի անգամ մէկը ներս է մտնում, տուած արդիւնքը այնքան էլ չի լինում, որ գոնէ ապրել կարողանանք։

Գուցէ վշտացած աբեղան դեռ եւս երկար կը շարունակէր իր գանգատները, եթէ նորից պարոնը քաղաքավարութեամբ չընդհատէր նրան, յայտնելով, թէ ինքը շտապում է եւ ուշանալու շատ ժամանակ չունի։

Նրանք մտան հանգուցեալի խուցը։ Նա այնքան փոքրիկ էր, որ բոլորի համար տեղ չը կար։ Երեխաները մնացին դրսում, ման էին գալիս էին գալիս վանքի բակում։

Ամեն ինչ սովորական տեղումն էր. նոյն փայտեայ հասարակ մահճակալի վրայ դեռ տարածուած էր անկողինը. նոյն կաղնեայ գրասեղանը դրած էր նեղ լուսամուտի հանդէպ. իսկ նրա առջեւ դեռ կանգնած էր հին, գեղաքանդակ բազկաթոռը, որ միակ զարդն էր այդ տխուր բնակարանի։ Գրասեղանի վրայ ածած թղթերը, ցամաքած կաղամարը, փետուրեայ գրիչները, գրչահատը, մի աշտանակ, նոյնպէս իրանց տեղումն էին։ Մի մազ իր տեղից չէր շարժուել։

Այնտեղ դեռ դրած էին մի քանի պղնձէ դրամներ, որ ծառան ցոյց տալով ասաց, թէ վերջին օրերում այնքանն էր մնացել «լուսահոգու» ծախքի համար։ Ոչինչ չէր պակասել։ Պակաս էր միայն այն անձը, որ խորին աղքատութեան մէջ այնտեղ աշխատում էր։ Գրասեղանի վրայ դրած էր և նրա սպիտակ թաշկինակը, որի վրայ թողեց նա վերջին արեան բիծը և աւանդեց հոգին . . .

— Լաւ նայեցէք, պարոն, խօսեց ծառան, — տեսնում էք, ոչինչ պակաս չէ։ Ես շան նման ամեն գիշեր պառկում էի այդ խուցի դռանը, մի ճանճ անգամ չէի թողնում, որ ներս մտնէ։

Այնուոր արեղան պատմեց, թէ իրաւ որ, նա ամառ և ձմեռ, ձիւնի և անձրևի տակ, պառկում էր խուցի դռանը, և, իր ծանր մահակը կուրծքին սեղմած, ամբողջ գիշեր անքուն էր մնում։ Ամեն առաւօտ բաց էր անում խուցի դռները, աւլում էր, մաքրում էր, անկողինը ուղղում էր, գրասեղանի վրայ դրած առարկաների փոշին սրբում էր, չնայ ամեն ինչ իր սովորական տեղումն էր գտնում, որ իր պարոնը մի անկարգութիւն չը նկատէ, թէև պարոնը վաղուց մեռած էր։

— Բայց նրա հոգին նայում էր երկնքից, — նկատեց ծառան, ձեռքը դէպի վեր տանելով։ — Մեռնելու միջոցին ինձ ասաց լուսահոգին. «Ռաշիդ, այդ ամենը այդպէս կը պահես, մինչև նա կը գայ» . . . Ես ի՞նչպէս նրա ասածը չը կատարէի։

Արտասուքը թոյլ չը տուեց բարեսիրտ Ծատախցուն աւարտել իր խօսքը, որին մենք տեսանք այն ժամանակ, երբ դեռ պատանի էր, և իր պարոնի խոհանոցում մեծամարտում էր Փարհատի հետ։ Այժմ մի հասուն, առողջ երիտասարդ էր դարձել, բայց դեռ վաղեմի պարզութիւնը մնացել էր նրա մէջ։

Նա ձեռքը տարաւ դէպի կուրծքը, սկսեց բացանել կոճակները։ Մերկ կուրծքի վրայ երեւաց մի շղթայ, որ անցուցած էր պարանոցից, իսկ նրա ծայրին երկաթեայ օղակից քարշ էր ընկած մի բանալի, նոյն ձեւով, որպէս հաւատաւոր մարդիկ խաչ են կախ տալիս շապկի տակից։

— Ընդունեցէք այդ բանալին, պարոն, — ձեռքը մեկնեց ծառան։ — Լուսահոգին ասաց, Ռաշիդ, այդ բանալին քեզ մօտ կը պահես, մինչեւ նա կը գայ եւ միայն նրան կը յանձնես։ Հիմա, փառք Աստուծոյ, եկաք, առէք բանալին։

Պարոնը ընդունեց բանալին։

Սրիտասարդը քարշ տուեց մահճակալի տակից մի հին երկարաձեւ արկղ, ընկուզի փայտից, որի բոլորտիքը գամած էին երկաթեայ փաթաթներով եւ պղնձեայ բեւեռներով։

— Այդ արկղի բանալին է, — ասաց Նա։ — Լուսահոգիի մեռնելուց յետոյ, Աստուած է վկայ, մի անգամ էլ չեմ բացարել, որ տեսնեմ, թէ ի՞նչ կայ դրա մէջ։

— Բոլորովին հաւատում եմ, — խօսեց պարոնը, մօտեցաւ արկղին, բացեց նրան։

Նա լի էր զանազան թղթերով, զանազան հաստ ու բարակ տետրակներով։ Այդ ձեռագրերի մէջ կային՝ զանազան սկսուած եւ չաւարտած վէպեր, վէպիկներ, պատկերներ, կային զանազան բանաստեղծութիւններ, կային եւ բոլորովին վերջացրած աշխատութիւններ։

Բարձրահասակ տիկինը, որ բոլոր ժամանակը խորին տխրութեամբ նայում էր այդ մռայլ խուցի արտասովոր պարագայքին, երբ տեսաւ արկղի մէջ խառնիխուռն կերպով ածած թղթերը, նրա նեղ երկնագոյն աչքերը լցուեցան արտասուքով։ Դրանք հայոց մի անբախտ բանաստեղծի աշխատութիւններն էին։ Նա դողդոջուն ձեռքը տարաւ, վեր առեց տետրակներից մէկը, որպէս մի սրբութիւն, եւ երկար

յառած նայում էր նրա վրայ, թէեւ կարդալ չէր իմանում։ Այդ միջոցին ներս մտան մանուկները։

— Հայրիկ, ձայն տուեց փոքրիկ Անուշը, — դու մեզ ասեցիր, երբ կը գնանք Հայաստան, ձեզ հայերէն կը սովորացնեմ. տուր մեզ մի-մի հատ այդ տետրակներից, որ սովորենք։

— Երբ կը տպուին, այն ժամանակ կը կարդաք, զաւակս, պատասխանեց հայրը։

— Արդեօք կը տպուի՞ն... հարցրեց տիկինը։

— Կը տպուին...

Երիտասարդ Ռաշիդը պատմեց, թէ վերջին գիշերը, երբ պիտի մեռնէր «լուսահոգին», նա հրամայեց վառարանը վառել։ «Պէտք է մաքրել այդ թղթերը»... ասաց նա։ — Ես դրեցի արկղը նրա մօտ, նա ջոկում էր թղթերը եւ շատերը նետում էր կրակի մէջ։ Բայց դեռ այդ գործը չը վերջացրած, նա մեռաւ։ Վերջին գիրքը դեռ բոլորովին չէր այրուած, ես դուրս բերեցի կրակից, դրեցի միւսների հետ եւ արկղը կողպեցի։ Դրանով իմ հոգուն մեղք արեցի. նա կամենում էր այրել, ես չը թողեցի։ Ո՞վ է իմանում, կարելի է մի բանի պէտք կը գայ։ Լուսահոգին վատ բան չէր գրի։ Ախ, ո՜րքան գրում էր... կարծես իմանում էր, որ շատ չի ապրի...

Պարոնը վեր առեց կէսը-այրուած գիրքը, թերթեց եւ դառնալով ծառային, ասաց.

— Այո՛, շատ բանի պէտք կը գայ, եթէ կրակը մեծ մասը ոչնչացրած չը լինէր։

Դա հայոց եկեղեցական պատմութիւնն էր, որ վաղուց դիտաւորութիւն ունէր գրելու հանգուցեալը։

Պարոնը գրասեղանի վրայ մնացած թղթերն եւս հաւաքեց դրեց արկղի մէջ, կողպեց։ Իսկ հանգուցեալի թաշկինակը արեան վերջին բծով, թագցրեց իր ծոցում...

Նա ձեռքը տարաւ դէպի կուրծքը, սկսեց բացանել կոճակները։ Մերկ կուրծքի վրայ երեւաց մի շղթայ, որ անցուցած էր պարանոցից, իսկ նրա ծայրին երկաթեայ օղակից քարշ էր ընկած մի բանալի, նոյն ձեւով, որպէս հաւատաւոր մարդիկ խաչ են կախ տալիս շապկի տակից։

— Ընդունեցէք այդ բանալին, պարոն, — ձեռքը մեկնեց ծառան։ — Լուսահոգին ասաց, Ռաշիդ, այդ բանալին քեզ մօտ կը պահես, մինչեւ նա կը գայ եւ միայն նրան կը յանձնես։ Հիմա, փառք Աստուծոյ, եկաք, առէք բանալին։

Պարոնը ընդունեց բանալին։

Երիտասարդը քարշ տուեց մահճակալի տակից մի հին երկարաձեւ արկղ, ընկուզի փայտից, որի բոլորտիքը գամած էին երկաթեայ փաթաթներով եւ պղնձեայ բեւեռներով։

— Այդ արկղի բանալին է, — ասաց նա։ — Լուսահոգի մեռնելուց յետոյ, Աստուած է վկայ, մի անգամ էլ չեմ բացարել, որ տեսնեմ, թէ ի՞նչ կայ դրա մէջ։

— Բոլորովին հաւատում եմ, — խօսեց պարոնը, մօտեցաւ արկղին, բացեց նրան։

Նա լի էր զանազան թղթերով, զանազան հաստ ու բարակ տետրակներով։ Այդ ձեռագրերի մէջ կային՝ զանազան սկսուած եւ չաւարտած վէպեր, վէպիկներ, պատկերներ, կային զանազան բանաստեղծութիւններ, կային եւ բոլորովին վերջացրած աշխատութիւններ։

Բարձրահասակ տիկինը, որ բոլոր ժամանակը խորին տխրութեամբ նայում էր այդ մռայլ խուցի սրտառուչ պարագայքին, երբ տեսաւ արկղի մէջ խառնիխուռն կերպով ածած թղթերը, նրա նեղ երկնագոյն աչքերը լցուեցան արտասուքով։ Դրանք հայոց մի անբախտ բանաստեղծի աշխատութիւններն էին։ Նա դողդոջուն ձեռքը տարաւ, վեր առեց տետրակներից մէկը, որպէս մի սրբութիւն, եւ երկար

յառած նայում էր նրա վրայ, թէեւ կարդալ չէր իմանում։ Այդ միջոցին ներս մտան մանուկները։

— Հայրիկ, ձայն տուեց փոքրիկ Անուշը, — դու մեզ ասեցիր, երբ կը գնանք Հայաստան, ձեզ հայերէն կը սովորացնեմ. տուր մեզ մի-մի հատ այդ տետրակներից, որ սովորենք։

— Երբ կը տպուին, այն ժամանակ կը կարդաք, զաւակս, պատասխանեց հայրը։

— Արդեօք կը տպուի՞ն... հարցրեց տիկինը։

— Կը տպուին...

Երիտասարդ Ռաշիդը պատմեց, թէ վերջին գիշերը, երբ պիտի մեռնէր "Լուսահոգին", նա հրամայեց վառարանը վառել։ "Պէտք է մաքրել այդ թղթերը"... ասաց նա։ — Ես դրեցի արկղը նրա մօտ, նա ջոկում էր թղթերը եւ շատերը նետում էր կրակի մէջ։ Բայց դեռ այդ գործը չը վերջացրած, նա մեռաւ։ Վերջին գիրքը դեռ բոլորովին չէր այրուած, ես դուրս բերեցի կրակից, դրեցի միւսների հետ եւ արկղը կողպեցի։ Դրանով իմ հոգուն մեղք արեցի. նա կամենում էր այրել, ես չը թողեցի։ Ո՞վ է իմանում, կարելի է մի բանի պէտք կը գայ։ Լուսահոգին վատ բան չէր գրի։ Ախ, ո՛րքան գրում էր... կարծես իմանում էր, որ շատ չի ապրի...

Պարոնը վեր առեց կէսը-այրուած գիրքը, թերթեց եւ դառնալով ծառային, ասաց.

— Այո՛, շատ բանի պէտք կը գայ, եթէ կրակը մեծ մասը ոչնչացրած չը լինէր։

Դա հայոց եկեղեցական պատմութիւնն էր, որ վաղուց դիտաւորութիւն ունէր գրելու հանգուցեալը։

Պարոնը գրասեղանի վրայ մնացած թղթերն եւս հաւաքեց դրեց արկղի մէջ, կողպեց։ Իսկ հանգուցեալի թաշկինակը արեան վերջին բծով, թագցրեց իր ծոցում...

Յետոյ դարձաւ նա դէպի ծառան.

— Դու, բարի Ռաշիդ, քո հաւատարմութեան համար չը վարձատրուեցար քո պարոնից, բայց կը վարձատրուիս ինձանից։ Դու պահպանեցիր մի գանձ, որ մեր ազգի համար շատ թանգագին պէտք է լինի։ Այդ գանձը այդ արկղի մէջն է ամփոփուած։ Վեր առ այդ արկղը, գնանք ինձ հետ։

Յետոյ դարձաւ դէպի վանքի արեղան։

— Շատ շնորհակալ եմ ձեզանից, հայր սուրբ, որ դուք այնքան բարի էք եղել, որ թոյլ էք տուել ձեր վանքում այդ խրեղէնները պահպանուելին։ Ինչպէս տեսաք, ես վեր առի հանգուցեալի թղթերը միայն, իսկ նրա մնացեալ կայքը թողնում եմ ձեր վանքին։

Հայր սուրբի դէմքը փայլեց ուրախութիւնից։

Պարոնը մեկնեց նրան մի ծրար, ասելով.

— Խնդրեմ, ընդունեցէք այդ ծրարը. դրա մի մասը կը պահէք ձեզ համար, իսկ մնացածից, որքան կը ծախսուի, մի տապանաքար շինել տուեցէք եւ դրեցէք հանգուցեալի գերեզմանի վրայ։

Արեղան շնորհակալութեամբ ընդունեց ոսկիները, հարցնելով.

— Ի՞նչ գրել տանք տապանաքարի վրայ, հանգուցեալը այնքան տարիներ մնաց վանքումս, մենք նրա անունը չիմացանք։

— Ոչինչ գիր հարկաւոր չէ, — պատասխանեց պարոնը — միայն մի խաչ փորել տուէք։

— Աստուած հոգին լուսաւորեսցէ, օրհնեց արեղան։

Ռաշիդը վեր առեց արկղը։ Արտասուքը հեղեղի նման թափվում էր խեղճ երիտասարդի աչքերից, երբ նա պէտք է թողնէր այդ մռայլ խուցը, ուր բնակուել էր նրա տէրը, ուր ամեն մի առարկայ յիշեցնում էր նրան այն մարդուն, որին նա այնքան սիրում էր, որին նա պաշտում էր։ Երբ վանքի

դանից դուրս եկան, նա գրկուեցաւ հայր սուրբի հետ, համբուրեց նրա աջը։ Երևում էր որ վանքի բազմաթիւ միաբանութիւնից մնացած այդ երկու ներկայացուցիչները հաշտ էին ապրում միմեանց հետ։

Արկղը տեղաւորեցին կառքի մէջ, ամենքը նստեցին, և կառապանը բռնեց Մուշի ճանապարհը։

Պարոնը Ասլանն էր, որ այժմ կոչվում էր բժշկապետ Սասունեան, իսկ բարձրահասակ Ամերիկուհին նրա կինն էր։ Նա այն հարուստ այրի կնոջ դուստրն էր, որ Նիւ-Եօրքում որդեգրեց Ասլանին, որի տանը ապրում էր նա իր ամբողջ ուսանողութեան ժամանակ։ Այն ժամանակից սիրահարուեցաւ նա և խօսք տուեց պսակուել նրա հետ։ Տարիներով միմեանցից անջատուելը չը խախտեց նրանց սէրը։ Օրիորդը ուխտել էր՝ միշտ սպասել նրան, մինչև կը վերջացնէր իր գործերը և կրկին կը վերադառնար Ամերիկա։ Երբ վերջին անգամ Ասլանը գնաց Հնդկաստան, այնտեղ իր ընկերներից ստացած յանձնարարութիւնները կատարելուց յետոյ անցաւ Ամերիկա և պսակուեցաւ։ Այժմ քաղաքային բժշկի պաշտօնով գնում էր Մուշ։

---

Մեր յիշատակարանը կատարուեցաւ որպէս մի նկարագիր, զանազան պատկերներով։ Շատ անձնաւորութիւններ հանդիսացան և կրկին ծածկուեցան վարագոյրի ետևում։ Մենք վերցրինք նրանց կեանքից և գործունէութիւնից յայտնի գծեր միայն։ Եթէ բոլորի գործերը և նրանց գործունէութեան վախճանը լրիւ գրէինք, պէտք է մի երրորդ հատոր ևս աւելացնէինք։ Ասլանով սկսեցինք մեր վերջին գիրքը, և դարձեալ Ասլանով իջեցնում ենք վերջին պատկերի վարագոյրը…

ՎԵՐՋ

## Ա Զ Դ

Հեղինակին չը յաջողուեց իւր կենդանութեան ժամանակ “Կայծեր„-ը միակատար հրատարակել իրանից անկախ պատճառներով:

Եւ այդ ընթերցող հասարակութեան մէջ բուռն հարցասիրութիւն առաջացրեց “Կայծեր„-ի հերոսների գործունէութեան վերաբերեալ:

Հեղինակի վախճանուելուց յետոյ, մասամբ գոհացում՝ տալու ընթերցող հասարակութեան այդ աճող պահանջին, մենք աշխատեցինք նպաստաւոր հանգամանքների տակ հրատարակել Կայծերի անտիպ մնացած վերջին գլուխները: Որոնք տպագրուեցան՝ “Ամիրցի Աղջիկը„ գլուխը “Վէպիկներ եւ Պատկերներ„-ի երկրորդ Հատորի մէջ. իսկ “Անյայտ Ապագայ„-ն եւ մնացեալ գլուխները տպագրեցինք առանձին գրքոյկով “Կայծերի վերջը„ վերնագրով: Սպասելով մի յարմար առթի բոլորը ի մի ամփոփելու ըստ հեղինակի շարադասութեան որեւ կատարում՝ ենք ներկայ հրատարակութեամբ:

Հրատարակչուհի

ԱՅՐԻ ԱՆՆԱ ՐԱՓՓԻ

27-ն Յուլիսի 1904, Լոնդոն:

# ՑԱՆԿ

